# ԼԻԱԿԱՏԱՐ ՎԱՐՔ

## ԵՒ ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

# ՍՐԲՈՑ

Որք կան 'ի հին Տօնացուցի Եկեղեցւոյ Հայաստանեայց ։

Յօրինեալ վաւերական բանից ճառընտրաց մերոց և այլոց ազգաց, հանդերձ ծանօթութեամբք ։

'Ի Հ. Մկրտիչ վարդապետէ Աւգերեան, յաշակերտութէ մեծին Մխիթարայ Աբբայհօր ։

Հրամանաւ Տն Տն Ստեփաննոսի Ագոնց՝ Աբբայի և Արքեպիսկոպոսի ։

Արդեամբք ածաւոր Մանուկ Աղայի Կարնեցւոյ ժառանգաց Ածատուրեան ։

## ՀԱՏՈՐ. Ժ ։

Միջոց Ածածնի մինչև ցխաչն.

'Ի Յովակիմայ և յԱննայէ մինչև 'ի ժողովն Նիկիոյ ։



1813. 'Ի ՎԵՆԵՏԻԿ. ՌՄԿԲ ։

'Ի Վանս Սրբոյն Ղազարու ։



Ծնունդ սրբուհւոյ կուսին Մարիամու :

P. Antonio Novelli del. — Fabio Berardi Scul. Ven.



# ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ

## Յովակիմայ, և Աննայի ծնողաց սբ՟ Ածածնի ։ (1)

Հ. յուլիսի. 25 ։ Յ. յուլ. 25. և սեպտ. 9. Լ. մարտ. 20. և յուլ. 26 ։ Բոլլանդեանք. 'ի Գ. հատ. մարտի. էջ. 77=80. և 'ի Շ. հատ. յուլ. 233=279 ։ Խորեն. Եղբ. առ առակ արձր ։ Յոհէ. գամաք. յղ. առղղ. հատոր. Է. 14. և այլք 'ի հայոց և 'ի Վենայագրաց ։ (2)

ՅՈՎԱԿԻՄ ԵՒ ԱՆՆԱ պանծալիք և գովելիք, 'ի մարդկանէ հրեշտակք, և պարծանք ազգի մարդկան. փառաւորեցաք յայս գերագոյն պատուով քան զամ՟ նախահարս և զնախամարս, զի որում ընտրեցաք 'ի լինել ծնօղ ծնողի Ածորդւոյն, և սուրբ զանգս նախահաւ և նախամայր փրկչին տիեզերաց ։ Արդ ո՞ բաւական իցէ ասել զմեծութի երիցս երանելեացս, որք այսպիսում հասին բարեմասնութե. կամ ո՞ր բան արժանաւոր կայցէ 'ի ձայնել զպարծելութիւն նց. զորոց շատ

է ասել 'ի գովութիւն և 'ի պատմութիւն վարուց նոցա, եթէ ծնօղք էին սրբոյ Աստուածածնի. որպէս և ամենայն լրումն կատարելութեան մաքուր զաւակն նոցա ամենասուրբ կուսին մարիամու յայն բան բովանդակի, զի եղև մայր Աստուծոյ:

Սա զի որպէս մարիամ ծառ կենաց, նոյնպէս և յովակիմ և աննա արմատ ծառոյն կենաց. մարիամ տունկ օրհնութեան, և ծնօղք նորա արմատ օրհնութեան. և եթէ 'ի պտղոյ անտի ծառն ճանաչի, ապա 'ի յայտ է զմարիամ, և 'ի մարիամայ զյովակիմ և զաննա ծանիցուք աներկբայ՝ ըստ ամենայն ձրից լաւութեան: Նաև արդարև՝ եթէ վասն զաքարիայ և եղիսաբեթի ծնողաց սրբոյ կարապետին վկայեաց աւետարանիչն, եթէ էին արդարք երկոքեանն առաջի Աստուծոյ, գնային յամենայն պատուիրանս և յիրաւունս Տեառն անարատք, որչափ ևս առաւել տայ մեզ իմանալ զծայրագոյնն արդարութիւն և զանարատ քաղաքավարութիւն զյովակիմայ և զաննայի. որք յայնչափ վերագոյն ընտրեցան աստիճան քան զծնօղս մկրտչին, որչափ մեծ է գերաստիճան բարձրութիւն Աստուածամայրութեան սրբոյ զաւակի իւրեանց՝ քան զպաշտօն կարապետութեան և մկրտութեան. զի թէ նա մեծ 'ի ծնունդս կանանց կոչեցաւ, այլ մօրն Աստուծոյ չէ՛ր կշռուի ընդ կանանցածինս. զի զի՞նչ համեմատութիւն ընդ կարգ ծառայական և ընդ ծնողական: Այլ քանզի 'ի գրոց սրբոց չունիմք և ոչ մի տեղեկութիւն պատմական զծնողաց ծնողի բանին Աստուծոյ, տեսցուք զի՞նչ ինչ աւանդութիւն եկեղեցական 'ի գիրս հարց և

վրդպաց

վարկան այլք 'ի նոր մեկնչաց ասել՝ թէ հեղին իցէ նոյն ինքն յովակիմ, զի որում հեղի մերձ է յանուանս եղիակիմ, և այն 'ի յովակիմ. թէպէտ և առանց նախնեացն վկայութե. և զի այսմ սբն յովակիմ լինի որդի մատաթեայ որդւոյ ղևեայ. և սբն յովսէփ ոչ լինի մերձաւոր յովակիմայ, այլ՝ աննայի եղբօրորդի, և աննա հօրաքոյր յովսեփայ. քանզի համարին զաննա լինել դուստր մատթանայ, որ ծնաւ զյակոբ զհայրն յովսեփայ, զի մատթէոսի աւետարանչի :

Այլ սակայն այլք դնեն հանգոյն յայսմաւուրաց յունաց և հայոց, թէ սբն աննա ոչ էր դուստր մատթանայ՝ որ 'ի տանէ յուդայ, այլ դուստր մատթանայ քահանայի 'ի ղետական ազգէ՝ բնակելոյ 'ի բեթղեհէմ քաղաք յուդայ, քոյր սովրեէի կամ սոբէի մօրն եղիսաբեթի. քանզի ծնաւ ասեն մատթան քահանայ երիս դստերս. և այս երից քերց դստերք եղեն՝ եղիսաբէթ, մարիամ մայր տն, և սողոմէ : 'Ի սոսին վերածին և այլ բազմապատիկ կարծիք հին և նոր վիպսաց, որք անմիաբան դտանին 'ի խնդիրն ազգաբանութեան 'ի մասնաւորի, ուր է հանրապէս միաբան հաստատեն գրովք, թէ յովակիմ և աննա էին 'ի թագաւորական ազգէ դաւթի, ունելով միանգամայն և ազգականութիւն ընդ քահանայական ազգի. և այս կամ զի հին ծագման, զի որում զքոյր նաասոնի ամինադաբեան էառ 'ի կնութիւն եղիազար որդի ահարոնի, և կամ զի այլ մերձաւոր խնամութեան

Թեան Է ծնօղս տիրամօրն և Է եղիսաբէթ մայր մկրտչին :

Արդ՝ 'ի գալ հասանել ժամանակէ լրման ուխտի առ հարսն եղելոյ՝ 'ի յովակիմ և յաննա, յորս միացեալ էին թագաւորական և քահանայական գաւազանք, և կայր մնայր ակնկալելոյն հիմնարկութիւն նորոյ Տր՝ ծննդեամբ ծնողի փրկչին, կամք եղեն Այ՝ զի զառաջինն անզաւակ մնացեն յովակիմ և աննա. ոչ զի 'ի ծերութէ և յամլութե հրաշագործեսցէ նոյ զաւակ հրաշալի սահմանել 'ի ծննդութիւն միածնին իւրոյ : Տիրէր յովակիմ Է ամլութիւն աննայի, և աննա առաւել քան զնա. այլ առաւելաւ տրտմութիւն նոյ, ուր փոխանակ ընդունելոյ մխիթար սրտի 'ի բարեկամաց և 'ի քահանայից, ընկալան զյետինն նախատինս. զի ոչ ասի՝ 'ի գնալ երբեմն յովակիմայ Է այլս 'ի տաճարն եղմի մատուցանել Այ զպատարագ 'ի խաչանց իւրոց կրոկին, իսաքար ոմն անուն քահանայ (Է ոմանց ռուփիմ քահանայապետ) յամօթ արար զնա՝ ասելով. չէ պարտ յառաջ ընծայ մատուցանել քեզ Այ. վս զի ոչ գոյ զաւակ քեզ 'ի մէջ իէլի : Յորժ խոցեցաւ յովակիմ, երկիւղածն 'ի Այ .. և թախծագին սրտիւ մեկնեալ յեղմէ՝ ոչ դարձաւ 'ի նազարէթ 'ի տուն իւր, և ոչ երևեցոյց զանձն աննայի կնոջ իւրում. այլ գնաց յանապատ առ հովիւս խաշանց իւրոց, զոր ոմանք մերձ 'ի պրոբատիկէ ասեն (զի յունարէն բռօվատոն է ոչխար, և բռօվատիկէ ոչխարանոց կմ խաշնայ

նալին) . և անդ կանգնեաց զխորան իւր , և պահեաց պահս ( Ը՟Ն ամանց՝ զԽ օր ) . և ասէ ցանձն իւր . ոչ իջանեմ՝ ի տուն իմ , և ոչ կերայց և արբից , մինչև այց արասցէ ինձ Տ՟ր Ա՟ծ իմ . և աղօթք իմ լիցին ինձ կերակուր , և արտասուք իմ ըմպելի .

Իսկ Աննա ամուսինն իւր բարեպաշտ վարանեալ Ը՟Ն յամենայնի , և իմացեալ՝ ի համբաւոյ զպատճառս իրացն , կրկին ողբս ողբայր , և կրկին կոծս կոծէր . և ասէր . լացից զայրութիս իմ , լացից և զանզաւակութի իմ : Իսկ զգեցաւ Աննա հանդերձ սգոյ . և ՚ի մտում յաւուրց յիններորդ ժամէ էջ ՚ի դրախտտան իւրոյ , և նստաւ Ը՟Ն դափնի ծառով . յաղօթս եկաց առ Ա՟ծ , և ասէ . Տ՟ր Ա՟ծ հարցն մերոց՝ յիշեա՛ զաղաչանս իմ , և օրհնեա՛ զիս , որ՟պ օրհնեցեր զարդարն աբրահամ հայր մեր ՚ի սառա , և ետուր նմա զաւակ զիսահակ : Իսկ էր պշուցեալ Ը՟Ն երկինս , և լայր : Իսկ ետես ՚ի ծառն դափնի՝ երկու բոյն ճնճղկաց , և ողբաց մեծաձայն և ասէ . վա՜յ ինձ՝ թէ ո՞վ ծնաւ զիս , կամ ո՞ր մայր երկնեաց զիս . զի յանէծս ծնեալ եղէ ես ՚ի մէջ ի՟էլի , և անարգանելի՛ և նախատինս եղէ ՚ի տաճարի Տ՟ն Ա՟յ մերոյ : Վա՜յ ինձ , ո՞ւմ նմանեցայ ես , և ոչ զազանաց երկրի նմանեցայ ես , և ոչ թռչնոց երկնից . զի թռչնոց երկնից ձագք գոն առաջի քո Տ՟ր , և զազանք և անասունք ծննդականք են առաջի քո : Վա՜յ ինձ , թէ ո՞ւմ նման եմ ես . և ոչ ջուրց նման գտայ ես . զի և ջուրքս այս զեռունս բերեն առա-

ջի

լիր քո Տէր, և ձկունք և կայտառք օրհնեն ըզ-
քեզ ։ Վայ ինձ ; Թէ ում նմանեցայ ես . և
ոչ հողոյ երկրի նման եմ ես . զի և երկիր
մատուցանէ զպտուղ իւր 'ի ժամանակի՝ որ-
դւոց մարդկան, և օրհնեն զքեզ Տէր ։

Եւ 'ի նոյն ժամն հրեշտակ Տեառն երևեցաւ
Աննայի, և ասէ . Աննա՛ Աննա, լուաւ Տէր
աղօթից քոց . և ահա յղասցիս և ծնցիս մա-
նուկ, և ելցէ անուն նորա ընդ ամենայն երկիր ։ Եւ
ասէ Աննա . կենդանի՛ է Տէր Աստուած իմ . եթէ
ծնայց զաւակ, մատուցից զնա ընծայ Տեառն
Այ՝ ընդ օրինակին Աննայի մօր Սամուէլի . և
լիցի և զաւակ իմ պաշտօնեայ տաճարին Այ
զամենայն աւուրս կենաց իւրոց ։

Եկն հրեշտակ Տեառն և առ այր նորա, և ասէ .
Յովակիմ, լուաւ Տէր աղօթից քոց . էջ 'ի
տուն քո, և Աննա կին քո յղասցի . և եղի-
ցի ձեզ և ամենայն երկրի ցնծութիւն ։ Եւ ասէ Յո-
վակիմ ցհովիւս իւր . ածէք ինձ որոջս Ժ
անարատս և անբիծս, և լինիցին ընծայ
յանուն Տեառն Այ իմոյ, և ասէ . ածէք ինձ
զուարակս փափուկս և գեղեցիկս . և լինի-
ցին քահանայից և ծերոց . նոյնպէս և նո-
խազս Ճ ժողովրդեանն ։ Եւ յեղանել նորա
'ի ճանապարհ՝ ազդեցին Աննայի հրեշտակք
և ասեն . ահա Յովակիմ այր քո գայ, և բե-
րէ [illegible]ան զկնի իւր ։

Իբրև եկն Յովակիմ 'ի տուն իւր, ընթացաւ
Աննա ընդառաջ նորա, և ասէ . այժմ գիտացի՝
թէ ողորմեցաւ ինձ Տէր, և օրհնեաց զիս
յոյժ . և ոչ ես լիցեմ այրի, և ոչ անզաւակ ։

Եւ

Եւ յետ մատուցանելոյ յովակիմայ զընծայս իւր այ, յղացաւ աննա կին. նր (5) զզաւակն ուխտական՝ զօրհնեալն 'ի ծնունդս կանանց, զօրհնիչն եւայի, օրինօք բնութ՝ 'ի վեր քան զբնութիւս. զորմէ ուսիմք ասել ճառօրէն 'ի սկիզբն քրստոնական տօնից՝ յայտնաբանելով զանարատ յղութիւն ամենասրբուհւոյն:

Այսօրինակ միայն մեզ անդանօր ստորագրել զծնունդ տիրուհւոյն 'ի յաննայէ, և զոր զկնի ընծայումն 'ի տաճարն. այլ աստանօր ըստ վկայաբանից ոճոյ զկարգ պատմութեան տեսցուք:

Յորժամ լցան աւուրքն, և ծնաւ շնորհանունն աննա զմանուկն իւր՝ զդուստր շնորհալի, կոչեաց զանուն նր մարիամ, որ և միրէմ, ստուգաբանեալ ըստ այլևայլ բարբառոյ, բարձրուհի, տիրուհի, լուսապայծառ, աստղ ծովու, ևն, բազմապատիկ խորհրդով 'ի դէպ եկեալ իսկուհւոյն մերում: Եր և յորժամ եղև վեցամսեայ, կանգնեցաւ ասէ պատմութիւնն՝ մանուկն մարիամ յոտս իւր, և քայլեաց քայլս եօթն. և դարձաւ անդրէն 'ի գիրկս մօրն:

Եւ լցաւ սիրտ աննայի ուրախութեամբ մեծաւ. և ասէ աննա. կենդանի է տր այ, զի ոչ կոխեսցէ զերկիր, մինչև տարայց զդա 'ի տուն տն. և արար սրբութիւն աննա 'ի սենեկի իւրում, զի եղիցի զաւակ իւր սրբեալ տն. և ոչինչ պիղծ կմ զազիր մուծանէր 'ի սենեակ անդր առ մարիամ. և ոչ գիտէր զայն, եթէ ինքնին սբն սբց բնակելոց է 'ի սրտին մարիամու,

մնու , և ունի բնակել երբեմն և մարմնապէս ։ Իսկ յորժամ եղև մանուկն տարեկան , արար յովակիմ ընդունելութիւն մեծ 'ի տան իւրում 'ի նազարեթ կամ յերէմ (6) . և կոչեաց զքահանայս և զդպիրս և զծերս և զբազմութիւն 'ի ժողովրդենէն իէլի . և առաջի ամենեցուն մատոյց զմանուկն 'ի ձեռս քահանայապետին . և նա օրհնեաց զնա , և ասէ , տէր աստուած օրհնեա՛ զտղայս զայս . և տուր սմա շնորհս՝ անուանի լինել յամենայն ազգս յաւիտենից . և ասաց ամենայն բազմութիւնն . եղիցի եղիցի ։ Իսկ դարձեալ մատուցին զտղայն առ քահանայսն . և օրհնեցին զնա , և ասեն . աստուած՝ որ 'ի բարձունս ես , նայեա՛ 'ի մանուկս յայս , և օրհնեա՛ զսա քոյին օրհնութեամբ՝ որ ոչ անցանէ . և ասացին ժողովուրդն . եղիցի եղիցի ։ Իսկ առեալ մայրն 'ի գիրկս իւր՝ տարաւ 'ի սրբազարդել սենեակ իւր , և օրհնեաց զաստուած , և ասէ . երգեցից տեառն աստուծոյ իմոյ նոր օրհնութիւն , վասն զի այց արար ինձ , և եբարձ յինէն զնախատինս որդւոց մարդկան . և ետ ինձ պտուղ արդարութեան յիշատակ առաջի իւր ։

Իսկ իբրև եղև մանուկն ամաց երից՝ ըստ չափու ընծայման սամուէլի 'ի տուն տեառն , առեալ յովակիմայ և աննայի զմարիամ՝ տարան զնա 'ի տաճարն , և ընծայեցին աստուծոյ ըստ ուխտի իւրեանց , դնել 'ի պաշտօն տեառն ընդ այլ կուսանս՝ որք բնակէին 'ի կուսաստանի տաճարին՝ ըստ դաստիարակութեան , որպէս ասի՝ անուանի մարգարէի դաւթի փանուէլի յազգէ ա-

ստերայ ։ Բայց քանզի չէր բաւական չափ հասակի կուսին՝ ընդ այլս բնակակցութե, առաց քահանայապետն ցծնօղսն նր՝ տանել և պահել զնա 'ի տան ամբծութե. և 'ի լինել եօթն ամաց՝ բերել և դնել 'ի կուսանոցի անդ. և նք արարին այնպէս ։ Եւ յայնմ հետէ եկաց մարիամ սերովբէն հողեղէն ընդ դասս կուսանաց այլ ևս ամս եօթն. և ապա ըստ տնտեսութեն այ՝ 'ի չորեքտասաներորդ-ամի հասակին խօսեցեալ եղև յովսեփայ առն արդարոյ. և 'ի հնգետասաներորդին ծնաւ անփորձ կուսութե զփրկիչն քի զայն զոր-դին այ ։

Իսկ ծնօղք նր ածածնի յովակիմ և աննա՝ սքանչելի քաղաքավարութե լցեալ զաւուրս կենաց իւրեանց՝ փոխեցան 'ի հանգիստ այ 'ի խորին ծերութե. Թէպէտև ժամանակն ան-գիտելի ։ Սովորական կարծիք են, եթէ յո-վակիմ յառաջ վախճանեցաւ քան զաննա, որ արժանի եղև ասեն տեսանել զԹոռն իւր զյն քն զածորդին 'ի մարմնի. և յաւուրս մանկութե փրկչին փոխեցաւ 'ի կենցաղոյս, և թաղեցաւ 'ի գերեզմանի առն իւրոյ յո-վակիմայ 'ի ձորն գեթսեմանի. ուր և ցու-ցանի տեղի շիրմի նց մինչև ցայսօր 'ի մէջ աս-տիճանաց, ընդ որս լինի իջանել 'ի գերեզմանն նր ածածնի. բայց պատուական նշխարք եր-կոցունցն իսկ՝ յովակիմայ և աննայի, 'ի վաղ ժամանակաց հետէ բարձան 'ի շիրմէ անտի, և փոխադրեալ յարևմուտս՝ սփռեցան 'ի բազ-զում տեղիս. զորոց ունիմք ասել 'ի ծանա-

թու

նութն յովակիմայ և յովսեփայ այսպէս բովանդակի ։ Դաւիթ ծնաւ զսողոմոն (զոր յիշէ մատթէոս), և զնաթան (զոր յիշէ ղուկաս)։ 'ի սողոմոնէ սերունդք որդւոց յորդիս մինչև յեղիազար, որ ծնաւ զմատթան. մատթան ծնաւ զյակոբ, և յակոբ զյովսէփ զայրն մարիամու կուսին, և զկղէովպաս ։ Իսկ 'ի նաթանայ եղեն սերունդք որդւոց յորդիս մինչև 'ի ղևի. որդիք ղևեայ երեք. մելքի, մատթաթ. և պանթեր, կմ բար' պանթեր կոչեցաւ. 'ի մեռանել մատթաթայ անորդի' մելքի եղբայրն նր էառ զկին նր. և ծնաւ զհեղի 'ի կնոջէն մատթաթայ կմ մատթանայ, որ 'ի մօրէն յակոբայ. և հեղի մեռաւ անորդի. և Ը այսմ տղ մատթաթ նոյնանայ է մատթանայ, ն. յետս և ղևի է եղիազարու ։ Իսկ յակոբ որդի մատթանայ' 'ի մեռանել հօր իւրոյ սնաւ 'ի տան մելքեայ օրինական հայր իւր կոչեցելոյ. զի և հեղի և յակոբ' համամայր եղբարք էին յայլևայլ հօրէ. յակոբ 'ի տանէ սողոմոնի, և հեղի 'ի տանէ նաթանայ ։ Եւ 'ի մեռանել հեղեայ անզաւակ' էառ յակոբ զկին նր, և յարոյց զաւակ եղբօր իւրում զյովսէփ և զկղէովպաս. վսյ սոքա կոչին նաև որդիք հեղեայ ։

Իսկ պանթեր որդի ղևեայ, կամ բարպանթեր որդի պանթերայ որդւոյ ղևեայ, ծնաւ զյովակիմ. յովակիմ ծնաւ յաննայէ զմարիամ կոյս. յորմէ ծնաւ յս' որ անուանեցաւ քս ։

Այլ Ը ալոփիոսէի' զորոյ զկարծիս դնէ և հայրն մեր մխիթար աբբայ 'ի մեկնութն մատթէի, 'ի սողոմոնէ զաւթեան սերի ծնունդ եղիազարու' որ ծնաւ զմատթան. և մատթան ծնաւ զյակոբ, և զաննա և զսոբէ. յակոբ ծնաւ զյովսէփ և զկղէովպաս. աննա ծնաւ զմարիամ կոյս. և սոբէ զեղիսաբէթ' որ կոչի ազգական կուսին ։ Իսկ 'ի նաթանայ զաւթեան' ծնունդ ղևեայ, որ ծնաւ զմատթաթ, և մատթաթ ծնաւ զհեղի, որ է յովակիմ. և սա ծնաւ զմարիամ կոյս յաննայէ ։

Բայց Ը յայսմաւուրաց հայոց և յունաց (որոց համաձայն խօսեցաւ և բարեպարք 'ի վարս յովհ. մկրտչի), մատթան քահանայ ղևտացի ծնաւ երիս դստերս, զմ զմարիամ, զսովբէ կմ զսոբէ, և զաննա. աննա կին յովակիմայ ծնաւ զսբ կոյսն մարիամ ածածին. սովբէ ծնաւ զեղիսաբէթ զկին զաքարիայ և զմայրն մկրտչին. և մարիամ ծնաւ զսողոմէ զմայր որդւոցն զեբեդեայ, կամ զայլ ոք սողոմէ մարիամ կոչեցեալ ։ Իսկ եղբարք և քորք քսի կոչեցեալք' էին զաւակք կղէոպայ եղբօրն

„ ւակ երկրորդ յայնպիսի գեղեցկածին մօրէ. վա զի
„ շատ գտաւ առ վայելչութի ամ արարածոց մեծազօր
„ և գերարբուն գուսար միամօր. քանզի 'ի նմա' որպէս
„ կամք են ամէն բանիւ մեծին պօղոսի, ամ գանձք է
„ մաստութե և գիտութե ծածկեալ կան ||:

(6) Որչափ սոսյդ գիտեմք, թէ սբ կոյսն մարիամ յառանուլ զաւետիս 'ի գաբրիէլէ' էր 'ի նազարէթ գալիլեացւոց, ուր էր բնակութի և սբյն յովսեփայ խօսնաւն նր, ոչ նոյնչափ առուգեալ ուսանեմք զտուն ծնողաց նր., արգեօք միշտ 'ի նազարէթ էին և նք. թէ 'ի բեթղեհէմ, կամ յեմէմ, և կամ մօտ 'ի պրօբատիկէ. զի պէսպէս խօսին հարք և վկայութիւնք և քննիչք, և ոչ միաբանին. բայց չէ ինչ, զի ոչ շատ հեռի են 'ի միմեանց այս տեղիք, և ոչ թերևս միշտ 'ի միում վայրի լեալ իցէ բնակութի ծնողաց կուսին, մանաւանդ յետ ընծայելոյ զնա կոյսն 'ի տաճարին: Աքն յովհան դամասկացի առաջ առնէ զբեր ներբողեան 'ի փոխումն կուսին մօտ 'ի պրօբատիկէ աւազանին, ուր կառուցեալ էր եկեղեցի յանուն մօր նր սբյն աննայի. և էր աւանդութի եմացւոց' թէ անդ լեալ իցէ և ծնունդ կուսին յաննայէ:

(7) Իսկ վա գերեզմանի յովակիմայ և աննայի' որպս և սբյ կուսին, եւ և յովսեփայ, հաստատեաց աւանդութի է' լինել 'ի ձորն յովսափատու մերձ 'ի պարտէզն գեթսեմանի. զորմէ այսպէս գրէ փրանկիսկոս կոճարեզմիոս 'ի զննութե սբյ երկրին. հատ. ե. գիրք. ժ. գլ. 2:

* Յաջմէ կողմանէ մատանողաց, այն է յարևելից կուսէ, իբրու 'ի միջավայրի յիսնաստիճան սանդղոց' ը որ լինի իջանել 'ի գերեզման կուսին, կայ մատուռն. յորում են երկու գամբարանք խորանաձև. յորոց 'ի միումն' որ հայի ը հիւսիս, թաղեցաւ երանելին մարմին սբյն աննայի մօր ածածնի. իսկ 'ի միւսումն ընդ արևելս' մարմին սբյն յովակիմայ հօր կուսին: 'Ի միւս կողմանէ հանդէպ մատուանս կայ այլ մատուռն նուիրեալ յանուն սբյն յովսեփայ փեսայի կուսին մարիամու. ուր է գերեզման նր նոյնպէս խորանաձև: Այս չիրիմք թափուր են 'ի սբ մարմնոց. բայց հաստատեալքն մեծարեն զայնոսիկ պատարագօք և աղօթիւք' մանաւանդ յաւուրս տօնից նց. իբր զի աւանդութի է, թէ պատուական մարմինք սցա այսոցիկ յայն գերեզմանս թաղեալ իցեն, և սա նշխարք նց սրբազանեալ ||: Յայտ է առաւելապէս, թէ նովին մտօք պատուէին և պաշտէին և սբ գերեզմանք կուսին

ոյն և փրկչին ։ Ուստից ասել զանստոյգ բանս ոմանց , թէ որ յովակիմ և աննա է սրբոյն յովսեփայ յարուցեալ եղեն 'ի մեռելոց յաւուր խաչելութեան փրկչին . կամ թէ մարմին սրբոյն յովսեփայ՝ որ ոչն գտանի այժմ ուրեք , լինէ վերափոխեալ է քսի յաւուր համբարձման . զնոյն կամիցան ասել ոմանք և զյովակիմայ և զաննայէ , այլ բազմաւթի նշխարաց գտելոց յանուն նց ասէ զայդ ։

Վն սրբոյն յովակիմայ ասի , թէ նշխարք ինչ նր եղեն 'ի բոնոնիա (որ 'ի պոլոնիա իտալացւոց) 'ի տաճարի սրբոյն պօղոսի . այլ և սկաւառակ գլխոյն ասի լինել 'ի կոզոնիա գերմանացւոց յեկեղեցւոջ մակաբայեցւոց . զոր և քննութեամբ ականատես վկայից յամի տն 1665 . հաստատեին բոլլանդեանք , թէ ամփոփեալ է յանօթ արծաթի 'ի ձև գլխոյ պատկերով ականակապ և մարգարտեա զարդուք . 'ի վերուստ կուսէ ունի բացարան 'ի ցուցանել ժողովրդեան . և 'ի ստորին կողմն գրեալ հին տակեգիր . * գլուխ սրբոյն յովակիմայ || ։ Վկայեն արժանահաւատ անձինք երևելիք , թէ 'ի համբուրել անդ զնր գլուխն՝ հարկանէր 'ի մեզ հոտ անուշութեան ։

Իսկ վասն մարմնոյ սրբոյն աննայի բազում են բանք . և նախ յօրինակս ինչ հռովմէական ժամագրքի ըստ տպագրութեան փարիզու ասի , թէ սրբն հեղինէ գլխոյ սորին եղէ յեմէ 'ի կոստանդնուպօլիս զմարմին սրբոյն աննայի . եղե՛ թէ յիշէին զայդ և պատմիչք յունաց 'ի խօսել զտաճարէ սրբոյն աննայի 'ի կոստանդինուպօլիս , զոր ըստ պրոկոպիոսի շինեաց յուստինիանոս կայսր՝ հոյակապ և հրաշակերտ՝ 'ի տեղւոջն , որ կոչիւր տեւդերոն , որ երկրորդ . զոր և նորոգեաց զկնի վասիլ կայսր արշակունի , այլ գրէ 'ի վերս նր թուն նորին կոստանդին պորփիւրոժէն ։

Բայց զարմանալին այն է , զի ապդեցիք՝ որ բնակիչք ապդեայ քաղաքի 'ի գաղղիա ունէին աւանդութիւն , թէ 'ի ձեռն առաքելոց կամ աշակերտաց քսի բերեալ իցէ առ իւրեանս մարմին սրբոյն աննայի , և եդեալ 'ի մառառան միում . զոր յաւուրս հալածանաց եւս ծածկել եկեղեցւոյն . իսկ յաւուրս մեծին կարոլոսի՝ յառաջիկայութեն նորա յայտնեցաւ 'ի ձեռն մանկան միոյ յովհաննէս կոչեցելոյ . որ 'ի ծնէ կոյր , խուլ և համր գոլով՝ նշանացի եցոյց զտեղին . և է բանալ և գտանել զմարմինն հանդերձ վառեալ ճրագաւ մատրանն՝ ետես կոյրն , խօսեցաւ համրն , և լսել սկսաւ խուլն . ուստի կարգեցաւ տօն գիւտի մարմնոյ սրբոյն աննայի հրամանաւ կայսեր ,

սեր, և եղև աւելին ուխտաւորացն երևելի:

Արդ՝ ուր առէին արդէօք առ խուրանս ունել զգլուխ ս̃բյն աննայի է այլ նշխարս նր̃, յորոց սփռեալ իցեն և յայլ տեղիս, զնոյն ապացէին և այլք ՚ի գաղղիացւոց՝ որ ՚ի վառավառայ կղզւոջ մօտ ՚ի լուգդուն. այլ թէ առ նա իցէ գլուխ ս̃բյն աննայի՝ մասամբք ինչ նր̃, իբրու բերեալ ՚ի ձեռն ս̃բյն դոնգինոսի զինաւորին: Իսկ կարնուտացիք ՚ի նոյն գաղղիա համարէին՝ թէ առ խուրանս է ՚ի տաճարի ա̃ծածնի՝ գլուխ ս̃բյն աննայի բերեալ ՚ի կոստանդնուպօլսոյ ՚ի ձեռն կոմսի ուրումն:

Արտաքոյ գաղղիոյ ՚ի քոննոնիա իտալացւոց կայ ասէն մկաւուռակ ս̃բյն աննայի, զոր երանելին նիկողայոս ալբերգացի տարեալ է ՚ի պարգևս ՚ի հենրիկոսէ վեցերորդէ ալեքայէն անգղիացւոց: ՚Ի կաստելլոպոն սիկիլիացւոց մասն գանկի, որ ասի բերեալ ՚ի գաղղիոյ. որ և փակեալ յարծաթի գլխի՝ ունի յիշատակ յունարէն գրով գրոշմեալ. * Գլուխ ս̃բյն աննայի՝ մօր ա̃ծածնի ||. Եւ ՚ի մարկոգուրան գերմանացւոց առ աուրս գետով՝ կայ ասէն գլուխ ս̃բյն աննայի՝ որ երբեմն էր ՚ի մոգունտիա, բերեալ յէջմէ:

Զայս ամ̃ լսելով մի՛ ոք զարմասցի. նախ՝ զի ոսր և մասնիկ մի գլխոյ գոցի, կոչի գլուխ, զմասն անուամբ բոլորին կարդալով. և երկրորդ՝ բազում են աննա անուամբ ս̃ր կուսանք կմ̃ կանայք ՚ի սկզբանէ հետէ. զորոց զգլուխս դիւրաւ չփոթեն է միմեանս, ուր ամենքին կամին, զի խուրանցն իցէ մեծին աննայի գլուխ, քան թէ այլոյ: Սոյնպէս իմա և զանբաւութէ այլոց նշխարաց, որք կրեն զանուն ս̃բյն աննայի:

Զոր օրինակ, ՚ի յիշատակարանս տրեվեր քաղաքի ընդ այլ նշխարս ս̃ց յիշի * բազուկ ս̃բյն աննայի մօր մարիամու ||: ՚Ի կողոնիա ՚ի տաճարի ս̃բյն վառվառեայ՝ այլ * բազուկ ս̃բյն աննայի ||: ՚Ի լուսիտանիա ՚ի տաճարի գթութե՝ * բազուկ ս̃բյն աննայի մօր երկնից թագուհւոյն ||. և այլ բազուկ նր̃ ՚ի հռովմ յեկեղեցւոջ ս̃բյն պօղոսի. զի ՚ի բազկաձև անօթ եդեալ է այլևայլ մասն. սոյնպէս իմա և զայլ մասանց, զի ուրեք ձեռն յիշի, այլուր ոտն, և այլ մասունք առաւել անհաւատալիք. որք կախին զատուցանէ և զանստուգանէ վաւերական կմ̃ անվաւերական յիշատակարանաց:

Այս ինչ ստոյգ է, զի ս̃բն աննա լսէ զաղաչանս ամ̃ց՝ որք հաւատով կարդան առ նա է ամ̃ տեղիս. մինչև ասել տրիթեմիոսի աբբայի. * Եթէ յաճախուէ աղանչէ-

ւ լեաց



# ՅԻՇԱՏԱԿ

## Սբ̄ կանանցն Իւղաբերից ։



ԳԵՐԱԳԼՈՒԽ ՍՈՑԱ է ջերմ սիրելին և ժրագլուխ աղախինն ք̄ի Մարիամ Մագդաղենացի. զոր ոմանք նոյն համարին ը̄ կնոջն մեղաւորի՝ որ եօծ զոտսն յ̄ի ՚ի տան սիմոնի բորոտի. ոմն և զնա նոյնացուցանեն ը̄ մարիամու քերն մարթայի, և ղազարու. զորմէ հոխագոյն տացուք տեղեկութ̄ի ՚ի տօնի սբ̄յն ղազարու և քերց նորա ։

Գործակից մագդաղենացւոյն էր ՚ի փոյթ խնկելոյ զմարմինն տ̄րունն՝ միւս Մարիամն որ և մարիամ յակովբայ, այս է քոյր մօր տ̄ն կոչեցեալ, կին կղէովպայ և մայր յակովբայ արդարոյ եղբայր տ̄ն կոչեցելոյ, ոմն և յովսեայ, յուդայի, և սիմոնի՝ կ̄մ շմաւոնի ազգականին ք̄ի ։ Իսկ երկոցունցն աջակից Սաղոմէ կ̄մ սաղոմէ մայր յակոբայ և յովհաննու որդւոցն զեբեդեայ, որ և դուստր նորին միւս մարիամու և կղէովպայ՝ ը̄ս ստուգագոյն կարծեաց։ Ընդ երիցս այսոցիկ յիշի ՚ի սբ̄յն ղուկայ՝ և Յովհաննա կին քուզայ հազարապետին հերովդի, և այլ կանայք ասէ

աւէ է նոր. յորոց սակի է և Շուշան, զոր այ-
լուր նշանակէ նա ինքն Ղուկաս է կանայս՝
որք պաշտէին զՏէրն յընչից իւրեանց ։
Արդ սոցա ամենեցուն գովութիւն յաւետա-
րանի անդ է, և գործ նց անմոռաց յիշատա-
կաց արժանի է մինչև 'ի կատարած
...խոստման ... առ մագդաղենացին։ Այս-
զի ... զՏէրն, նոյնպէս և զտիրամայրն պաշ-
տեցին մինչև ցելս ... , նմին իրի զկնի
վերափոխման կուսին՝ կատարի 'ի մեզ Յա-
հովապէս տօն յիշատակի խմբի սոցա է յօ-
վակիմայ և Աննայի ծնողաց սրբ. Աստուածածնի.
որոց բարեխօսութ. լիցի և մեզ պաշտել զՔս
Ած մեր և զԱծամայրն անուշահոտ փարուք
առաքինութե և խնկանոցեր աղօթիւք. զի
է նոցին համբուրեսցուք քաղցր տեսոյն Քնի
յարուցելոյն 'ի մեռելոց, և յարուցանողին
զմեզ յանմահական 'ի կեանս ։



Վ.Կ.Ր.-



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Բաբեղայ հայրապետին, և Երից մանկանց՝ աշակերտաց նորին:

Տ. Յ. սեպտ. 4: Լ. յունվար. 24: Պատրիարք Ա. երես. ՃԻԸ=ՃԼԶ: Բոլլանդ. յովհաննէս. 'ի Է. հատ. յունվ. եր. 569=581: Մետափր. առ սուրիոսի: Մխիթարեան. ճառ Ա և Է. 'ի վերայ սրբյն բաբեղայ. հատ. Է. եր. 531=577. և այլք:(1)



ՍՈՒՐԲ ՀԱՅՐԱ-պետն Բաբել, որ և Բաբեղաս, էր պատրիարգ աթոռոյն Ան-տիոքայ ասորւոց՝ 'ի ժամանակս կռապաշտ թագաւորաց. այս է՝ ըստ ոմանց առ Փիլիպպոս կայսերաւ, և ըստ այլոց՝ յա-ւուրս յաջորդի նորա դեկոսի. այլ ըստ համօրէն վկայաբանից՝ կատարումն սրբյն եղև յաւուրս Նումերիանոսի կայսեր (որ և Նոմերիանոս), 'ի խաղալ հռովմայեցւոց պատերազմաւ ընդ-դէմ պարսից՝ փոքր մի յառաջ քան զթագա-ւորելն տրդատայ:

Քանզի դէպ լինէր Նումերիանոսի ինքնա-կալի ճանապարհ առնել ընդ քաղաքն Անտիո-քացւոց. և մտեալ անդ 'ի մեհեան կռոց իւ-րոց՝ զոհս դիւաց պղծոց մատուցանէր. ա-

պա

դա կատարեցաւ և 'ի տունն այ մտանել, թե֊
րեւս սուտ պատճառանօք պատուելոյ և զե֊
կեղեցի քրիստոնէից և զանձ նց, այլ 'ի սրտէ
խափանել կամելով կամ անարգել զպաշտօն
սրբութե : Իսկ երկու երանելին բաբեղաս՝
քաջ հովիւ հօտին քի, իբրև իրազեկ լի֊
նէր չարութե կամաց թագաւորին, ձայն
ամբարձեալ 'ի մէջ եկեղեցւոյն՝ ասէր ցհա֊
ւատացեալսն, որք շփոթեալ խորհէին ցըր֊
ուիլ և փախչիլ. համատատուն եղերուք որ֊
դեակք, և յաղօթս կացէք հաւատովք. մտ
զի զայլ ապականիչ կամի մտանել 'ի տուն
այ. եթէ ոչ ած ժամանեսցէ մեզ, կործանե֊
լոց եմք ամենեքեան. այլ ինքն տր յամօթ
արասցէ զչարն գործակցօք իւրովք : Իսկ նոյ
լուեալ զայն՝ կացին մնացին 'ի ներքս. իսկ
հայրապետն օժնատեալ առաջի դրրացն՝ կայր
'ի պահպանութե հօտին և տանն այ :
Իսկ ահա մինչ այս մինչ այն՝ եկեալ Նումե֊
րիանոս՝ ձեռնամուխ լինէր մտանել յեկե֊
ղեցին. իսկ ծառայն այ բաբեղաս յառաջ
մատուցեալ՝ արգել զնա իշխանաբար. ոչ մր֊
տանես աստ այսր պիղծ և շաղախեալ ձե֊
ռօք : Ո՜ այս ասաց արգելօք մտ զոհելոյ նր
վաղագոյն դից զարշելեաց. բայց ոսկեբե֊
րան ասայ և զայլ պատճառ, զի սպանեալ էր
նր յանհիրաւի զորքայորդին՝ որ 'ի պատան֊
դի կայր առ նմա :
Նումերիանոս թէպէտև խորհէր բռնի մտա֊
նել, այլ զարմացեալ ընդ համարձակութիւն
սան այ՝ յետս կասեցաւ. միանգամայն ամչե֊
ա.

ածեալ և 'ի համբաւոյ առն լաւութեան , զի գովելի էր և յայս հեթանոսաց՝ որ 'ի քաղաքին , վն իմաստութե և առաքինութե իւրոյ , լուա լինէր 'ի ժամուն . և հրաման տըճեալ պահել զնա ամ զգուշութբ՝ ինքն յարքունիսն դառնայր լի ցասմամբ ։

Իսկ 'ի վաղիւն անդր նստեալ յատեան՝ հրամայեաց ածել զնա առաջի ամենեցուն . և ասէ ցնա ահագին բարկութբ . ով թշուառական այր , զի՞նչ զմտաւ ածեալ , և զի՞նչ առաջի աչաց եդեալ՝ իշխեցեր արգելուլ զիս . և ոչ գիտես՝ եթէ թագաւոր ինքնակալ խօսի ընդ քեզ . գիտեն մծքն՝ զի ոչ փախչիս 'ի ձեռաց իմոց . և տեսցուք՝ թէ օգնէ՞ քեզ մծն քո ։ Իսկ պնին սրբն բարեղաս , և ասէ . ես այր տառապեալ էի , այլ մծ կամեցաւ առնել զիս հովիւ ժողովրդեան իւրոյ . վսյ տեսեալ իմ՝ եթէ գայլ ապականիչ մտանէ 'ի հօտն քսի , փութացայ ոչ առնել անտես . զի մի կորուսից 'ի հօտէն , և համար տաց այ ։

Դոմետիանոս ասէ . և արդ գա՞յլ համարեցար զիս , և ո՛չ թագաւոր ։ Բարեղաս ասաց . ճշ ներելոյն այ ես դու թագաւոր , և ըստ մերոց մեղացն . գոնեա այնպէս խրատեալ դարձցուք առ նա . այլ ես զքեզ ճշմարիտ թագաւոր ոչ ասեմ . վն զի ոչ գիտես զայն՝ որ ետ քեզ զպատի՛ւ զայդ . զի եթէ գիտէիր , նմ միայն երկիր պագանէիր , և զնա միայն պաշտէիր , և ոչ զարարածս նր . արդ այսպիսի գործովք բարկացուցանես զարա-

րիչն

բիչն քո, որ եած զքեզ 'ի չգոյութէ 'ի գոյ, և ես քեզ պատիւ՝ զի փառաւորեսցես զնա ։ Ասեմ քեզ իրս, զոր ամենեքեան գիտեն. եթէ ոք 'ի քոց պաշտօնէիցդ փախուցեալ երթայր 'ի քէն առ այլազգի թագաւոր, ո՞չ ցասնուիր արդեօք. այդպէս ա՛ծ զմտաւ և վ՜ն ա՜յ, որ արարիչն է երկնի և երկրի, և վրէժխնդիր լինի նախանձու փառաց իւրոց. քանզի և ի՜էլ յորժամ դառնացոյց զա՜ծ, ասաց ցնա մարգարէիւ՜ն. դուք նախանձեցուցիք զիս չա՜ծովք, և ես նախանձեցուցից ըզձեզ չազգաւ, և ազգաւ անմտաւ զայրացուցից զձեզ ։ Արդ և դու եթէ բարկացուսցես զա՜ծ, և նա վաղվաղակի հանէ 'ի քէն զթագաւորութի՜դ քո, և տայ այլում, որում ոչ կամիս. զի գիտասցես՝ եթէ բարւոք է զա՜ծ խոստովանել, և ո՛չ զարարածս նը՜ր ա՜ծացուցանել և երկիրպագանել նը՜ց. զի գրեալ է, տ՜ն ա՜յ քում երկիր պագցես, և զնա միայն պաշտեսցես ։ (Եւ կատարեցաւ բան ս՜բյն. զի նումերիանոս ոչ յերկարեաց 'ի թագաւորութե՜ան աւելի քան զտարի մի՝ մեռաւ չարաչար. այլ մեք 'ի կարգ վկայաբանութեանս դարձցուք ) ։

Ասէ նումերիանոս. աղձատիս թշնամանելովդ զա՜ծս մեր և զմեզ. և արդ ո՞չ թուի՛ի քեզ՝ եթէ մեծին արամազդայ են գործ արարածք ա՜մ. մինթէ այնպէ՞ս ինչ թուիցի քեզ՝ եթէ արարա՞ծ իցեն և դիքն. և կա՞մ թէ ո՞չ տեսանես զազդմունս նը՜ց և զյառաջադիմութի՛ զոր առնեն ։ Այլ ես կամիմ գիտել, թէ

զո՞ր

զո՞ր ազգ տաէ գիրն ձեր՝ անմիտ . զձեզ .
եթէ զայլը . վա՜յ եթէ սասացես , ախորժե-
լով լուծայց քեզ ։

Այս պինի քաքեղաս . ած զմարդն անմեղ
հաստատեաց և իմաստուն . իսկ սատանայ
անկեալ յերկնից 'ի վերուստ , և փոխեալ
'ի փառացն՝ զոր ունէր յա՜յ , և նախանձեալ
ը ազգի մարդկան՝ յափշտակեաց զնախնիսն
մեր 'ի փառաւորութէն խորհրդոց իւրոց չա-
րաց . և այնպէս առհասարակ եղաք անմիտք ։
Իսկ միածին որդին այ ճշմարիտն ած երկայ-
նամիտ եղեալ 'ի վր այնչափ կուապաշտու-
թեց , և տեսեր 'ի կորստեան զստեղծուածն
իւր՝ երևեցաւ մեզ , և ողորմեալ կորզեաց
զմեզ 'ի մոլորութէն . և այսուհետև ոչ ես
եմք անմիտ . վասն զի գիտեմք զած , մանա-
ւանդ զի գիտացաք 'ի նմանէ . քանզի չե՛ք ոք
յառաջադէմ , բայց միայն ած ։ Ա.ԱԼ այդ
ամ անուանք գիցդ՝ զոր ասէքդ , առասպելք
են և իմաստք քանաստեղծաց . անուամբ
միայն անուանեն ածք , և ոչ գոյութբ . քանզի
զի թէ չէր արուեստ առ մարդկան ( 'ի շի-
նել զկուռս ) , ածս ոչ ունէիք ։ Արդ եթէ
կամիս լսել ինձ , և փախուցեալ 'ի մոլորու-
թէդ՝ լինիս իմաստուն , ընդունիր և զքեզ
ած . ապա եթէ ոչ կամիս , կաս և մնաս 'ի
դժնին անմտութե ։

Սոմերիանոս ասաց . ձեր գիրքն առասպելք
են , այլ մերն՝ խորհուրդք , որ զճշմարտութե
օրինակ յինքեանս ունին . զի ածեղէն զօրու-
թէն իմն է 'ի նոսա . վա՜յ հրամայեմ քեզ արդ-

զա

զոհել դիցն . և զայդ գիտեա՛, զի եթէ ոչ լուիցես, անպատիժ ոչ լինիցիս . քանզի ոչ լաւ ես դու քան զայնոսիկ՝ որ յառաջ քան զքեզ յայդ եկին . զի թողին զքրիստոնէութի՛ւն և ընկալան զդենս մեր, և այնպէս պատուէ՛ր մեծի արժանի եղեն : Պխ̃նի ետ սր̃ եպսն Բաբեղաս, և ասէ . որք պարտեցանն, իբրև զմարդիկ պատրեցան . այլ զիս ո՛չ կարես խաբել անցաւոր բարեաց խոստմամբք, և ո՛չ՝ եթէ ստութ̃բ և զարքայութի՛ւն երկնից ինձ խոստանաս՝ յորմէ օտարացուցանել զիս կամիս . որում դու ոչ ես արժանի, վ՛ն զի ոչ կամիս . այլ զտանջանս ունիս ժառանգել . քանզի պահանջի՛ 'ի քէն ա̃ծ զհոգիս մարդկան՝ զոր դու կորուսեր :

Նոմերիանոս ասէ . զի՞նչ է ա̃ծ . զդոյն անուանդ իսկ ասա՛ ինձ, զի՞նչ մեկնի : Ասէ Բաբեղաս . զա̃յ մեծութիւն ոչ գիտես, թէև թեւօք թուանիցիս . զա̃յ անուանն մի՛ խնդրեր, զի ո՛չ գտանես . քանզի ա̃մ անուն անուանեալ՝ 'ի լաւէ իմեքէ անուանի . զի ոմն կոչիցէ, և ոմն լուիցէ . այլ ա̃մ որ կոչիցէ զա̃ծ՝ ա̃ծ, ո՛չ զանուն ա̃յ, այլ՝ զփառսն ա̃յ ասէ . արդ մի՛ ինչ խնդրեր՝ որ ա̃յ չէ՜ . ա̃ծ Ճանապարհ իմաստութե̃ է, առանց հասանելոյ է . ա̃ծ է՝ որ զա̃մ ինչ արար վ՛ն մարդկան : Նոմերիանոս ասէ . զի՞նչ է մարդ : Բաբեղաս ասէ . ընդունիչ կենաց, ըմբռնիչ եղելոց ( Ճանաչմամբ և վայելմամբ ) :

Յայնժամ ասէ Նոմերիանոս . երդուեալ յա̃ծն, զի 'ի կարգի ետուր զպատասխանիդ, և

կարի

կարի իմաստութեամբ, ոչ համբաւէր զքէն. այլ մի միայն պակաս է 'ի քէն, գիտութիւն մտացն. քանզի յայնժամ կարէիր բարի այր լինել: Ո՛չ այս սուտ գովութիւն հրապուրանաց բռնաւորին խստիւ արար պինդ սիրտ հայրապետն, և ասէ. անզգամ և ամպարիշտ և ամբարհաւաճ բռնաւոր, պատիւդ՝ որ 'ի քէն է, այդ թշնամանք են ինձ, և գովութիւդ քո անարգանք են ինձ. քանզի ես լի եմ այ բարութեամբ, վասն զի գիտեմ զմիտն իմ, և քարանց երկիր ոչ պագանեմ: Ասէ թագաւորն. գիտեմ, զի անուր արկանեմ 'ի պարանոց քո, զի ոչ համբերեմ քեզ, և կապանս յոտս իբրև չար ծառայի և թշնամանազի զտէր իւր: Նահատակն ասաց. ես զած ունիմ ինձ իշխան և թագաւոր. տեարս և եղբարս՝ զերկիւղածս այ. արդ հաւատամ դու յած, և համբուրեմ զոտս քո. ապա թէ ոչ՝ պատիւ է ինձ այդ, զոր դուդ համարիս թշնամանս ասնել. այլև զայս չարչարանս կրելով՝ չև ևս եմ պիտանի ծառայ այ, այլ անպիտան. բայց 'ի նոյն իսկ 'ի չարչարանս պարծիմ. քանզի երանելիք են՝ որ վասն այ չարչարին:

Յայնժամ ասէ թագաւորն ցդիկտորինոս դուքսն. կամիմ զնահատակս զսոսա անզգամաց քե խրատել, և անուր 'ի պարանոց նոցա հրամայեմ արկանել, նայնպէս և կապանս 'ի յոտսն 'ի թշնամանս նոցա. քանզի ոչ եթէ սակաւ ինչ թշնամանեաց զմեզ: Դիկտորինոս դուքսն ասաց. քոյով քաջութեամբդ երդուեալ եմ իմ,

Դ

իմ, 'ի փառաց հետէ կամեցայ հասուցանել 'ի լսելիս ահաւորութեդ քո վ՟ս առնդ այդո-րիկ ամպարշտի, զի անօրէն և նոր օրէնս իմն ուսուցանէ, և բազում աշխատութ՟ի հասու-ցանէ մեզ՝ ստանդանելով հրամանաց մերոց հանդերձ ազգաւն ։ Նումերիանոս ասէ․ դու առ ժամս զհրամայեալսդ քեզ արա անհա-ւան բաբեղասայ ․ և ես յետ այսորիկ առ սա-կաւ սակաւ զազգդ զայդ ջնջեմ ։

Իսկ դուքսն եարկ զանուր 'ի պարանոց սր՟բյն և յատան, և հրամայեաց արտաքս հանել, զի տեսիլ լիցի ամենեցուն ։ Յայնժամ եկել երից 'ի մանկանց աշակերտելոց առ ոտս սր՟բյն՝ փարէին զկապանօքն նր՟, և ոչ կամէին մեկնիլ 'ի նմանէ՝ ցանկանալով չարչարակից լինել նմա ․ իսկ դուքսն հեռացոյց զն՟ս ։ Իսկ հայ-րապետն ուրախ լեալ ը՟ կապանօ՝ որ վասն անուանն ք՟ի, ասէր ցդուքսն ․ գոհանամ զա՟յ իմոյ՝ որ յայս պատիւ հասոյց զիս խոս-տովանութե՟ս 'ի նա ․ այլ քեզ և թագաւորին քում շնորհ ոչ ունիմ ։

Իբրև լուաւ Նումերիանոս՝ եթէ աշակերտել մանկունս ունի բաբեղաս, ասէ ․ կոչեցէք զբաբեղաս վ՟ք տղայոց, որք անզգամութ՟ վարին յա՟մ ժամ ։ Իսկ իբրև եկն և հարցաւ 'ի թագաւորէն վ՟ս այնր բանի, պ՟խնի ետ սր՟բ հայրապետն ․ վ՟ք եմ տղայոց, որ յիրս իրս տղայականս մտօք, և յիրս իրս իմաստու-թե՟ պատահեն այնոցիկ՝ որ թիւրել կամին զճշմարտութիւնն ․ այլ անզգամաց և նմա-նեացդ ձեզ չեմ վ՟ք ։ Ասէ թ՟գրն ․ երդ-

նել զմայրն նորա. իսկ զմանկունսն պահել, և
՚ի ներքս տանել առանձին զԲաբեղաս. և
ասէ ցնա. վարդապետ անզգամաց և ուսու-
ցիչ տղայոց, փորձեցի, և ահա զոր պար-
ծէիր ՚ի ձեռն մանկտւոյն՝ սուտ գտար. քան-
զի եկեալ զառաջեաւ մանկտոյն՝ խոստացան
զոհել աստուածոցն: Բաբեղաս ասաց. չար ստե-
ցեր ՚ի քո գլուխդ, քանզի որդի ես հօրն քո
սատանայի, որ հանապազ ստէ. և ոչ այլազգ
կարէք յաղթել ումեք՝ ոչ դու և ոչ հայրն քո
սատանայ, եթէ ոչ ստէք: Նումերիանոս ասէ.
երդուեալ իմ յԱսկղեպիոս, զի քամահեմ
զբանս քո և զթշնամանս, և ոչ վաղվաղակի
կործանեմ զքեզ ՚ի կենաց. այլ տանջանօք սա-
կաւ սակաւ խոշտանգեմ զքեզ, եթէ ոչ հա-
ւանեսցես և զոհեսցես. յետ այնր և զգլուխդ
ես հրամայեմ հատանել:

Բաբեղաս ասէ. արդ և ծաղու արժանի էք
բանիւքդ այդոքիւք. այլ ես պատրաստ եմ
՚ի խաչ և ՚ի մահ վասն անուանն Քրիստոսի իմոյ:
Նումերիանոս ասէ. ազձատես, յորո՞ւմ եմք
ծաղու արժանի: Բաբեղաս ասէ. եթէ լուի-
ցեն այլ աստուածքն քո, եթէ զԱսկղեպիոս միայն
անուանեցեր՝ զբժշկութեան կարծեցեալ չաստուածն,
ցասնուլ ունին քեզ, թող թէ տալ կեանս և
առողջութիւն. արդարև ես ամաչեմ ՚ի վերայ
անզգամութեանդ ձերոյ. զի ոչ կարէք իմանալ,
այլ երկիր պագանէք՝ որում և ոչ մանկունք
հաւանեցան պագանել երկիր: Իսկ Նումե-
րիանոս ասէ. և արդ եթէ լուեալ Քրիստոսին քո՝
բարկացի, զի աստուած միայն անուանես՝ իբրև
հայր

Հայր նորա, և զնա ոչ յիշես, զի՞նչ առնես : Պատասխանի ետ սուրբն և ասէ. աՀա չես և ոչ իսկ լսելոյ արժանի զգիտութիւն քրիստոնէից. բայց սակայն մեր ամենեքին՝ որ շուրջս կան, ասեմ, զի մեք քո անօրէնութեամբդ և դոքա զրկեցին 'ի գիտութենէ : Յորժամ քրիստո-նեայք զորդի անուանեն, խոստովանին նո-ւին և զՀայր. և յորժամ զՀայր անուանեն, խոստովանին և զորդի. քանզի ոչ են որոշեալ յիրերաց, ոչ Հայր յորդւոյ, և ոչ որդի 'ի Հօրէ : Նա չէ Համեմատութիւն այ ընդ դևս, այս է ընդ դիս քո՝ որոց երկիր պագանես. զի դժնեալ է, զի՞նչ Հաղորդութիւն է լուսոյ ընդ խաւարի :

Յայնժամ վայրի Հրաման ետ բռնաւորն, Հա-նել 'ի կախաղան տանջանաց զբարեղա. ընդ նմին և զերիս մանկունսն. և նոքա միաբան յաղօթս կային և գոՀանային զայ. և Հայ-րապետն ոչ դադարէր 'ի յանդիմանելոյ զմո-լորութիւն Հեթանոսաց : Ապա Հրամայեաց Նումերիանոս խստագոյնս տանջել զբարեղա պէսպէս Հարուածովք 'ի վր փայտին, ուր կայր պրկեալ Հանդերձ կապանօք յոտսն և անդրով 'ի պարանոցին. և վն զի էին ծանր և սուր շղթայքն՝ մտանէին զնա զեր-կար ժամս : Իսկ ոմանք յայնցանէ՝ որ շուրջն կային, Հեթանոսք և ուրացողք և թերաՀաւատք, ոչ բարեկամի կարեկից զանձինս ցուցեալ՝ ասէին ընդ դաՀճաց. խոստովանեա՛ զոՀել, և ազատեսցիս 'ի տանջանացդ : Յայն-ժամ սաստեաց նոցա առաքինին նաՀատակն, և



ասէ.

տայ. ոչ այնչափ զգամ ՚ի վերայ անզգամից՝ որ յաւիտենասուտի, որչափ ՚ի վերայ ձեր՝ որ դմայդ հաւանիք. որ և կորոյս է իւր զկեանս ձեր և զհոգիս. և ես՝ որ դմա չհաւանիմ, ձեզ հաւանիմ արդեօք. քաւ լիցի. տանջանքս այս կեանք են ինձ. քանզի նա՝ որոյ վասն չարչարիմս, թեթևացուցանէ ինձ, և ոչ զգամ ամենևին:

Այլ իբրև ևս քան զևս սաստկացուցանէին զտանջանս սրբոյն հրամանաւ թագաւորին, մանկունքն երանելիք ձայն բարձեալ ասէին. բանաւոր և ամպարիշտ՝ հեծեալ այդպէս զտէրն մեր և զբարեկամ հօրն առանց վնասու իրիք տանջես. վասն զի զամենեցուն նորին պաշտէ, և ահա զայդ անձնեալ՝ պատուի արժանի է մահուանդ, և ոչ տանջանաց. երդնումք ՚ի դորա փրկութիւն, զի ոչ փախչիս ՚ի ձեռաց քոյ, այլ հրոյ գեհենոյն մատնելոց ես:

Ընդ այս ցասուցեալ նաւմերիանոս՝ հրամայեաց և զնոյն չարաչար տանջել. իսկ սրբոյ մանկունքն իբրև միով բերանով ասացին. ոչ ամաչես ով ամենաբարտ՝ ՚ի մանկանց յաղթահարիլ առաջի այդչափ բազմութեանդ. վասն զի դու առաւել տանջիս քան զմեզ. երդուեալ յայն՝ որ է հուպս կարող է հատուցանել քեզ, զի ոչ զգամք տանջանաց քոց:

Ապա հրամայեաց թագաւորն իջուցանել զբաբեղաս, և տանել թաքուցանել ՚ի տուն, զի առանձինն հարցցէ միաբանագամ զմանկունսն. և սկսաւ ասել նոցա. որդեակք հաւանեցարուք ինձ, և բազում պատիւս ընդու-

հեմ

հեմ ձեզ, զոր ոչ վդպն ձեր, և ոչ այլ ոք կարէ ձեզ շնորհել ։ Իսկ նք իբրև միով ձայնիւ ասացին ․ խորամանկ և նենգաւոր՝ մի՛ խորհիր մեզ մահ հոգւոյ՝ խոստմամբք մարմնաւորաց ․ քզի ած շնորհք քո լի՛ են պատուով գեհենին ․ զի յորմէ հետէ եա մեզ վդպն մեր զտրունական կնիքն, որով առաք զառհաւատչեայ երկնից արքայութեն, կատարեալք եղաք, և ընկեցաք 'ի մէնջ զխորհուրդս չարութե և ունայնութե ․ և հաստատուն կերակրոյն հաղորդելք՝ պատրաստ եմք 'ի մեռանել վասն անուանն քի ։ Դու կարծեիր՝ թէ յորժամ մեկուսացուցանես 'ի մէնջ զվդպն մեր, յաղթես մեզ ․ յորդին այ երդուեալ, որ կարօղ է հովուին մերոյ օգնել՝ ուր և է, և զմեզ ապրեցուցանել՝ 'ի պիղծ ձեռաց քոց, և զժամանակս զայս չարչարանաց փոխել ընդ հուպս յանվախճան ուրախութիս, զի ոչ ուրասցուք և ոչ յամօթ արասցուք զհովիւն մեր, որ աղօթս առնէ վս հօտին իւրոյ ։ Իսկ երանելին բաբեղաս լսէր զայն ամ 'ի տանն՝ ուր արգելեալն էր, և փառս վերառաքէր այ ։

Հրաման ետ անդրէն նումերիանոս, և ասէ ․ ածցե՛ զառաջեաւ բաբեղաս ․ և իբրև եկն, ասէ ցնա ․ մանկունքս այս որդի՞ք են քո ։ Բաբեղաս ասաց ․ ըստ այ արդարև որդիք իմ են ․ այլ ես վս այն իմոյ՝ յորմէ հետէ ծնայ, զկին ոչ գիտեմ ։ Նումերիանոս ասէ ․ և զիարդ նման են քեզ ամենևին ․ (զայս ասէր [illegible]ցնելով զնա՝ ոչ թէ յամառս կացեն իբրև զնա) ։

զնա ) ։ Իսկ նմին արար պխնի · աղօթիւք
խնդրեմ , զի ամենևին նմանեսցին ինձ՝ բաց
'ի մեղացն իմոց ։

Րաւէ թագաւորն մեղմ բանիւք հրապուրա-
նաց · ասացի քեզ զերծանիլ 'ի տանջանացդ ,
որով հանդերձեալ ես և ևս չարչարիլ՝ և ու-
հաւանեցար ինձ · աղաչեմ զքեզ՝ հանձել
զմիտս քո վ̃ս առաջին տանջանացն · միացն
յայժմ հետէ շա՛տ համարեա զտանջանսդ ,
և հաւանեցո՛ զմանկունսդ · զի մի՛ այդպէս
տղայք ելցեն 'ի քաղցր կենացս ։ Իսկ նո-
հայրապետն զայրացեալ 'ի յոգի իւր՝ ասէ ·
ո՛վ անմիտ քան զա̃մ մարդ , և ամպարիշտ
բռնաւոր , 'ի մեզ պարապեցեր՝ թողել զհոգ
պատերազմաց և զմտածութի̃ , թէ ո՛րպէս
արժան է պատահել թշնամեաց · հաւատամ
ա̃յ՝ թէ ոչ փանեալ հերքեցար 'ի մէնջ , և
'ի թշնամեաց քոց նոյնպէս յաղթահարես-
ցիս · այլ զխոստմունս քո տո՛ւր որդւոց քոց ,
և զպարգևս քո կա՛լ քեզէն · քանզի և ո՛չ
այնչափ կարես շնորհել մեզ , որչափ փու-
թաս զրկել զմեզ ։

Յայնժամ ապա բարկացեալ թագաւորն՝
ետ նմա վճիռ մահու և երից մանկանցն ը̃
նմա ։ Իսկ երանելոյն բարեզասայ առեալ
զվճիռ գլխատմանն՝ բազում խնդութ̃ և օր-
հնով՝ հանդերձ երեք մանկամբքն , յելանել
անդ յերեսաց ատենին՝ երդմնեցոյց զմօտա-
կայսն , և ասէ · երդմնեցուցանեմ զձեզ
ա̃ծն մերով որ զա̃մ ինչ տեսանէ , ընդ ա-
նուրս՝ հանդերձ կապանօքս որ յոտս , դի՛ք
զիս

[illegible] զկնի կատարման իմոյ 'ի վկայութ բռ-
նաւորին՝ որ յաւիտենից կապանօք տանջիլ
ունի յանվախճան հուրն ։

Եւ մինչդեռ ելանէր ընդ դուռնն՝ սաղմոսէր այսպէս ․ փրկեցեր զմեզ 'ի թշնամեաց մերոց , և զատելիս մեր յամօթ արարեր ․ ընդ նմա սաղմոսէին և մանկունքն ։ Եւ իբրև հասին 'ի տեղի կատարմանն , աղաչեաց երանելին բարեզարդ զդահիճսն՝ որ հանդերձեալ էին գլխատել զնոսա , զի նախ զմանկունսն սպանցեն , և ապա զնա ։ Եւ կացուցեալ զԳ մանկունսն յաջմէ և յահեկէ իւրմէ՝ ասաց ․ ահաւասիկ ես և մանկունք իմ , զոր ետ ինձ ած ։ Եւ իբրև ետես զնն վախճանեալ , ասէ ․ օրհնեալ էր ած քրիստոնէից , որ արարեր ըստ բազում ողորմութեան քում ․ զի արդարև 'ի բերանոյ մանկանց տղայոց հաստատեցեր զօրհնութիւն քո ։ Եւ ապա գլխատեցաւ և ինքն սբ հայրապետն , և թաղեցաւ հանդերձ երեք մանկամբքն և շղթայիւքն , յամի տն 283 ․ 'ի չորրորդ աւուր ամսեանն սեպտեմբերի ․ զոր այլք համարին 'ի իդ յանուարի յաջորդ տարւոյն ։

Զհետ [illegible] աւանականաց՝ յաւուրս քրիստոնէից [illegible] երկու եկեղեցիք կամ վկայարանք շինեցան [illegible] յանուն սբյն Բաբելայ հայրապետի ․ մին 'ի տեղւոջ կատարման արտաքոյ դրան քաղաքին՝ յարուճարձանս նորա , յայնկոյս որոնտայ գետոյն՝ յորոյ վն շինեալ է քաղաքն ․ և այս տաճար կայր յառաջ և քան զաւուրս յուլիանոսի , զորմէ զարմա-
նայ

նայ ոսկեբերան՝ զի ոչ քանդեաց զայն . մինչ և եւագրիոս պատմիչ առդնէ զայն խնայու- թ͞ի՝ իբրև նոր շինութ͞ի 'ի յուլիանոսէ : Իսկ միւսն փոքր մի հեռագոյն 'ի հանգրուանս անտիոքայ 'ի տեղին դափնէ կոչեցեալ . զոր շինեաց գաղղոս կեսար եղբայրն յուլիանո- սի , ո՛պ յիշատակեն բազումք ͞ը ճոխագոյն աւանդութ͞ե ոսկեբերանի . այլ ճշգագոյն պատմէ սոզոմենոս ( Գիրք . Ե . Գլ . 18 . ) ըստ

օրինակիս ͞ը այսմիկ :

Դափնէ , այն է դաբնի՝ է երևելի հանգըր- ուան անտիոքայ , ուր ծառաստունկ բազում և մարգագետին ծաղկաւէտ , տեղի զբօսա- լի և ջրարբի , անուն առեալ ͞ը հեթանոսա- կան առասպելաց 'ի դաբնիդայ դստերէն լա- տոնայ գետոյն արկադիոյ . ո՛պ թէ 'ի փախ- չել նորա յերեսաց ապողոնի՝ 'ի համանուն ծառ դաբնոյ իցէ փոխեալ , և ապողոն 'ի թաւ ոստոց անտի ծառոյն պսակ կազմեալ իւր մշտադալար՝ պատուհեալ իցէ զտեղին . ուստի առ հեթանոսս անուանի այն դափ- նեան էր տեղի խենեշ արանց և կանանց , և ոչ ոք 'ի զգաստից կարէր երթալ անդր . զոյր անդ և երևելի արձան դափնեանն ա- պողոնի , և մեհեան մեծակառոյց , զոր ա- սեն շինեալ սելևկիոսի հօրն անտիոքոսի՝ որ

զանտիոք շինեաց :

Արդ՝ 'ի ժամանակին , յորում գաղղոս եղ- բայրն յուլիանոսի կարգեալ կեսար 'ի կոս- տանդեայ կայսերէ յամի ͞տն 351 , եկաց զբաղում ժամանակս յանտիոք , քրիստո-

նեայ գօլով և պաշտօնատէր առ նահատակս
քոյ, կամեցաւ սրբել զայն տեղի 'ի հեթա-
նոսական պղծութեց և 'ի գայթակղութեց :
Այդ 'ի տեղւոջ մեհենին եկեղեցի շինեալ
անդ 'ի դամբնէ՝ ետ փոխադրել անդր զտա-
պան սրբոյն բաբելայ, և երից մանկանցն ընդ
նմա (որպէս մեկն գրէ Թէոդորետոս) : Եւ
յայնմ հետէ դադարեցին դիւախօսութիւնք՝
որք լինէին յանտառի անդ . զի ոչ միայն զոհք
դիւաց խափանեցան, այլև զօրութի սրբոյն
բաբելայ պապանձեցոյց զդևս : Այն իրի
և 'ի նստիլ յուլիանոսի ուրացողի յաթոռ
կայսերութե՝ թէպէտև յաճախել յաճա-
խեցին անդ վերստին զոհք կռոց և դիւական
պաշտամունք, այլ սակայն պատգամախօ-
սութիւնք դիւաց լռեալ կային իսպառ :
Ընդ այս զայրացեալ՝ միանգամայն և զար-
մացեալ ուրացողին, եկն անձամբ 'ի տեղին,
և խոստանայր դէց կռոց և դիւաց՝ առնել
զնոմ հաճոյս նոցա, միայն թէ յայտնեսցեն,
զի՞նչ է՝ զի ոչ տան պատգամ յայնպիսի ակա-
նաւոր տեղւոջ : Եւ դեւն պատ'ի պատ բա-
նիւք խոստովան եղև 'ի լուր յուլիանոսի,
թէ ոչ կարեմ խօսել՝ ցորչափ մերձ կան աստ
դիակունք մեռելոց . մեռեալքն ասէ ոչ թո-
ղուն զիս բարբառել . հա՛պա խորտակեա՛
դու զտապանս, հա՛ն զոսկերս, 'ի բա՛ց տար
զդիակունս : Յայնժամ քաջ 'ի վե՛ր եհաս ու-
րացողն կայսրն, թէ վ՛ն մարմնոյ սրբ վկային
բաբելայ և որոց ընդ նմա՝ է բանն . վ՛յ հրա-
մայեաց [illegible] 'ի բաց տանել զտա-
պան

պանն նր 'ի տեղւոջէն . և նշ ժողովեալ բաղ-
մունք` հանդիսապէս բարձին զնոր տապանն ,
և տարան անդրէն յառաջին տաճար սբյն`
որ 'ի տեղւոջ վկայութեան նր : Այլ յետ սա-
կաւուց հուր անկաւ յերկնից , և այրեաց
զմեհեանն ապողոնի` որ նորոգեալն էր 'ի
դափնէս , և ծախեաց զարձանն նր :

Իսկ մարմինն սբյ հայրապետին բաբեղայ յետ
դարուց անցանելոյ ասի փոխադրեալ յա-
րեւմուտս 'ի գաղղիա անդրալպեան . և
անտի 'ի քաղաքն կրեմոնայ 'ի մայր եկեղե-
ցին` յամի տն 1460 . որ և ծածկեալ առ ժա-
մանակ մի` վերստին յայտնեցաւ յամի 1543 :
Այլ վերջին փոխադրութիւն նորա 'ի նոր տա-
պան 'ի նմին եկեղեցւոջ ը̃ այլ նշխարս սբց`
եղև մեծահանդէս փառօք յամի 1614 . ը̃ս
յիշատակագրաց առ բոլլանդեայ :

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ Բ.

(1) [illegible]անդիտացեալ է յոյժ սբ հայրապետս անտիո-քայ` բաբելաս վկայ` երեւք մանկամբք աշակերտօք ի-րովք , առ վկայաբանս և առ հարս և առ այլ մատե-նագիրս . և ը̃ միաբան ենթադրութեան ամենեցուն էր փոքր մի յառաջ քան զհալածանս գիոկղետիանոսի . այլ թէ երբ , բազում հակառակութիւն կայ : Եթէ ոչ հայ-եցայց յորոշումն ժամանակի` զոր հարևանցի դնէ եւ-սեբիոս առ դեկոսիւ , և ոչ յանորոշութիւն բանից ոսկե-բերանին` որ 'ի ձօնութեան ճառից ոչ յետ զանուն թա-գաւորի , միաբան են յիւրեանս վկայագիրք առ հառա-բեալ` ոյք յաւուրս նումերիանոսի դնեն : Գլուխ վկայա-գրաց` ի բրև հնագոյն և լաւագոյն օրինակագիր ճառն-ցի ճառընտիրն մեր Ա . զորոյ զհետ գնացաք անխա-տոր .

„ ընդ պատմել ։ Իսկ որ միանգամ յարգիս եղև և ա‑
„ մերովս հաստակօք, զայդ եւ նորահաստակս ձեզ պատ‑
„ մեցից ․ զոր յետ վախճանին ասեմ, զոր յետ Թաղ‑
„ ման վկային, որ ինչ անցք անցին յարուծարձանի անդ ։
„ Եւ դիտեմ, զի ծիծաղեցին զխոստմամբք մերովք
„ հեթանոսք, եթէ յետ վախճանի և Թաղման Թադէ‑
„ ցելոյն և յաջիւն դարձելոյն՝ խոստանամք ասել զքա‑
„ ջալաուԹեան ։ Բայց ոչ յայն սակս լռեցուք, այլ՝
„ և վն սորին այսորիկ մանաւանդ գոգցուք ․ ոչ զի
„ զհրաշալիդ զայդ ցուցեալ ճշմարտութբ՝ զծաղրն 'ի
„ նց շրջեցուք գլուխ ։ Ուր աստ տեսանես, զի Թէև
անհամաձայն երևեցի ըստ իմիք ըստ եւսեբեան բանից ա‑
սացուածն ոսկեբերանի, ոչ է անհամաձայն կարծելի ․
Իսկ ըստ վկայաբանութեա ոչ միայն ծաղ 'ի ծաղէ միա‑
ձայնի այս քաղուած ոսկեբերանի, այլև պատկէ զնոյն ․
երանի Թէ յիշէր և զանուն Թադաւորին դեկոս կամ
նումերիանոս, որով կամ զվկայագիրն ուղղագրեաք կամ
զեւսեբիոս, և այնպէս վճարեալ լինէր ամ ինչ ։
Ակնարկեսցուք և յերկրորդ ճառն ոսկեբերանի, որ
և կոչի գիրք կամ բան յերանելին բաբեղաս՝ ըդէմ յու‑
լիանոսի և հելլենաց ․ * Եղև ( ասէ ) Թադաւոր առ
„ նախնեօք մերովք ․ (ուր 'ի լուսանցս յունական հին ձե‑
ռագրի միոյ եդեալ է՝ նումերիանոս ․ այլ մեք զոսկե‑
բերանն կամիմք լսել, և ոչ զգրիչն ) ․ և Թէ այլով մա‑
„ սամբ որպիսի ոք էր այս Թադաւոր, ոչ ունիմ ասել ․
„ այլ զգործն՝ յոր յանդգնեցաւ, լուեալ՝ գիտասջիք
„ և վն այլ ժպրհութե ընԹացիցն ։ Եւ զի՞նչ գործն
„ էր ․ հաճոյ Թուեցաւ ազգի ումեմն պատերազմողաց
„ ըստ Թադաւորին ըստ այնմիկ, լուծանել զպատերազմն ․․․
„ դաշինս կռեցին, առին երդմունս և ետուն ․ հաւանե‑
„ ցուցին և զԹադաւորն իւրեանց՝ տալ զորդին իւր,
„ որ էր մանուկ փոքր, 'ի պատանդ հաստատուն հաշ‑
„ տութե ․․․ և ետ զորդին Թադաւորն, որպս ինքն
„ կարծէր՝ բարեկամաց և նիզակակցաց, բայց ոչ կա‑
„ տարածն եցոյց․ անագորոյն գազանի քան զմ ։ Քան‑
„ զի առեալ օրինօք բարեկամուէ և ուխտի զմանուկն
„ զայն Թշքրական ․ ․ ․ ․ մատնէ 'ի ձեռս դահճի ․ ․ ․ և
„ զմարդասպանութիւն զայն կատարէ զանդութն քան
„ զամ սպանութի ․ զի այս վատԹարագոյն է քան զոր‑
„ դեսպանութեն ապիրատութի ․ ․ ․ ․ ․ Այլ ես զնա
„ յանդգնագոյն այլ ասացից ․ զի զանօրէն ձեռսն զայն
„ այնպիսեաւ շաղախեալ արեամբ, և զնոր եղերանս

թեան յաղօթսէ։ Զամանէ աւանդի բան, թէ քրիստո_ նեայ գոլով, յաւուր վերջնոյ ամենազատկէր տօնութեան զատկի՝ հաղորդ լինել կամեցաւ եկեղեցւոյն աղօթից բազմութեան. և ոչ թողացուցեալ յառաջնորդէ ժամա_ նակին մտանել յառաջ. մինչ չև իցէ խոստովանեալ. և միաբանեալ զանձն ընդ այնոսիկ. որք 'ի յանցաւո_ րութեանց սահմանի էին. և յապաշխարութեան կարգի կային. սոյն թէ ոչ անմարթ գոլ այգմ լինել երբէք. եթէ ոչ զայդ առնիցէ. վն բազում վնասուց առ 'ի նմանէ գործեցելոց։ Եւ հնազանդեալ յօժարութեամբ սուր, զանկեղծ և զպարկեշտ առ ած երկիւղ ասա_ ջադրութեան գործովք ցուցեալ ||։

Այսպէսն ընդ խմուռս կարծեաց չիք և ոչ մի հանդիսաւո_ րութիւն այսր գիպռնաձոյ ընդ վկայաբանութեանս և ընդ բանից ոսկեբերանի, այլ՝ գեղեցիկ նմանութեան ընդ անցից մեծին Թէոդոսի առ ամբրոսիոսիւ, որ եղեւ զկնի աւուրց եւ_ սեբիոսի. վասն եթէ սոյոց իցէ եւսեբեան աւանդութիւն՝ զոր 'ի լերոյ պատմէ սանաց հաստատութեան, և սաանց յիշելոյ զանուն առաջնորդի և քաղաքի, որպէս անձն սոյոց է անցքն Թէոդոսի և ամբրոսիոսի, ասելի է՝ թէ գտեալ է և այլ ոք եւս քաղ հանգոյն ամբրոսիոսի և բաբեղայ. և այլ ոք Թագաւոր երկիւղած և հնա_ զանդ հանգոյն Թէոդոսի։ Բայց ոչ ինչ ունի յարմա_ րութիւն բանս ընդ Թագաւորին՝ որ սպան զբաբեղաս վն այգպիսի համարձակութեան. և ոյն զի կատապաշտ էր Թա_ գաւորն՝ ոչ միայն ըստ վկայաբանից, այլև ըստ եւսեբի՝ 'ի խօսելն զնահատակութեն բաբեղայ առ դեկոսիւ։ Եւ զնոյն խմանամք մեք նաև յընթացս բանից ոսկեբերա_ նին. զի լծեպէտև հռետորական ձեւով ձեւացուցանէ զԹագաւորին իբրև ակզեակ հանդարտեին զհամարձակութեան, կա իբրև ոչխար աւտոսացեալ, կա ոչ աշակերտ անլուր բանից բաբեղայ, բայց սակաւին կեթանոս ընթացքէ զնա, և որքեամբք ցուցանէ հանգոյն վկայաբանութեան գոյլ լինել յափշտակիչ. միով բանիւ, գէմ ընդդէմ եւ_ սեբեան բանից սաէ ոսկեբերանն, թէ ոչ հնազանդե_ ցաւ առաջնորդին, և անամօթաբար սպան զյանդիմա_ նիչ իւր զօրն բաբեղաս։

Եւ սակայն ասասնեամք, զի աղեքսանդրեան ժամագրու_ թեան իբրև 'ի վկայութեն ղեռնդի անտիոքացւոյ ժամանա_ կին եւսեբի՝ զգիպռնաձոյն փիլիպպոսի համարի լինել առ բաբեղաւ հայրապետաւն. և 'ի նոյն հակամարտեցեն կարծիս յոլովք ընդ եւրիկիոսի վարդապետի՝ որ է քննիչ

Եւ_



# ՎԱՐՔ ԵՒ ՎԱՏԱՐՈՒՄՆ

## Սրբոյն Երեմիայ Մարգարէի.

Հ. Յ. Ա. ճաշու. I: Ի ուղղափառս, ամս. Հարք եւ մեկնիչք սբ գրոց. Ⅲ: (1)



ՅՈՐՈՎԱՅՆԷ ԸՆՏրեալ եւ սրբեալ հաւատարիմ ծառայ տն բազմավաստակ, սբ մարգարէն Երեմիաս (որ Թարգմանի բարձրութիւն տյ,) էր յերկրէն բենիամենի յանաթովթ քաղաքէ քահանայից, որ էին երեք մղոնաւ հեռի յեմէ, 'ի քահանայական ազգէ 'ի ցեղէն ղեւեայ, որդի քեղկեայ քահանայի. որ էր բազմաց կարծի լինել քեղկիաս մեծ քահանայապետ՝ գտիչ գրոցն օրինաց յաւուրս յովսիայ արքայի յուդայ (2): Այս եղեւ երեմիա նշանաւոր անբիծ եւ անարատ վարուք անմեղութն, եւ կուսակրօն մաքրութբ, եւ քահանայական պատուով, եւ մարգարէական տեսութբ՝ առաքելութբ հանդերձ, նա անընդմիջական առաքմամբ յայ 'ի քարոզութն 'ի մանկութէ, եւ բազմաչարչար խոստովանութբ եւ վկայական հանդիսիւ:

Ըստ հասարակ իմացուածոյ վրդպաց՝ կոչեցաւ

ցաւ 'ի մարգարէութիւն իւրն 'ի հնգետասան ամաց հասակի, և մարգարեացաւ նախ 'ի հրէաստան զամս խ̃, սկսեալ յերեքտասաներորդ ամէ յովսիայ արքայի և յաւուրս չորից յաջորդաց նր̃, մինչև ցառումն երմի 'ի քաղդէացւոց : Սա վս̃ բանին ա̃յ, զոր աներկիւղ և անաչառ խօսէր ը̃ մեծի և ը̃ փոքու, բազմաց տարաւ հալածանաց և վշտաց . և չորից և հնգից բանտարգել եղև երանելին յայլևոյլ արգելանս և 'ի գուբ մահապարտաց . ը̃ որում գրեալ է 'ի գիրս նորա . ուր 'Նախ' ( Է. 20. ) ասի . * Եհար Պասքուր ( որդի եմմերեայ քահանայ՝ հրամանատար և իշխան տաճարին ) զերեմիա մարգարէ, և արգել զնա 'ի վերնադրանն՝ որ է 'ի դրանն բենիամենի, 'ի վերնատանն՝ որ էր 'ի տան տն̃ : Երկրորդ՝ ( ԼԷ. 2 ) ասի . * Եւ յայնմ ժամ զօր արքային բաբելացւոց պաշարեաց զեր̃մ . և երեմիա մարգարէն կայր 'ի կալանս 'ի սրահի բանտին՝ որ էր յապարանս թագաւորին յուդայ . յոր արգել զնա արքայ սեդեկիա, և ասէ . ը̃էր դու մարգարէանաս և ասես, այսպէս ասէ տր̃ ||, և որ 'ի կարգին : Երրորդ՝ ( ԼԷ. 14 ) ասի : * Եւ զայրացան իշխանքն 'ի վր̃ երեմիայի . գան հարին, և եդուն զնա 'ի տուն բանտի՝ յապարանս յովնաթանու դպրապետի . . . եկն երեմիա 'ի տուն գբոյն յայերխնովթն . և նստաւ անդ երեմիա զաւուրս բազումս : Առաքեաց արքայ սեդեկիա, և կոչեաց զնա . . . ( և յետ հարցանելոյ առանձինն զպատգամ տն̃՝

դրէլ) Հրամանն՝ եա արքայ սեդեկիա, և ար-
կին զնա 'ի տուն բանտի. և տային նմա
աւուրն նկանակ մի հաց 'ի հացատառացն.
մինչև հատաւ ամենեքին հաց 'ի քաղաքէն.
և նստաւ երեմիա 'ի սրահի բանտին: Յոր-
րորդ (ԼԷ. 6.) ասի. * Աղ առին զերեմիա,
և ընկեցին զնա 'ի գուբն մելքեայ որդւոյ
թագաւորին (կամ որդւոյ ամելքեայ), որ
էր 'ի սրահի բանտին. և իջուցին զերեմիա
պարանօք 'ի գուբն. և 'ի գբի անդ ջուր ոչ
էր, այլ լոկ տիղմ. և կայր երեմիա 'ի տիղմն.
մինչև եհան զնա անտի աբդիմելէք եթէովպ-
ացի՝ այր ներքինի՝ երկիւղած յԱյ. և անդ
միւսանգամ նստաւ երեմիա 'ի սրահի բան-
տին մինչև յառնուլն եՏմի 'ի քաղդեացւոց:
Յայնժամ կալան քաղդեացիք և զերեմիա, և
կապեցին ձեռակապօք. այլ Ած էարկ գութ
'ի միտս նաբուգոդոնոսորայ արքային բաբե-
լացւոց, և ետ արձակել զերեմիա, և եթող
զնա յԵԷմ. ուր ողբս ցաւագինս առնէր նա
'ի վՏ բեկման ժողովրդեան իւրոյ՝ վասն ոչ
լսելոյ նց ձայնի Այն թագաւորաւն և իշխա-
նօքն հանդերձ: Այլ եղև 'ի փախչել մնա-
ցորդաց տրանց յուդայ յերեսաց քաղդեաց-
ւոց յեգիպտոս՝ բռնի ընդ իւրեանս առեալ
տարան և զերեմիա: Անդ 'ի տափնաս, այն
է քաղաք թագաւորութե եգիպտացւոց 'ի հնումն
(ուր առնէր մովսէս նշանս յանդիման փա-
րաւոնի), մարգարէացաւ երեմիա այլ եւս
ամս չորս. մինչև լցան չորս ամք գերութե
յուդայ. և 'ի յաջորդ ամի ըստ գուշակելոյ
երե.

Երեմիայ՝ տապալաւ Վափրէս փառաւորն արքայ
եգիպտացւոց ՚ի Նաբուգոդոնոսորայ :
Սորա՝ թաղեալ զՀրեշտական աւանդ մնացա-
ծին, թէ Երեմիա կենդանւոյն փոխեալ իցէ,
և դեռ կայցէ կենդանի՝ գալ ընդ Եղիայի,
Հաստատութիւն աւանդեն որք Հարք, թէ յոր
ժամ քանի՛ մի սպառնայր մարգարէն Երե-
միա Հարուածս Եբրայեցւոց և Եգիպտաց-
ւոց, յարեան ՚ի վ(երայ) նորա արք անօրէնք, և
քարկոծ արարին զնա. և այնպէս վկայական
մահուամբ կատարեցաւ ՚ի Տափնաս ՚ի Հա-
սակի իւր եօթնասուն ամաց. և անդ թաղե-
ցաւ ՚ի Տափնաս Եգիպտոսի (3). Սա է գրե-
լոյ վկայաբանից՝ ՚ի պատուէր էր յոյժ գերեզ-
մանն նորա առ Եգիպտացիս. զի գիտէին զնա
այր մարգարէ, և աղօթիւք նորա ՚ի կենդա-
նեաց նորին զերծեալ էին ՚ի կոկորդիլոսաց
մարդակերաց, և ՚ի վիշապ օձից. և յետ մա-
Հու նորա զխնկէին ՚ի գերեզման նորա վասն գազանե-
լոյ զխոշխուէն՝ առաւել ՚ի Հարուածոյ թու-
նաւոր կենդանեաց. մինչ զի և յետ բարձ-
մանն ոսկերաց մարգարէին, ՚ի տապանէ նորա
աճիւնքն Հող Հաւատացեալք ՚ի փարատումն
պէսպէս ցաւոց : Նաև մարմինն բարձեալ էր
՚ի վաղ ժամանակաց. քանզի լուեալ ասեն
Աղեքսանդրի Մակեդոնացւոյ զքաջանշելիս՝
որ լինէին ՚ի գերեզմանէ մարգարէին այս ՚ի
Տափնաս, ետ Հանել զոսկերս նորա և տանել
յիւրակերտն քաղաք յԱղեքսանդրիա Եգիպ-
տացւոց, և կառոյց շիրիմ փառաւոր ՚ի վ(երայ)
նորա ՚ի տեղին կոչեցեալ տետրապիւղոն :

այս

այս է չորեքդուռն. ուր և բազում նշանաւ լինէր նեղելոցն 'ի պէսպէս ախտից յաւուրս

քրիստոնէութեան։

՝Նոյնպէս և յէջմ 'ի տեղի գբոյն` յոր արկա Երեմիա, շինեալ աստ դշխոյն հեղինէ ուխտատեղի մեծաշէն. կան և այլ տեղիք ուխտի 'ի պաղեստին` 'ի յիշատակ նր. մարգարէից. թող զեկեղեցիս և զմարգարէարանս կմ զվկայարանս կառուցեալս յանուն նց 'ի զանազան տեղիս. յորս երևելի է և հոյակապ

տաճար սբյն Երեմիայ` որ 'ի վենետիկ։

Յիշատակաց արժանի է այն` որ գրի 'ի գիրս մակաբայեցւոց. (Բ. Մակ. ԺԵ. 13), թէ յուդա մակաբէ` յորժամ ետես 'ի տեսլեան զոնիա քահանայապետ զայրն աքանչելի, զի նմին այսպս զարձեալ տեսանէր զայլ ոմն հրաշազարդ, զծերութի փառաւորութե աքանչելի և կարի վայելուչ իմն, որ շուրջ զնովաբակ առեալ ունէր։ Նյւ 'ի զարմանալ մակաբեայ` թէ ո՞ իցէ նա, ասէ ոնիա. եղբայրասէրս այս սա է` որ բազում աղօթս մատուցանէ այ` Երեմիա մարգարէ այ։ Նա ձգէր զաջ ձեռն իւր Երեմիա, և տայր ձեռն 'ի ձեռն յուդա սուսեր մի ոսկեհանդերձ. և զի տալն ասէր այսպէս. առ զսուսերդ զայդ նր. պարգև 'ի այ, զի զավաւ սատակեսցես զթշնամիս իմ։ Ուստի ունիմք իմանալ, եթէ նբք` որչափ յաստիս եղբայրասէր գտան ըս ամենսիրութե, ևս առաւել յետ ելից յաստեացս ջանան օգնել մեզ բարեխօսութբ իւրեանց. և եթէ 'ի հնումն

այս



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

Սբյն Ստեփաննոսի ուլնեցւոյ , և
որոց ընդ նմա :

Հ. օգոստ. 18 : Ճառընտ. Բ. երես.
ճծէ = յծէ : (1)



ՆԱԽԱՎԿԱՅԻՆ ՄԵծի անուանակիր , և նորին քաջ նահատակութեան հանդիսի հետևօղ, երանելիս Ստեփաննոս՝ Թորգոմական տանն պսակ , էր յաշխարհէ փոքուն հայոց , յաւուրս հալածանաց յուլիանոսի ուրացողի . և եղև ծագումն սբյն ընդ այսմ օրինակի : Հայրն նորա ղազարոս անուն՝ պատուականն և մեծազգի 'ի տանէ նախարարաց կողմանցն միջագետաց , 'ի մանկութէ բնակեալ յանտիոք քաղաք ասորւոց՝ 'ի ծածուկ ունէր զհաւատսն որ 'ի քն . զի տակաւին յետ դարձին կոստանդիանոսի և որդւոյ կային 'ի տեղիս տեղիս հեթանոսք հալածիչք քրիստոնէից 'ի հրամանէ յուլիանոսի ամպարշտի և արբանեկաց նր . և ղազարոս փախստեալ գնայր յահէ անօրինացն . մինչև յետ ժամանակաց եկեալ դադարէր 'ի կոկիսոն քաղաքի՝

քի՝ որ 'ի փոքրըն հայս :

Այս կացեալ անդ ամս երեք բարիոք կրօնիւք՝ ամուսնացաւ յԾի. և հանդիպեցաւ ամուսին նմա նոյնպէս քրիստոնեայ և երկիւղած յայ՝ մարիամ անուն. և կեցին երկոքեանն 'ի միասին բարի վարուք յաւուրս խաղաղութե եկեղեցւոյ. թող զհալածանս արիանոսաց առ կոստանդ կայսերաւ : Այս էր մարիամ ամուլ, և ոչ լինէր նմա որդեակ. և խնդրեցին յայ ուխտիւք՝ պարգևել նմա որդի. և 'ի ձեռն պահոց և աղօթից ետ նոցա տր ած զխնդրուածս նց, և ծնաւ նմա արու զաւակ :

Որպէս եղև ութ աւուր, տարան զնա 'ի տաճար սբ ածածնի. ուր մկրտեաց զնա քահանայն այ կոստանդին, և անուանեաց ստեփաննոս. զոր և 'ի տղայ տիոց դաստիարակեալ է ձեռամբ իւրով՝ սնուցանէր կարգօք ածպաշտութե և յուսումն գրոց յեօթն ամաց հետէ. և հանապազօր մատուցանէր պատուական քահանայն զսբ պատարագն յեկեղեցւոջ անդ, և յամ կերակէր հաղորդեցուցանէր է այլ քրիստոնեայս և զմանուկն կենսարար խորհրդոյ մարմնոյ և արեանն ածն : Այս այնպէս աճէր և զօրանայր մանուկն ստեփաննոս լի իմաստուե 'ի շնորհաց սբ հոգւոյն : Այս իբրև եղև ամաց հնգետասանից, գտաւ ածմիտ կիրթ յածային պատուիրանս և յածաշունչ գիրս. և լի հոգւով յորդորէր զհաւատացեալս յածպաշտութե բանիւ և օրինակաւ :

Այս

Այս եղև հիմնադրանալ քահանայից կաստանե-
գեայ, և կոչեցեալ առ ինքն զծառայն այ
զստեփաննոս՝ ասէ ցնա. որդեակ պինդ կաց
'ի հաւատսդ, և քաջալերեա՛ զսակաւ հօտդ,
զի մի՛ երկմտիցեն 'ի հաւատոց. մինչև տա-
ցէ ած տեսուչ ժողովրդեան: Զայս ասէր
վն խռովութե ժամանակին. զի այն ինչ
հասեալ էր համբաւ թագաւորելոյ անօրի-
նին յուլիանոսի, և կռապաշտք անզգրէն գը-
լուխ ամբարձեալ՝ ապաւինային ընդէմ զքրիս-
տոնէութի: Այս եղեալ կոստանդեա՛յ ըզ-
ձեռս իւր 'ի վր ստեփաննոսի՝ ասէ մարգա-
րէական հոգւով. տր ընդ քեզ ծառա՛յ այ, և
ընդ հաւատացեալ հօտդ. և դու որդեակ
յետ ոչ բազում աւուրց սակաւ արամբք
փախստեայ լինիցիս 'ի լեռնակողմն, և կաց-
ցես անդ աւուրս սակաւ. և մատնեսցեն
զձեզ անօրինաց. և ապա նահատակեսջիք.
իսկ տեղի նահատակութե ձերոյ եղիցի 'ի
բժշկութի ամ ախտաժետաց. և անուն քո
եղիցի ընդ ամ երեսս երկրի. և քև փառաւո-
րեսցի ած: Զայս ասացեալ՝ աւանդեաց
զոգին. յայնժամ ժողովեալ քրիստոնէից
բանիւ՛ սբյն ստեփաննոսի՝ ամփոփեցին ըզ-
մարմին սբյ քահանայից, և եդին բազում
պատուով 'ի գերեզմանի. և եղև յոյժ ուրա-
խութի ժողովրդոցն ընդ մեռանելն քահանայից
յայնպիսի աւուրս նեղութե. բայց մխիթա-
րէին 'ի ծառայէն այ ստեփաննոսէ, և հա-
տատէին նովաւ 'ի հաւատս, և զօրանային
'ի տր:

Իսկ իբրև անցին աւուրք սակաւք, եղև հա-
լածումն քրիստոնէից, և բորբոքեցաւ հըր-
դեհ դառնութեան մինչև 'ի սահմանս կոկի-
սոն քաղաքի, 'ի ժամանակին՝ յորում եկն
յուլիանոս 'ի կեսարիա, որոյ հայրապետ
էր մեծն բարսեղ. և սպառնացեալ նմա և
ժողովրդոցն՝ ասէր անօրէնն. յորժամ դար-
ձայց 'ի պարսից, և ոչ հաւանիք կամաց ի-
մոց, չարաչար մահուամբ մեռանիցիք. և
առաքեաց արս հանդերձ մեծամեծօք և ստ-
ափկանօք՝ խնդրել զքրիստոնեայս քաղաքի
քաղաքի. զի եթէ հաւանեսցին ասէ, և ու-
րասցին զխաչեալն, և երկիրպագանիցեն
ածոց, պատուոյ արժանի արարէք. ապա
թէ ոչ՝ 'ի սուր սուսերի մաշեսջիք. և ինքն
իւրով բանակաւն չու արար գնաց 'ի պարս ։
Յայնժամ մի ոմն յոստիկանաց անօրէն նորա՝
սոկրատէս բդեաշխ կոչեցեալ, եկն եհաս 'ի
կոկիսոն քաղաք հայոց, մրմռալով իբրև զա-
ռիւծ ընդդէմ քրիստոնէից, և սևադէմ կեր-
պարանս դառնութեան յանձին բերելով, մին-
չև անկաւ ահ և դողումն 'ի սիրտս ամենեցուն ։
Եւ մինչդեռ էր նր ձեռն մխեալ յոք, խմա-
ցեալ սրբոյն ստեփաննոսի զերկմտութիւն քրիս-
տոնէից, և զդողումն յահէ դատաւորին,
ժողովեաց զնոսա 'ի մի վայր զտուն հօր իւրոյ և զայլս
'ի ծածկագոյնս. և ասէ ցնոս. Եղբարք մի թե-
րահաւատեսջիք, և մի զանգիտեսջիք յա-
նօրէն դատաւորէն. զի ած փրկեսցէ զմեզ
'ի ձեռաց նր, որ փրկեաց զառաջին նահա-
տակսն 'ի ձեռաց անօրինաց, և պսակեաց

անմահական փառօք։ Որդ՝ յարուցեր Եղ-
բարք ելցուք 'ի քաղաքէս, և ընթացցուք
զհետ քոյ, որպէս և զիւրդ առաջնորդես-
ցէ մեզ. զի ամենեքեան ոչ էք կատարեալք.
քանզի են 'ի ձեզ՝ որ դեռ տղայք են. զօ-
ցէ պատիր բանիւք հաւանեցուսցէ զոք 'ի
ձէնջ պաշտօնեայ չարին, առ յառաջինսն ե-
զև, և փարատեցէ զհօտս ընտիր։ Այլ նա
տեսն. Տր է մեր յոյս, և մեք յուսամք երկի-
ցուք. որդ՝ կամք Տն մերոյ եղիցի։

Զայնժամ առեալ զնա ստեփաննոսի՝ եմուտ
'ի մօտակայ տաճար սբ Ածածնին. և համ-
բարձեալ զձեռն իւր յերկինս՝ ասէ. Տէր մեր
և Աճ, դու ես արարիչ մեր. զքեզ ծանեաք
'ի ձեռն սբց առաքելոցն, զի ոչ գոյ այլ Աճ
բաց 'ի քէն. որպէս փրկեցեր զառաջին ընտ-
րեալսն 'ի ձեռաց անօրինացն, և կացուցեր
զնա աշտարակ ամուր և պարիսպ հաւատա-
ցելոց քոց. զի և մեք հայելով 'ի նա հաստա-
տեսցուք 'ի քեզ ուղիղ հաւատով. բարեխօ-
սութբ Ածածնիս, և աղօթիւք սբյ քահա-
նայիս կոստանդեայ՝ ընկալ զաղաչանս ծա-
ռայից քոց՝ որք հաւատով կարդան առ քեզ,
և առաջնորդեա մեզ 'ի ձեռն հրշտկի քո. զի
տարեալ հաստատեսցէ զմեզ 'ի նաւահանգիստն,
և պահեսցէ զմեզ աներկիւղ 'ի հակառակա-
մարտ և յանօրէն դատաւորէն. զի մի օգտել
'ի բանսարկուէն՝ ելցուք արտաքս 'ի հօտէ-
քումմէ Տր Աճ մեր. ողորմեաց մեզ Տր, ո-
ղորմեաց մեզ, և փրկեա զմեզ. զի զքեզ
փառաւորեսցուք երրորդութիւն սբ՝ յաւի-
տեանս

տեանս յաւիտենից . ամէն :

Յայնժամ առեալ սբն այ զարսն՝ որք միաբանեցան ընդ նմա՝ անձինս երեսուն և երեք, յորս էին ընտանիք և բարեկամք, և եօթն կուսանք, հանդերձ հարբ իւրով ղազարոսիւ որ էր հիմանդադրին, ել 'ի գիշերի և գնաց ընդ նոսա 'ի քաղաքէն : Եւ իբրև հեռացան ոչ փոքր 'ի քաղաքէ անտի կոկիսոնի, եհաս վախճան ածասէր առն ղազարոսի հօրն ստեփաննոսի . որ աւանդեաց զհոգին 'ի ձեռս ածն՝ ամաց յիսուն և հնգից ( կմ վաթսուն և հնգից ), բարիոք ծերացեալ ամբիծ վարուք և ճշմարիտ առաքինութբ : Իսկ ծառայքն այ ամփոփեցին զմարմին երանելւոյն ղազարու փութանակի 'ի գիշերի . և աղօթս արարեալ 'ի վերայ գերեզմանին՝ կնքեցին նշանաւ սբյ խաչին զյարկ բնակութե նր : Եւ ինքեանք կանխեցին 'ի լեառնն կոյս . և հասին 'ի քարանձաւ մի, զոր սբյն բարսղի հայրապետի հաստատեալ էր եկեղեցի հրամանաւ ածն՝ 'ի տեսանելն 'ի կեսարիոյ սիւն հրոյ ցոլացեալ 'ի վր լերինն այնորիկ . և խաչ օրհնեալ նշանագրով անուան իւրոյ՝ նուիրեալ էր զեկեղեցին յանուն սբ ածածնի . ուր և աղբիւր ջրոյ քաղցրահամ բղխէր :

Արդ՝ իբրև հասին ծառայքն այ առաջնորդութբ հրեշտակի 'ի տեղին յայն, ուրախ եղեն և գոհացան զայ . և անդադար զցայգ և զցերեկ սաղմոսիւք և օրհնութբ և երգօք հոգևորօք օրհնէին զած՝ պարագլուխ ունելով զսբն ստեփաննոս, և զովանային 'ի

շնորհաց մխիթարիչ սրբ հոգւոյն. և էր կերակուր նց կանկար լերինն. և այնպէս կացին անդ անկասկած իբրև ամիսս երիս։

Իսկ մի ոմն 'ի սրբց անտի սամնաս անուն՝ եղեալ յաւուր միում 'ի պատճառս սպասաւորութէ եղբարցն՝ ժողովել 'ի կանկարոյն յետոյ կուսէ լերինն 'ի հովտաձև տափարակի. և ահա ետես զնա հովիւ մի՝ որ արածէր ըզհօտն 'ի լերինն. և ընթացեալ առ նա փաղփաղակի՝ եհարց և ասէ, ուստի՞ ես այր դու, և զի՞ գործես աստ։ Եւ սրբն սամնաս ասէ. ծառայ այ եմ ես, և եկեալ եմ տանել ըզբանջարս զայս 'ի պէտս եղբարց իմոց և քերց։ Ասէ ցնա հովիւն. և ուր բնակեալ էք, և զի՞նչ պաշտէք։ Ասէ սրբն. յայրի անդ յայնկոյս բնակեմք, փախուցեալք 'ի սոկրատէ դատաւորէն. և պաշտեմք զխաչելեալն ած։ Յայնժամ բարկութբ լցեալ հովուին՝ կամեցաւ ըմբռնել զնա և սպանանել. իսկ սրբն սամնաս փախստեայ եղեալ՝ փութանակի գնաց առ ընկերսն, և պատմեաց նց՝ որ ինչ անցք անցին ը նա. և սրբքն յաղօթս ապաւինեցան, և յանձն արարին զանձինս 'ի ձեռս այ։

Իսկ հովիւն չար տարեալ զհօտսն յընկերս իւր՝ ինքն փութապէս գնայ առ դատաւորն, և մատնեաց զնս՝ թէ կան 'ի յայրին դէմ յանդիման մեզ արքն այնոքիկ, որք փախեան 'ի քաղաքէս։ Իսկ դատաւորն իբրև լուաւ զբանս զայս, ուրախ եղև յոյժ. այլ հրամայեաց կապել զմատնիչն երկաթի կա-

պաս

պանօք ․ ասէ ․ դուցէ արդեօք դու փախու-
ցեր զնմ 'ի քաղաքէս իմմէ , զի այդպէս դիւ-
րաւ գտեր ․ արդ՝ փութանակի տարցես ըզ-
զինուորսդ իմ առ նմ , զի հասուսցեն զնոսա
առ իս ․ ապա թէ ոչ՝ սրով սպանանեմ զքեզ ․
Եւ նա խոստացաւ կատարել յամ սրտէ ըզ-
պատուէր դատաւորին ։

Մինչ չև եկեալ էր սծ , Տրն ստեփաննոս
գուշակելով զլինելոցն՝ եառ ը̄ իւր զերղ-
բարսն զամենեսեան և զկուսանսն եօթա-
նեսին , և մտեալ 'ի տաճար տր̃ Ածածնին՝
որ յայլրի անդ , ծունր եդին միաբան առաջի
տրյ նշանին , և ասեն ․ Օրհնեալ ես Ած
ճշմարիտ , որ արժանի համարեցար զմեզ
նահատակիլ 'ի ձեռաց անօրինայ ․ այո տէր
կարող ես փրկել զմեզ 'ի ձեռաց նոցա ․ այլ
կամիս զօգուտն և զբարին մեր 'ի փառս անու-
ուան քո տրյ ․ իսկ մեք անդէտ գոլով կա-
մաց քոց բարեսիրաց՝ փախեաք եկաք 'ի տե-
ղիս յայս ․ և արդ՝ կամք քո լիցին տր Ած ․
զի պատրաստ եմք 'ի մեռանել վն անուան
քո ․ մի թողուր զմեզ տր զգինս արեան քո ․
և փառաւորեսցուք զամենազօր տրութիւնդ
ամենասուրբ երրորդութեանդ՝ այժմ և յաւի-
տեանս ․ ամէն ։

Եւ իբրև կատարեցին զաղօթսն , ննջեցին
սակաւիկ մի 'ի տրտմութենէն ․ յայնժամ առա-
քեաց տր զհրեշտակ իւր առ նա ․ որ և ասէ
ցնա ․ մի երկնչիք , զի առաքեաց զիս տր յօգ-
նականութիւն ձեզ ․ և ոչ կարասցէ յաղթել
ձեզ թշնամին ․ այլ դուք զօրացեալ տր և 'ի

խան 'ի վ՟ր զօրաց իւրոց ։ Ս՟ն ստեփաննոս ասէ ․ պարգեւք քո ը՟ն քեզ լիցին 'ի կորուստ ․ զի ո՛չ կամիմք հաւանել կամաց քոց ․ զոր ինչ կամիս առնել՝ արա՛ վաղվաղակի ․ զի պատրաստ եմք 'ի կապանս եւ 'ի բանտ եւ 'ի մահ վ՟ն անուան ա՟ն մերոյ յ՟ի ք՟ի ։ Պռատաւորն ասէ ․ կախարդութ՟եդ քո հաւանեցուցեալ ես զարսդ զայդոսիկ՝ որ շրջին ը՟ն քեզ ․ արդ ես խորտակեցից զզօրութի կախարդութեդ քո ։ Զայս ասաց , եւ անդէն հրամայեաց կապել զն՟ա ձեռս 'ի յետս , եւ հարկանել արջառաջլօք զորովայնս ն՟ց , զլանջսն , եւ զթիկունսն ։

Արդ եկեալ զինուորաց՝ մխեցին զձեռս իւրեանց 'ի ս՟ն , եւ կապեցին զարսն ․ իսկ զկուսանսն եւ զմարիամ զմայրն ստեփաննոսի ոչ կապեցին , այլ արկին զն՟ա 'ի բանտ ։ Իսկ զարսն կապեալս տարան 'ի դաշտ մի , եւ սկսան հարկանել 'ի վեց ժամէ աւուրն մինչեւ ցտասն ժամն , փոփոխ դահճօք եւ պահապանս 'ի վ՟ր կարգելով ։ Իսկ ս՟ն ստեփաննոս համբարձեալ զաչս իւր յերկինս հանդերձ ընկերօքն , ասէր զսաղմոսն ․ ո՛ բնակեալ է յօգնութ՟ի բարձրելոյն ․ եւ դարձեալ, ա՟ծ յօգնել մեզ նայեա՛ց , եւ տ՟ր յընկերել մեզ փութա՛ ․ եւ՝ դարձո՛ զներդութիւս մեր 'ի թշնամիս մեր , եւ ճշմարտութ՟բ քով սատակեա՛ զն՟ա ․ զի դու տ՟ր ը՟ն մեզ ես , եւ ոչ յաղթեացէ մեզ թշնամին մեր ։ Իսկ այսպ՟է սաղմոսիւք եւ աղօթիւք կատարէին զժամն տանջանացն ․ եւ ը՟ն երեկս արկին զն՟ա 'ի բանտ ․

եւ

և 'ի գիշերին յայնմիկ զօրացան սրբքն յոյժ : Իսկ սպասաւորք դատաւորին զարմացեալ և զարհուրեալ կային . զի առ ոչինչ համարեցան սրբքն զնեղութիւս տանջանացն . վայ իբրև առաւօտ լինէր, գնացին և պատմեցին դատաւորին, թէ սրբքն այն յոչինչ գրեն զհարուածսն' զոր ածաք 'ի վ՟ր նց : Յայնժամ հրամայեաց դատաւորն բերել զնոսա զառաջիւ, և ասէ ցնոսա . ո՛վ չարք և ա՟ծոցն թշնամիք, մինչև յե՞րբ ներեցից ձեզ . արդ հաւանեցարո՞ւք կամաց իմոց, և զոհեցէք ա՟ծոցն . զի մի՛ չար տանջանօք կորուսից զձեզ : Ասեն սրբքն նմ՟ 'ի միջէ բերանոյ . մեք ա՟ծոց քոց երկիր ո՛չ պագանեմք, և ո՛չ կամաց քոց հաւանիմք . զի ա՟ր է մեր օգնական . ո՛չ երկնչիմք 'ի սպառնալեաց քոց . զի ահա մարմնոց մերոց ունիս իշխանութիւն . զոր ինչ կամիս առնել' արա՛ վաղվաղակի :

Յայնժամ հրամայեաց բռնաւորն կախել զնոսա, և քերել երկաթի քերչօք . և այնչափ քերեցին զնոսա, մինչև կարմրահանդերձ երևել մարմնոց սրբցն յարենէ անտի' որ ոռոգանէր զանդամս նց, և հոսէր յորդութբ յերկիր : Իսկ յայն տանջանս մի ոմն 'ի սրբցն' որ դեռևս տղայ էր հասակաւ, աւանդեաց զհոգին . և անուն նր՟ բագրատունի կմ՟ բագարատ : Զոր տեսեալ սրբյն ստեփաննոսի' մինչդեռ տագնապէր 'ի նեղութենէն, ասէ ցնոսա . Եղբ՟ որդեակ առ ա՟րն մեր . զի տանուտէրն յորժամ ձայն առնէ որդւոց իւրոց, զպատուականս կերակուրն յառաջ մատու-

ցա

բատէս ասէ. Ես հաստուցանեմ զքեզ անթա-
ռամ պսակացն: Այլ հրամայեաց հարկանել
զգլուխս նց զալար ջաղոտիւք. մինչև տասն
այր տկարացան 'ի հարկանելն:
Իսկ ստեփաննոսեանք համբարձեալ զձեռս
իւրեանց յերկինս՝ ասէին. օգնեա՛ մեզ Տր
Ած 'ի նեղութեան մերում. զի վն անուան քո
հարկանեն զգլուխս մեր՝ ծաղր առնելով,
և նախատեն զանուն քո. զի մեք ծառայքս
քո զքեզ ծանեաք 'ի ձեռն նրց առաքելոցն,
զի ոչ գոյ այլ Ած՝ բաց 'ի քէն Տր. արդ՝ մի՛
տար զանուն քո հայհոյել անօրինաց, այլ՝
երևեցո՛ զսքանչելիս քո. զի ծանիցեն զքեզ
միայն Ճշմարիտ Ած, և փառաւորեսցեն
հաւատացեալքս զանուն Տր քո:
Այլ իբրև կատարեցին զաղօթսն, ահա յան-
կարծակի փայլեաց լոյս սաստիկ, մինչև ոչ
երևիլ արեգականն. և էջ առ նոսա Տր, և
ասէ. խաղաղութի ը ձեզ սիրելի՛ք իմ, զի
ը ձեզ եմ յաւիտեան. և առժամայն բժշ-
կեաց զնս. և ինքն վերացաւ յերկինս: Յայն-
ժամ իբրև տեսին նքն զսքանչելիսն, և
զբժշկութի անձանց իւրեանց, ուրախացան
յոյժ և գոհացան զԱյ: Իսկ դատաւորն և
իշխանքն պակուցեալ զարմացան. և որ անդն
կային՝ հարան կուրութբ. և 'ի զեղջ եկեալ
հաւատացին 'ի Տր արք իբրև ՃԾԵ. և ձայն
բարձեալ՝ ասեն. և մեք պաշտեմք զԱծն
ստեփաննոսի: Իսկ նքն ստեփաննոս եղեալ
ձեռս 'ի վր նց՝ բժշկեաց զնս, և հաստա-
տեաց 'ի հաւատս քնի:

Տե-

Տեսեալ զդատաւորին զկոյսն՝ որում ակն ոչ
ունէր, արտասուեցաւ յոյժ. ասէ մի ոմն յիշխա-
նաց նորին. ասացի՝ եթէ փութով սատա-
կեա՛ զդատս, զի մի՛ կախարդութի՛ւն իւրեանց
ապականեսցէ զմեզ. արդ զոր ասացից քեզ՝ արա՛.
հրամայեա՛ ածել զկուսանսն յառաջագոյն
և սպանանել. և ապա զորսդ զայդոսիկ։
Այլ նա հրամայեաց ածել զկուսանսն զառա-
ջեաւ. խօսել սկսաւ ընդ նմա դատաւորն, և
ասէ. խնայեցի ՚ի գեղեցկութիւնդ ձեր, և ոչ
տանջեցի զձեզ իբրև զընկերսն ձեր. արդ
հնազանդեցարո՛ւք կամաց իմոց, և զոհեցէ՛ք
աստուծոյն. և ես երդմամբ ասեմ, զի արարից
զձեզ տիկնայս իշխանաց մերոց, և բազում
պատուո՛վ և մեծամե՛ծ արժանի արարից. ապա
թէ ոչ՝ սրով սպանանեմ զձեզ։
Ասէ մարիամ մայրն ստեփաննոսի. ո՛չ են
նուիրեալ կուսանքդ զանձինս իւրեանց եր-
կրաւոր մեծութեան կի՛ր առն, այլ՝ թագաւո-
րին քրիստոսի. արդ մի պատիր բանիւք զօշաքաղեա-
ցես և [illegible]ջեսցես, զի յուսացեալ եմք
՚ի տէր, և ո՛չ երկնչիմք ՚ի սպառնալեաց քոց.
և աղօթիւք որդեկին մերոյ և ընկերաց նորա՝
մերոց եղբարցն՝ օգնեսցէ մեզ տէր, և փրկես-
ցէ զմեզ ՚ի ձեռաց քոց։ Յայնժամ հրամա-
յեաց դատաւորն դահճաց առնուլ տանել
զնոսա ՚ի բաց, և անդ սպանանել. զի լիցին մար-
մինք նոցա ասէ կերակուր գազանաց երկրի։
Այլ առեալ դահճացն փութանակի ը̅ այգն
ընդ առաւօտն զնոսա կուսանսն եօթանեսին
հանդերձ մարեմաւ՝ տանէին ՚ի տեղի կա-
տար.

հաստատեալ՝ հանդէպ ձորակի միոյ առ ստո-
րոտով լերինն , կայեցին զկուսանսն ձեռս
'ի յերս , և սկսան յանխնայ կոտորել զնո .
և նոյ մի մի յառաջեալ առ դահիճսն 'ի զեն-
նուն՝ կնքեցին զանձինս խաչելոյն նշանաւ
խաչին ։ Իսկ մարտիրոսն կայր յանդիման կու-
սանացն , և քաջալերէր զնոսա՝ ողջակէզ լինել 'ի
հաւատսն , և համբերել առաջին քնի ։ Այլ
երբեմն զգլխատեցին զնոս դահիճքն , հարին առ
մարտիրոսն մերկացուցեալ զոտնս նորա ։
Իսկ նա կայր համբարձեալ զձեռս իւր յերկինս ,
զի ոչ էր կարել , այլ կայր մեկուսի , և աղօ-
թէր ասելով . օրհնեալ ես Թագաւոր ան-
մահ , որ արժանի արարեր զորդեակքս իմ
անարատս ընդունել զպսակ մահու ։ Այլ մինչ-
չև էր կատարեալ աղօթսն , մի ոմն 'ի դահ-
ճացն եհար զսուրն Ը հարուածս նմա . և առժա-
մայն աւանդեաց զհոգին նոյն մարտիրոսն քաջ
խոստովանութեամբ 'ի հայր և յորդի և 'ի սուրբ
հոգին , յամսեանն օգոստոսի՝ որ օր ժե էր ,
յաւուր ուրբաթու 'ի Գ ժամու ։

Այլ կային նոր մարտիրոսքն նոցա անթաղ , այլ և
յառաւօտագոյն փախուցելոյն բարբարոսութեանց ։
Իսկ աղօթասէրն նոր հաւատացելոցն զնշխարս
նոցա բարեպաշտութեամբ թաղեն 'ի գիշերի , և
տարեալ առ նշխարս սրբոյ կուսանացն՝ ամփո-
փեցին 'ի մի վայր . և անդ յայտ արարին զգիրս
հանգստեան նոյն առ ժամանակ մի ։ Իսկ դա-
հիճքն յետ կատարմանն սրբոցն գնացին առ դա-
տաւորն , և պատմեցին զիրսն՝ զոր արարին ։
Յայնժամ դատաւորն հրամայեաց դարձեալ
ածել

ածել առաջի իւր զստեփաննոս և զընկերս նորա, և ասէ ցնոսա. մինչև յե՞րբ անսայցեմ ձեզ. զի կախարդութեամբ ձեր դարձուցէք զժողովուրդս իմ 'ի ձեզ: Սուրբքն ասեն, զառ 'ի յամենապաշտօնէ դառնալ կախարդութենէ համարիս: Սոկրատէս ասէ. հրամանս առեալ եմ 'ի թագաւորացն՝ զերիս և զչորս յանցուցանս թողուլ ձեզ. արդ յայժմ հետէ հաւանեցարուք կամաց իմոց, և զոհեցէք դիցն. զի մի՛ չար ևս տանջանս ածից 'ի վերայ ձեր. և ո՛չ կարասցէ աստուածն ձեր փրկել զձեզ 'ի ձեռաց իմոց: Ասէ սուրբն ստեփաննոս. ո՛վ դատաւոր զի՞նչ խարբալել ջանաս զծառայս աստուծոյ. մեք պատրաստ եմք 'ի տանջանս՝ զոր ինչ ածես 'ի վերայ. 'ի ձեռս քո են մարմինք մեր. արա՛ որ ինչ հաճոյ թուի առաջի քո:

Յայնժամ դատաւորն հրամայեաց պատրաստել հուր սաստիկ, և ընկենուլ զնոսա 'ի ներքս. և զօրականքն արարին զհրամայեալն, և պատրաստեցին զհուրն սաստիկ յոյժ: Եւ յորժամ տանէին զնոսա, նոքա սկսան զձայնապարհայն 'ի բերան առնուլ և երգել զօրհնութիւն երից մանկանցն. և իբրև հասին յեզր հնոցին, յայնժամ զինուորքն կապեցին զնոսա ձեռս 'ի յետս, և արկին 'ի հուրն բորբոքեալ: Եւ նոքա կային 'ի մէջ հնոցին ողջ ԻԵ հասանեալ. զի խորանաձև եղև բոցն 'ի վերայ նոցա: Յայնժամ սուրբն ստեփաննոս սկսաւ ասել ընկերօքն հանդերձ. օրհնեալ ես թագաւոր անմահ, որ ցուցեր զսքանչելիս քո այսօր 'ի միջի մերում. գովեմք զքեզ սքանչելագործ աստուած,

Ս        և

և փառաւորեմք զանուն քո 'ի մէջ հնոցիս ։ Իսկ զինուորքն իբրև տեսին զսքանչելիսն , զարմացան և երկեան երկիւղ մեծ ․ և թողեալ զն̃ոսն 'ի մէջ հնոցին՝ գնացին փութով առ իշխանն իւրեանց , և պատմեցին զոր տեսին ։ Ասէ դատաւորն ․ և դեռևս կենդանի՞ են 'ի մէջ հրոյն ։ Ասեն զինուորքն ․ խնդալով կան և փառաւորեն զա̃ծն իւրեանց ․ Յայնժամ սրտմտեալ դատաւորն իբրև զառիւծ՝ ասէ ցդահիճսն ․ փութով տարջիք ըզկախարդսդ 'ի հեղեղատն , և կոտորեսջիք զն̃ա սրով ․ զի մի՛ երևելով նոր պաշտօնէիցն՝ որ հաւատացին կախարդութե̃ ն̃ց , սպանցեն զիս ․ զի զօրքն իմ ո՛չ են առ իս ։ ( Հասեալ էր 'ի նոյն աւուրս և լուր համբաւոյ սատակման յուլիանոսի 'ի պարսս , և թգ̃րելոյ յովիանոսի բարեպաշտի ․ վ̃յ փութացաւ անօրէն դատաւորն սոկրատ կորուսանել զն̃ոսն ․ զի մի՛ եկեսցէ հրաման արձակելոյ զկապեալ քրիստոնեայս ։ )

Յայնժամ գնացին դահիճքն գաղտ , և հանին զստեփաննոսեանս 'ի հրոյն ողջանդամս ․ զի կարողութ̃ն ա̃յ հրեշտակ ա̃ն պահէր զն̃ա ․ զի ամենևիմբ մազ մի 'ի գլխոյ իւրեանց ո՛չ էր խարշամեալ ։ Իսկ զայն տեսեալ դահճաց՝ զարմացան , և չիշխէին ձեռն մխել 'ի ն̃ս ․ այլ քանզի երկնչէին յոյժ յահէ դատաւորին , փութացուցանէին զմիմեանս տանել 'ի տեղի կատարմանն , և կատարել զհրաման դատաւորին ․ և մի ո̃մն 'ի դահճացն 'ի բաց ընկէց զկապանս ն̃ոցն , զի դիւրաւ ըն-

թացին . և այնպէս երթային զճանապար-
հայն որքն խնդութի մեծաւ . սաղմոսէին և
ասէին , 'ի նեղութեան մերում մեք առ տր
կարդացաք . տր փրկեաց զմեզ 'ի շրթանց
նենգաւորաց և 'ի լեզուաց չարաց : Եւ կա-
տարեալ զկանոնն՝ հասին 'ի տեղի կատար-
մանն , որ 'ի խորագոյն ձորակի միում՝ հան-
դէպ կուսանացն կատարելոց՝ հեռագոյն սա-
կաւիկ մի :

Եւ իբրև փութացուցանէին դահիճքն զորսն
'ի սպանումն , նոցա ծունր կրկնեալ միաբան՝
ասեն . Տր յոյս մեր , ապաւէն և փրկիչ , աստ
ճշմարիտ , փառաւորեմք զմարդասիրութիւ-
քո , զի փրկեցեր զմեզ 'ի ձեռաց դատաւո-
րին , և պսակեցեր զմիաբանութիւս մեր ամ-
բողջ . զի ոչ ոք 'ի միջոյ երկմտեաց 'ի տան-
ջանաց դատաւորին : Արդ՝ տր բարերար ըն-
կալ զաղաչանս ծառայից քոց . տր աստ՝ բա-
րեխօսութի որք աստածնին մօր քո և կուսի ըն-
կալ զհոգիս ծառայից քոց մարդասէր տր .
զի փառաւորեսցի անուն քո : Ձայն եղև
յերկնից , և ասէ . եկայք ծառայքդ իմ , և
հանգերուք ընդ այլ նահատակսն :

Եւ յարձակեալ դահիճքն 'ի վր որցն՝ սկսան
կոտորել . իսկ որքն ստեփանոս կայր մեկու-
սի՝ համբարձեալ զձեռս իւր յերկինս , և ա-
ղօթէր . բայց յորժամ ետես զեղբարսն՝ զի
կոտորէին դահիճքն անխնայ , ասէ . զման-
կանս տիօք յառաջագոյն կոտորեցէք : Իսկ
դահիճքն հակառակեալ ընդ բանս որցն՝ ըզ-
ծերսն յառաջ կոտորեցին . Եւ ծառայն այ
ստե-

Ստեփաննոս քաջալերէր զմի մի 'ի նոցա ալխոդ կալ սակաւիկ մի, և հասանել ընկերաց նաւահանգացն. զի ասէր. ահա երթամք 'ի հանգիստն' զոր պատրաստեաց մեր ծառայից իւրոց : Նա այնպէս կատարեցին զամենեսեան առհասարակ. և կայր ստեփաննոս միայն :

Նա էին անուանք նոցա' որք կատարեցան անդէն բարի հաւատով, այսոքիկ. Մէնքաղարսա, մեղղաւրիոս, քասիլլիոս, սիմէոն կեսարացի. գրիգորիս կամ գրիգորիոս այր լի հաւատով 'ի քաղաքէն կոկիսոնի, և երկու որդիք նորա ամբատ և յովհաննէս. և ծերն պատուական ղեւոնդէոս երեք որդւովքն' դաւթիւ, ստեփաննոսիւ, և թադէոսիւ. և ծեր մի այլ պատուական և մեծազգի յանտիոքէ չորիւք որդւովքն. և այլ եւս ոդիք (եօթնեւտասն կամ ութուտասան), որոց անուանք գրեալ են 'ի դպրութի կենաց. Նակ նրան ստեփաննոս տակաւին կայր յաղօթս ջերմ արտասուօք. խաբե եկին առ նա դահիճքն, ասէ ցնա. զի՞ յապաղէք, զի՞ կայք հիացեալ' անօրէնութ արբեալ. զի՞ կուրացոյց սատանայ զաչս սրտից ձերոց. զի որ թուէր ձեզ' թէ մեռան իսկ, նոքա 'ի մահուանէ 'ի կեանս փոխեցան, և կան 'ի հանգիստն' որ ոչ անցանէ. և եթէ գիտացեալ էր ձեր զմեծամ բարեմասնութե նց, նախանձաւոր լինէիք հեառց նց :

Բանս դահիճքն, որք էին երեսուն և ութ թուով. մեք գիտեմք և ծանեաք յիշխանէն

 մեր-

մերմէ զկատարողութիւն քո և զարանցդ՝ զոր
կորուսաք. արդ կամիս և զմեզ նմանօղ
առնել ձեզ, և տալ սպանանել դատաւո-
րին։ Նաև սբն ասէ. այսպէս է գրեալ, որ
ոչ կամիցի զօրհնութիւն տն, հեռի եղիցի 'ի
նմանէ։ Նաև խնդրեաց 'ի նոցանէ ներել սա-
կաւիկ մի, զի կայցէ դարձեալ յաղօթս. և
անկեալ 'ի վր երեսաց իւրոց՝ ասէ. Ո՛վ ճշ-
մարիտդ Ած, էութիւն անեղ, երրորդութիւն
սբ, զոր օրհնեն զքեզ հրեշտակաց դասք
անլռելի ձայնիւ՛, և քեզ երկրպագանեն
ամ արարածք, խոստովանելով զքեզ, և օրհ-
նելով հանապազ զտրութիւնդ քո, և փառա-
ւորելով զանուն քո տր. որ ետուր պարիսպ
ամրութե հաւատացելոց զնշան սբ խաչի քո.
զի 'ի կնքել մեր նովաւ զանձինս՝ յամօթ լի-
ցի հակառակորդն, և ոչ կարասցէ յաղթել
հաւատացելոց. յոր ապաւինեալ ծառայքս
քո 'ի նշան տր խաչի քո՝ զանձինս մեր 'ի մահ
մատնեցաք վն անուան քո սբյ։

Նաև արդ տր գոհանամք զքէն, որ պահե-
ցեր զմեզ աներկբայ հաւատովք՝ մեռանել
վն անուան քո տր. արդ ընկալ զբանաւոր
պատարագս, զոր մատուցի քեզ, և համա-
րեա՛ 'ի թիւ՛ սրբց քոց. և գրեա՛ զանուն մր 'ի
դպրութն կենաց մարդասէր տր. և զիս ըն-
կա՛լ տր, և խաղաղութբ ժամանեցո՛ 'ի նա-
ւահանգիստն կենաց անվախճանից։ Աղա-
չեմ զսբ զանուն քո երրորդութիւն տր, ըն-
կա՛լ զաղաչանս իմ, և զտեղի նահատակութե
մերոյ արա՛ բժշկութիւն քրիստոնէից. և զնոսա
հա-

հաւատացեալ հօտն օրհնեա՛ , և անձեցն վճռոսա որ լուա որէ ․ զի բազմանայցեն և օրհնեսցեն զանունն քո ․ և զհակառակամարտ դատաւորն սատակեա՛ , ով և զԹագաւորն նր սատակեցեր ՚ի ձեռն մերկիւռեայ վկային՝ աղօթելով սրբոյ հայրապետին բարսղի ․ և կատարեցեր զխնդրուածս նր , և աղբերցուցեր զհաւատացեալս անուանող

քո Տրյ ։

Եւ այժմ դարձեալ խնդրեմք ՚ի քէն մարդասէր Տր ․ օրհնեա՛ զհաւատացեալս անուանող քո սրբյ ․ և զտեղի նահատակութեներոյ սրա՛ բժշկութի ախտաժետաց ․ զի որք գայցեն յանունն մր ․ և աղաչեսցեն ըզքեզ ՚ի տեղիս յայս , օգնեսցես նց ․ և եթէ ախտս ինչ ունիցին կմ ցաւս կմ զինչ և իցէ ցաւոցն , բժշկեսցես զնս և առողջուսցես ․ զի փառաւորեսցեն զանունն Տր քո ․ և զիս աղօթանի՛ արա ըմպել զբաժակ մահու ուրախութբ ․ զի քեզ փառս մատուցից՝ հօր և որդւոյ և Տր հոգւոյդ՝ յաւիտեանս յաւիտենից , ամէն ։

Զայսուամ ձայն եղև յերկնից՝ որ ասէր ․ եկ մկայ քո , և հանգիր յուրախութիս արդարոց ․ և զոր խնդրեցեր ՚ի ինէն՝ եղիցի քեզ ․ եթէ ոք եկեսցէ ՚ի տեղի նահատակութե ձերոյ , զինչ և խնդրեսցէ բարեխօսութբ ձեր , տացի նց ՚ի ինէն ։ Եւ նա ցնծացեալ հոգւովն սրբով ոքանչելի երևէր , և փայլէր լոյս յերեսաց նորա ․ մինչև զահի հարկանել և զարհնձաց , որք կային փոքր մի հեռա-

գոյն. և կուտանկեալք զմիմեամբք ահիւ և դողութեամբ՝ ոչ գիտէին թէ զինչ արասցեն։ Կոչեաց զնոսին, և ասէ. Եկա՛յք կատարեցէք զկամս հօրն ձերոյ սատանայի։ Յայնժամ մի ոմն 'ի դահճացն առաւել անագորոյն իշխեաց յարձակիլ 'ի վ̄ր̄ նոյն 'ի զենումն. և մինչդեռ նա խոնարհեցուցանէր ըզպարանոցն՝ աղօթէր 'ի սրտի իւրում, պատահեաց նմա սուսերամբն, և եհատ զգըլուխ նր̄։ Իսկ անդէն մնաց ձեռն դահճին կարկամեալ հանդերձ սրովն. և այս դիւ՛է պղծոյ հարեալ'ի նա՝ անդէն արիւնախառն լեարդն Է̄ բերանն դարձաւ և սատակեցաւ։ Իսկ այլ ընկերք նր̄ փախստական եղեալ գնացին փութապէս առ իշխանն իւրեանց. պատմեցին՝ զոր արարին, և զստահակումն ընկերին իւրեանց։

Յայնժամ դատաւորն կոչեաց զխորհրդակիցս իւր. և ասէ. արդարև ասեմ ձեզ, զի զկախարդսն զայնոսիկ սպանի, և զերծի զանձն իմ 'ի հոգոց. արդ ուրախացո՛ւք ուրախութի մեծ, ելցուք առ փոքր մի 'ի քաղաքէն. և ապա յետ սակաւ աւուրց դարձեալ եկեսցուք և կորուսցուք զարսն զայնոսիկ՝ որք հաւանեցան կախարդացն։ Իսկ իշխանք նր̄ ասեն ցնա. եկա՛յք վաղիւն զոհս մատուսցուք ա̄ծոցն, որ փրկեցին զմեզ 'ի նոցանէ. և հաճոյ թուեցաւ բանն անօրինին։ Երբև այգն զառաւօտն մերկանայր, կամեցեալ իշխանն յառնել 'ի դահոյից իւրոց, և ահա յանկարծակի անկաւ վէմ մի

մեծ

մեծ 'ի վ̄ր նր , և սատակեաց զնա , ոչ դի-
տելով ուստի՞ անկաւ վէմն . և զօրք նորա
հարեալ 'ի դիւաց մոլեգնեցին :

Իսկ մի ոմն յիշխանաց նր կոստէ կամ կոստա-
նտն՝ զգլջացեալ և եկեալ 'ի միտս իւր , ա-
սէր . այս ժմ նեղութիւն՝ որ եկն 'ի վ̄ր զօրաց
մերոց , վս ծառայիցն այ եղև՝ զոր յանխնայ
կոտորեցաք : Եւ առեալ իշխանին զգլխ-
աւորն մոլեգնելոյն՝ գնաց 'ի տեղին նահատա-
կելոյ վկայիցն . եդ ծունր ամենեքումբք
հանդերձ , և ասէ . Ո՛վ դուք վկայք , հաւա-
տացէք յանձն ձեր՝ զոր դուք պաշտէիք . բա-
րեխօսեցէք առ նա , զի թողցէ մեզ զյան-
ցանս մեր՝ զոր մեղաք ձեզ , և զցասումն՝ որ
եկն 'ի վ̄ր մեր , բարձցէ 'ի մէնջ նա . զի զոր
արարաքն՝ ապաշխարեսցուք , և դարձցուք
առ նա :

Եւ և զայս ասաց իշխանն , մոլեալքն 'ի
դիւաց սկսան զգաստանալ . և միաբան ձայ-
նիւ՞ արհնեցին զԱծ : Եւ զի մարմինք նց վը-
կայիցն կային անթաղ , յայնժամ միաբա-
նեալ զօրքն՝ որ բժշկեցան , արք թուով
իննսուն և հինգ , հանդերձ իշխանաւն , ժո-
ղովեցին զնշխարս նցն , և զհողն՝ ուր ա-
րիւն նց հեղեալ կայր . և փութանակի ամ-
փոփեցին զամենեսեան : Յայնժամ ապա ե-
կեալ և քրիստոնէիցն՝ որք յառաջագոյն հա-
ւատացեալքն էին , առ իշխանն կոստէ , ուրախ
եղեն ը̄ն նմ . և տեսեալ զգլխաւորն բժշկեալ՝
արհնեցին զԱծ . զի 'ի ձեռն նց վկայիցն եղև
նոր ժողովուրդ քի : Եւ առեն ցիշխանն ;

սկիզբն արասցուք շինել տաճար մի վկայից , և դիցուք զնշխարս նոցա 'ի ներքոյ հիման տաճարին ։ Եւ շինեցին երեք վկայարանս . մին 'ի վերայ մի կուսանացն , զոր անուանեցին մի կաթուղիկէ . և զմիւսն 'ի վերայ միոյն ստեփաննոսի հանդէպ աղբերն , որ բղխեաց 'ի պէտս բնակչացն և վասն բժշկութեան հիւանդաց . և անուանեցին զայն՝ մի ստեփաննոս . և կարգեցին սպասաւորս միոյ տաճարին . և զերրորդ վկայարանն 'ի վերայ բազմութեան վկայիցն ։ Քանզի յայնմ հետէ եղև խաղաղութիւն եկեղեցւոյ առ թագաւորութեան Յոբիանոսի . և իշխանն կոստէ վերակացու եղեալ տեղեացն այնոցիկ՝ կոչեաց զքահանայս և զպաշտօնեայս այ , որք հաստատէին զհաւատացեալսն 'ի Քս . և օր ըստ օրէ աճէին և բազմանային քրիստոնեայք 'ի տեղւոջն յայնմիկ . և զօր նահատակութեան միոցն տօնէին ամ յամէ ։

Արդ՝ եղև կատարումն միոյն ստեփաննոսի և ընկերաց նորա՝ յամի տն 363. յամսեանն օգոստոսի , որ օր ժը էր ամսոյն , և օրն ուրբաթ՝ յութերորդ աւուր զկնի նահատակութե մարիամու մօր ստեփաննոսի և կուսանաց որ ընդ նմա ։ Եւ էին ամ վկայք մի ստեփաննոսեանք՝ արք և կանայք , հարք և որդիք , թուով լճ . և հանդերձ ստեփաննոսիւ , և հարբն նր ղազարաւիւ լինին լճ , կմ լե ։ Իսկ միոյն ստեփաննոս կոչեցաւ Ուլնեցի՝ յանուն տեղւոյն , ուր է գերեզման նր , այն է ուլնի քաղաք , ըստ յունաց յուլիուպօլիս երբեմն

կո-

„ կանխեալ՝ եկի 'ի վանսն՝ որ կոչի կլայ. ( ուր կամ իմանայ զՀռոմկլայն՝ նախ քան զլինելն ի ձեռամբ Հայոց, և կամ զվանս կենդրակայ՝ զոր շինեաց սբ. ստեփաննոս վանականն, զոր տօնեն յոյնք 'ի յունվարի. ժը. ) ։ Եւ
„ հարցեալ իմ մեծաւ քննութբ. վս պատմութե նր. իսկ
„ նք ասեն ցիս. առ մեզ ոչ գոյ. բայց եթէ 'ի սբյն
„ սիմէոնի վանսն ։ Եւ իմ յուղի անկեալ գնացի 'ի վանսն.
„ և հարցի դարձեալ ցնս. և նք անգիտացան. և ասեն
„ ցիս. առ մեզ ոչ գոյ. բայց եթէ 'ի կոստանդինու-
„ պօլիս ։

„ Եւ իմ յոյժ տրտմեալ վս յերկարութե ճանապարհին.
„ և յանցանել ամաց երկուց՝ եհաս ինձ ճանապարհ
„ գնալ 'ի կոստանդինուպօլիս ։ Եւ իբրև հասի խաղա-
„ ղութբ 'ի քաղաքն, ուրախացայ յոյժ. և սկսայ քննել,
„ թէ իցէ՞ ուրեք պատմական և հաւատարիմ այր 'ի
„ քաղաքիս. զի ծանեայց 'ի ձեռն նր զճշմարտութիւն ։
„ Եւ հանդիպեցաւ մի ոմն 'ի քահանայից՝ անուն կա-
„ լոյժան՝ նիկէական ուղղափառ հաւատով, և ասէ ցիս.
„ այր դու՝ զի՞ հարցանես վս հաւատարիմ մարդոյ, և
„ կամ զի՞ եկեալ ես այսր. և ասեմ ցնա. վս իրիք ինչ
„ խնդրոյ ։ Եւ առեալ տարաւ զիս յարկ տան իւրոյ.
„ և ասէ. զի՞նչ անուն է քո. և ես ասեմ. գրիգոր է
„ անուն իմ ։ Եւ ասէ. պատմեա ինձ, թէ զի՞նչ խնդ-
„ րես. և ես պատմեցի նմա զամ պատճառս ։ Եւ նա
„ յոյժ ուրախացեալ՝ ասէ. առ իս ագիր, մինչև աղօ-
„ թիւք սբցն տացէ մեզ տր աճ զխնդրուածս մեր, և
„ ցուցցէ մեզ ։ Եւ կացեալ իմ անդ ամիսս վեց. և նր
„ յանձն առեալ աշխատութբ մեծաւ. և ապա աղօթիւք
„ սբցն գտաք զպատմութիւն նր ։ Եւ յոյժ խնդութիւն
„ եղև 'ի միջի մերում. և սկսաւ կարդալ պատմել ինձ
„ և թարգմանել. զի հմուտ էր այրն աստուածային պատճէ-
„ րանացն ։ Եւ արդ եղբարք ժողովեալք 'ի կատարել
„ զտօն սբյն ստեփաննոսի և ընկերաց նր, ամենեքեան
„ ունկն դիք պատմութե և չարչարանաց սբցն. զի բա-
„ րեխօսութբ նր ողորմեսցի տր աճ մեր ամ հաւատա-
„ ցելոց ։ 'Ի ժամանակս յուլիանոսի անօրինի էր հալա-
„ ծումն մեծ քրիստոնէից ||. և որ 'ի կարգին ։

Արդ թէ ո՞ րք էր և յորում ժամանակի այս գրիգոր կրօնաւոր բարեյիշատակ՝ հանդերձ վաստակակից յոյն թարգմանաւ կալոժանիւ, ունիմք գուշակել 'ի հանդամանաց ոճոյն և պատմութեն՝ թէ փոքր մի յառաջ կամ փոքր մի յետոյ էր քան զգրիգոր վկայասէրն. ( զի ոչ կա-

կարեմք նոյնացուցանել պարզապէս ընդ նմա )։ Այս յայտնի է՝ զի յառաջ էր ժամանակաւ քան զշնորհալին. նախ՝ զի գրչութիւն իւր ճառընտրիս է հին, և ոչ շատ հեռի յաւուրց անտի. և երկրորդ՝ զի յետ շնորհալւոյն չեղև այլ կարգաւորութիւն հին տօնացուցի. և ահայսմ օրինակս տօնացուցին կարգեալ կայ որոշ տօն սրբոյն ստեփաննոսի ուղնեցւոյ զկնի վերափոխման՝ համաձայն վկայաբանութեանս, որ 'ի ժԸ. օգոստոսի դնէ զկատարումն նր. ուստի առեալ դնի և 'ի Հ. որ զնոյն վկայաբանութիւն քաղէ՝ պահմամբ և շարադրութեան։ Ո՛չ վայրապար համարիմք և զայն, զի ճառընտիրն զայս վկայաբանութիւն դնէ յառաջ քան զպատմութիւն սրբոյն սարգսի զօրավարի, յայտ առնել կամեցեալ՝ թէ երկոքին այս վկայք հաչակաւորք յազգին յառաջնումն լոկ Ը աւանդութեան՝ յետոյ ուրեմն հանդիսացան և ըստ գրաւոր վկայաբանութեան. գրիգոր կրօնաւոր խուզարկեալ 'ի լոյս էած զպատմութիւն սրբոյն ստեփաննոսի ուղնեցւոյ, և շնորհալին յետ նորա զպատմութիւն սրբոյն սարգսի զօրավարի։

Այլ ինչ յայժմուս չունիմք 'ի ծանուցանել. թող ընթերցօղք ինքնին իմաստասիրեսցեն, թէ շնորհալին ոչ զսրբոյն սարգսի տօնն զարդարեաց շարականաւ, նոյնպէս թուի արարեալ և Ը սրբոյն ստեփաննոսի. զի նորին ոգւոյ է առաւել և սորայս շարական։



ՎՆՐ.

# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սէյն Աբդլմեճի ։

Ի. յուլիս. 13 ։ Ճառեցաւ. Ր. երես. ռմԲ=ՉԼԷ. և Դ. ՃԿԶ=ՃՀԶ ։ Ի հայոց. արտաքսայոց. 'ի ձա-ռընտանեան ճառեան. ՃԶ ։ (1)

ՑԱՆԿԱԼԻՆ Ի ՎԿԱՅՍ և երջանիկն 'ի մատաղատունկ նահատակս, որ մանուկն Աբ-դլմեճ՝ ճշմարիտ ծառայ քո՛ւ ; որոյ առաջին անուանն Աւետ, էր 'ի շրջակայ քաղաքէ արևելեայց՝ որ 'ի սահմանս տիրու-թեան պարսից, որդի առն հրէի՝ որում անուն էր գէլի, 'ի սկզբան թուականութեան հայոց, մեռ 'ի փախճանն տիրութեան սասանեանց և կրակապաշտ մոգութեան պարսից. յորում ժա-մանակի համարձակագոյն էին հրեայք 'ի շր-ջակայս երկրին ։ Այս էր գէլի մեծատուն յոյժ. ունէր ստացուածս և ոչխար և անա-սուն բազում, և նախագլուխ էր հրէից 'ի ժամանակին յայնմիկ. նոյ էին որդիք բա-զումք. յորս կրտսերագոյնն էր աւետ՝ ամաց երկոտասանից. զոր առաքէր արածել զխա-շինս 'ի դաշտի, ուր յետոյ զդաւիթ ։
Այս լինէր՝ յորժամ արածէր աւետ զհօտս ե-ղանց,

ղանց , ածէր զնմ ՟Ճ՟ աւուր աւուր արդարացա-նել ջուր 'ի անեղին , ուր ամ՟ հովիւքն գային պատրաստել զարբումն խաշանց իւրեանց ։ Եւ բազում հասակակիցք նր գային և ժողո-վէին յայն անեղին ։ Ոմանք 'ի նոցանէ էին յորդւոցն քրիստոնէից , և ոմանք 'ի մոգուց ։ Եւ մինչ բազում տոհմարածականք ուրոյն ու-րոյն երախանս կազմել՝ նստէին ուտել հաց , քրիստոնեայք առանձինն , և սակաւիկ մի հեռագոյն որդիք մոգուցն , ասէր մնայր մե-ղնակ՝ մեկուսի յամենեցունց ։ զի ոչ գայր հրէայ ընկեր նորին ։ Զմանկայր հայցակից լի-նել մանկանցն քրիստոնէից ։ այլ ոչ իշխէր մերձիլ առ նս ։ զի գիտէր՝ թէ գարշ համա-րէին զնա յաղագս հրէութեն ։ Իսկ մանկունք քրիստոնէից թէպէտև չառնուին յանձն կո-չել զնա 'ի սեղան , բայց սիրէին զնա յոյժ ։ Եւ քաղցրութբ խօսէին ընդ նմա ։ Եւ հնարս խնդրէին՝ թէ զիա՞րդ կարասցեն մերձեցու-ցանել զնա առ իւրեանս ։ Եւ զօրհանապազ պատմէին նմա վս քնի հաւատոցն , և վասն Ձգնութե սրբց մարտիրոսաց , զոր լուեալ էին 'ի ծնողացն իւրեանց ։ Եւ նա մտադիւր լսէր և 'ի միտ առնոյր զբանս նց ։ Իսկ եղև յաւուր միում՝ յորժամ ժողովեալ էին ըստ սովորութե ուտել հաց , յարուցեալ՝ աներայ՝ փութապէս ընթացաւ առ նս , և ասէ ։ ով եղբարք իմ սիրելիք , պատմեցէք՝ եթէ իմ՟ հնար է ինձ մերձենալ առ ձեզ , և ուտել կերակուր 'ի միասին , և ոչ լինել այլ ևս գարշելի յաչս ձեր ։ Միանի եասուն միաբա-

մանք

մեծ է խորհուրդս այս քրիստոնէից ։

Յետ այսորիկ մինչդեռ նստէին մանկունքն ցնծութեամբ, պատուէր տային ծառայիցն քոր ազդլմնեհի՝ սրբութեամբ և զգուշութեամբ պահել զաւանդն, զոր էառ 'ի տ̃նէ, և մի խառնել ը̃ հրէայսն և մի 'ի կերակուրս նոցա ։ և նա հաւանեալ խոստանայ առնել զասացեալսն 'ի նոցէ ջերմեռանդն սիրով յանձնուն քոր ։ Մ՛ի ոմն 'ի նոցանէ ունէր գինդ ոսկի յականջս իւր ։ նա ասէ ցընկերսն իւր ։ արդ մինչ զայսպիսի գործս հաւատոյ համարձակեցաք առնել, պարտ է մեզ առանց երկիւղի հաստատուն կալ ։ ահա գիտեմք, զի հրեայք ոչ ծակեն զունկն ուստերաց իւրեանց, վ̃ս զի է նշանակ մշտնջենաւոր ծառայութե ։ արդ եկայք բարձցուք զօ̃մ փոխանդ զառնալոյ առ ըս անօրէն 'ի հրէութի ։ ծակեսցուք զունկն սորա, զի ծառայ եղև քո̃ր, և արկցուք 'ի ներքս զգինդս ոսկի ։ Եւ համոյ թուեցաւ մանկանցն, և արարին ը̃ բանի նր ։ ծակեցին զաջոյ ունկն ազդլմնեհի, և արկին ըզգինդն ոսկի ։

Եւ այնուհետև յարեան ը̃ սովորութե արածել զհօտս իւրեանց ։ այլ հոգային 'ի մէջ իւրեանց, և ասէին, եթէ զխա՞րդ հանդիպիլ ունի նա ծնողացն ։ Իսկ ծառայն քո̃ր՝ այն է ազդլմնեհ, ը̃ մտանել առևուն զայ 'ի տուն հանդերձ խաշամբքն ։ և իբրև ետես զնա զառաջինն մայր իւր, անհնարին ըզձայն իւր հառաչմամբ, և ասէ ։ որդեակ իմ ասեր զի՞ եղև քեզ, և զի՞նչ է այդ նշան

ծու

ծառայութե յականջս քո. ո՞վ խաբեաց զքեզ,
և ածեր 'ի վ՟ր տան հօր քո զայսպիսի չարիս
մեծամեծս. ո՞չ ապաքէն լուեալ էր քո յօրի-
նացն մովսեսի, թէ մի՛ ծակեսցի ունկն ար-
ուՆ յինէ, բայց որ կամիցի ծառայ բնակել
ը՟ տ՟ն իւրում. արդ՝ եթէ գիտասցէ հայր
քո, նա ինքն լինի վրէժխնդիր օրինաց 'ի
քէն. և թէ զի՞նչ արարից զքեզ՝ ոչ գիտեմ.
զի անթաքչելի է նշանդ յականջս քո:
Յայնժամ սկսաւ ասել ս՟բ և իմաստութեան մա-
նուկն. մի՛ երկնչիր մա՛յր իմ, և մի՛ խռովես-
ցեն զքեզ խորհուրդք քո վ՟ն այսորիկ. քան-
զի ես այժմ քրիստոնեայ եմ և ծառայ ք՟ի.
և յաւիտեան պաշտեմ զնա. և նա է իմ հ՟ր
և ա՟ծ: Օրէնքն մովսեսի ո՛չ պատժեն զծա-
ռայս՝ որք սիրենն զտեարս իւրեանց. այլ
հրամայել հրամայեն զունկն ծակել առ
դրան դաւթին, զի լիցի նշանակ ծառայե-
լոյ տ՟ն իւրում յաւիտեան. սոյնպէս և ինձ
պատահեաց յաւուր յայսմիկ. առ դրան մկր-
տութե ծակեցաւ ունկն իմ, և հաստատե-
ցաւ ուխտ իմ ը՟ ք՟ի տ՟ն իմոյ յաւիտեան:
Ասէ ցնա մայրն իւր. զիա՞րդ եղեր այդպէս
փաղփաղուկի քրիստոնեայ, և կամ ո՞ արար
զքեզ ծառայ ք՟ի. և կամ ո՞վ ուսոյց քեզ
զայդպիսի բանսդ՝ զոր խօսիսդ: Ա՟ն ասէ.
որ ուսոյց ցաշակերտսն իւր, թէ որ հաւա-
տայ յիս՝ մի՛ ամաչեսցէ յաւիտեան. և դար-
ձեալ ասէ, յորժամ տանիցին զձեզ և առա-
ջի դատաւորաց, ես տաց ձեզ 'ի ժամուն
յայնմիկ բանս. նա է՝ որ ուսոյցն զիս, և խօս-

տացաւ այլ եւս բազում ուսուցանել ։
Արդ սկսաւ պատմել կարգաւ մօր իւրում
զամ՛ զոր լուեալ էր 'ի մանկանցն քրիստո-
նէից ․ եւ թէ՛ զիարդ մկրտեցին զնա ջրով ,
եւ որպէս մերացաւ 'ի նմանէ աղտեղութիւն
նեխութեն , եւ բուրեաց հոտ անուշութեն 'ի
քն ։ Իսկ մայր նր իմաստութ՛ լսէր զասա-
ցեալսն 'ի նմանէ ․ եւ 'ի միտ առեալ սքան-
չանայր ՟է նորահրաշ տեսիլ դեղոյ նորա ․ եւ
թաքուցանէր զնա 'ի տան իւրում աւուրս ե-
րեսուն ․ եւ խանդաղատէր զնովաւ , եւ հա-
ւայր՝ թէ մի գուցէ արդեօք գիտասցէ հայր
նր , եւ կորուսցէ զնա յաղագս նախատանաց
աստուածոցն իւրոյ եւ երկիւղի հրէիցն ։ Իսկ նր
մանուկն օրըստօրէ կանխեալ ՟է առաւօտն եր-
թայր 'ի դաշտն արածել զխաշինս ՟է ընկերս
իւր ․ եւ համապազ ուսանէր 'ի նոցանէ հաւա-
տատուն կալ 'ի հաւատսն՝ որ 'ի քն , եւ եւս
քան զեւս զօրանայր 'ի նր ․ եւ ՟է մութն երե-
կոյին դառնայր առ մայր իւր ․ եւ այնպէս
ոչ 'ի վեր եւ բանին առ ժամանակ մի ․ զի եւ
հայր նորա զբաղեալ էր հոգովք Տանկանաց
տան իւրոյ , կամ շրջէր եւ արտաքոյ ։
Զհաւաքումն յայնոսիկ ժամանս 'ի հարց մա-
կանցն այնոցիկ՝ որք առ իթ եղեն փրկութե
աբդլմսեհի , պատահեցին 'ի փոխս ուրեմն՝
որ 'ի լերինն շիգարայ , 'ի տօն սրբոյն պօղոսի
կն՟ պաւղայի եւ երից մանկանցն որ ՟է նմա ,
եւ լուան զպատմութիւն սրբոյն այնոցիկ ․ եւ ե-
կեալ պատմեցին 'ի տունս իւրեանց զնահա-
տակութիւն սրբոցն , եւ որհնեցին զած ։ Իսկ ման-
կանցն

կանցն լուծեալ զայն 'ի հարցն իւրեանց՝ խօսելին առ մեծեամբ 'ի ժողովրդն 'ի միասին . և ոչն արգելմանէհ իւրև լսէր զայն , առաւել բարբառքէր 'ի սէրն քնի . զի ծագեալ էր 'ի նմա լոյսն քնի , և 'ի միտ առեալ զձգնունի ոչցն՝ աղօթէր զհրայնութիւն արժանի լինել պսակաց երանելեացն այնոցիկ :

Իսկ երբև 'ի միում գիշերի՝ մինչդեռ ննջէր 'ի տան մօր իւրոյ , տեսանէր զինքն՝ որպէս թէ լինել 'ի գլխ խաւարի , և տանջիլ ի ժողովրդեանն զազրանայ և արիւնի . անդ մնաչէր հառաչանօք , և լայր դառնապէս . և խորհէր ի միտս՝ թէ զինչ լինիցի . և ոչ գտանէր ելս հնարից . այլ յոյս իւր էր 'ի լոյսն քնի , և յիշէր անձկանօք զբարի ընկերս իւր և զառաքեալսն 'ի նոցանէ : Յայնժամ տագնապ տարակուսի՝ յանկարծակի երևեցաւ նմա երիտասարդ մի լուսաւոր կերպարանօք , և իշխանաբար բախեաց զխաւարայինն զուգն , և կալեալ զաջոյ մանկանն՝ եհան 'ի գրոյն , և կացոյց զնա 'ի մէջ մատաղերամ մանկանց , որք շուրջ կային զնովաւ , և միաբան ձայնիւ օրհնէին զքնն խնդալից բերկրանօք , և զանազանեալ փառօք :

Յայնժամ իբրև 'ի միտս եկեալ արգելմանէհի՝ ասէ . ողջ ես դու՝ որ այսպէս վերակացու եղեր խնձ 'ի նեղութեան , և փրկեցեր զիս : Իսկ նա ասէ . ես եմ քնն , յոր յուսացար դու յիս , և կարդացեր զանուն իմ . արդ զօրացիր և մի երկնչիր . զի օթեւանք պատրաստեալ են քեզ ի մանկանցս այսոցիկ . և կան և պա-

հին քեզ պսակք անապականք և յաւիտենա-
կանք. և յետ փոքր մի աւուրց ընկալայց
զքեզ առ իս, և ցուցից քեզ զսէրն իմ, ո-
րով հետև զգեցար զիս 'ի ձեռն մանկանցս
այսոցիկ, և արարից զքեզ ժառանգորդ ար-
քայութե իմոյ: Իսկ նորին լցեալ ահիւ և խըն-
դութբ՝ անկաւ 'ի վյ երեսաց իւրոց փառա-
ւորելով զած. և ասէ. գոհանամ զքէն քս՝
տր իմ և ած իմ, որ փրկեցեր զիս 'ի խաւա-
րային կապարանէն և 'ի չարաչար տանջա-
նացն. այլ աղաչեմ զքեզ տր իմ, պատմեա՛
ինձ՝ թէ ո՞յք էին նք որք տանջէին զիս, և
մնացին 'ի նմին վայրի. զի ահա է ելանելն
իմ 'ի գբոյն՝ դարձեալ կափոյց խորխորատն
զբերան իւր անդրէն 'ի վյ նց: Ասէ ցնա
քս. նոքա են ազգ տան հօր քո՝ որք խաչե-
ցին զիս: Աբդլմսեհ ասէ. տր յիս մի հեռի
առներ զծառայ քո յողորմութենէ քումմէ.
այլ հաստատեա՛ զիս առնել զկամս քո, լի-
նել քարոզ ճշմարտութե քում. զի տեսից
և յագեցայց լուսով ածութե քո յերևիլ փա-
ռաց քոց:

Եւ մինչ զայս ընդ տն խօսէր, զարթեա-
մայր նր 'ի բարբառ բանից նորա. զարթոյց
զորդին իւր, և ասէ. զի՞ է քեզ որդեակ իմ.
և կմ զի՞նչ են բանքդ՝ զոր իբրև ընդ սիրելւոյ
խօսիս: Պտնի ետ նր մանուկն, և ասէ. յս
քս՝ յոր հաւատացի և մկրտեցայ յանուն նր,
եհան զիս 'ի գբոյ խաւարին և յանդնդոց
դժոխոց և 'ի տանջ կապանաց. նա էր՝ որ
խօսէրն ցիս: Ասէ ցնա մայրն իւր. և զի՞նչ
կեր

կերպարանք էին նմանութե̄ նր̄ : Ա̄րն ասէ. Երիտասարդ գեղեցիկ տեսլեամբ, զոր ոչ բաւեմ պատմել. և փայլատակունք հատանէին յերեսաց նր̄. և ձորձ իւր պատառեալ, և կօշին խոցեալ, և ձեռք և ոտք իւր ծակեալ բևեռօք. և գիր 'ի վր̄ նր̄, թէ սա է քս̄ ած̄, զոր հրէայքն խաչեցին յեր̄մ, որ յանձն էառ զյանցանսն ադամայ, և սա է գառն այ̄՝ որ բառնայ զմեղս աշ̄ի. և ինքն է օրէնսդիր և ժողովարան նց̄ և պսակիչ նահատակաց : Իսկ տեսի ես զհասարակակիցս իմ շուրջ զինև, որք օրհնէին զնա, և ասէին. ո՛վ տր̄ փրկեա՛, ո՛վ տր̄ առաջնորդեա՛. օրհնեմք որ գաս յանուն տն̄. ովսաննա 'ի բարձունս, օրհնութի որդւոյ դաւթի : Իսկ ամենեքին նոքա զանազան պսակօք փայլէին. ոմանք 'ի նց̄է ունէին 'ի ձեռս իւրեանց ոստս արմաւենեաց. և այլք 'ի նոցանէ ոսկի բաժակաւ մատուցանէին զարիւնս իւրեանց առաջի երկնաւոր թագաւորին ցնծալից ուրախութը̄, և ասէին. սա է ած̄ մեր՝ յոր յուսացեալն էաք. ցնծասցուք և ուրախ լիցուք 'ի փրկութե̄ նորա : Այնուհետև ես՝ մայր իմ, ցանկացայ դասակից լինել լուսոյ մանկանց առագաստին, և ը̄ նր̄ երգել երգս օրհնութե̄. և ոչ տային ինձ առաժամայն մերձենալ 'ի նր̄. և արդ խառնիլ 'ի նր̄ կարօտի անձն իմ. և երանի թէ մնացեալ էի 'ի տեսլեանն՝ ուրախանալ 'ի մէջ նց̄ն այնոցիկ. առաւել քան զարթնութի լաւագոյն էր քունն այն. զի եթէ 'ի տեսլեանն այնպէս լուսաւոր և հեշտալի էր

երեւումն այն՝, որչափ եւ տառել՝ եթէ
դէմ յանդիման լինիցի ինձ տեսանել զլոյսն
անճառելի եւ անսպառելի. եւ աՀա ստիպէ
զիս բաղձանք Հոգւոյս իմոյ՝ լինել ընդ բազ-
մութեն նց. եւ յոյժ Հարեալ եմ՝ ի սէր նց.
եւ լաւ էր ինձ մեռանել ընդ նոսա՝ քան առա-
նալ զվայելչութիւն լայնատարած երկրիս:
Արդ յորժամ լուաւ մայրն զայս ձմ յորդւոյ
իւրմէ, տագնապեալ պղտորեցաւ սիրտ նր
մտ բանիցն այնոցիկ. եւ ջանայր թաքուցա-
նել զբանն, զի մի լուիցէ Հայրն եւ եղբարք
նր. եւ ասէ. որդեակ՝ մի արդեօք պատրանք
ինչ իցեն. զի շատ եւ այն են երազք, որ սուտ
են: Ոդն ասէ. այլ զոր Ած կամիցի յայտնել,
ամենեւին ճշմարիտ է. որպէս եւ բազմաց ՚ի
Հարցն մերոց առաջնոց տեսիլք ցուցան ՚ի
Ածնէ, առաւել յովսեփայ եւ դանիէլի. որոց
եւ Համձար տուաւ մեկնելոյ զերազս. եւ աՀա
ես դէմ յանդիման տեսի զսքանչելիսն, զոր
Տր իմ քս ինձ յայտնեաց: Արդ դու եղիցիս
օգնական քարոզութե իմոյ ով մայր իմ. Հաւա-
տա՛, յոր եսն Հաւատացի, եւ պատրաստեսցի
զիս մեռանիլ ընդ նմա:
Զայն իբրեւ լուաւ մայրն, գիտաց այնու-
Հետեւ՝ եթէ ՚ի մաՀ տանի մեռանիլ զաւակն
իւր անտարակոյս. եւ սկսաւ լալ յորդ արտա-
սուօք: Ասէ ցնա որդն. մի լար ով մայր իմ,
եւ մի խռովեսցի սիրտ քո. զի մաՀն՝ որ ըստ Այ
եւ վն Այ, կեանք է անմաՀականն. աՀա տե-
կերքն յովսեփայ փախչանելոյ պարգիտ ա-
մուր եղեն աղջի իւրում. եւ թէ ոչ էին կեն-
դաւ

զանինք աբրահամ և սահակ և յակոբ , ոչ ա-
սէր ած ցմովսէս , ես եմ ած աբրահամու և
սահակայ և յակոբայ . և ոչ է ած մեռելոց ,
այլ՝ կենդանեաց . արդ՝ ճշմարիտ կենդանի
են առ ած , որք մեռանին յուսով նորա . արդ
աղաչեմ զքեզ մայր իմ , լուր բանից իմոց ,
և հաւատա՛ 'ի քս , և մկրտեա՛ց յանուն նորա .
և փրկեսցիս 'ի չարաչար տանջանաց անտի
այնոցիկ՝ որ խաչեցինն զնա . և կատարեալ
լիցի անուն քո առ որդի քո բերկրանօք յա-
նանցական ծին , լինելով ինձ մայր սիրելի
յերկոսին յաւիտեանս : Արդ՝ մի թողուր 'ի
մտաց քոց և յետ ելից իմոց զբանս իմ . այլ
հաւատա՛ ճշմարտութեն այ՝ որ 'ի վեր է քան
զամ զմիտս և զխորհուրդս :

Յայնժամ ծագեաց լոյս ածգիտութեան 'ի
խաւարեալ միտս կնոջն . և պինդ տուեալ
որդւոյն ասէ . հաւատամ յած՝ յոր դու հա-
ւատացեր որդեա՛կ իմ . և 'ի պատշաճ ժամա-
նակի արդիւնացուցից զբանս իմ . առ այժմ
ծածկեսցին խորհուրդք մեր 'ի հօրէ քումմէ
և յեղբարցդ . զի մի լուիցեն և սպանցեն զիս
և զքեզ : Ապա 'ի վաղիւ անդր առեալ որդւոյն
զմախաղն և զցուպն հովուական իւրոյ՝ ասէ .
ողջ լեր մայր իմ . յանձն առնեմ զքեզ քսի .
ես գնացեալ երթամ առ ընկերս իմ . և եթէ
յապաղեմ , եկեսջի՛ր և դու զկնի իմ : Զայս
ասէր՝ նշանակեալ զմահ իւր և զհաւատս
մօրն . և ելեալ գնայր ընդ սովորութե զկնի
հօտից իւրոց . և իբրև մեկնեցաւ սակաւիկ
մի , տնտեսութեն այ հանդիպեցաւ նմա ծե-

 րու-

րաւնի եղես մի ։ Եւ ընթացեալ ընդ անկաւ առ ոտս նորա, եւ ասէ ։ աղաչեմ զքեզ տէր իմ, օրհնեա զիս եւ կնքեա նշանաւ տէրունական խաչին ։ Եւ ձեռն եդեալ կատարեա զմկրտութիւն իմ ։ Զայս ասէր փափաքանօք ընդունելոյ զդրոշմն 'ի քաջութեան նահատակին ։ քանզի լուեալ էր յընկերաց իւրոց, թէ ձեռն դնեն եւ դրոշմեն քահանայք զճակատ մկրտելոյն ։ որ լինի հաստատութիւն քրիստոնէութեան եւ զօրավիգն ամրութեան հոգւոյ 'ի հաւատս ։ Ասէ եպիսկոպոսն ։ ուստի՞ ճանաչես զիս ։ եւ կամ ո՞ պատմեաց քեզ զինէն ։ զի ահա ոչ ունիմ զզգեստ եպիսկոպոսութեան ։ Ասէ արգլմանեհ ։ որ զիս քեզ յայտնեաց, եւ կարգեաց քեզ ճանապարհ գալ առ իս, նա ծանոյց զքեզ ինձ ։

Զարմացեալ եպիսկոպոսն՝ ասէ ցնա ։ եւ իմ առեալ պատուէր՝ օրհնել զքեզ նախ քան զդատակելն քո նահատակութեան՝ եկի առ քեզ ։ եւ արդ եղիցիս օրհնեալ ։ եւ եդեալ զաջ ձեռն իւր 'ի վերայ գլխոյ նորա՝ աւանդեաց 'ի նա զշնորհս հոգւոյն սրբոյ ։ եւ ասէ ։ երթ 'ի խաղաղութիւն անուամբ տեառն մերոյ քրիստոսի՝ հաճոյ եղեալ առաջի նորա, եւ արժանի լեր չարչարանաց մահուան քրիստոսի ։ եւ մանկունքն՝ որ մկրտեցին զքեզ, հրաւիրեալ եղիցին 'ի կարգս հրեշտակաց ։ եւ այսպէս ատրաբեալ ծերոյն՝ գնաց զճանապարհս իւր ։

Իսկ ընդ գնաց առ մանկունսն ընկերակիցս իւր, եւ պատմեաց նոցա զտեսիլն իւր՝ զոր ետես՝ եւ զնմին եղեալսն ։ եւ զարմացան ընդ սքանչելիսն ։ եւ լցան երկիւղիւ եւ ուրախութբ

թէ՛ 'ի վե՛ր այնոցիկ՝ զոր լուանն . և խնդակից լինէին նմա . և այնուհետև ոչ եւս ինքեանք քաջալերէին զծառայն քո , այլ 'ի նմանէ քաջալերութե՛ ճունէին , որ զգեցեալն էր բոլորովին զզօրութի՛ն քո :

Այս էր օրն այն ուրբաթ . և տօն մեծ էր հրէից . և առնէր հայր նո՛ր զևի ուրախութի՛ մեծ յաւուր յայնմիկ , հրաւիրեալ զազգա տոհմն իւր և զսիրելիսն յընթրիս . առաքեաց կոչել և զորդին իւր զասեր ՟Է այլ եղբարսն՝ ժողովել 'ի շաբաթամտին 'ի հրաւիրեալ տեղին : Ապա և մտօ եղև ասեր՝ այն է աբդլմսեհ , խոստացաւ մտանել 'ի տուն մօր իւրոյ . և հետամուտ եղեալ ծառայքն՝ բռնադատեցին զնա , և առեալ տարան 'ի ժողովն հրէից . Յայնժամ 'ի մտանելն նո՛ր՝ տեսեալ հօր նորա հանդերձ բազմութ՛ հրէից զգինդն յականջս որդւոյ իւրոյ , խռովեցաւ բարկացաւ և ասէ ցնա . տեսեր զի՛ խաբեաց զքեզ , և արար այդպէս խայտառակ . ո՞չ ապաքէն այդ կերպարանք ծառայից են , որ ինքնակամ թողլին զազատութի՛ իւրեանց , և գրեցան 'ի ծառայութի՛ : Մ՛ն ասէ . մի՛ խռովիր հայր իմ , քանզի զխոտեմ զատացեալդ . զի ահա և ես գրեցի զանձն իմ ծառայ քո , և քրիստոնեայ եմ : Իսկ յորժամ լուաւ զայս հայրն , զայրացեալ լի ցասմամբ՝ եհար զերեսս նորա , և ընկեցեալ 'ի մէջ բազմութեն յերկիր՝ կոխէր ոտիւքն : Յարեան թափել զնա ժողովեալքն , և ասեն ցնա . մի՛ իրաւա բարկանար եղբայր , զի մանուկ է . և ունի զղջանալ և գալ յուղ-

ղու

ղութեան . մանաւանդ յաւուր յայսմիկ թո՛յլ տուր դմա, զի մի՛ խափան լիցի ուրախութե մերում . քանզի զատիկ մեծ է օրս : Նոյն իբրև եղև լուսին, և նստան յուտել և յըմպել և ուրախ լինել, կոչէին զատեր ողորմանաց, զի կերիցեն ը̄ նմա : Իսկ նա ասէ ցնոս . մի՛ խաբիք, զի ես քրիստոնեայ եմ . և ո՛չ է արժան քրիստոնէի ուտել ը̄ հրէի : Յայնժամ ամօթալից եղեալ հայրն յաղագս բանիցս այսոցիկ՝ յարեաւ դարձեալ հարկանել զնա, և ոչ թողլն :

Ասէն միւսանգամ ցորդն . Ե՛կ որդեակ՝ կե՛ր ը̄ մեզ, և ցածո՛ զբարկութի հօր քո . քանզի թողաք քեզ զարհամարհանս պատուիրանացն մովսեսի վ̄ն այդորիկ՝ որ յականջսդ քո է, հայհոյել 'ի տգիտութի քո և 'ի պատիժ տանիս . արդ լո՛ւր որդեակ, և ե՛կ կե՛ր ընդ մեզ : Նա ասէ . Եթէ գիտէիք զեղեալ սքանչելիսն՝ զոր եցոյց ինձ տ̄ր, և թէ զիա՛րդ այց արար ինձ տ̄ծ և լուսաւորեաց զիս, ոչ բռնադատէիք զիս ուտել ը̄ ձեզ . այլ զի դեռ նոյն առաւաստ օրհնացն մովսեսի կայ 'ի վերայ սրտից ձերոց, վ̄ն այնորիկ խորհիք զայդ :

Իսկ նք̄ իբրև լուան, զարմանային ը̄ կորովութի բանիցն, և ասէին ցմիմեանս . միթէ տեսի՞լ ինչ եղև դմա . զի այդպիսի բանք ո՛չ են մանկան տղայոյ . այլ ոչ տկարանայ այդտուաջի տ̄յ . քանզի բազում փառաւորութե եղև առ մարգարէսն 'ի մանկութե ժամանակի . ապաքէն ոչինչ է մեծ, եթէ լինիցի այնպիսի ինչ և այժմ յազգի մերում . զի և մեզ

ո՛չ

ոչ անհնչանք ոմանք եմք 'ի մէջ իէլի. և օրէնքն
քո՝ պարծանք մեր ։ Մեծ ցնծութեան. զոր խաւ
չեցին հարքն մեր յեհէմ, զնա տեսի. և գի
տեմ, զի նա է դուռն քո, յորոյ վերայ վկա
յեացյամենայնեղ 'ի յորդանան. և ես մկրտե
ցայ յանուն նորա. և փոխանակ ճշմարտութեան
նորա միաագիր մեռանիմ. և դուք եթէ ոչ քա
ւիցէք մկրտութեան նորա, պարտականք էք գոր
ծոց հարցն ձերոց. քանզի արիւն արդար հե
ղին, և խնդրեանք կորեան յանօրէնութեան իւ
րեանց. իսկ որք հաւատացին 'ի նա, փրկե
ցան. ահա ասացի ձեզ. 'ի բաց առէք զպատ
րուճակդ՝ որ կայ 'ի վերայ սրտից ձերոց, և
հաւատասջիք և մկրտեսջիք, և քաւեսցին
մեղքն ձեր ։

Յայնժամ լցան ամենեքին ցասմամբ մի բա
նիցս այսոցիկ, և գրգռեցին զհայր նորա՝ զի
կորուսցէ զնա. իսկ ծառայքն իբրև տեսին
զաղմուկն, թողին զորմն՝ զի փախիցէ ։ Յայն
ժամ յարուցեալ ղեւ հայր նորա՝ լի գազանու
թեամբ և դառնացեալ սրտիւ, եհառ զդանակն
'ի սեղանոյն, և ընթացաւ զհետ նորա. և
մանուկն երթայր առաջի նորա արագ արագ,
դէմ եդեալ գնալ մինչև 'ի ջրհորն՝ ուր մկրտե
ցաւ. և էր Ը երեկս ։ Իբրև մինչդեռ հեռա
գոյն էր հայր նորա, դարձաւ մանուկն և աղա
ղակեաց առ հայրն՝ ասելով. ով գազան ա
րիւնարբու՝ պահեա զշարաթ քո, դարձո
զսուր քո 'ի տեղի իւր. եթէ աշակերտ ես
մովսեսի, մի լինիր օրինազանց. ապա եթէ
քրիստոնեայ իբրև զիս, մի շաղախեր զձեռն
քո

քո յարիւն ծառայիս քո՟ւ․ ոչ եթէ վ՟ս ապան֊մանն իմոյ ասեմ զայս, այլ զի մի՛ լինիցիս դու որդի գեհենի ։ Նաեւ յորժամ լսէր հայր նորա զայս ձմ, առաւել եւս զայրանայր, եւ կրճը֊տէր զատամունս իւր 'ի վ՟ր նր՟ ։

Նաեւ մ՟րն կանխագոյն հասեալ 'ի տեղիս՝ ուր մկրտեցաւ, ծունր կրկնեաց լալով եւ աղա֊թեաց ասելով․ Տ՟ր քո՟, յոր հաւատացի, ընկալ զիս 'ի թիւ՛ մկրտելոցն յանուն քո տ՟ր․ եւ 'ի վ՟ր ջրհորոյս այսորիկ բաց ինձ դուռն՝ մտանել առ վկայսն քո, եւ խառնիլ 'ի դասս նահատակաց քոց․ ահա մատուցանեմ քեզ զարիւնս իմ պատարագ տ՟ր, զի եղիցի հաճոյ տրութե՟ քում 'ի հոտ անուշից․ եւ 'ի թիւ՛ ընկերացն իմոց՝ զոր ցուցեր ինձ, զի փառա֊բանէին զքեզ, արժանաւորեա՛ եւ զիս՝ փա֊ռաւորել զքեզ, եւ մտանել առաջի աեղանոյ տյր իմոյ, որ ուրախ առնես զմանկութիւն իմ․ խոստովան եղէց քեզ օրհնութ՟բ ած ած իմ ։ Նաեւ թշուա՛ռական հօր իմոյ մի՛ համարիր զայս մեղս․ զի ոչ գիտէ՝ զի՞նչ գործէ․ եւ մօրն իմոյ պարգեւեացես չարչարակից լինել ինձ ոգւով, եւ պսակակից հատուցմանց քոց․ եւ ոյք կատարեն զյիշատակ իմ, եւ յիշեն զիս 'ի նեղութե՟, լո՛ւր եւ ողորմեա՛, եւ օգնեա՛ նց՟ 'ի կարիս հոգւոյ եւ մարմնոյ ։ Ահա զխոր֊հուրդս սրտի իմոյ եւ զարիւն իմ մատուցից քեզ պատարագ, փոխանակ զի անուա՛նեցեր զիս եղբայր քեզ, եւ հաներ զիս 'ի դրդոյն տղմոյ, եւ ցուցեր ինձ զճշմարտութի՟ քո․ եւ արարեր զիս քարոզ անուա՛նդ քո, եւ ոչ դար֊

չե֊

շեցար 'ի հայրենի պղծութենէ իմմէ . ահա ոչ գտան 'ի սպանող մատուցեալ եմ ես , և մի քո յօժարամիտ տամ զպարանոց իմ ընդէմ սրոյ , եղեալ օտար յեղբարց իմոց , և հեռա-
ցեալ յորդւոց մօր իմոյ :

Արդ՝ ո՛ւր էք եղբա՛րք իմ սիրելիք՝ հարազատք ընդ հոգւոյ՝ եղբայրակցութեան քի . եկա՛յք տեսէք զպատերազմս իմ՝ փոխանակ քաղցրութեան ձերոյ . եկա՛յք ուրա՛խ լերուք ընդ պտուղ մխպութեն ձերոյ . ահա այժմ աղդեամբք կատարեմ զճանապարհս իմ՝ զոր հորդեցիք ինձ . եկա՛յք զուարճակից ինձ եղերուք յաւուր փեսայութեն իմոյ . և ուրախացուք 'ի քաղխմման արեանս իմոյ՝ որ հեղու 'ի վր սբ անուանն քի : Ընկերակիցք իմ և անձնդղակիցք , ո՛վ Թաքոյց 'ի ձէնջ զօր պսակման իմոյ . ա՛յս է ժամանակ յայտնի լինելոյ սիրելեաց՝ միմեանց , և որք ճանաչենն զեղբարս . ո՛վ ցուցցէ ձեզ զհեղումն արեանս իմոյ , և նահատակակիցս առնիցէ ճգնութեանս : Ողջ լերուք այժմ , և աղօթեցէք արժանի լինել ինձ տեսանել զձեզ յառագաստի թգւորին : Ողջ լեր մա՛յր իմ՝ որ ծնար զիս , և՛ի գիրկս քո կրեցեր զիս : Ողջ լերուք եղբա՛րք իմ՝ որդիք մօր իմոյ . երանի՛ թէ յարգանդէն կենաց
լեալ էիք եղբարք ինձ :

Արդ մինչ դեռ զայս ամ խօսէր , յայնժամ զազանաքար յարձակեալ հայրն 'ի վր նր , և խոնարհեցուցեալ զնոյն զգլուխն 'ի վր վիմին՝ որ կայր յափն ջրհորոյն , խողխողեաց զնա , և եհեղ զարիւնն 'ի վր վիմին : Արդ մանուկն

նուէրն սմա զգաստն անարատ թուալեալ ընդ արիւն անձին իւրոյ՝ ասէր 'ի ժամ աւանդման հոգւոյն, Տր իմ յս քս 'ի ձեռս քո յանձն առնեմ զհոգի իմ։ Իսկ հայրն որդեսպան յետ վախճանելոյ նոյ զաւակին գնացեալ 'ի տուն իւր՝ յիմարեալ մտօք աւետիս տայր մօրն և եղբարցն վն մահուանն աներայ. և ցուցանէր նմա զսուրն թաթաւեալ յարեան սրբոյն. զոր իբրև լուան և տեսին, կան մեծ աղաղակին 'ի վը նր։

Իսկ մայրն թէպէտև դառնացեալ էր սգով 'ի վը մահուան սիրելի զաւակին իւրոյ, սակայն քաջալերեալ մխիթարէր զիւրսն բանիւքն՝ զորս լուեալ էր յորդւոյն իւրմէ. և խորհէր ծածկ պահել, զի հաւատասցէ և մկրտեսցի 'ի քն, և յուսայր հաւատով սրբոյն արժանի լինել տեսլեանն՝ որ երևեցաւ. ոչ և եղև խափ. զի յետ սակաւ աւուրց շինեցաւ 'ի քրիստոնէից վկայարան 'ի վերայ սրբոյն. և մկրտեցաւ մայրն 'ի ծածուկ առ գերեզմանի որդւոյն իւրոյ։

Բայց յառաջ քան զայս ամ՝ յետ կատարման սրբոյն ադրլմնեհի 'ի վաղիւն անդր իբրև եկին հովուակիցք նր մանկունք գ սովորութն 'ի տեղին յայն, ոչ գիտելով զեղեալսն, տեսեալ զմարմին սրբոյն թաթաւեալ յարեան, համբարձին զձայնս իւրեանց, և լացին դառնապէս. և պատառեալ զհանդերձս՝ ծեծէին զերեսս իւրեանց, և 'ի ձայն ողորմ կողկողելով ասէին. Ո՛վ նր զառն քոյ՝ ով նախանձեցաւ իէ զեղեցկութն քո, կամ ով ա-

ապականեաց զպայծառութի գեղոյ քո. ոմ
շաղախեաց զձեռն իւր յարիւն քո եղբայր
մեր, և կմ ոմ զրկեաց զմեզ յեղբայրութե
քումմէ։ Ո՛վ ծնունդ քարոզութե մերոյ, և
ծաղիկ ցանկալի ուսման մերոյ, պատարագ
կանխեալ ձեռամբ մերով։ Որդ՝ Աշմարտիւ
գիտեմք, զի հաձեցաւ որ է պատկերդ քո,
որ եհան զքեզ ՚ի դրոյ տղմոյն, ոմ պատ-
մեցեր մեզ, և վերացոյց ՚ի դասս երջան-
կաց. ահա անդ եղբարք բզմ են քո, զորս
դուն տեսեր. և այժմ մեք անջատեալ մնա-
ցաք ՚ի քաղցր տեսոյ քումմէ, և զրկեալ են
լսելիք մեր ՚ի լսելոյ զքաղցրաբարբառ բանս
քո։ Ծառայ քոյ Աբդլմսեհ և վկայ Աշմա-
րիտ՝ աղաչեմ վասն մեր զնա, առ որ այժմ
դու մերձ ես, արժանաւորիլ տեսլեան քում
՚ի վերինդ Եդեմ, և ցնծալ ը քեզ ՚ի տեսա-
նել զքեզ խառնեալ ՚ի դունդս նահատա-
կաց, և ը առաջ ելանել գալստեան փրկչին
մեր պատրաստու ը և յաղթական պսակօք։
Նազում և այլ այսպիսի բանիւք լային և
կոծէին զնա. ապա առեալ իւրաքանչիւր ըզ-
ցուպ իւր՝ բրեցին զերկիր, և թաղեցին ըզ-
մարմին երանելւոյն. և ժողովեալ զհողն
արիւնախառն՝ արկին ՚ի գերեզմանն. և
հառաչմամբ հայէին ը երկինս, և ասէին.
արդ համարձակեալ վստահացաք քմ կար-
դալ առ քեզ. լուր այժմ և կատարեա ՚ի
վերայ թաղմանս ոյս զօրհնութիս՝ որ լինին
՚ի վերայ հրաւիրելոց ՚ի ձեռն քահանայից.
Նու եդեալ կափարիչ զվէմն՝ յորոյ վը զե-

նաւ ծառայն քնոյ, զնացին տրտմութեան 'ի տեղւոջէ անտի. և իբրև չոգան 'ի տունս իւրեանց, ոչ ոք 'ի նոցանէ իշխեաց պատմել ումեք զեղեալսն. զի մի՛ ասիցեն՝ թէ դուք եղէք պատճառ մահու նորա. այլ ինքեանք որ ըստ օրէ գային 'ի հանգիստ ոգւոյն, և լային ողբով մեծաւ:

Իսկ յետ սակաւ աւուրց գային անցաւոր վաճառականք հանդերձ ուղտուք իւրեանց, և երթային յարևելից յարևմուտս կոյս. և 'ի գիշերի հասեալ մօտ 'ի դիրս հանգստի նորին՝ տեսանէին, զի հուր վառեալ կայր 'ի մէջ գերեզմանի նորին, և լուսաւորէր զամենայն վայրսն: Յայնժամ ոմանք 'ի նոցանէ՝ որք քրիստոնեայքն էին, խոստովանեցան տեսա-նել զմեծ սքանչելիսն. և եկեալ 'ի գերեզման անդր՝ տեսանէին, զի 'ի ներքոյ կափարիչ վիմին ելանէր լոյս սաստիկ որպէս զճառա-գայթս արեգական. և հոտ անոյշ բուրէր 'ի տեղւոջէ անտի առաւել քան զամ՟ խունկս անուշունս. Ը որ սքանչացեալ զարմանային յոյժ յոյժ:

Եւ 'ի միմեանս եկեալ՝ ասեն. զանձ մեծ է այս, և անշուշտ ոսկի 'ի նոցա վկայից. և ոչ յայտնեցաւ բնակչաց տեղւոյս այսորիկ. եկա՛յք առցո՛ւք զդա, և տարցո՛ւք յերկիր մեր. և ստասցուք շահս հոգևորս 'ի քէն. քանզի նա առաջնորդեաց մեզ 'ի տեղիս յայս, և կամեցաւ շահաւէտ առնել զմեզ պատուա-կան ոսկերօք վկայիս: Յայնժամ 'ի բաց ա-քարեին զվէմն և զհողն, և հանեալ զմարմինն

Եւ                                                  նորին

զայն արիւնաթաթախ, և տեսեալ զման-
կադոյն տիոն, գիտացին՝ եթէ առ ժամայն
է կատարեալ նահատակն. և սփռեալ հան-
դերձս պատուականս՝ պատեցին զնա. և ա-
ռեալ գնացին առ ընկերս իւրեանց, աւե-
տիս տալով՝ եթէ գանձ մեծ գտաք յաւուրս
յայսմիկ. և առ խնդութենն ոչ հետևէին
'ի տեղիսն՝ յոր երթալոց էին, այլ՝ դարձան
յՏն իւրեանց:

Մայր սորին էր 'ի նոցանէ՝ հաւատացեալ, յոյժ
մեծատուն բազում ստացուածովք, և ա-
նուն նր Նսթեր կմ Եսթայոս. և կին նորա
ամուլ էր. սա ուխտեաց յայտնապէս առա-
ջի ընկերացն իւրոց, և ասէ. եթէ տացէ
ինձ ած աղօթիւք Սբյս այսորիկ զաւակ ա-
րու, և մխիթարեսցէ զիս և զամուսինն իմ;
շինեցից սմա տուն աղօթից յընչից իմոց, և
պատուեցից 'ի նմա զոսկերս սորա զամ ա-
ւուրս կենաց իմոց. և զարդարեցից ամ ե-
րեսելի ոսկւով՝ որ ինչ պէտս է նմա. և
զինքս զՍբս արարից ինձ որդի և ժառան-
գորդ փոխանակ ծննդոց իմոց. և յորժամ
ստուգեցից վՏ անուան սորա, անուանե-
ցից զմկայարանն 'ի յիշատակ անուան իւ-
րոյ. և կոչեցից զորդին իմ, զոր տացէ ինձ
ած 'ի ձեռն աղօթից Սբյս, յանուն դորա.
և եղիցի Սբդ ինձ որդի, և ես եղէց աշա-
կերտ և ծառայ դորա. և հանցի; քՏ ինձ Ծ
դմա մասն յանանցական Տին:

Մրդ յորժամ հասին յՏն իւրեանց, առեալ
տան զմարմինն սբյ վկային՝ եդ 'ի տան իւ-

րում մեծաւ պատուով. և ցուցեալ ընտա-
նեաց իւրոց՝ պատմեաց զուխտն, զոր արար
առաջի ա̃յ յանուն նորա. և եբաց ա̃ծ զար-
գանդ կնոջ նր, և յղացաւ. և եղև ուրախու-
թի մեծ 'ի տան նորա: Յայնժամ այրն հա-
ւատացեալ փութացաւ վկայարան շինել
նորին. և փափկաղանի կատարեաց, և զարդա-
րեաց պէսպէս սպասուք. և կանխեալ ինքն
և ընտանիք իւր անդ՝ յաղօթս կային, և ա-
ղաչէին զա̃ծ, զի շնորհեսցէ զկատարումն
խնդրոյ իւրեանց, և գտանայցեն զանուն նա-
հատակին քի̃:

Իսկ մանկունքն ընկերք նորին՝ յորժամ եկին
ի̃ս աւմորութենն 'ի գերեզմանն նր ողբալ, տե-
սին զվէմն թաւալեալ, և զգերեզմանն ու-
նայն 'ի մարմնոյն. բայց միայն հողն կայր արիւ-
նախառն, և հոտ անոյշ բուրէր 'ի տեղւոջէն.
հիացան երկիւղիւ մեծաւ առհասարակ, և
մեծաբարբառ հառաչէին. ոմն ասէր, թէ գա-
զանք յափշտակեաց. այլ ոմն՝ թէ ծնողք իւր
եկեալ բարձին զնա. այլք թէ քրիստոնեայք
գողացան. և ոչ կարէին կալ 'ի մի̃ իրացն.
և զարմացեալք գնացին 'ի տունս իւրեանց,
և պատմեցին զա̃մ եղեալսն 'ի մկրտութե̃
անտի առ ղամեհի մինչև 'ի թաղումն. այլ
այժմ մարմինն նորա չէ̃ անդ 'ի միջի. Իսկ
զի կանխեալ էր յառաջագոյն համբաւ 'ի
քաղաքին, եթէ ղեւի սպան զորդի իւր զա-
մեր, յայտնի եղև նահատակութի̃ նր մանու-
կանն:

Յայնժամ յարեան հաւատացեալքն՝ որք
ծնողք

ծնօղք էին մանկանցն հոլոճաց, և այլք
բաղումք ընդ նմ, և գնացին ջերմեռանդն
հաւատով 'ի տեղի կատարման սբյն. և գը-
տին զվէմն ներկեալ արեամբ նորա, և զգե-
րեզմանն թափուր 'ի մարմնոյ: Եւ տեսեալ
հետս կարաւանի այն ինչ անցելոյ առ տե-
ղեաւն՝ գուշակէին, եթէ անցաւորք բար-
ձին. այլ թէ յո՛ տարան՝ ոչ գիտէին. ասեն.
արդարև զանձ մեծ հեռացաւ յֆէս մերմէ:
Եւ ինքեանք փութացեալ շինեցին մատուռն
փոքր 'ի վր գերեզմանի նահատակին, և ե-
դին զվէմն զայն 'ի մէջ վկայարանին. և
զնշան տրունական խաչին 'ի վերայ վիմին
կանգնեցին, և գրեցին 'ի նմա, թէ այս
տեղի է կատարման վկային քնի սբյն աբ-
դըլմսեհի: Եւ այնուհետև ընթանային
հաւատացեալք ֆին այնորիկ 'ի կողմանց
կողմանց 'ի վկայարան անդր սբյն, և բժշ-
կէին յախտից իւրեանց. և սփռեցաւ համ-
բաւ սքանչելեացն՝ զոր առնէր ած 'ի ձեռն
սբյն, ըն ամ ֆն արևելից:

Եւ 'ի գալ միւս տարւոյն եկեալ վաճառա-
կանացն այնոցիկ ընդ նոյն ճանապարհ առ
գերեզմանաւ սբյն, և տեսեալ անդ մա-
տուռն կանգնեալ, հարցին և գիտակ եղեն
կատարման սբյն և անուան նորա. և ին-
քեանք պատմէին՝ թէ որպէս բարձին ըզ-
մարմինն և տարան յֆ իւրեանց: Արդ և ըզ-
ճան զայս սպասաւորք մատրանն, աղաչե-
ցին զբարեպաշտ վաճառականսն՝ որ առ իւր
ունէր զպատուական զանձն յիւրում վկայա-

 րանի,

րանի, զէթ միայն մի շնորհել նմա 'ի նշխա-
րաց սրբոյն 'ի պատիւ և այս վկայարանիս' որ
'ի տեղւոջ կատարմանն. և նա կատարեաց
զխնդիր նորա 'ի դառնալ իւրում 'ի տուն իւր։
Այր և եգիտ զկին իւր ծնեալ զաւակ արու
գեղեցկատեսակ և զուարթ երեսօք. և ա-
ռեալ զորդին' ետ մկրտել 'ի վկայարանի
նշխարաց սրբոյն. և անուանեաց զանուն նորա
աբդլմսեհ առ 'ի յիշատակէ սրբոյն. և արար
ուրախութիւն մեծ յաւուր յայնմիկ ամենայն ժողո-
վրդեանն։

Յայնժամ պատմեաց և կինն առն իւրում,
թէ յետ մեկնելոյ քո աստի երևեցաւ ինձ
սուրբն Աստուծոյ 'ի տեսլեան, և ասէ ցիս. ահա ծըն-
ցիս որդի ըստ նմանութեան կերպարանաց իմոց,
և կոչեսցես զնա յանուն իմ։ Եւ ես ասեմ.
իսկ ո՞վ ես դու տէր իմ, որ կոչեցից յանուն
քո զորդին իմ։ Նա ասէ. յորժամ դառնայ
այրն քո 'ի ճանապարհէն, և զայս խաղաղու-
թեամբ յԱստուծոյ անտի' ուր եսն եմ սնեալ, նա
պատմեսցէ զանուն իմ. և կատարեցաւ ամենայն
ըստ բանի սրբոյն։ Եւ եղև այս ամենայն յուրախութիւն
ամենայն հաւատացելոց արևելեան կողմանցն.
և անուն սրբոյն հռչակեցաւ ընդ ամենայն տունն պար-
սից և ասորեստանեայց և միջագետաց և
հայոց. և սքանչելիք նորա քարոզեալ լինէր
առ ամենեսեան. և պանծալի ճգնութիւն վը-
կայութեան նորա լսելի լինէր յամենայն բերանոյ ա-
ռաւել քան զյաղթողական հանդէս զօրա-
վարաց և թագաւորաց. և ամենայն քրիստոնեայք պար-
ծէին նովաւ առաջի հրէից և հեթանոսաց։

Իսկ

Յակ զևի հայր նր 'ի ծերութեն ժամանակին տագնապէր 'ի դիւաց . և 'ի միում աւուր ըլկեալ յոյժ՝ զարկոյց զնա զգետնի . և իբրև յոգիս ապաստան եղև՝ գոչէր զևի ողորմագին , և ասէր . որդեա՛կ իմ ասեր՝ մի՛ ըն արժանեաց իմոց ընկալայց հատուցումն 'ի քէն ։

Զայն լուեալ որդւոց նր՝ բարձին առժամայն զհայրն իւրեանց , և ածեալ 'ի մատուռն սրբյն՝ կացուցին առ վիմին , որ ներկեալ էր արեամբ ծառային քի . և անդէն փութապէս ընկալաւ զբժշկութի . և հաւատաց 'ի քս և 'ի ծառայ նորա , և մկրտեցաւ ամ տամբ իւրով յաւազանի անդ ջրհորոյն՝ ուր մկրտեալ իսկ էր և ինքն աբգլմսեհ ։ Առ այսպէս օրհնէր նր վկայն զամենեսեան 'ի քս . քանզի և այլք բազումք 'ի հրէից և 'ի մոգուց գային առ նրն հաւատով , և ըու-նէին զառողջութի հոգւոյ և մարմնոյ ։

Առ այնչափ մեծացաւ անուն սրբյն , զի և հագարացիք՝ որք յետ սակաւուց զօրացան յարևելս , պատուիւ մեծ առնէին ծառային քի , և ուխտս դնէին յանուն նր ։ Որպէս զմիոյ 'ի նոցանէ՝ որ էր 'ի տաճկաց մեծագունից , պատմի՝ թէ կորուսեալ երբեմն զերամակս հազարաւոր ուղտուց իւրոց յահագին անապատին , և անկարացեալ գտանել՝ ուխտեաց ասելով . ծառայ քի և վկայ նր՝ եթէ դարձուցես յիս զկորուստն իմ , մի 'ի տասանց տաց քեզ տասանորդս . և յորժամ դարձաւ այրն 'ի տուն իւր , ահա ուղտք նր հանդերձ կազմածովքն հասեալ կային առ դուրս . և

ոչ կորեաւ 'ի նմանէ և մի ։ Սոյն յորժամ թուեաց զնս, ուրախ եղև յոյժ ․ և անդէն սորբեցաւ ա̄ծ խոստովանին իւր ․ զի 'ի տասանորդելն` տա-նէր բազում ուղտս հանել յընծայ նմին ․ այլ ասէ, բաւական է նմին տասն ուղտ միայն ․ զի ոչ աշխատեցաւ 'ի ժողովելն, և ո՛չ ինչ ծախեաց վ̄ն նց ։

Ասեն ցնա բարեկամքն իւր ․ ո՛չ այդպէս ո՛վ մեծդ, այլ զոր խոստացար` հատո՛ նմա ․ զուցէ այլ ինչ պատահիցէ քեզ, և կարօտաս-ցես, և ոչ օգնեսցէ քեզ ․ բայց նա ոչ լուաւ նց ․ այլ միայն տասն ուղտ առաքեաց 'ի վկա-յարան նմին` որ 'ի շիգար քաղաքի ։ Սոյն եղև յետ ոչ բազում աւուրց 'ի հանել զուղտսն ա̄մ յարօտ, ն̄ք ա̄ծ ելանելն 'ի դաշտ` առժա-մայն ցրուեցան, վարելով և զծառայսն` որ հեծեալ էին 'ի նս ․ և հետք նց ոչ ևս ուրեք յայտնեցան ։ Սոյն լուեալ առնն զկորուստ ուղտուցն և զծառայից, զգեցաւ զամօթ ․ և սկսաւ աղաչել զբարեկամսն` երթալ առ նմն և երաշխաւոր լինել վ̄ն կատարման ուխ-տին ։ Այլ և մերձ եղեն նք 'ի շիգար, տեսին 'ի հեռաստանէ` զի ուղտերամակքն ամե-նայն գունդագունդ հաւաքեալ դային 'ի վկայարան նմին ։

Այնժամ զահի հարեալ և սքանչացեալ` ասեն ցսպասաւորս վկայարանին ․ արդարև մեծ և զօրաւոր է նահատակս այս ․ փոխա-նակ զի սակաւ իշխանն ուխտի նր, առհա-սրկ զա̄մ ուղտսն առ ինքն ամփոփեաց ․ և արդ աղաչեցէք, զի առցէ զիւրն ա̄ծ առաջին խոստա

ռեան սկզբս ՚ի տօնացոյցն մեր երկեք լինել ՚ի ձեռն մեծին մովսէսի կաթղկսի յաւուրս նորոգութե յաբեթական տոմարի. զի այն ինչ լեալ էր նահատակութիւն արգլմանէն, և հանդիպեցեալ սքանչելիքն նշ է տօմ արևելս. որպէս և պարսիկ վկայք ժամանակին՝ գրեցար ռամիկ, և յիշատակութեամբ տօնն՝ ՚ի ձեռն նորին մովսէսի եղան ՚ի տօնացուցի :

Կարօտիմք ստուգել զորոշ տարի կատարման սկզբն արգլմանէն, որ վրիպակ գրչութե ինէք խրթնացեալ ասանի ՚ի Ճառընտիրն Բ, այսպէս. * Ցամին չորրորդի
,, տասնչորրորդի թուականին հայոց, մինչ խաղաղ-
,, ռեալ էր մաքութե իշխանութեանն պարսից, և
,, հրէայք համարձակագոյն էին ՚ի շինգարացւոց Ցին.
,, Այր ոմն էր հրէայ ՚ի Շինգար քաղաքէ . . . զէի || . ևն :



ՆԸ

# ՆԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Անդրէի զօրավարին, և բանակի նորին ։

Հ. Յ. Ն. օգոստ. 19։ Ճառընտ. Ռ. յծէ=յհէ. Բոլլանդեանն գիրքս. 'ի Գ. հատ. օգոստ. էջ. 720=726։ Մետափր. տա տպրեալ։ Ռաբոնեա յամի. 301. էջ։ (1)

ՄԵԾ ԵՒ ՀՌՉԱԿԱՒՈՐ մեծայն քան զոր անդրէաս զօրավար, կամ ստրատելատ ըստ յունականին, եր մի 'ի զօրագլխաց կայսերական գնդի եղելոյ յերկրին ասորւոց ընդ ձեռամբ անտիոքայ արեւելեան սպարապետի, յաւուրս անօրէն թագաւորացն դիոկղետիանոսի եւ մաքսիմիանոսի. որոց սադրեալ 'ի դիւէն՝ 'ի ձեռն անհամ հրամանաց ջանային շիջուցանել զլապտեր հաւատոյ, եւ բառնալ զպաշտօն քրիստոնէութեան, յորդորելով եւ ստիպելով զամ հաւատացեալս՝ եւ նախ զզօրականացն դասս, 'ի խաւարային պաշտամունս կռոցն ։

Իսկ՝ յայնպիսի դառնութեան ժամանակի երիցս երանեալ քաջ նահատակն անդրէաս փայլէր իբրեւ զվարդ 'ի մէջ փշոց, եւ երեւելի

լի-

լինէր կրկնակի զխոնարհութիւն ը͞ն մարմնոյ և
ը͞ն հոգւոյ. վ͞ս զի էր քաջայայտ 'ի մարտս
պատերազմի առաքինի արութ͞բ ը͞ն դէմ բար-
բարոսաց, մինչև անուանի լինել քան զան-
ուանիսն 'ի զօրագլուխս. և միանգամայն
փայլէր բարեպաշտութ͞բ քրիստոնէական հաւատոյն.
և այն` չև ևս մկրտեալ. զի կամ 'ի քննու-
թեն հաւատոց, և մնայր դիպող ժամա-
նա ընդունել զկնիքն ն͞ր, և կի͞մ ը͞ն սովորութե
ոմանց ամանց 'ի ժամանակին` 'ի վերջինս ա-
ւուրս խորհէր մկրտիլ: Այլ քանզի բոլորով
սրտիւ հաւատացեալ էր յա͞ծ կենդանի, և
ամրացեալ ա͞ծային յուսով, ոչ միայն զանձն
իւր հաստատուն պահէր 'ի ք͞ս, այլ և զխո-
նարհաց` որ ընդ ձեռամբ իւրով էին, առան-
ձինն քարոզէր զաւետարանական բանն, և
ձգէր 'ի հաւատս ճշմարտութե:

Իսկ սպարապետն անտիոքոս` այր կռամոլ
և դժնդակ բռնաւոր, քանզի ինչ ոչ գիտէր
զհաւատոցն անդրէի, հայեցեալ 'ի գործս
քաջութեն ն͞ր և 'ի հաւատարիմ ծառայութե
յիրս արքունի, սիրէր զնա առաւել քան ըզ-
բազումս. նոյնպէս և այլք 'ի մեծամեծաց
և 'ի գործակալաց մեծարէին զնա ը͞ն կարգս
իւրեանց մոլար օրինացն:

Այս եղև յաւուրսն յայնոսիկ յորժամ Թշնա-
միք հակառակ Թագաւորութեն հռովմայեց-
ւոց 'ի կողմանս արևելից, այս է պարսից.
և առաւար գունդ մի 'ի նոցէ դիմեաց մօտ 'ի
սահմանս ասորւոց. ուստի անկաւ երկիւղ
մեծ 'ի վ͞ր բնակչաց երկրին, և էին 'ի տագ-
նապ

ճեալ մեծ ։ Յայնժամ ասէ Անտիոքոս ցզօրա-
վարն իւր Անդրէաս ․ արութե և քաջութե
անունն քո ամ ուրեք քարոզեալ է ․ զի վանումն
ամ պատերազմաց ՚ի ձեռն քո ծանուցաւ ամ
մարդկան , վասն որոյ և յայդպիսի պատիւ վերան-
բարձար ․ և այժմ առաւել ցուցցես զքաջա-
թի յաղթութե քո յայսմ պատերազմի , զի
առաւել պատուեսցիս ։ Ըստ այրին Ան-
դրէաս յուսացեալ յԱծ՝ որ խոստացեալն ըզ-
պատերազմունս , կամակար յանձին կալեա
զհրաման իշխանին , և ընտրեալ իւր արս
հինգ հարիւր իննսուն և ինն , զորոց գխտէր
զլութի , դէմ եդեալ խաղաց գնաց ընդ-
առաջ թշնամեացն ՚ի հանդիպումն մեծի պա-
տերազմին ։ (2)

Իսկ տեսեալ զբազմութի հակառակամար-
տիցն՝ յորոց զանգիտել սկսան իւրքն սակաւ-
թուով , քաջալերեցաւ յանձն իւր՝ մարտա-
կից ունելով զՔս ․ խօսել սկսաւ ընդ զօրս իւր ,
և ասէ ․ Այ՛ զօրք այժմ է ժամանակ Ածա-
ծանութե՝ դառնալ ՚ի մոլորութե կռոցն ,
և հաւատալ յԱծ երկնի և երկրի , յորոյ ՚ի
ձեռին է ամ յաղթութի , և ՚ի վերին օգնա-
կանութե բարձրելոյն հայցել զփրկութիւն
անձանց մերոց ․ քանզի նա է Ած կենդանի և
կենդանարար , արարիչ ամի և անյաղթելի
թագաւոր , և օգնական լինի ամենեցուն՝ որ
կարդան առ նա , և փրկէ յամ նեղութեց ։
Արդ այսուհետև հաւատացէք յամենասուրբ
երրորդութիւն՝ ՚ի Հայր և յորդի և ՚ի սբ հո-
գին ․ և այնպէս միջամտեալ լիցուք ՚ի պատե-
րազմն

րազմն․ և գիտեմ վստահութեամբ ՚ի մարդասիրութիւն այն իմոյ , զի գթասցի իբրև յիւր հաւատացեալ ժողովուրդ․ և զօրավիգն լինելով մեզ՝ մատնեսցէ զթշնամիսն ՚ի ձեռս մեր, և հալածական արասցէ զբանակ նոցա առաջի մեր․ զի կոխեսցուք զնոսա որպէս կաւ գուեհից՝ ըստ մարգարէական բանին ։

Զայս լուեալ զօրացն յառաջինի զօրավարէն իւրեանց՝ բոլորով սրտիւ ընկալան զբանս նորա․ քանզի ծագեաց ՚ի նոսա լոյս աստուածգիտութեան , և լուսաւորեցան միտք նոցա․ և անդէն ՚ի տեղւոջն ոչ ՚ի միոջէ բերանոյ աղաղակեցին , և ասեն․ հաւատամք և մեք՝ որ միշտն քարոզէիր , ՚ի հայր ամենակալ և յորդին միածին և ՚ի սուրբ հոգին՝ ՚ի մի աստուած․ որ փառօք և զօրութեամբ և իշխանութեամբ օրհնեալ գովի և փառաւորի յերկնաւորաց և յերկրաւորաց․ և օգնական լինի հաւատացելոց իւրոց․ նորա զօրութեամբն աներկբայ յաղթեսցուք թշնամեաց ։

Իսկ այնպէս առհասարակ զինեալք հաւատովք , և յաստուած ապաւինեալք՝ զօրացան յանձինս իւրեանց․ և քաջալերեալ զմիմեանս՝ այր զարամբ ելանէին յարձակիլ ՚ի վերայ հակառակորդաց ։ Իսկ իբրև խմբեցաւ պատերազմն , ետ տէր յաղթութիւն մեծ յաւուր յայնմիկ մեծին անդրէի և իւրոց հաւատացեալ զօրականացն․ զի զամենայն զօրս թշնամեացն փախուցեալ խորտակեցին․ զբազումս ՚ի նոցանէ սպանին , և զմնացեալսն ցրուեալ յիւրաքանչիւր տեղիս փախստական վարէին․ և ինքեանք

քեանք ողջանդամ դարձ առնէին 'ի տեղի ճակատուն յաջողեալք և բարձրացեալք ձեռամբ հզօրին ա̃յ, որ յամօթ արար զմարտուցեալսն ը̃դդէմ նր̃ բանակին, և փառաւորեաց զյուսացեալսն 'ի նա 'ի փառս անուան իւրոյ :

Ապա յետ յաղթութ̃ն ասէ ն̃ըն անդրէաս ցհաւատացեալ զօրսն իւր . տեսանէ̃ք զմեծամեծս ա̃յ, որպէս արար փրկութ̃ի այսօր . այսուհետև հաստատուն կացէք 'ի տ̃ր, զի արժանաւորք լիցուք յաւիտենական երանութ̃եցն՝ որ պահէին 'ի նա հաւատացելոց : Իսկ բանսարկուն մախացեալ ը̃ յաջողութ̃ի բանից և գործոց ծառային ա̃յ անդրէի՝ մեքենայէր չարաչար խարդաւանել զնա . մ̃ոյ կերպարանեալ զինքն 'ի հրեշտակ լուսոյ՝ եկաց յեղակարծ առաջի սբ̃յն անդրէի, և սկսաւ բանս առ նա խօսել հաւանելիս՝ որպէս թէ յերկնից եկեալ : Իսկ նա իմացեալ շնորհօքն ք̃ի՝ ասէ . ով բարիատեաց և ա̃մ ճշմարտութ̃ե թշնամի՝ ո̃չ դադարես 'ի խորամանկութ̃է, որ մ̃տ այդորիկ յերկնայնոց դասուցն անկար 'ի վի̃հ կորստեան : Յայնժամ զամօթի հարեալ բանսարկուին 'ի կշտամբութ̃է առն ա̃յ՝ ասէ . ո̃չ կացից յետս փորձել զքեզ մինչև ցվախճան : Իսկ ն̃ըն անդրէաս սաստեաց նմա, և ասէ . դարձցիս յետս ք̃ի զօրութ̃ն : (3)

Յետ այսորիկ չու արար առաքելին զօրավարն անդրէաս զօրօք իւրովք դառնալ առ մեծ սպարապետն անտիոքոս . և 'ի ճանա-

պար-

պարգևի՝ ընդ որ և անցանելին, զյաղթութեան գո-
վութին՝ քան ընծայելին ։ Այլ լուեալ Անտիո-
քայ յարանց ումանց չարաց գրգռելոց 'ի սա-
տանայէ, թէ քնի տան զփառս յաղթութեն՝
պչարեցաւ յոյժ (4). սակայն զչարութին խոր-
հրդոց իւրոց 'ի սրտի իւրում պահեալ՝ առա-
քէ զօրականս երկերիւր ընդ առաջ Անդրէի՝
ապաստաւորել նմ մեծարանօք 'ի պատիւ քա-
ջութեն, զոր գործեաց. միանգամայն և գի-
տել՝ վասն որոյ լուեալ, թէ արդարև զքս
փառաւորէ հանդերձ զօրօքն իւրովք, և
զածս նր և զպաշտօնեան արհամարհէ՞ ։

Իբրև հասին առ նա, և հարցին զողջունէ
նր, նա ընկալաւ զնս խնդութբ մեծաւ. և
յետ պատմելոյ նց զյաղթութին՝ զոր շնոր-
հեաց նմա տր, սկսաւ խօսել Ը նս վն քրիս-
տոնէութեն և զօրութեն հաւատոց ամենասբ
երրորդութեն, և վն յարութեն մեռելոց,
և հատուցմանն արդարոց և մեղաւորաց ։ Այլ
եղև առ մեծ 'ի մի նց, և հաւատացին յած.
վն զի ազդեցաւ նց 'ի վերուստ ածգիտութե
շնորհն. և օրհնեցին և գովեցին և փառաւո-
րեցին զած հանդերձ որ բանականն և զօ-
րախմբաւն Անդրէի ։

Իբրև եկն սբն 'ի քաղաքն իւրովք որ զօրա-
կանօքն, յանդիմանն եղեալ իշխանին՝ պատ-
մեաց նմա զյաղթութե պատերազմին և զկոր-
ծանումն թշնամեացն ։ Այլ նա 'ի լսել անդ՝
ատեայր զգոհութե կռոցն իւրոց. իսկ սբն Անդ-
րէաս ընդդէմ կայր, և տայր զփառս ամենա-
սբ երրորդութեն, և քնի առնէր զյաղթու-
թին.

թեան ։ Այլ անթիպատոսն հակառակէր, և հնա-
րէր դարձուցանել զնա 'ի ճշմարիտ խոստո-
վանութենէն . և յետ բազում պայքարելոյ՝
ասէ ցանդրէաս . ո՞չ գիտես, թէ քանի՞ բազ-
մութիւք ո՞րպիսի տանջանօք կորեան . ո՞րչա-
փաշեցի զնա՝ որք 'ի քո հաւատացին, և ոչ
ումեք ողորմեցայ . և արդ դու զի՞ այդպէս
յամառեալ պնդիս 'ի վր խաչեցելոյն՝ անձ
զնա խոստովանելով, և նովաւ լինել զյաղ-
թութին հռչակեցուցանես, որ ոչ փրկէ զհա-
ւատացեալս իւր 'ի ձեռաց իմոց ։ (5)

Իսկ սուրբն անդրէաս ասէ . ամ սբք՝ որ վն ան-
ուանն քո չարչարեցան և մեռան, դարձել
վերստին նորոգին, և պսակին յաւուր յայտ-
նութեան և գալստեանն քո . այսմ յուսոյ
ես ցանկացեալ սպասեմ, թերևս արժանի
գտայց ես արժանաւորացն յաւուրն այցելու-
թեան ։ Նարկութբ և սրտմտութբ լի եղև
բռնաւորն . այլ ակնածեալ յառնէն՝ հրա-
մայեաց զնալ նմա յերեսաց իւրոց, զի խոր-
հեսցի՝ թէ զի՞նչ արասցէ վն նր ։ Յայսմ
վայրի գրեն այլք, թէ բռնաւորն 'ի տան-
ջանս մնացից զանդրէաս՝ տարածելով զնա
'ի վր հրացեալ մահճաց, և զոմանս 'ի գոր-
ծակցաց նր 'ի փայտ բևեռեաց . այլ մերս
վկայաբանն որ 'ի ճառընտիրս, առանց յիշե-
լոյ զայլ տանջանս՝ 'ի վր բերէ զառաջիկայ
պատմութիւն քաջ նահատակութեն նր ։ (6)

Ապա 'ի խորհրդածութենէ չարին կամեցաւ
իշխանն հալածել զանդրէաս հանդերձ ա-
մենեքումբք՝ որք միաբանեցան ընդ նմա, 'ի
հե-

հեռաւորանակ Ե : Հրամայեաց երկուց հազա-
րաց զինուորաց հանել զսբ բանակն 'ի քա-
ղաքէն , և ցրուել յանդարձ օտարութիւն .
զի գիտաց զանփոփոխելի միտս անձնեցուն .
միանգամայն և ակն ունէր , թէ նոքա առ-
ահի վտարանդումն և տառապագին կենաց
զզջասցին և յօժարեսցին դառնալ իւրաքան-
չիւր յազգ իւր և յերկիր : Իսկ նոքա յանձն
առին զչարչարանս վն արքայութեան երկնից՝
քան առ ժամանակ մի վայելել 'ի մեղս և
յապականացու կեանս :

Իսկ իբրև հեռացան հարուստ մի 'ի քաղա-
քէն , ամբարձ զձայն իւր սբն անդրէաս , և
ասէ ցսբ բանակն . Յիշեցէք զաւետարանա-
կան բանն՝ զոր ասաց քս փրկիչն մեր . Երա-
նի՛ ասէ՝ որ հալածեալ իցեն վն արդարութէ ,
զի նց է արքայութիւն երկնից . արդ մի՛ ոք 'ի
ձէնջ խորհրդովն թիւրեսցի , և վրիպեսցի
յայնմ երանութէ . զի անսասանելի է , և
անքակտելի՝ կեանքն այն , և ոչ երբէք լու-
ծանի . այլ կայ և մնայ յաւիտեան : Զայ-
սպիսիս լուեալ սբ բանակին 'ի բերանոյ սբյն
անդրէի , որ հոգւով այ խօսէր , առհասա-
րակ զուարթացան քաջացան յանձինս իւ-
րեանց . և յած խրախուսեալք ուրախութե-
սրտի գոհանային զանէ . և ցնծալից բար-
բառով փառաւորէին զնա միայն ճշմարիտն
ած՝ զհայր և զորդի և զսբ հոգին :

Իսկ երկուց հազարացն զայս ամ տեսեալ և
լուեալ՝ զզջացան յանձինս իւրեանց շնոր-
հօք սբ հոգւոյն . և յարտասուս եղեալ ազա-

չէին զամենակալն ած՝ ընդ մր բանակին ՚ի թիւ անկանիլ հաւատով յորդեգրութեան նորա ։ և միաբանել ամենեքեան՝ բարձրացուցանէին զօրհնութի ՚ի բարձունս ամենասուրբ երրորդութեն ։ և եղև ուրախութի անպատմելի. առաջինի զօրավարին և ամ զօրուն ։ և այնպէս միով ոգւով դէմ եդեալ գնային՝ յոր ուղղեալն էին, ՚ի սահմանս կիլիկեցւոց, ոչ կամեցեալ ուրուք այլ դառնալ առ անտիոքոս ։

Եհաս բանս այս վաղվաղակի ՚ի լսելիս չարախորհրդոյ իշխանին անտիոքու ։ խռովեցաւ և զարհուրեցաւ յանձն իւր ։ և ոչ գիտէր՝ թէ զինչ արասցէ, կամ զիարդ գտանիցէ ելս իրացն ։ Կոչեաց առ ինքն զսինկղիտոսն և զխորհրդականսն ամ ։ և խորհեալ նոքօք՝ գրէր նամակ առ վերակացու կողմանցն կիլիկեցւոց օրինակ զայս ։ Անտիոքոս մեծ՝ հռչակելի և յաղթօղ, իշխեցօղ և հրամանատար ամ նահանգի կողմանց ասորւոց, սիրելի եղբօր մերոյ սելևկիոսի՝ մեծի կուսակալի՝ խնդալ ։ Որպէս զի ոչ անգիտասցի քայլին զօրութիդ յաղագս անդրէի զօրավարին մերոյ ։ որ մեծաւ պատուով պատուեալ ՚ի մէնջ, ապստամբեալ արհամարհեաց զպատիւ մեր և զածսն, հաւատացեալ առ խաչեցեալն քս ։ Եւ հալածեալ ՚ի մէնջ՝ զբազումս յինքն յարեցոյց, ամենեքումբք խոստովանել զքս՝ ած և թագաւոր յաւիտենից, հակառակ ինքնակալ թագաւորացն խորհելով ։ Արդ յայսմ երևեսցի քաջութի եղբօր

մերոյ, զի ուր և հանդիպեցիս՝ մաշեցեա գտանես որով սուսերի. ողջ լեր քաջդ սելև-կիոս :

Այս ինքն տարեալ եղև Թուղթն, և ընթեր-ցան առաջի նր, առժամայն ինքն զգացեալ չար զայրացեալ 'ի միտս իւր՝ լի թունաւք դառնութե, 'ի խորհուրդ մտեալ հնարէր՝ թէ որով կերպիւ կամ որպիսի հնարիւք կա-րասցէ որսալ զնա. պատրաստէր զինքն, և ամենայն զօրաց իւրոց պատրաստ լինել հրա-մայէր :

Իսկ երանելին զօրավարն անդրէաս հալածա-կան եղեւ նք բանակաւն յաղագս քնի յան-տիոքայ մայրաքաղաքէ ասորւոց, եկն նախ յաղեքսանդրիա. և ճանապարհ կալեալ ա-ծովեզերբն ովկիանոսի ընդ սահմանս կիլիկե-ցւոց գաւառին՝ հասանէ իւրովքն հանդերձ 'ի տարսոն կիլիկեցւոց : Ուր հանդիպեցան պետրոսի եպիսկոպոսին տարսոն քաղաքի, և նոննոսի եպիսկոպոսի բերիայ քաղաքի. և մկրտեցան 'ի նոցանէ զօրավարն անդրէաս և զօրքն ամ առհասարակ՝ 'ի հայր և յորդի և 'ի սբ հոգին, և լուսաւորեցան լուսով ամծգիտութեն. և նոյնժամայն յայտնեցաւ երևմամբ տեսոյն զլոյս 'ի վր անձանց 'ի վե-րուստ 'ի ջուրսն մկրտութե, և զնահատա-կութե պսակն՝ որում հանդիպելոց էին առա-ջակայ երանութեն : Այս ողջունեալ օրհնե-ցան 'ի սբ եպսացն, և ճանապարհ կալան ընդ կողմն տորոսի :

Զայն ինքն տեղեկացեալ լսէր սելևկիոս,

ա

տայս այնուհետև այլազգունեաց ըղձեմս իւր
որք զառիւծ մռնչօղ և յափշտակօղ, և զհետ
մտեալ հալածէր զնս բանակն. և ուր և հա-
սանէին, գազանաբար յարձակեալ 'ի վր մե-
ծամեծս գնդաւ՝ յանխնայ կոտորել կամէր
զամենեսին ։ Սակայն սբցն օգնականութի
'ի վերուստ ընկալեալ, և քաջութբ 'ի դիմի
հարեալ թշնամեացն հաւատոյ՝ յաղթահա-
րեցին զնս. մինչ զի ոչ զօրէին զդէմ ունել
զերանելւոյն նահատակացն, և խափանել զըն-
թացս նց. վասն զի հոգին սբ առաջնորդէր
նց մինչև 'ի սահմանեալ տեղին յնյ, ուր և
կատարելոցն էին ։ Նաև հասեալ մինչև 'ի տաւ-
մեղինէ և 'ի կողմն եքամնի (ըստ այլոց՝ 'ի տա-
մաղմէ գաւառ և յամուրն ուրքեսոն մօտ 'ի
մելիտինէ հայոց), եկեալ բանակեցան 'ի տեղ-
ւոջն՝ որ կոչիւր քափարորիոս և քարափաթոն,
(կամ կողմանք քաւարորիոյ և քարաւաթաց-
ւոց ), 'ի դժուարին վայրս 'ի հովտի միում
'ի մէջ լերանց, գետոյ փոքու ընդ մէջ անցա-
նելով ։ Նաև սելևկիոս պնդեցաւ զհետ նց.
և հասեալ 'ի նեղուցս քափաարայ (կմ կապա-
սարայ յանդդրոկաղոն գաւառի), պաշարեաց
զնս ։ Իսկ սբ բանակն դիմեալ առ հասարակ
յերիվարս և 'ի զէնս իւրեանց՝ սկսան պա-
տերազմել ընդ նս ։ Զայն տեսեալ սելևկեայ՝
եթէ չկարէ մարտիւ յաղթահարել զնոսա,
դաշնադրեաց առ ետեղ, և կալաւ զանցս լե-
րանցն . իսկ քաջ նահատակքն բանակեցան
'ի ձորամիջի սց զբանակս նյ ։ (7)
Յայնժամ վայրի սկսաւ սբ զօրավարն անդրէաս

քաջալերել զզօրս իւր, և ասէր այսպէս. Եղբա՛րք իմ սիրելիք և քաջ նիզակակիցք իմ, անհաւատիկ ժամ արիաբար քաջանալ, ո՛չ մարմնով, այլ՝ հոգւով, և հաճոյ գտանիլ երկնաւոր Թագաւորին. անհաւատիկ ժամ մարտի և յաղթութեան՝ ո՛չ երկրաւոր զինուք, այլ՝ սպառազինութեամբ հոգւոյն այ, տալով զանձինս կամակար յօժարութեամբ 'ի մահ վն քի. զի ոչ եւս է մեզ պատերազմ ընդ մարմնոյ և ընդ արեան, այլ՝ ընդ իշխանութիւնս և ընդ պետութիւնս և ընդ աշխարհակալս խաւարի այսոցն չարութեան, որք խորհին սպանանել զհոգիս՝ քան եթէ զմարմինս: Ապա հաւատով և յուսով և սիրով ամրացեալք, մի՛ երկիցուք յառաժամանակեայ մահուանէ, այլ՝ անվեհեր տացո՛ւք զմարմինս 'ի զենումն վն սիրոյ փրկչին մերոյ, որ զանձն իւր մատնեաց 'ի սէր մեր. զի և անթառամ պսակացն արժանասցուք:

Այսուհետև հաստատունն կացէք 'ի հաւատս տն մերոյ յսի քսի. պինդ կալջիք ըզշնորհսն՝ որ ընձեռեցաւ ձեզ. յիշեցէ՛ք զերանաւէտ պարգևսն զխոստացեալսն ձեզ 'ի տնէ յսէ քսէ: Մի՛ ոք 'ի ձէնջ խորհրդոցն թիւրեսցի 'ի շնորհացն՝ յոր կոչեցայք. մի՛ ոք երկրաւոր կենացս ցանկացեալ՝ 'ի յաւիտենական կենացն զրկեսցի. 'ի դուռն գու՛թի հասեալ կամք, մի՛ ոք արտաքս դարձցի, և 'ի հարսանեաց առագաստէն վրիպեսցի: Զբարուոք պատերազմ պատերազմեցաք, զընթացսն կատարեցաք. և անհաւատիկ պա-

տրաս

տրաստեալ կամք վարձուցն հատուցման . և Թագաւորն մեր է երկնային փառօքն պսակել զմեզ :

Պարուո՛ք է մեռանել վն անուան տն մերոյ յի քի , զի ընդ նմա կենդանասցուք , և փառաւորեսցուք յանձառ և յանապական բարիսն : Պարուո՛ք է փոխանակել զայս սնոտի և զապականացու կեանս ընդ անմահական կենացն : Պարուո՛ք է ուրանալ զՅակաւն մեծուԹիս , զի զհանդերձելոյն շահեսցուք զբազմապատիկ արդիւնացեալսն , ընդ միոյն երեսուն , ընդ միոյն վաԹսուն , ընդ միոյն հարիւր . նաև առաւել ևս՝ որ ոչ ընդ Թուով անկանի : Զի և փոխանակ հալածական լինելոյ մեր յերկրաւոր Թագաւորաց՝ երկնաւոր Թագաւորին մերձաւորք լիցուք , և ընդ նմա Թգրեսցուք . և փոխանակ երկրական սիրելեաց՝ եղբարց և ազգականաց , զորս Թողաք յերկրի , ընդ զուարԹունս երկնից խառնել միանամք , և ընդ նս զուարձացեալ պարեմք յանձառելի ուրախուԹեան . և փոխանակ հայրենի ժառանգուԹեցն՝ յորոց անջատեալ ՚ի բաց կացաք , զարքայուԹին երկնից ժառանգեսցուք , և յանպատում բարուԹիս վայելեսցուք ՚ի քս յս ՚ի տր մեր :

Զայս և առաւել քան զսոյն խօսեցաւ զօրավարն առաքինի՝ նքն անդրէաս ցզօրս իւր . և նք քաջալերեալ շնորհօքն քսի՝ զօրացան ՚ի հոգիս իւրեանց . և դիմեցին առ հասարակ ընդդէմ սրոյն յօժարուԹբ՝ մեռանել վն մեծի յուսոյն , որում ակն ունէին : Իսկ սե-

լեկիոս զայրացեալ ցասմամբ մեծաւ՝ հրամա ն տայր իւրոցն, մի խնայել ումեք 'ի նոցանէ, և մի ապրեցուցանել զոք, այլ չարաչար կոտորել զամենեսեան:

Իսկ 'ի ժամ կատարմանն այսպէս ասէր ս͞բ զօրավարն անդրէաս հանդերձ ս͞բ բանակաւն. Տէր ա͞ծ ամենակալ՝ որ կոչեցեր ըզմեզ յորդեգրութիւն շնորհս, և զօրացուցեր զմեզ 'ի կամս ողորմութեան քո, արժանաւորեա՛ զմեզ ս͞րբցն դասուց. զի վ͞ս քո մեռանիմք՝ ածեալք ո͞պ զոչխարս 'ի սպանումն: Մի՛ թողուր զմեզ 'ի քումմէ բարերարութենէդ՝ զյուսացեալքս և զապաւինեալքս 'ի քեզ: Տուր մեր զողորմութիւն շնորհս 'ի տեղի հանգըստեանս մերոյ, և բժշկեա՛ զցաւս ախտաժետաց՝ ա͞ծ իւրաքանչիւր հայցուածոց հոգւոյ և մարմնոյ. և արա՛ հալածումն այսոց պըղծոց. և յա͞մ վտանգից զերծո՛ զհաւատացեալս 'ի քեզ. զի փառաւորեսցի անուն քո ս͞բ: (8)

Իսկ զայս ասացեալ՝ առ հասարակ սպառեցան 'ի սուր սուսերի՝ բարի խոստովանութ͞բ 'ի փառս ամենասու͞րբ երրորդութեան: Եկն բարբառ 'ի վերուստ՝ որ ասէր. Եկա՛յք ընկալջի՛ք զմխիթարութիւն յարարչէն ամենեցուն. Եւ 'ի տեղւոջ հեղման արեան ձերոյ բղխեսցէ աղբիւր բժշկութեան, առ ա͞մ վտանգելոց առողջութի՛ւն յիւրաքանչիւր ախտից, և 'ի հալածումն այսոց պղծոց: Որպէս կատարեցան ս͞բ նահատակքն քո՛ 'ի ժ͞թ օգոստոս ամսոյ (յաւուր կիւրակէի՝ ա͞ծ ամանց, յերկրորդ

կերպով ժամու ) . և էր թիւ ամ̃ բանակին հանդերձ որ զօրավարաւն՝ երկու հազար և ութ հարիւր , որ անվրէպ հաշուէր հարազատ վկայաբանութեան ։ (9)

Իսկ անօրէն թագաւորքն 'ի խնդիր եղեն երանելի եպսացն պետրոսի և նաւանոսի՝ որք մերժեցին զամ̃ բանակն , և նոքա փախստական եղեն հանդերձ պաշտօնէիւքն իւրեանց երկիրպագածօք ա̃յ , եկին մինչև 'ի տեղի կատարման սրբոցն . և տեսեալ զաղբիւր բժշկութե , և զնշխարսն սրբոյ բանակին , մխիթարեցան 'ի նոր . և ամփոփեցին զնոսա 'ի տեղի հանգստեան անյայտաբար՝ փառաւորելով զա̃ծ . և դարձան յիւրաքանչիւր տեղիս , երբ զիջաւ հալածումն (10) . և յետ ոչ բազմաց խաղաղ դադարեաց 'ի թագաւորել մեծին կոստանդիանոսի . և հաւատացեալքն տօնախմբէին զյիշատակ վկայուէ նոցա ամ յամէ , որոց կատարումն եղև յամի տ̃ն իբր 300 ։ (11)

XX.XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ։

(1) Որ միանգամ քաջ միտ դնէ նախահաւանութեան անդրէի զօրավարի և բանակի նորին , տեսանէ զգեղեցիկ համեմատութիւն ը̃ երևելի զօրավարաց հանդիսացելոց յաղթի մրցում . քանզի նախընթաց վարք և քաջութիւն սոյն անդրէի՝ ոչ ինչ ընդհատ է 'ի գործոց սոյն սարգսի զօրավարի . և նախահաւանութիւն՝ յարենման ընդ մասին սրբոց վարդանանց զօրավարաց , և ընդ մասին՝ սրբոց տաւմեանց զօրավարաց ։ Եւ ո̃պ մեծանուն հանդիսացան յաղթելն , նոյնպէս և մեծն անդրէաս յաղթողն քանզի 'ի

մեզ և յայլս: Այլ և պլինիոս բոլլանդեանն ասէ 'ի սկիզբն քննութեան վարուց անդրէի զօրավարին. յերես. 720.

* Թէ քանի՛ մեծայիշատակ իցէ անուն այսր ամենա_
,, հռչակ վկայիս և ընկերաց իւրոց. և որչափ օրհնութ[եամբ]
,, մեծաց առ յետինս, ծխագոյնս վկայեն հին յիշատա_
,, կարանք, որք ընդդանէ աւանդեցան մինչև առ մեզ||:

Մեծ է առ մեզ այս վկայութիւն հանրական՝ տօնելով 'ի բազմայոյզ խուղարկութեամբ. Թող այնուհետև 'ի մատենաւոր բանս Շմայլաքննութեան գիմախոսել երևեսցի. այլ ունիմք յիշատակել յընթացս ծանօթութեանց՝ անաչառ քննութեամբ:

Զարմանալի գիպուած համարեսջիր զայն, զի որպէս 'ի մեզ սրբոյն վարդանի՝ մեծ անուամբ մեծարի յարգեանց, նոյնպէս և առ այլս սրբոյն անդրէաս՝ մեծ կոչի իրաւամբ. ընդ որոյ և Հառլենտիրն մեր անուանէ զնա * երիցս երա_
,, նեալ մեծ և հռչակաւոր վկայ սրբոյն անդրէաս զօրա_
,, վար||: Եւ ահա յայսպիսի կոչմանէ՝ այլ 'ի մեզ անուանուն որդւոյ քաջին վարդանայ ծագեալ անուն ընծայի 'ի պատմագրաց ոմանց. (որ կամ մեծ Թարգմանի, և կամ ծանիկանեան է Թարգմանելի), նոյնպէս և ոմանք յարևմտեան նոր վկայագրաց ընդ գալեսինոսի՝ ասացին, թէ նահատակակից անդրէի զօրավարի եղև և մագնոս ոմն կապադովկացի, կամ մագնոս եպս անտագնինայ. և այլք՝ թէ մականուն անդրէի էր մագնոս (որ թարգմանի մեծ). զուցէ լաւ ևս լինէր յունարէն մեգալէ կոչել (որ է մեծ). բայց այսպիսի ասացուածք չունին հիմն 'ի ստոյգ վկայաբանութեանց. յոյնք զայսպիսի երևելի վկայս կոչեն մեգալոմարգիւր, այսինքն մեծավկայ. որ է ստոյգ:

Խնդրելի է այժմ, թէ այն իցէ ստոյգ վկայաբանութիւն սրբոյս, կամ ստուգագոյն 'ի մէջ զանազանից՝ որ առ մեզ և առ այլս գտանին: Բայց 'ի բազմօրինակ վկայագրաց՝ զորս յիշատակեն քննիչք լինել առ յոյնս և առ լատինս, իբրև միաձայն ընդ գլխաւոր հանգամանաց պատմութեան, և միայն ընդ ոճոյն տարբերեալ, տեսանեմք՝ զի ամենեքին իբր հնագոյն և լաւագոյն օրինակ յառաջ բերեն զայն, որ կայ առ սուրիոսի յանուն մետափրաստեսի. որոյ քաղուած երևի լինել և որ ինչ աւանդի 'ի Հ. Յ. և Լ. պէսպէս օրինակաւ. Զնոյն տպագրէ և պլինիոս բոլլանդեան, և քննէ ընդ ստորութեամբ իւրում, ինչ ինչ իրաց (թէպէտև անհաւանելեաց) հաւան զինքն ցուցեալ, և բազում ինչ իրաց (թէպէտև հաւանելեաց) անհաւան: Իսկ բարոնիոս այնչափ անստգիւտ գտանէ

զայն

զայն վկայաբանութիւ, մինչև ընարէ ասել՝ թէ գուցէ առաջին հեղինակ նորա իցէ պետրոս եպս տարօնի, որ միրաւեացն և թարգեաց զսբն անդրէաս : զոր մեք այսպէս ունիմք իմանալ, թէ մետափրաստէս առաջի աչաց ունելով զհին զայն վկայաբանութիւն՝ եթէ 'ի պետրոս եպսէ և եթէ յայլմէ ժամակից անձնէ աւանդեալ, ըստ իւրական ոճոյ է յարմարեալ, և գուցէ նաև յայլոց հեղինակաց բաղադրեալ. այլ թէ ոչ՝ անտարակոյս մեզ երևի, թէ օրինակն ճառընտրիս մերոյ՝ որում անգէտ են քննիչք, կամ է նախկին յօրինուած ժամակից գրչի, և կամ հարազատ հետևորդ նորին՝ անխառն յայլոց անտայոց աւանդից և 'ի նշանակաց խարդախանաց, իբրև պարզագոյն անկեղծ և յատակ քան զամ օրինակս. և ստուգագոյն քան զամենեսին. վսյ և մեք զնոյն զայն 'ի մէջ բերեմք, թողեալ զայլոցն տարբերութիւս նշանակել 'ի կարգի ծանօթութեանս :

Ընթացք շարագրութեան մերումս վկայաբանութեան պահեցաւ 'ի մէնջ՝ գոյզն մի պարզաբանութբ եւեթ ուրեք ուրեք. բայց 'ի ճառօրէն նախաբանութենէն՝ զորով զանց արարաք ըստ մերումս սովորութեան. որ և ունէր զայս ձև օրինակի 'ի ճառընտրի. * Զանծային զանճառելի և զան_
,, իմանալի խորհուրդն, զանհասանելի և զանպարա_
,, գրելի զգաղանչելիսն, զանյաւ և զանպատմելի բարե_
,, րարութիւն, զանբաւ նոյ մարդասիրութեան զողորմու_
,, թիւն, զգաղանչելի և զաստուածիր պարգևսն՝ ո՞ բաւա_
,, կան լիցի պատմել և իմանալ. . . . ( ուր յետ նկարագրելոյ՝ թէ որպէս սրբք տմ սիրունք այ վաստակեալք, և զհետ երթեալք կոչմանն կենարարին՝ ակնկալութբ հանդերձեալ բարեաց անճառից՝. թողլն զնմ, և զանձինս ևս եսաւն 'ի մահ վս նն՝ միանալով ընդ նմ, սկիզբն առնէ վկայաբանութեանս՝ այսպէս ). Սակայն այժմ ոչ վս
,, բազմաց է պատմութիւս, այլ՝ յաղագս երիցս երա_
,, նեալ մեծի և հռչակաւոր վկայի՝ սբյն անդրէի զօ_
,, րավարի և զօրաց իւրոց ածազանից ընտրելոց մար_
,, տիրոսաց. որ 'ի ժամանակս անօրէն և ամպարիշտ
,, թգրացն գետկղետիանոսի և մաքսիմիանոսի || եւն :

(2) Սոր միաձայն ընթանան ցայս վայր վկայագիրք տմ ընդ ճառընտրի մերում և ընդ մետափրաստեսի, բց թէ սբն անդրէաս նախ քան զմիրտիլն գնաց յայս պատերազմ, սկիզբն առնէ ազինիոս ընդ քննութբ արկանել զպատմութիս՝ զարմացմամբ, և զարմանալի ձեռնարկութբ, ասելով յերես. 726. * Զարմանք են, զի արդէն ընկալեալ

,, լեալ պաշտօնեայ քո, բայց չէ եւ մերժեալ զանձն 'ի
,, վտանգ մահու իցէ եղեալ. եթէ ոչ ընթացեալ ես առ
,, սքանչելիս՝ որով նախագէտ լեալ իցէ յաղթութեան.
,, զոր և թուէր նշանակել 'ի բանի անդ ||. Յայս Հեղի-
մութիւն այնչափ յառեալ են խորհուրդք գրչիս, զի և 'ի
յառաջաբանական ծանօթութիւնս իւր՝ յերես. 721.
զնոյն 'ի դէմս ածէ բարոնիոսի՝ 'ի ցուցանել Հեգեմնի.
թէ չէ վկայաբանութիւն անստգիւս: Այլ առաջքն բանք
են, և այն՝ վայրապար. զի մի՞րդ իմանայ արգելզք իմաս-
տուն քննիչս զնմանօրինակ անցս այլոց բազմաց 'ի սրբոց
զօրավարաց և 'ի Թագաւորաց. ոչ առաջքն և կասկած
գիտանս և Թէոգոս մեծն 'ի բազում պատերազմունս
մտին՝ յառաջքան զմկրտիլն, Թէպէտև մին կանխաւ եր
հաւատացեալ, և միւսն 'ի քրիստոնեայ ծնողաց ծնեալ.
ոչ է իմաստնոյ չափել զգործս նախնեաց ը վիճակի
յետնոց. և ոչ արդարանայ քննիչն 'ի հերքել անդ ճար-
տարութ՟ զընթերցօղս, որ թէ առ սքանչելիս ուն-
ցին ընթանալ յոչ կարելն իւրե զինքն ուղիղ իմանալ
զգործս սրբ՟ց:

Զայսոսիկ ասեմ՝ ոչ 'ի գովել զայն սովորութիւն նախ-
նեաց, զի յոլովք յամեցուցանէին զմկրտութիւն (որ և
ծածաբանն գրիգոր ոչ գովեցաւ 'ի մէնջ յայսմ մասին,
նոյնպէս և որք 'ի բանակի վարդանանց կային գեռ
անկնունք, և 'ի վերջնում գեշերի մկրտեցան), այլ 'ի
ցուցանել՝ թէ որպէս սխալեն յետինք, երբ կամին՝ զի
վարք սրբ՟ց յայնժամ հաւանելի դատեսցին, յորժամ ոչ
ը եղելոցն գրեսցին, այլ ը կերպին՝ որ գովելի է ըն-
թերցողին 'ի յետին դարս:

(3) Ո՛չ օտարանայ 'ի ճառընթերցն, քան որչափ մեկնա-
բանիչ լինի յաւելուածով, Հ. յաւելն. * Սրբն ան-
,, դրէաս աղօթեաց առ ած 'ի մէջ զօրացն. և կնքեալ
,, զինքն քնական նշանաւն՝ եմուտ 'ի պատերազմն, և
,, մեծաւ քաջութ՟ յաղթեաց զօրացն պարսից ||: Նոյն-
պէս և յաւելն, * և երևեցաւ սատանայ 'ի միում ժա-
,, մու դ՟ անգամ՝ որ զհրեշտակ էր, և դարձեալ իբր
,, զօրական. և նա նշանաւ սրբ խաչին և անուամբն քրի
,, սատանեաց նմ, և աներևոյթ արար ||: Իսկ ուրեմն զե-
րեւութին և զհալածումն դիւին փոխաբերէ 'ի դիւահարս.
քանզի գրէ, թէ սրբն անդրէաս * ունէր զշնորհս հա-
,, լածելոյ զդևս, և որ ըստ օրէ ազատէր զբազումս
,, ըմբռնեալս յայսոց չարաց. և այնպէս կարեւէր խոցէր
,, զբանսարկուն, և մեծապէս նկուն առնէր զմախա-

ցող

,, ցօղ և զամբարտաւան Թշնամին || : Ուր լուա ևեթ կայ քննիչն . մեք շատանամք բանիւ վկայաբանիս մերոյ :

(4) Պատմեալ մեկնաբանել երեւի Հ . զՄիտս Ճառըն_տրին՝ այսպիսի յաւելուածով . * և զնոյն սատանայ ,, առ Անտիոքոս իշխանն 'ի կերպարանս գայլի, և ա_ ,, սաց՝ Թէ Անդրէաս ՃՄ զօրօքն ապստամբեցաւ 'ի ,, 'ի քէն, և հաւատաց 'ի խաչելեալն || : Իսկ սուրբս այնպէս ձեռացուցանէ զբանն, որպէս Թէ ոմանք 'ի զօ_րացն Անդրէի մատնեցին զնա . զոր պարտ է իմանալ օտարազգոյ Թուոյ նր̃ բանակին . ապա Թէ ոչ՝ ա̃ Ծ . Նոյնպէս և այլ վկայագիրք յայտ առնեն, Թէ ՃՄ նի_զակակիցք սորին միաբան կացին ը̃ նմա մինչև 'ի նահա_տակութի :

(5) Սուրբս յանուանէ յիշէ և զմին 'ի վկայից՝ 'ի բե_րանոյ գո̃ւորին այսպէս . * Մրպէս և Մրպիսի տանջա_ ,, նօք բարձի 'ի կենաց զԵւտիքէոս զորդի Պօղիկոսի, ,, և զբազումս 'ի նչէ՝ որք ը̃ նմա խոստովանեցան զՔնի ,, հաւատոցն Քնի || . Այս մեզ անծանօԹ միայ . և ոչ իսկ հաւան եմք ը̃ գուշակութիւն պլինիոսի, որ ասէ՝ Թէ որոշեալ պօղիկոսս վկայն (զորմէ խօսի 'ի փետր. 13 .) նահատակեալ 'ի մելիտինէ հայոց՝ ունէր կին և որդիս, գուցէ մի 'ի նոցանէ իցէ եւտիքէոսս այս . ա_պաքէն կին սորին պօղիկոսսի էր հեԹանոս . և մանկունք նր̃ դեռահասակք 'ի կատարման հօր իւրեանց՝ չունէին նշանակ քրիստոնէուԹե . վՌյ յանստոյգ իրաց անստոյգ լինի մակաբերուԹի :

(6) Այս է գլխաւոր և երեւելի տարբերուԹիւն այլոց վկայագրաց առհասարակ 'ի Ճառընտրէ մերմէ, ուր չեք նշմարանք նախընԹաց ինչ տանջանաց սորին Անդրէի՝ զորմէ այլք գրեն : Կարող էաք ասել, Թէ հատուած ինչ բանից 'ի բաց անկեալ իցէ յօրինակէ մերմէ . բայց տեսանեմք՝ զի որք պատմեն զտանջանս, զայլ պարա_գայս եւ պատմուԹեն ոչ սակաւ այլափոխեն . զի Յ . ունին այսպէս . * Ինքն (Անդրէաս) 'ի վր̃ երկաԹի ,, հրացեալ մահիճի տարածեցաւ . իսկ ընկերաց նորա ,, ձեռք եւեռօք պնդեցան 'ի չորեքկուսի փայտս : Այս ,, այլ եւ հազարք հրամանաւ Անտիոքոսի տարագրեցան ,, 'ի սահմանաց Յին . զորս խրատէ̃ սբ̃յն՝ դարձոյց 'ի ,, հաւատս Քնի : Զայն իբրև գիտաց Անտիոքոս, զհետ ,, մտեալ նց̃ իւրովքն հանդերձ՝ 'ի սուր սուսերի մա_ ,, շեաց զամենեսին . և յետ ամենեցուն զԱնդրէաս զփա_ ,, ռաւոր վկայն Քնի և զմեծահռչակն 'ի նահատակս ||

Եւ

Եւ Հ. այսպէս. * Յայնժամ հրամայեաց տարածել
„ զանդրիէաս մերկ 'ի վր հրացեալ մահճաց : Եւ մօ_
„ տեալ սատանայ' ասաց. եկի փարատել 'ի քէն զցաւս
„ տանջանացդ. յայնժամ սատանեաց նմա սբն, և ա_
„ յսպ ասաց. և նոյնժամայն ձայն եղև առ նա յերկ_
„ նից, և ասաց. եդից զսատանայ 'ի ներքոյ ոտից քոց.
„ և դու յաղթեսցես նմա ով քաջդ անդրիէաս : Եւ յետ
„ բազում տանջանաց' գանից և բանտից, ողոքանաց և
„ սպառնալեաց, իբրև ոչ հաւանեցաւ անդրիէաս ու_
„ րանալ զքս, և պաշտել զկուռսն, հրամայեաց ան_
„ ախոյքոս բռ զօրականաց, զի տարեալ ցրուեսցեն և
„ կորուսցեն յարևելս զզօրսն անդրիէասի., և զինքն
„ սպանցեն : Իսկ սբն անդրիէաս փարձոյց զնս 'ի հա_
„ ւատս քնի. և ամենեքեան սրով կատարեցան բարի
„ հաւատով 'ի քս || :

Ժամ է լսել և զայլբերն այսց աւանդից' զմետափրաս_
տեան գրութն ըստ յառաջ բերելոյ սուրիուսի : * Հրա_
„ մայեաց կապել զնա և ածել առաջի իւր. և 'ի լսել
„ ամենեցուն հարցանէր զնա, զի յայտնապէս խոստո_
„ վան լիցի, արդեօք հրամանի՞ իշխանականին անսալ
„ կամի, եթէ ոչ իւրում : Եւ նա առաջի մարդկան և
„ հրեշտակաց և համօրէն երևելի և արարածական բնու_
„ թեան' պայծառ և յայտնի և համարձակ խոստովան եղև
„ զքս : Այլ սէգ և հպարտ դատաւորն զառանդաւորն
„ տանջանս Էգէմ նր մեքենայէր. և հենգնելով իմն
„ ասէ. քանզի բազում աշխատութն կրեաց անդրիէաս
„ 'ի մարտի, և ոչ գոյզն յաղթութբ պսակեցաւ, գիւ_
„ րութեան և հանդստեան հնարս հնարեցաք նմա :
„ Այնուհետև հրաման ետ կողմել մահիճ պղնձի. և
„ իբրև սաստիկ վառեցաւ, հրամայեաց դնել զայլն
„ սբ զանդրիէաս 'ի վր նր : Իսկ նա զնահարթագին յօ_
„ ժարութբ վաղեաց 'ի մահիճ անդր իբրև յանկողին
„ փափուկ, և տարածեցաւ 'ի վր նր. ուր անհնարին
„ չարչարանս յանձն էառնէր, մինչև խանձողել բովան_
„ դակ մարմնոյն, և յամ կողմանց բոցակիզել 'ի հրոյն
„ բորբոքելոյ : Բայց իսկ և իսկ ըստ ջերմ հաւատոց իւ_
„ րոց հանդիստ և սփոփանս գտանէր. զի հուրն թու_
„ լացեալ մեղմացաւ :

„ Ետ ածել անօրէն դատաւորն և զոմանս 'ի քաջ նի_
„ զակակցաց նր' որք սերտիւ հաւատացեալ էին յնծ.
„ և հրամայեաց բևեռել զձեռս նց 'ի փայտս չորեք_
„ կուսիս. և ծիծաղելով հարցանէր ցնս, եթէ հեշտա_
„ լի՞

„ մի՞ թուէին արդեօք նց՟ իւրքս ։ Եւ նց՟ վաղվաղակի
„ զուարթութեա՟ սկսին տանել, եթէ ամէն զբօսալի և
„ զուարճալի են մեզ տանջանքս, 'ի վ՟ա բերին ․ իցէ՞
„ թէ քո՞յ լիցուք նմանողք, որ վ՟ս մեր բեւեռեցաւ 'ի
„ խաչափայտն ։ Այնուհետև բռնաւորն առ անդրէաս
„ երանելին փոխեալ զդէմս հարցմանն՝ փորձել իմն կա-
„ մէր զնա, թէ արդեօք զփորձ առեալ այնպիսի չար-
„ չարանաց՝ փոխեա՞լ իցէ զմիտսն, և յետս դարձուցեա՞լ
„ զկամս 'ի քրիստոնէիցն հաւատոց ։ Եւ յասել նր՟, թէ
„ ես այնմ պսակի սպասեալ մնամ յայժմ, զոր ստանան՝
„ որք մինչև ցսպառ համբերեն, և ոչ երբէք խոտորիմ
„ 'ի ճշմարիտ և յանդրդուելի օրինաց, հրաման ետ
„ բռնաւորն բառնալ զանդրէաս 'ի տեղւոջէ անտի, և
„ տանել պահել զգուշութ՟ 'ի բանտի, առ երեկս այն-
„ պէս ցուցեալ՝ որպ՟ թէ ժամանակ տայ վկային խոր-
„ հել զիւր օգուտն, և փոխել զկարծիսն ․ բայց ինքն
„ զայս առնէր, զի մարթասցի առնուլ տեղեկութիւն
„ յինքնակալէն, եթէ զի՞նչ կամք իցեն նր՟ վ՟ս անդրէի
„ և այլոց քրիստոնէից զօրականաց ։
„ Այսպէս վաղվաղակի նամակ առնէր առ մաքսիմիանոս,
„ և զիւրն նմին նշանակէր ։ Մաքսիմիանոս իբրև երա-
„ զեկ լինէր 'ի նամակէ անտի սակս անդրէի և որոց է
„ ընդ նմա, խորհեցաւ՝ թէ ոչ փոքր աղմուկ և խռովութի՟
„ 'ի վ՟ա հասանէ, եթէ զայնպիսի ականաւոր և երևե-
„ լի զօրավար զօրաց, և զայնչափ և զայնպիսի զօր ըն-
„ դէր՝ որ է ընդ նմ՟, է սուր հանել հրամայեսցէ ։ Գրեաց
„ անդրէն առ անթիոքոս ․ զի իմէք հնարիւք կա՞մ ճար-
„ տարութե՟ որսասցի լռելեայն զարսն 'ի կատարումն
„ կամաց իւրոց, և մի տացէ առիթ խռովութեան կամ
„ ապստամբութեան բովանդակ զօրուն ․ ․ ․ և յաւել ա-
„ սել 'ի հրովարտակի անդ առ անթիոքոս ․ Հաճոյ
„ թուէր ինձ զայդպիսի արս ազատել 'ի բանտէ, որպ՟
„ թէ առաւելեալ յանցանացն թողութիւն առնելով ․ և յետ
„ սակաւուց, եթէ ոչ զղջասցին, իբրև 'ի պատ-
„ ճառս այլոց վնասուց ծանուցանել պատուհասել զնս ։
„ Ընդ առնել անթիոքոսի զայս հրովարտակ 'ի մաքսի-
„ միանոսէ՝ արար ըստ հրամանի ինքնակալին ․ եհան 'ի
„ բանտէ կապանաց զնշանաւոր ծառայն այ՟ զանդրէաս
„ և զամենեսեան որ է ընդ նմա, և թողացոյց ազատօրէն և
„ համարձակութե՟ կեալ ։ Բայց սբ՟ ծառայն այ՟՝ ըստ
„ յայտնելոյ նմա յայ՟ 'ի միտ էառ զնենգն ․ և ա-
„ ռաւել է իւր զվաստակակիցս իւր, որք խրատուք նր՟
„ և-

նել և լսել զնոյն բան, զի լիցի ինքն ստուգաբան պատմիչ։
Իսկ վերջին բանն այնպիսի չէ արժանի պնդելոյ, որով
հետև ստգտանէ յանիրաւի զվայելչական և զգովելի
գործ սրբոց առ հասարակ, որք յետ իւրեանց ընդ մեր
մաղթեցին հոգևոր և մարմնաւոր բարիս. որ է գործ
սիրոյ և ծածամերձ ընտանութեան, և ոչ պակասութեան
խոնարհութեան, որպէս պակասամիտք կարծեն. վնյ թուի
թէ զայդ անտեղի ըզգիտութիւն 'ի գիտմաց տխմարաց առ-
նէ այրն իմաստուն։ Ապա թէ ոչ՝ պատրաստ էր առն կրկ-
ոխոյ փորձառական գիտութիւն ստանալ՝ անձամբ մար-
տիրոսանալով. զի յայնժամ անշուշտ քաջ իմանայր.
թէ քանի՛ վայելչական են 'ի ժամուն մաղթանք այնպի-
սիք՝ 'ի հաստատութիւն հաւատացելոց. զի յիշատակ
պաշտելեաց սրբոյն այլ է ամրացուցիչ հաւատոյ և յու-
սոյ քրիստոնէից մնացելոց, որպէս և օրինակ նոցա յորդոր
կենդանի սիրոյն այլ. այլ զայս լեզու սրբոց ոչ դիւրաւ
իմանայ Ծ։

(9) Այսպէս գնի որոշ թիւ համարոյ սրբոց 'ի վախ-
ճան վկայաբանութեան մերոյ ՇԶ. որպէս և 'ի խորագրի
եդեալ էր. * Նահատակութիւն անդրէի զօրավարի և
« զօրաց նոցա երկու հազար և ութ հարիւրիցն, որոց
« անուանքն գրեալ են 'ի դպրութիւն կենաց ||։ Զնոյն
յայտ առնէ և յընթացս պատմութեան, ուր գրի՝ թէ
սրբն անդրէաս գնաց 'ի պատերազմ 599 արամբք. որք
զօրավարաւն հանդերձ լինին 600. ապա յարեցան և
Ըստաւջ եկեալ զօրք 200. որպէս և զկնի՝ վարիչք նոցա 2000.
որոց գումարն է 2800։ Իսկ այլ օրինակք յոյն և լա-
տին վկայագրաց գնեն 2597, կամ 2593. յայտ է թէ 'ի
մոռացօնս ունելով զերկերիւրսն. որպէս և 'ի Հ. առա-
ւել սխալագրութեամբ գնի բռ և ղե։

(10) Լրագոյն և ճոխագոյն օրինակի հետևողութեամբ հաս-
տատէ և զվերջին բանս ճառընտրին մերոյ՝ ընթերց-
ուածն Մետափրաստեան առ սուրիոսի այսպէս. * Իսկ
« պետրոս եպիս տարսոն քաղաքի, որ սրբեաց զնա սբ
« աւազանաւ մկրտութեան, նոյնպէս եպս բերիացւոց, թէոդ
« գուլոս և սիւնեսիոս սարկաւագունք, մարիանոս և
« նիկողայոս, եւսեբիոս և լամպրիոն զրահկարգացք,
« զհետ գնային 'ի բացուստ՝ յորժամ հանդերձեալ էին
« նահատակիլ անդրէաս և որք ընդ նմա, ցանկանալով
« գիտել զվախճան նոցա. զոր և գիտացին իսկ զմիահա-
« մուռ կատարումն ամենեցուն նոցա 'ի տր. զորոց և
« զպատուականն նշխարս ամփոփեցին արժանաւոր պատ-
« ւով։

„ ռեալ: Տեսին և զհրաշալի աղբիւրն սքանչելարար,
„ որ բղխեաց 'ի հոսելոյ արեան արդարոյն և մեծ
„ վկային. զի աղբիւրն այն իսկ և իսկ Է բղխիլն եցոյց
„ զզօրհ բժշկութեանց. քանզի անդէն վաղվաղակի զմին
„ յընթերցողաց անուն յիշատակելոյն՝ զլամիրիան, որ
„ տագնապէր 'ի չար այսոյն պղծոյ, և չև էր ազատեալ
„ մինչև ցօրն ցայն, նախ զառաջինն բժշկեաց. և այն_
„ պէս ողջ_առողջ դարձաւ Է այլ ընթերցողս. վյ և
„ նք օրհնեցին զած երգովք, որ ճշմարտապէս փա_
„ ռաւորեալն է 'ի սրբս իւր: Բայց ոչ ևս կամեցան
„ դառնալ 'ի Կիլիկիա. քանզի սելևկոս ունել կամէր
„ զպետրոս առաքանին եպս վն մկրտելոյ նր զնահատակն
„ անդրէաս և զընկերս նր. այլ գնացին ամ այն առաջ_
„ նորդութեամբ յիսաւրիա, օրհնելով և գովելով զտր
„ յս քս||:

Ուր ակներև լաէ զերգք՝ որոց կարէր դիմախօսել, և դիմախօսէ անհակառակելի իրաց: Նախ՝ ասէ. * Աւա_
„ ւել հաճոյ էր ինձ, եթէ ասէր հեղինակն, թէ զհետ
„ երթայքն և ուղեկից լինէին սրբյն և ընկերաց նր առ
„ 'ի զօրացուցանել զնս 'ի հաւատս և կազմ յօրինել 'ի
„ մարտիրոսութիւն, քան թէ առ 'ի գիտել զվախճան
„ նոցա. զի զի՞նչ բարի օգուտ լինէր 'ի բացուստ եր_
„ թալն նոցա վս այնր պատճառի||: Երկրորդ՝ ասէ,
* դիցուք թէ պետրոս ունէր զպատճառ իմն գնալոյ
„ յիսաւրիա, իբր զի սելևկոս կամէր ըմբռնել զնա՝
„ եթէ հաւատացուք վկայագրին. բայց առ 'ի մէ՞ ըն_
„ նոյն արարին և նոննոս եպս բերիոյ և այլ կղերք,
„ և ոչ յաւէտ դարձան 'ի տեղի իւրեանց||: Տեսանեմս,
թէ որպիսի բանիւք սնոտւովք լնուն քննիչք չէշս մեղթոց, և կարծեցուցանեն՝ թէ ընտրեցին զբարի բարին յամանս, և զխոտանն 'ի բաց ընկեցին: Թո՛ղ փոխան մեր տացեն ընթերցողք պէնի այսպիսի բանսկրկիտ արանց. զի մեք չեք ժամանակ ժամավաճառ լինելոյ. ապա թէ ոչ՝ Է միոյ գինէ աւան ունէաք 'ի դէմս ածել պէնի:

(11) Եթէ ստոյգ իցէ օր կիւրակէի նշանակեալ առ մետափրաստեսի, այլ ստոյգ թուէլի ժԹ օր օգոստոսի առ ամ վկայաբանս, կիւրակէն յօգոստոսի ժԹ երկիցս հանդիպեցաւ առ դիոկղետիանոսիւ. ի յամի 294. և 305. վս որոյ մին 'ի թուականացս ունի լինել ամն նահատակութե. թո՛ղզի բարոնիոս ընտրէ գնել յամի 301. և պագիոս յամի 303. և այլք այլպէս:



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Կալլինիկոսի ։

Հ. յուլիս. 27 ։ Յ. և Լ. յուլիս. 29 ։ Ճառընտ. Բ. ՉԽԷ = ՉԽԸ ։ Մետափր. առ սուր ։ Բոլլանդեանն ալինոս. 'ի Է հատ. յուլ. էՁ. 39 = 42 ։ (1)



ԲԱՐԵՅԱՂԹ ԵՒ ՅԱՂջայաղթ ի̃ւր անուամբ և ի̃ւր արդեանց՝ նա վկայն Քրիստոսի կաղլինիկոս, կամ կալլինիկոս, ի̃ւր յունաց գալլինիգոս, երբ յաւուրս կայսերութեան ամպարիշտ արքային դիոկղետիանոսի, հայրենեօք՝ որպէս ասի՝ կիլիկեցի, այր արդար և ա̃ծապաշտ, ճշմարտեալ հաւատով և առաքինի վարուք. որ և առ ծածուկ ունելոյ զքրիստոնէութիւն 'ի ժամանակի անդ հալածանաց, և ձեռնտու լինելոյ հաւատացելոց 'ի թաքուստ իւրս, առնէր վաճառականութի ձիթոյ յԶիոս գաղատացւոց. և առեալ եկեալ յանկիւրիա քաղաք՝ դիւրագին տայր, մանաւանդ քրիստոնէից. իսկ յեկեղեցիսն ա̃յ առանց գնոյ ։ Նա և ուր և գտանէր առիթ դիպօղ, ուսուցանէր զհեթանոսս յա̃ծգիտութեան ճշմարտի. քանզի եռայր հոգւով,

և

և իբրև իմաստուն վաճառական հնարէր 'ի պատճառս անցաւոր վաճառու ցուցանել ամենեցուն զանանց մեծութիւն : Այս իմացեալ կռապաշտ վաճառականաց՝ որք կային յանկիւրիա, առ նախանձու մատնեցին զնա իշխանին՝ որ զմերակացութիւն քաղաքին և ծին ունէր. և անուն նորա էր ումանց՝ սակերդոս (2) : Իսկ նա հրամայեաց ածել զայրն, և ասէ ցնա իշխանն. կա՛լլինիկէ՝ թէ արդարև արհամարհես դու զա՟ծն , որ՟պ լսեմ, և պաշտես զա՟ծ քրիստոնէից զք՟ն . այլև զբազումս ուսուցանես անարգել զդիս, և ոչ պաշտել զկուռս : Ասէ Սր՟բն. այո՛ ճշմարիտ են ասացեալքդ ք՟ո իմ. պաշտեմ զա՟ծ ճըշմարիտ , և ո՛չ զդևս . և այլոց զնոյն ուսուցանեմ ճշմարտութիւն :

Յայնժամ բարկացեալ իշխանին ը՟ն համարձակ պնդնին՝ հրամայեաց ջալոտիւք հարկանել զերանելին . և նա առ ոչինչ գրէր ըզհարուածս , որ՟պ թէ ինչ ոչ զգալով առ սէրն ք՟ի . այլ ուրախութեա՟մբ օրհնէր զա՟ծ : Ասէ իշխանն . արդ չզոհիցես : Կալլինիկոս ասէ . ո՛չ . այլ ա՟յ ամենակալի զբանական պաշտօն մատուցանեմ, որ արարիչն է արարածոց : Իսկ բռնաւորն առաւել բարկացեալ՝ հրամայեաց երկաթիւ քերել զկողս նորա . իսկ նահատակն ուրախ էր 'ի տանջանսն . և արիւնն հոսէր իջանէր և լնոյր զվայրսն : Դարձեալ հարցանէր իշխանն . արդ արասցե՞ս զկամս թագաւորին յետ մատնելոյդ յայդպիսի տանջանս : Իսկ սր՟բն առաւել

Եւ խոստացոյն ետ պխնի՝ արհամարհելով զդիս նր, եւ անշարժ կալով ՚ի խոստովանութէ

Ճշմարտութէ։

Օյն տեսեալ քրմաց՝ խրատ ետուն իշխանին, եւ ասեն ցնա. մի՛ հակառակիր. դա ոչ զանգիտէ ՚ի տանջանաց եւ ՚ի մեռանելոյ. այլեւ այլոց եւս տայ համարձակութի արհամարհել զդիսն. այլ տո՛ւր ՚ի մեզ զայրդ, եւ մեք քաղցր քաղցր բանիւք հաւանեցուսցուք զդա պաշտել զդիսն, երեւեցուցեալ նմա՝ թէ ոչ անշունչ պատկերք են մծքն՝ ոմ կարծէ, այլ՝ ոգի կենդանի է ՚ի նո։ Իսկ իբրեւ հաւանեցաւ ը̅ այն իշխանն, առին տարան քուրմք զնրն ՚ի մեհեանն։ Իսկ նր մտեալ ՚ի ներքս՝ կարդաց առ ած, եւ թուռն հարեալ զպատկերէ կռոցն՝ կործանեաց ՚ի գետին, եւ ասէ. տեսէ՛ք զանզգայ եւ զմնոտի պաշտամունս ձեր։ Յայնժամ զահի հարեալ քրմաց՝ գնացին պատմեցին իշխանին զեղեալսն կոծելով. եւ եղեւ աղաղակ եւ աղմուկ

մեծ վն այնր։

Ընդ որ ցասուցեալ իշխանն եւ զայրագնեալ ՚ի դիւէն՝ հրամայեաց բեւեռս երկաթիս վարել ը̅ ներբանս ոտսն նյ, կմ ը̅ այլոց՝ կօշիկս երկաթիս բեւեռել յոտս նր, եւ ընթացուցանել ը̅ մէջ քաղաքին անկիւրեայ՝ առաջի զօրականին, որք հեծեալ էին յերիվարս, եւ այնպէս տանել մինչեւ ՚ի գանգրեայ քաղաք պափղագոնիոյ (այն է ռամկօրէն չանղըրը), որ սահմանակիցն է գաղատիոյ. եւ անդ հրով այրել զօձն՝ յահ եւ յերկիւղ ամ

քրիս.

քրիստոնէից :

Այս զինուորացն առեալ գնացին . իսկ որքն կալինիկոս սիրով և խնդութեամբ տանէր զան-հնարին ցաւս տանջանաց յիւրմ ընթացս ճա-նապարհին . մինչև զօրմանալ զինուորաց, և կարեկից լինել նմա . ոմանք ևս առ ի ւ-րեանց տխմարութեան ասէին ցնա . զի՞ կորու-սանես զառատամտութիւն քո, և ոչ խնայես 'ի պատուական անձնդ . որ այդպէս չարա-չար վշտագնիս, և ունիս ևս 'ի հուր մատնիլ : Իսկ երանելին ասէր . ոչ խնայեմ ես 'ի տան-ջանս և 'ի մահ, զի գիտեմ զայն՝ որ նորո-գէ զիս նոր 'ի կեանս անմահս . և յաւել խօ-սել առ նոսա բազումս վ՟ս յուսոյն յաւիտենից . մինչև յապուշ կրթիլ լսողացն : Այս զի էր 'ի ժամանակին ջերմ ամառնային յաւ-լիսի, և զօրականքն յանցանելն ը անջրդի վայր՝ պապաքէին 'ի ծարաւոյ, ասեն ցս՟րբն . Եթէ ճշմարիտ են ասացեալքն 'ի քէն, հան-ցես մեզ ջուր յանջրդւոյս՝ խնդրելով յա՟յն քո, զոր ասես արարիչ ա՟մ արարածոց : Նախանձամարտն աներկբայ հաւատով յա՟ծ ա-պաւինեալ՝ եդ ծունր, և կայր յաղօթս հան-դերձ արտասուօք անբարբառ : Այս անդէն բղխեաց ջուր ցուրտ և քաղցր յանջրդ-ւոյ երկրի յապառաժ վիմէ 'ի տեղւոջն՝ որ կոչիւր մատրինկէ . և զօրականքն արբին և զովացան, և գոհացան զս՟րբյն . և ոմանք 'ի նոցանէ հաւատացին յա՟ծ :

Իբրև հասին 'ի սահմանեալ տեղին, չիշխէին ձեռն արկանել 'ի նա, և մատնել 'ի հուր,

յիշելով զերախտիս նր ։ Իսկ նշն տյ սուր- պէր զնն՝ կատարել զհրաման իշխանին 'ի վերայ իւր . զի փափաքէր ելանել 'ի մար- մնոյ, և մտանել առ նծ . ոչ թէ ասել, ե- թէ դուք զովանալ կամեցայք ջրով, և ես պասքեալս սիրոյն տյ՝ նովաւ փափաքեմ զա- վացուցանել զանձն իմ 'ի մէջ հրոյ . և նոքա իբրև 'ի հարկէ, առ ահի բռնաւորին կատա- րեցին զասացեալսն . և հուր բորբոքեալ 'ի հրապարակի գանգրեայ՝ այրեցին զնշն տյ զքաջայաղթն կալինիկոս, 'ի յուլիսի ամսոյ իԹ՝ յամի տն իբր 303, այս է 'ի ժամանակի մեծ հալածանացն դիոկղետիանոսի ։(3)

Իսկ բարեպաշտ կին ոմն առեալ զնշխարսն՝ եդ 'ի պահեստի, մինչև դադարեցին հալա- ծանքն . ապա շինեաց վայելուչ վկայարան 'ի քաղաքի անդ գանգրացւոց . և եդ անդ զնշխարս նշյն . յորում տեղւոջ ոչ սակաւ բժշկութիւնք կատարէին ։ Որպէս և մն աղ- բերն՝ զոր բղխեցոյց նշն աղօթիւք 'ի վերայ ճանապարհի, ասէ հին վկայաբանն՝ թէ կայ մինչև ցայսօր ժամանակի, և բժշկու- թիւս կատարէ ։ Շինեցաւ և այլ վկայարան մի կմերկու 'ի կոստանդինուպօլիս յանուն նշյն կալինիկոսի յաւուրս քրիստոնեայ թա- գաւորաց . և մեծաւ պատուով տօնախմ- բեալ լինէր յիշատակ նշյ վկայիս յաւուր կատարման նորին՝ իԹ ամս տեղիս ։(4)

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) 'Ի կարգի հին և հարազատ վկայաբանութեանց փայլէ այս օրինակ մեր՝ զոր ունիմք 'ի նշանակեալ ճառընտրի. ուր ոչ ժամանակն որոշ նշանակի առ դիոկղետիանոսիւ, նոյնպէս և պատմութիւն պարզ և անպաճոյճ առաջի դնի ը գլուխոցս: Ուր այլք 'ի վկայագրաց ընդ մետափրաստեսի՝ թէպէտև զգոյացութիւն պահեն պատմութեն, բայց պէսպէս զարդարանութե և կատակութե օտարանան 'ի հին ոճոյ. թող զի և զժամանակն ոչ ստուգեն. վասն 'ի լուսանցս աշխարհութե սուրիոսի դուշակութե դնի յամի ամն 250. առ դեկոսիւ. այլ և առ բարոնիոսի եդեալ է ը կամի՝ յամի 254. ուստի և պիտիոս բոլլանդեան կայ մնայ 'ի տարաամ միտս. որում ընծայ մեծ լինէր՝ եթէ մատուցանէր ոք զմեր օրինակ:

(2) Զոր ինչ ոչ նշանակէ մերս Ծ. անդանօր խորհրդով ասեմք, ը սմանց, կմ ը այլոց. թէ կիլիկեցի լինել սրբոյն կալինիկոսի ծննդեամբ. և անուն քաղաքապետին անկիւրիոյ՝ սակերդոն. զոր մետափրաստես կոչէ սակերդոնիոս. և 'ի Հ. ըստ օրինակաց ինչ գրի սակերդոն. իսկ սուրիոս վերածեալ է 'ի լատին անուն սաչերդոս. որ թարգմանի քահանայ կմ քուրմ: Զանուն տեղւոյն ևս՝ ուր բղխեաց աղբիւրն, ը մետափր" յաւելաք՝ մարիկէ: Իսկ զչափ ասպարիզաց ընթացից սրբոյն ոչ նշանակեցաք, զի ամ օրինակագիրք պէսպէս վրիպակ գրչութե 'ի մէջ բերեն. Ծ. ասպարէզս հինգ ասէ. առանց որոշելոյ՝ ցորչափ. Հ. դնէ ՃԻ մղոն. որպէս թէ յանկիւրիոյ մինչև 'ի տեղի աղբերն բղխելոյ. և անտի 'ի գանգրա՝ Ձ մղոն ասէ. ուր ոմանք ընդհանրապէս Ճ ասպարէզ դրեն. և այլք Ղ. այլ և ոմանք՝ ձիոյ արշաւանս Է: Այս ինչ յայտնի է, զի գանգրա չէ շատ հեռի յանկիւրիոյ. և մի 'ի դրանց քաղաքիս առ գեւլեղմանոցաւ կոչի՝ չանղըր գարուսու, կմ դուռն գանգրեայ. ԺԵ որ անցուցին անշուշտ և զնոսին կալինիկոս:

(3) Վրիպակաւ գրչի դնի 'ի Ծ. * ԻԹ յուլիս ամսոյ ||. փոխանակ գրելոյ՝ յուլիս. այլ յայտ է յամ վկայագրաց և 'ի յայսմաւուրաց, և 'ի սովորութե սուրբ տօնախմբութե.

ԹԵ. որ է Ը այլոց 'ի ԻԹ յուլիսի, և Ը մեզ 'ի Մեհեկի ամսոյն ԻԸ օգոստոսի :

(4) Զվկայարան սրբոյն Կալլինիկոսի 'ի Կոստանդնուպօլիս՝ այսպէս նշանակեն յոյնք. * Կատարի տօնախմբու- ,, թիւն սորա 'ի տեղի կամրջաց յուստինիանոսի և 'ի պետ- ,, րիոն ||: Յիշեն այլք 'ի տեղագրաց զդուռն մի յանուն սրբոյն Կալլինիկոսի 'ի Կոստանդնուպօլիս. որպէս և կամուրջն ասեն մօտ 'ի վկայարան նր՝ կոչիւր կամուրջ Կալլինիկոսի. և զայս վկայարան՝ որ առ կամրջին շինելոյ 'ի յուստինիանոսէ, վերստին նորոգեաց վասիլ կայսր առշակունի. ըստ պատմէ Թոռն նր պերփիւռոժէն: Իսկ զոր 'ի պետրիոն վկայարան՝ կամ լիցի նոյն, և կամ այլ յառաջնոյն լինի իմանալ: Նշխարք սրբոյն հանգերձ եկեղեցեաւն՝ որ 'ի Գանգրա, յիշատակին առ պատմագիրս մինչև 'ի հինգերորդ դար. այլ զկնի չէք յիշատակութիւն :





# ԿԱՏԱՐՈՒՄՆ

## Սյն Դիոմիդեայ բժշկի :

Հ. օգոստ. 17 : Յ. և Լ. օգոստ. 16 : Դու-ռընդ. Ա. Գչ=Ճկը. և Բ. Նշե=Չե : Բոլ-լանդեանն ղինիոս. 'ի Գ հատ. օգ. էջ. 266=270 :(1)



ԽՈՍՏՈՎԱՆՈՂ ՎԿԱՅՆ քնի մեծն Դիոմիդէս բժշկապետ (2)՝ էր յաւուրս անօրէն կայսերացն Դիոկղետիանոսի և Մաքսիմիանոսի, ծնեալ և սնեալ 'ի Տարսոն Կիլիկեցւոց, քրիստոնեայ կրօնիւք, յազգէ ազնուական, մեծատուն յոյժ, բարեպաշտօն և երկիւղած յԱյ, զարդարեալ ամ առաքինութբ և ձրիւք հոգւոյ և մարմնոյ, և զիմաստութին իբրև զզարդ անձին արկեալ զիւրև. որոյ վն և պատուական երևէր յաչս ամենեցուն : Բանզի և էր երիտասարդ առոյգ տիօք և վայելչազարդ պատկերաւ. իսկ հանճար մտացն և կորովութի հոգւոյն աքանչելի : Տեղեակ և հմուտ էր բժշկականին 'ի մանկութէ իւրմէ՝ առաւել քան զամ հելլենացի իմաստասիրացն մանկունս. ոմ զի ըղբոլոր արուեստս բժշկութեան՝ զոր նոքայն պատմէին, ըի կատարեալ գիտէր, զասկլեպեայն

պեայն , և զՀիպոկրատեայն , և զԴիմոկրա-
տեայն , և զմեծին Գաղիանոսի ( յն Գաղե-
նոսի ) :

Այս շրջէր ն̄մ ուրեք առ հիւանդս կարօտեալս , և զամենեսեան առհասարակ ձրի բժշկէր · և ո̄ր ետ նմա զշնորհս բժշկութեան , զի ոչ այնչափ մարդկային արուեստիւն կատարէր նա զբժշկութիւնս , որչափ զօրաւոր հաւատովքն իւրովք՝ կարդալով ՚ի վ̄ր իւրաքանչիւր ումեք զանուն ո̄ն մերոյ յի̄ քի̄ , որպէս սուրգապէս աշակերտեալ ք̄ի երկնաւոր բժշկին : Այս վ̄նկ ոչ զմարմինս ևեթ դարմանէր , այլ առաւել զհոգիսն բժշկէր , ուսուցանելով զամենեսեան հաստատուն և անշարժ կալ ՚ի հաւատս ճշմարտին ա̄յ , և առ ոչինչ համարել զկուռս անմռունչս , և ոչ զանգիտել յառժամանակեայ մահուանէ · արհամարհել զփառս անցաւորս , և յաւիտենականին միայն սպասել · և խոստովանել զք̄ս աներկիւղ առաջի դատաւորաց և թագաւորաց :

Այս իբրև այսպիսի քաջալերութ̄բ և մխիթարական վ̄պութ̄բ̄ զբոլոր ք̄ն կիլիկեցւոց ելից երանելին այրս այս դիոմիդէս՝ յաւուրս հալածանաց , ապա ՚ի մտի եդ գնալ հասանել յ̄ն բիւթանացւոց · զի և անդ կալանաւորաց եղբարցն՝ որք վ̄ն ք̄ի մեծաց նեղութեանց համբերէին , սպաս տարցի ՚ի ձեռն բժշկական և քաջալերական բանից · և եկեալ ՚ի մայրաքաղաքն նիկիայ՝ կամեցաւ բնակել անդ · քանզի ցանկալի թուեցաւ յաչս նորա

դիր

դէր քաղաքին իբրև զհոյակապն տաճարն՝ յորում մնեալ էր : Նա կալեալ անդ բնակութիւն՝ 'ի վար արկանէր զարուեստն իւր, շրջելով 'ի հրապարակս քաղաքին . և համբաւ բարեզարդութեն և յոյժ հմտականութեն արհեստին համանէր 'ի լուր ամենեցուն . և ըստ կամելոյն նյ՝ յոր ինչ և ձեռն արկանէր, ամ 'ի բարիս մատակարարէր . և յառաջադէմ և անուանի լինէր 'ի մէջ հանդիսական ժողովոցն :

Այլ նր դուզնաքեայ և յուշինչ համարեալ զմարմնական բժշկութիւն՝ առաւելագոյն փոյթ տանէր հոգևորականին 'ի ձեռն անկեղծ հաւատոցն և սիրոյն, զոր ունէր առ քն . և այնպէս առանձինն և 'ի հրապարակի աներկիւղ համարձակու զքն քարոզէր, ոչ միայն 'ի քաղաքի, այլև յամ գաւառն բիւթանացւոց : Նա քանզի 'ի բանտի արգելեալք էին բազում քրիստոնեայք և խոստովանող վկայք, ինչս բազումս տուեալ բանտապահացն, և համարձակութիւն առեալ՝ յամ ժամ մտանէր առ կապեալսն, սպասաւորէր և բժշկէր զհարուածս վիրաց նց . և ամ ուրեք շրջէր և ժողովէր ինչս բազումս, և այնու դարմանէր զնս . և հանդերձ սպեղանեօքն մարմնականաւ՝ զհոգևորական դեղն ներգործէր յամենեսեան :

Զքաջասիրտն յօժարեցուցանէր և յորդորամիտս առնէր 'ի հանդէս նահատակութե զուարթագին բանիւք . միանգամայն և աղաչէր աղօթս առնել 'ի վն ինքեան, և 'ի

վն

մկրտեամ Տր ․ ոչ զի անցցէ խռովութիւն կռա-
պաշտութեան, և բարեպաշտութեան հաւատս
համարձակ քարոզեսցի ընդ ամ Տս ։ Իսկ
զվատասիրտսն քաջալերէր և զօրացուցանէր
քաղցր բարբառով՝ ասելով ․ յիշեցէք եղ-
բարք, զի առ ժամանակ մի են տանջանքդ,
և յաւիտենական՝ պսակքն ․ յուշ լիցին ձեզ
սբ վկայքն, որ նախ քան զձեզ բազում չարչա-
րանս չարչարեալք կատարեցան 'ի Քս ․ և յի-
շատակ բարի թողին ամենեցուն յայսմ Տիս,
և 'ի հանդերձեալ կեանսն ժառանգորդք
եղեն երկնից արքայութեան ընդ Տն իւրեանց,
յորոյ վն եդին զանձինս իւրեանց ։ Յուշ
առնէր նոցա և զՔրիստոնէական սպառնալիսն,
եթէ ամ՝ որ ուրասցի զիս առաջի մարդկան,
ուրացայց և ես զնա առաջի Հօր իմոյ՝ որ յեր-
կինսն է ։ Նաև դարձեալ զյորդորականսն,
եթէ մի երկնչիք յայնցանէ՝ որ սպանանեն
զմարմինն, և զոգին ոչ կարեն սպանանել ։
Ընդ նմին և զառաքելականն, եթէ չեն ար-
ժանի չարչարանք ժամանակիս հանդերձե-
լոց փառացն՝ որ յայտնելոց են 'ի մեզ ։ Նաև
այլ ևս բազումս այսպիսիս քաջալերականս
բանս 'ի սբ գրոց առաջի առնէր նոցա 'ի մխի-
թարութիւն ․ զի քաջ գիտակ էր ածային տա-
ռից, և խելամուտ ամ հոգևոր վրդպութեան ․
և այնպէս վառէր հրով հոգւոյն զմիտս երա-
նելեացն խաչակից լինել հասարակաց արար-
չին, և հաղորդ փառաց նորա ։

Իսկ ապա իբրև տեսին զնա ոմանք 'ի հե-
թանոսականացն, որ այսպէս զամենեսեան

սրտա-

որտապնդէր , երթեալք 'ի նիկոմիդացւոց
քաղաքն՝ պատմեցին մաքսիմիանոսի Թագա-
ւորի , և ասեն . այր ոմն քրիստոնեայ՝ անուն
դիոմիդէս՝ յորուճեալ բժիշկ , բնակէ 'ի
նիկիացւոց քաղաքին . և պատճառանօք բժշ-
կութեան շրջի ը̅ ա̅մ̅ գ̅ս բիւթանացւոց , և կա-
խարդական հաւանութի̅ զբազումս 'ի բաց
դարձուցանէ յա̅ծոցն , ասելով՝ թէ չեն ն̅ք
ա̅ծք , այլ՝ կուռք անմռունչք . և զայլ ոմն խա-
չեալ ա̅ծ ասէ , և զամենեսեան նմա աշա-
կերտէ . և թէ ոչ երագ ժամանեսցես և
ըմբռնեսցես զնա արքայ քաջ , զա̅ծս զայս
ապստամբեցուցեալ յինքնակալութենէդ ձեր-
մէ՝ հակառակ ը̅դէմ քո յարուսցէ :

Իբրև լուաւ զայս Թագաւորն , լի եղև սրտ-
մտութե̅ , և իբրև հրով այնպէս բորբոքե-
ցաւ տապով նախանձու . քե̅զի և յառաջա-
գոյն այսպիսի համբաւ վ̅ս ն̅յն հասեալ էր
'ի լսելիս ն̅ր . բայց իբրև բժիշկ մեծանուն
'ի Թագաւորութե̅ իւրում և պիտանի այր՝
լռէր ցայնվայր , և սպասէր որսալ զնա հնա-
րիւք 'ի ձեռս իւր : Յայնժամ յայտնապէս
առաքեաց դահիճս հանդերձ բազում զօ-
րօք . որպէս զի վաղվաղակի կալցեն զնա , և
ածցեն երկաթի կապանօք առ ինքն : Իսկ
եկեալ դահճաց 'ի քաղաքն նիկիայ , և ըմբռ-
նեալ զերանելին՝ մինչդեռ ուսուցանէր 'ի
մէջ հրապարակին , վաղվաղակի կապեցին զնա
ձեռս յետս ը̅ արքունի հրամանի , արկին և
անուրս զպարանոցաւ ն̅ր , և կալեալ եդին
զնա կապանօք 'ի վերայ գրաստու . և 'ի չու-

անե

անկեալ՝ ճանապարհ արարին 'ի Նիկոմիդիա
քաղաք ։

Իսկ նք այլոց ոչ թէպէտև յոյժ ցանկութի
ունէր վս քսի տանջանս կրունել, սակայն
հոգայր վասն այնոցիկ՝ որոց քարոզ տնօրի-
նէր ․ գուցէ ոք 'ի վատասրտացն անհամբեր
գոլով՝ ուրասցի զքս, և գայթակղեալ անկցի
'ի մեհս կռապաշտուէ, կերակուր լեալ չար
միշապին ։ Այլ իբրև յուղի անկանէր երանե-
լին այսպիսի տխրութե և հոգալով վս այ-
լոցն՝ որ 'ի տանջանսն էին վս քսի, դարձեալ
այլ հոգ անհնարին զնովաւ պատէր վս ան-
գիտելի ելից իւրացն ․ քանզի որչափ զանձն
յօժարամիտ տեսանէր առ նահատակութի
'ի սեր փրկչին, նոյնչափ և կասկածէր՝ թէ
թագաւորն խնայեսցէ 'ի նա առ որսալոյ 'ի
ցանց խաբէութե ․ ոպ և զօրականքն զնոյն
ասէին, թէ զայդպիսի գեղեցկուի և զազնը-
ւականութի ոչ կորուսանէ արքայ՝ որ գիտէ
և զպիտանութի առն ։ Ընդ որ առաւել
տխրէր երանելին, և կարծէր խոցէր 'ի
սրտի իւրում ․ մի արդեօք արքանեակն չա-
րին պահեսցէ զմարմին նր 'ի կորուսանել
զհոգին ։

Արդ յորժամ կենդանի նահատակն յայս-
պիսի հնոցի սիրոյ և երկիւղի անձամբ զանձն
խողովէր, իբրև հասին 'ի տեղի մի՝ որ ոչ էր
հեռի 'ի քաղաքէն՝ ուստի ելին, աղաչեաց
զդահիճսն, ոպ զի իջուցեալ զնա 'ի գրաս-
տէն՝ սակաւիկ մի ներեսցեն նմա յաղօթս
կալ ․ և խոնարհեալ նց յաղաչանս նր՝ թոյլ

ե-

ետուն նմա, որպէս և կամեցաւ. զի պատկա-
ռէին 'ի շքեղ աւուն դիմաց և մեծարէին զնա։
Այլ նա մեկնեալ 'ի նմանէ իբրև քարընկեց մի՝
եդ ծունր կապանօքն հանդերձ, և եկաց յա-
ղօթս. զոր և լսէին ոմանք 'ի զօրականէն և
'ի սպասաւորացն, զի ասէր.

Տէր իմ յիսուս քրիստոս՝ որդի բարձրելոյ հօր, ա̃ծ հրեշ-
տակաց և մարդկան և ա̃մ անուանց անուա-
նելոյ յերկինս 'ի վեր և յերկիր 'ի խոնարհ.
օրհնեմ զքեզ՝ որ արժանի արարեր զիս խոս-
տովանողական վկայութե̃ի ը̃ունել վ̃ռ քո.
աղաչեմ զքեզ թագաւոր իմ և ա̃ծ, ընկալ
զպատարագս իմ, և կատարեա 'ի բարի ըղ-
ձնդրուածս իմ, զոր հայցեմ 'ի քէն 'ի ժա-
մուս յայսմիկ՝ իբրև 'ի կատարած կենաց
հասեալ և յոգիս ապաստան. մի թողուր զիս
'ի ձեռանէ քումմէ, զի մի թակարդապատ
եղեալ 'ի մենքենայից բանսարկուին՝ անկայց
'ի պատրանս խաբէութե̃ն նր̃. մի տար թոյլ
խոցոտել զիս հրացեալ նետից իշխանի ա̃խիս
այսորիկ ։ Մի ծածկեսցեն զիս յորձանք
մրրկեալ ալիք կենցաղոյս. օգնեա ինձ երկ-
նաւոր նաւապետ տ̃ր իմ յ̃ս. զի մի անդնդա-
սոյզ եղեալ ընկղմեցայց 'ի խորս յաւիտենից
այսորիկ. Փրկեա զիս յորովայնէ վիշապին,
և կորզեա զիս 'ի ժանեաց արիւնախանձ գա-
զանին, որ շուրջ գայ գոչէ և կամի կլանել
զիս. վ̃ն զի դու ստեղծեր զիս յորովայնէ
մօր իմոյ, և զնկարակերպութե̃ն պատկերի
իմոյ դու յօրինեցեր. և ես քեզ խոստացայ
պահել զայս անարատ գեղեցկայարմար՝
ստեղ-

ստեղծողիդ իմոյ և տ̄ն ։

Արդ՝ պահեա զսա անշարժ ամ̄ անդամօք 'ի վ̄ր վիմիդ հաւատոյ, յորում 'ի սկզբանց անտի հիմնացեալ հաստատեցայ. յորոյ վ̄ր և զարինդ քո զանապական հեղեր. պարըսպեա զիս աջովդ այդ՝ որ տարածեցեր 'ի վ̄ր խաչին. և վ̄ս զի մարմին և անդամք քեզ անուանեցեր, հաստ զսա անարատութ̄բ 'ի գերագոյն գլուխդ՝ որ կայ ը̄ աջմէ հ̄յ ։ Առավարեա առ իս զկամս քո բարերարութ. և ո̄չ կամք քո նախախնամողական կամիցի զօգուտն իմ, այնպէս կատարեա զընթացս իմ 'ի բարի ։ Զի ո̄չ եթէ յառաժամանակեայ մահուանէս յայսմանէ զանգիտեմ ինչ, այլ՝ քեզ ամենագիտողիդ յանձն առնեմ զպահպանութ̄ն հոգւոյ իմոյ. ո̄չ զի անապական ընկալայց զսա միաւորեալ ը̄ անեղծ մարմնոյ 'ի միւսանգամ գալստեանդ քո. և յարազուարճ բերկրանօք ը̄ ամ̄ սբ̄ս քո փառաւորեցից զքեզ հանդերձ հարբ և ամենասբ̄ հոգւովդ յաւիտեանս յաւիտենից, ամէն ։ Եւ իբրև կատարեաց երանելին զաղօթս զայս, և ասաց զամէնն 'ի ձայն բարձր, անդէն կնքեալ զինքն նշանաւ ս̄բ խաչին՝ աւանդեաց զհոգին իւր 'ի ք̄ս ։

Իսկ զինուորացն կացեալ մնացեալ յետ դադարելոյ ձայնին՝ կարծէին, եթէ յարուցե̄ դայ դիտմիդէս առ ն̄ս. և իբրև յամեաց հարուստ մի ժամ, ասէին, գուցէ փախիցէ. և ընթացեն 'ի տեղին՝ տեսին զկապեալ ձեռս ն̄ր լուծեալ 'ի շղթայիցն, և տարածեալ 'ի

բարձունս . և նայեցեալ 'ի սքանչելիսն յայն՝ զարհուրեալք լինէին . ապա հպեալք 'առ նա՝ կային պշուցեալք . և 'ի տեսանելն զնա անշարժ՝ համարեցան , եթէ ննջէ . և մատեան 'ի զարթուցանել զնա , և ահա վախճանեալ էր : Յայնժամ զարմացան և տխրեցան ընդ իրսն . և 'ի վարանս անկեալ՝ խորհուրդ 'ի մէջ առնուին , թէ զի՞նչ արասցեն , զի մի՛ կարծեսցի դաւ ինչ լինել 'ի վ՟ր առն այնպիսւոյ , եթէ ինքեանք փախուցին զնա , և պատուհաս կրեսցեն յարքայէ . վ՟յ միաբան հաստատեցին հատանել զգլուխ մեռելոյն , և տանել առ Թագաւորն :

Եւ զի տակաւին չէին հեռի 'ի քաղաքէն Նիկիացւոց , ազգ արարին իշխանի քաղաքին վ՟ր մարմնոյ սբ՟յն . և ինքեանք առեալ զհատեալ զգլուխն՝ փութանակի չոքան առ Թագաւորն , և պատմեցին նմա զոր ինչ եղեն : Բայց ասի՝ թէ արքն , որոց հատեալ էր ըզգլուխ առն այ՟ , հարան կուրութ՟բ . և այնպէս եկին Է այլս 'ի Նիկոմիդիա , և յանդիման եղեն Մաքսիմիանոսի՝ պատմէին զանցս իւրեանց : Իսկ իբրև ետես զայն Թագաւորն և լուաւ զա՟մ եղեալսն , տրտմեցաւ յոյժ ոչ այնչափ վ՟ս արանցն կուրացելոց , որչափ վ՟ս մահու դիոմիդեայ . զի և լուկ տեսութ՟ի գլխոյ մեռելոյն ապշեցոյց զնա , և ցաւեաց նմա յոյժ վ՟ս այնչափ վայելչու՟է նկարագրի պատկերին , որ ոչն ժամանեաց առ նա կենդանւոյն : Եւ սովիմբ յայտնի եղև խնամք բարձրելոյն 'ի վ՟ր ծառային իւրոյ , զոր կան-

խաւ առ Խնքն կոչեաց , զի մի՛ լիցի նմա ՚ի դայթակղութին զգուշանք եւ սէր Թագաւորին ։

Ապա նոյնժամայն հրամանն ետ Թագաւորն նոցին իսկ զինուորաց , զի տարցին անդրէն զգլուխն՝ ուր մարմինն էր , եւ դիցեն ըն մարմնոյն ՚ի շիրմի ․ զի մի՛ յիշատակ այնպիսի առն կորիցէ ։ Եւ նք առեալ զգլուխն նր՝ դարձան ՚ի տեղին ըս հրամանի Թագաւորին ․ եւ տեսին անդ սքանչելիս կրկին ․ զի երեք աւուրք ՚ի վր անցեալ էին , յորմէ հետէ գլխատեալ կայր մարմին սբյն ․ եւ ահա յառաջնմէ օրէ անտի ագռաւ մի հսկեալ անդր՝ պահէր զպատուական մարմինն ․ եւ ոչ թողացուցանէր զայլս ՚ի թռչնոցն մերձենալ առ նա ․ մինչեւ եկեալ զօրականաց՝ գտին զմարմինն անարատ եւ , յարեցին ըն նա զգլուխն ։ Եւ նոյնժամայն շնորհք այ եղեն ՚ի վր արանցն , եւ բացան աչք կուրացելոց , եւ առաւել աչք սրտից նց՝ ՚ի տեսանել զճշմարիտ լոյսն քս ․ եւ անդէն ՚ի բաց եդեալ զզինուորական պատիւն՝ աշակերտեցան ճշմարիտ հաւատոցն , եւ եղեն սպասաւորք նր նշխարացն՝ զոր ամփոփեցին ՚ի նիկիա ․ եւ ոչինչ զանգիտեալք յահագին սպառնալեաց Թագաւորին՝ աներկիւղ զքս քարոզէին ․ եւ զբազումս ՚ի զինուորականաց իւրեանց յորդորէին մտանել ըն ամենահեշտ լծով քի , որպէս եւ նոքայն ։ (3)

Եւ էր կին մի մեծատուն ՚ի սեբաստէ՝ պատրոնիա անուն (4) , որ ՚ի բազում ժամանակաց

կաց հետէ տանջեալ լինէր ախտիւ որովայ-նի իւրոյ. և ծախեալ ինչս բազումս 'ի բժիշկս՝ չէր ինչ օգտեալ ։ Սա մատուցեալ առ իշ-խան քաղաքին ինչս բազումս՝ խնդրեաց ըզ-մարմին սրբ վկային դիոմիդեայ բժշկի. և առեալ զնա եօծ անոյշ իւղովք, և նորա կտա-ւով պատեալ՝ եդ 'ի պատշաճ տեղւոջ. որ և անդէն փաղփաղակի եգիտ զառողջութի. և յայնմհետէ բազում բժշկութիւք լինէին 'ի տապանէ սրբյն ։

Արդ՝ այսպէս կատարեցաւ նա խոստովանող վկայն դիոմիդէս 'ի Ճանապարհի մերձ 'ի մայրաքաղաքն բիւթանացւոց նիկիա յամ-սեանն օգոստոսի (5), յամի տն իբր 303 ։ Իսկ ապա յետ սակաւ ինչ ժամանակի՝ յորում ծագեաց աստղն լուսոյ քնապսակեն կայսրն կոստանդիանոս, և 'ի բաց բարձեալ զամ զաւակս ամպարիշտ թագաւորացն՝ ծաւա-լեցոյց ը ամ տիեզերս զհաւատս բարեպաշ-տութե, և բազմացոյց զեկեղեցիս, յայն-ժամ հրաման ետ թագաւորն, զի շինեսցեն երիս եկեղեցիս կմ վկայարանս յանուն նա և մեծափառ վկային դիոմիդեայ. մի՝ 'ի մայ-րաքաղաքն նիկիա. և մի 'ի հռչակաւորն նի-կոմիդիա. և միւս ևս 'ի նորակերտ ձեռա-կերտն իւր 'ի նորն հռովմ, այս է 'ի կոստան-դինուպօլիս. մասնաւորեալ յերիս եկեղե-ցիս զնշխարս սրբյն. միանգամայն և պատ-ւէր եդեալ ամ յամէ զօր յիշատակի նորա տօնախմբել 'ի վեշտասանն օգոստոսի. որ էր օր կատարմանն նր, և կմ թաղմանն ։

Իսկ զտաճար սրբոյն զշինեալն 'ի մեծին կոստանդիանոսէ 'ի թագաւորեալ քաղաքի անդ՝ վերստին նորոգեալ մեծացոյց և հոյակապ կառոյց , և բազում սպասուք զարդարեաց բարեպաշտ կայսրն վասիլ արշակունի . նոյնպէս և զմերձակայ մենաստան՝ որ յանուն սրբոյն . քանզի և պարտական ճանաչէր զանձն սրբոյն դիոմիդեայ , որոյ հրաշալի տեսլեամբ գուշակեցաւ ամբարձումն իւր յաթոռ կայսերութեն . ոմն ճոխագոյն գրէ թոռն նորին վասլի կոստանդին կայսր պերփիւռուժէն , այս է ծիրանածին , 'ի վարս հաւուն իւրոյ . գլ . Ը . և ՀԳ : Իսկ յետ ժամանակաց երևելի մասն նշխարաց սրբոյն դիոմիդեայ փոխադրեցաւ յարևմուտս յՇն իտալացւոց : (6) .

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) Երկին օրինակ վարուց սրբոյն դիոմիդեայ գտանի 'ի ճառընտիրս մեր՝ թարգմանեալ 'ի յունականէ : Մին 'ի Ճ . Ա . վսեմ և պանծալի ճոխաբանութբ̃ Ը ձևոյ ճառաբանից . ընտիր ընտիր խորհրդածութբ̃ք . և միւսն 'ի Ճ . Բ . սոսկ պատմողաբար՝ ճիշդ և վայելուչ կարգաբանութբ̃ . որում առաւել զհետ գնացաք և մեք . թէպէտև յերկոսեանն մի և նոյն պատմութի բովանդակի : Յիշատակէ և պինխոս բոլլանդեան զայլևայլ հին մկայաբանութիս յունաց , յորս է որ պատմողաբար , և է որ ներբողաբար ճառագրէ զվարս սրբոյս . և վկայէ՝ թէ յամենեսին նոյն է իսկութի պատմական . և ինքն առ խորշելոյ յերկարութէ զմին 'ի համառօտագրոց 'ի մէջ բերէ . որ և գեղեցիկ համաձայնի Ը̃ մեզ :

Թող զայլ կարճառօտ քաղուածս նոյն պատմութե 'ի յայսմաւուրս իւրաքանչիւր ազգաց , յորոց չէ մարթ իմա-



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Ադրիանոսի, և կնոջ նորա Նատաղեայ. և որոց ԻԳ նոցա:

Հ. և Յ. Օգոստ. 26: Լ. սեպտ. 8. և մարտ. 4: Բոլլանդեանն տոէլրէնց. Գ. հատ. սեպտ. երես. 209=255: (1)

ԳԱՏՕՂԱԿԱՆՆ Ի ՎԱ-կայս Սրբն Ադրիանոս կամ՝ Անդրիանոս, և սքանչելին 'ի կանայս՝ նորին ամուսինն իւր Անատօլա, որ է այլոց Նատալիա (2), էին 'ի Նիկոմիդիայ քաղաքէ բիւթանացւոց. այրն հեթանոս ծնողաց զաւակ, և կինն հաւատով քրիստոնեայ և երկիւղած յԱյ, յաւուրս կռապաշտ կայսերն Մաքսիմիանոսի գաղերեայ, որ յարոյց հալածումն մեծ 'ի վր քրիստոնէից, և մանաւանդ եղելոցն 'ի քաղաքին Նիկոմիդացւոց և 'ի սահմանս նր: Ընդ ամ տեղիս յաձախեալ էին բագինք կռոց, և 'ի ծխոյ և 'ի հոտոյ զոհից գարշելեաց լցեալ էին քաղաքք և տունք. քարոզք կարդային հրապարակաւ՝ պատուիրելով յարքունի հրամանէ, զի ամենեքին եկեսցեն 'ի զոհել չածոց. և որ ոչն զոհէ, մահու սպանցի: Կար-

գեղեցին և խնդրակք 'ի հետազօտել զքրիս-
տոնեայս , և գուշակք 'ի մատնել զնա ։
Ո՛րք եղև վերակացուաց գործոցն անօրէ-
նութե՛ , թէ արք ոմանք թմբրուցեալ կան
յայրի միում արտաքոյ քաղաքի ․ և 'ի գիշե-
րի լսելի լինի ձայն բարբառոյ նց , որով օրհ-
նեն զա՛ծն քրիստոնէից ։ Յայնժամ առաքե-
ցին նք զօրականս , որք կալան զերանելիսն ,
և ածին մուծին զնա 'ի նիկոմիդիա յայնմ
պահու՝ յորում երթայր կայսրն 'ի մեհեանն
շքով մեծաւ նստեալ 'ի կառս՝ զոհել դիցն
իւրոց ։ Յայնմ վայրի ձայն բարձեալ պատ-
ուէիրակաց՝ ասէին ․ արքայ քաջ , յածել մեր
Է ա՛մ քաղաքս և Է սահմանս սորա՝ գտաք
զամենեսին հաւատարիմս 'ի դիցն պաշտօն
և հլուս հրամանաց ձերոց ․ միայն սք անհր-
նազանդ եղեն և ապախտ արարին զբանիւք
քովք , և անարգու գտան դից ։

Իսկ կայսրն հրաման տուեալ կացուցանել
զկառսն՝ մօտ կոչեաց զկալանաւորսն , և
ասէ ցնա ․ ասացէք ինձ , ուստի՞ էք դուք ․
բնակք տեղւոյս , եթէ օտարք ։ Նոքա
ասեն ․ բնակք եմք հայրենեօք , այլ հաւա-
տով գաղիլեացիք ։ Թագաւորն ասէ ․ եթէ
ո՞չ գիտէք , զի՞նչպիսի պատուհաս 'ի վերայ
եղեալ է՝ որոց յայն օրէնս իցեն ․ և կա՞մ որ-
պիսի վախճան ընկալան՝ որք միանգամ 'ի
ձեռս անկան ։ Նք ասեն ․ այո՛ գիտակ եղաք
և ծաղրեցաք զանմիտ հրամանան և զան-
մտութիւն հրամանատուին ․ ևս առաւել այ-
պանեցաք զսատանայ , որ ներգործէ յորդիսն
կորս

կորստեան, որոց դուդ առաջնորդես:
Լի եղև բարկութեամբ թագաւորն, և ասէ. անմիտ կոչել իշխեցիք և զիս և զիմ հրամանն. երդուեալ 'ի մեծ անձն, եթէ ոչ դառն դառն չարչարանօք կորուսից զձեզ: Եւ զայս ասացեալ՝ ետ տանել զնոսա 'ի տեղի երևելի, ուր կազմ կային տանջանարանք. և ինքն 'ի նմին իսկ աւուր եկեալ բազմեցաւ անդ 'ի բեմի ատենին. և նախ հրամայեաց յորսայս արկանել զնահատակսն, և հարկանել ջաղոտիւք. ասէ. թող եկեսցէ Քրիստոսն նոցա, և ազատեսցէ զնոսա 'ի ձեռաց իմոց: Եւ իբրև ուժգին գանեցին զնոսա, ապա հրամայեաց բռնաւորն և այլոց 'ի սպասաւորաց իւրոց՝ հարկանել զնոսա հաստ բրօք: Իսկ նոքա վկայքն Քրիստոսի ասէին 'ի տանջանսն. յաւէտ, եթէ ունիս, և զայլ ևս չարչարանս՝ ով անձամարտ. զի որչափ յաճախես զտանջանս մեր, այնչափ առաւելուս մեզ պսակս:
Բռնաւորն ասէ. այժմ բարձից 'ի ձէնջ ըզգլուխս ձեր և դուք պսակաց մնայք. ո՛նանդր 'ի բաց թողէք զայդպիսի կարծիս, և մի 'ի զուր կորուսանէք զանձինս: Սրբքն ասեն. 'ի կարաւստ դու ունիս գնալ ով բռնաւոր և թշնամի ճշմարտութեան. զի զծառայսն Աստուծոյ՝ որք ոչն արարին ինչ չար, սյդմս անողորմ տանջես:
Իսկ անօրէն արքայն ևս քան զևս մոլեալ 'ի բարկութեան՝ ասաց հարկանել զծնօտս նոցա գնտաձև քարամբք: Եւ նոքա ասեն. ով ամպարիշտ, որպէս թէ 'ի չարագործութեան զմեզ ըմբռնեալ՝ հրամայես այդպէս խոշ-

տան

տանջել զանպարտականս . հարկանելոց է զքեզ հրեշտակ մի և զա՟մ տունս քո . զի ոչ յագեցար որպէս արեան ծարաւի՝ առաջին տանջանօք . և ոչ ածեր զմտաւ , եթէ նոյն մարմին է՝ զոր և դու ունիս . և այն՝ զի քոյդ պղծեալ անօրէնութբ , իսկ մերս պահեալ անարատութբ . այլ որ ամենեցուն տրն է՝ նա կարող է և ևս պահել զյուսացեալս 'ի նա . ապաթէ ոչ՝ ո՞չ արդեօք և զքարինս մաշէին այսչափ բաղխմունք հարուածոց , թո՛ղ թէ զմարմին մարդոյ :

Ի մի այսորիկ տուեալ սրտմտեալ բռնաւորին՝ ասէր . զլեզու ձեր տամ հատանել . զի 'ի կրից այտի ձերոց ուսանիցին մարդիկ չդիմախօսել տրանց իւրեանց : Մեքն ասեն . և արդարև ատելով ատեմս զստահակեալս իշխեմ տրանց : Թագաւորն ասէ . ո՛չ եթէ ատեմ ևեթ , այլև պատուհասեմ զնոսա : Յայնժամ ասեն տր մի կայքն . գէթ քոյին բանից դու իմբնին լինիջի՛ր լսող . զի թէ դու ատեաս և պատուհասես ևս զանհնազանդեալսն Տիկ տերանց , զիա՞րդ ստիպես զմեզ ստունկանող լինել հրամանաց երկնաւոր թագաւորին՝ տն մերոյ և փրկչին յի քի . բայց զի կամիս կցորդս զմեզ առնել պատժոյ պատուհասին՝ որ պատրաստեալն է քեզ ընդ հօրն քում սատանայի :

Ասէ բռնաւորն . և զի՞նչ իմն պատրաստել կայցէ , ո՛վ անզգամք , դոգջի՞ք : Մեքն ասեն . հուր անշէջ , որդն անքուն , տանջանք անվախճան , պատիժ մշտնջենաւոր , դուք կորս

կրօնաւորեան , խաւար արտաքին , ուր լալ ա- չաց է և կրճտել ատամանց : Թագաւորն ասէ․ ծն և ծն արասցեն ինձ դիքն , եթէ ոչ՝ մեզ տասցի , տաց կտրել զլեզուս ձեր․ զի թե- րևս այսու օրինակաւ կարճեցից զաւանցանս ձեր : Իսկ նոքն ասեն․ ա՛նմիտ՝ թէպէտև զգործի մարմնեղէն 'ի բաց հատանիցես , կարող է հեծութիւն սրտից մերոց մեծաբար- բառ գոչել առ ա̅ծ․ զի և արիւն մեր ան- պարտ հեղեալ՝ բերան ունի իբրև փող քա- ջահնչող , որ հնչէ 'ի լսելիս ա̅յ կենդանւոյ՝ որոյ վ̅ն զայսոսիկ կրեմք :

Յայնժամ ասէ Թագաւորն․ Նշանակեցէք մի առ մի զանուանս դոցա․ և պարաւանդեալ զա̅մ մարմինս ն̅ց շղթայիւք՝ տարայք արկէք կապանօք 'ի բանտ մահապարտաց․ և զա̅մ ազգ տանջանաց կուտեցէք 'ի վ̅ն նոցա․ զի ոչ լոկ սրամահ սատակման են արժանի , այլ մեծ ևս պատժոց․ զի պարտ է սոքօք զգա- ստացուցանել և զա̅մ մերձաւորս և զհեռա- ւորս :

Մինչև մեկնեալ էր նոցա յերեսաց ատենին , յայնմ վայրի Ադրիանոս՝ որ մի էր 'ի վերա- կացուաց զինուորական դասուն , տեսեալ զհաստատութիւն և զքաջասրտութիւն երանե- լեացն 'ի տանջանս և 'ի հարցափորձի , մա- տեաւ առ ն̅ս , և ասէ լուելեայն․ երդմնե- ցուցանեմ զձեզ յա̅ծն ձեր , զի ասասջիք ինձ ճշմարտութի̅ն , զի՞նչ փոխարէնք իցեն վար- ձուց՝ որոց ակն ունիք փոխանակ չարչարանաց , որոց համբերէքն․ զի այնպիսի ինձ թուի՝ եթէ մե-

մեծամեծք լիցեն և սքանչելիք յոյժ յոյժ ։ Լսելով լուեալ էր իմ 'ի կնոջէ իմմէ՝ քանզի քրիստոնեայ է, եթէ մեծ է յոյս քրիստոնէից հաստատեալ գրովք սրբովք . արդ ես և յարգեանց գործոց ձերոց հաւատարիմ համարիմ զայդ ։

Ասեն ցնա Սրբքն . ո՛չ բերանք մեր բաւական լինին պատմել քեզ տիրապէս վ՛ն նոցին իրաց, և ո՛չ դարձեալ լսելիք քո բաւեն տանել ։ Ասէ ցնս ադրիանոս . ոչի՞նչ արդեօք լուեալ է ձեր զիրացդ յօրինաց կմ 'ի մարգարէից և յայլ ևս մատենից ։ Սրբքն ասեն . և ո՛չ իսկ մարգարէքն լիով հասու եղեն իրացս՝ ո՛պ պարտն է գիտել . զի և նք մարդիկ էին . և որքան ինչ միանգամ մարթացան ըմբռնել 'ի հոգւոյն սբյ , զնոյն և խօսեցան . զի գրեալ իսկ է . զոր ակն ոչ ետես , և ունկն ոչ լուաւ , և 'ի սիրտ մարդոյ ոչ անկաւ , զայն պատրաստեաց ած սիրողաց իւրոց ։

Զայսոսիկ լուեալ ադրիանոսի՝ վազեաց վաղվաղակի 'ի մէջ ատենին, և ասէ ցդպիրսն . գրեցէք աղաչեմ և զիմ անուն ընդ Սրբց անուանսն . քանզի և ես քրիստոնեայ եմ ։ Իսկ կայսրն՝ որ քաջ ճանաչէր զադրիանոս , իբրև ետես զնա 'ի մէջ մկայից , համարեցաւ՝ եթէ եկեալ է ամբաստան լինել զնոցանէ . վ՛ն և ասէ ցատենադպիրս . գրեցէք վաղվաղակի և զամբաստանութիւն՝ զորս յառաջ մատուցանէ հաւատարիմն ադրիանոս ։ Իսկ դըպրապետն ասէ ցարքայ . քրիստոնեայ զանձն ասէ լինել դա , և աղաչէ գրել և զիւր անուն

նուն ը՟ մահապարտաց ը՟ այդոսիկ ։ Յայնժամ զամօթի հարաւ քանաւորն , և դոյն երեսաց նո՟ր շրջեցաւ ․ և ասէ ցնա ․ խնդրեմ յինէն զթողութի՟, և ասմ յանդիման քաղմուէս , թէ յայլոյ խելս խօսեցայ ․ և ջնջեցիր զանուն քո 'ի համարոյ մահապարտաց ։ Ադրիանոս ասէ ․ զա՟ծն իմ յայսմ հետէ աղաչեմ շնորհել ինձ թողութի՟ վ՟ս անարժան վարուց իմոց 'ի մանկութէ՟ և յանցանացս ցայսվայր գործելոց ։ Ընդ այս սրտմտեալ մաքսիմիանոսի՝ հրամայեաց կապել զնա երկաթեօք և տանել 'ի բանտ ը՟ նոցն , սահմանեալ որ լսելոյ նո՟ց միւսանգամ ։

Յայնժամ մի ոմն յընտանի ծառայիցն ադրիանոսի ընթացաւ վաղվաղակի 'ի տուն , պատմեաց կնոջ նո՟ր անատոլայ , և ասէ ․ տ՟րն իմ ադրիանոս կապեալ շղթայիւք 'ի բանտ արկաւ ։ Իսկ նո՟ր անգիտացեալ զպատճառն՝ յարեաւ պատառեաց զհանդերձ իւր , ճչեաց մեծաձայն , և ասէ լալագին ցծառայն ․ զի՞նչ վնաս իցէ , որ վ՟ս բանտարկեցաւ տ՟րն իմ ։ Ասէ մանուկն ․ եւտես զոմանս չարչարեալս վ՟ս նորա՝ որ ք՟սն կոչի , զի չառնուին յանձն զոհել դից ․ և ինքնակամ 'ի նո՟ց յաւելեալ՝ ասաց դպրաց գրել և զանուն իւր 'ի թիւ համարոյ նո՟ց ․ զի և ես մտադիւր մեռանիմ ասէ ընդ սոսա ։ Ասէ կինն ․ և ո՞չ գիտացեր՝ թէ է՞ր վ՟ս մատնեալ էին 'ի չարչարանս արքն այնոքիկ ։ Պ՟ննի ետ ծառայն ․ ասացի քեզ , թէ վ՟ս զի ոչ կամեցան զոհս մատուցանել ա՟ծոց ։

Յայն

Յայնժամ ուրախ եղև յոյժ անապատըն. և յարուցեալ փոխեաց զպատառեալ հանդերձն իւր. և փութացաւ չոքաւ 'ի բանտ՝ տեսանել զայր իւր 'ի կապանս: Նա մտեալ 'ի ներքս՝ անկանէր յոտս Ադրիանոսի, և համբուրէր զկապանսն նր, և ասէր. երանի քեզ Տր իմ Ադրիանոս, զի գտեր՝ զոր ոչն թողին քեզ 'ի ժառանգութին ծնօղք քո. Ճշմարտիւ այսուհետև օրհնեա՛լ եղիցի ամ մարդ՝ որ երկնչի 'ի Տնէ: Այժմ Տ՛ր իմ անհոգ գնաս յայն Ծ, առաքելով քո առաջի զմեծութիւն՝ զորս գտցես 'ի կարևոր ժամուն, յորժամ մեծատունք աղքատասցին, և չքաւորք լցցին անկապուտ փարթամութբ. յորժամ չկայցէ այլ և ոչ ժամանակ փոխ առնլոյ ուստեք և տոկոսեօք. ոչ ոք փրկեսցէ զոք, և ոչ մի ինչ ազատեսցէ զոք 'ի պատուհասէն. ո՛չ մեծութիւք զստացիչս իւրեանց, ո՛չ ծառայք ըզտեարս, և ո՛չ բարեկամ զբարեկամ. զի իւրաքանչիւր զիւր բեռն բարձցէ: Իսկ դու Տր իմ զքոյդ ընդ քեզ առեալ երթաս, բերելով 'ի քեզ զլրումն խոստմանցն, և ծնալով վարձուց բարութե յարգար դատաւորէն: Մ՛իայն հաստատուն կաց 'ի կոչմանդ. մի՛ դղրդուեցուսցեն զքեզ հրապոյրք թշնամւոյն, և մի՛ յետս քեցեսցեն սնոտի պատրանք կենցաղոյս: 'Ի տուա՛ հայեա՛ց միշտ Տր իմ՝ 'ի Քի ծառայքս նյ. սոցին նմանօղ լեր արիութե, և երթ զհետ համբերութե նց. և մի՛ լիցի քեզ զարհուրիլ 'ի տանջանաց և 'ի սպառնալեաց մարդոյ հողեղինի. զի Տր Ած

քո Ք̃Ս քեզ է , եւ Ք̃Ս քեզ եղիցի :

Օ այսոսիկ եւ զոր սոցին նման լուեալ ադրիա- նոսի 'ի բարեպաշտ ամուսնոյ իւրմէ՝ լի եղեւ ուրախութ̃բ , եւ ասէ ցնա . գնա՛ դու այժմ տե՛կլին 'ի տուն , եւ ա՛նդ մնասջիր . եւ յոր- ժամ գիտասցիս զժամ կոչման մերոյ յա- տեան , կոչեսցիս զքեզ , եւ առաջինկայ զտեղիս կատարման մերում : Դպա յարուցեալ անա- տոլայ՝ շրջէր 'ի տուն բանտին , եւ համբու- րէր զշղթայս միոյ միոյ 'ի նոց կապելոց , որք էին թուով քսան եւ երեք (3) . եւ աղերս ար- կեալ նոց՝ ասէր . աղաչեմ զձեզ տեառք , օգ- նական լերուք ոչխարին քո . ուսուցէք նմա զպտուղ համբերութե̃ . սա է պտուղ վաստակոց ձերոց , եւ ծնունդ առաքինի նա- հատակութե̃ ձերոյ . պարտական ստասջիք զք̃ս վասն սորա . դուք եղէք սորա հոգեւոր ծնօղք՝ մարմնաւորացն փոխանակ , որք օ- տար էին 'ի հաւատոցն բարեպաշտութ̃է :

Յետ այսորիկ վերստին եկեալ առ ադրիա- նոս՝ որ 'ի ներքնումն 'ի բանտի փնդեալ էր 'ի կոճեղս արկոցաց , կրկին եւս քաջալերեաց եւ զուարթացոյց զնա , յուշ առնելով՝ չհայել թէ զինչ մարմինն կրէ , այլ թէ զինչ կայ պատրաստեալ վ̃ն հոգւոյն . եւ ապա ողջու- նեալ զնա՝ դարձաւ սրտիւ բերկրեցելով՝ 'ի տուն իւր :

Իսկ եղեւ յետ աւուրց տեղեկացեալ ադրիա- նոսի՝ եթէ մերձեցաւ ժամանակն տանելոյ զնոսա յատեան , ասէ ցերանելին նահատա- կակիցսն . ներեցէք ինձ , զի երթեալ ածից

զա-

զաղախինն ձեր զքոյր իմ, զի մերձ լիցի վը-
կայութեան մերում. քանզի զայդ խոս-
տումն խոստացայ նմա։ Եւ առեալ համա-
նութիւն ՚ի նոցանէ՝ եւ ինչս բազումս բանտա-
պանաց (որոց և ծանօթ իսկ էր), և յետ բաղ-
խի կացուցեալ զսիմն՝ գնաց։ Եւ յերթալն
նորա զճանապարհայն՝ տեսեալ զնա ուրումն
՚ի ծանօթից՝ ընթացաւ վաղագոյն եկն ՚ի
տուն աւետիս տալ անատողեայ. ասէ. ար-
ձակեցաւ տէր ադրիանոս, և ահա մերձեալ
գայ, և չէ ինչ հեռի ՚ի տանէս։ Բայց նա
ոչ ինչ հաւատայր. ո՞ արձակէ ասէ զնա
՚ի կապանաց անտի, և կամ հնար ինչ իցէ
որոշիլ նմա ՚ի նոցանէ գնալ։ Եւ մինչդեռ նա
զայն խօսէր, ահա այլ ոմն յընտանեաց եկն
՚ի պատմել, թէ տէր մեր արձակեալ՝ գայ
այսր։ Յայնժամ խռովեցաւ անատոլեա՝ կար-
ծեցեալ զնա փախուցեալ ՚ի մարտիրոսութենէ.
և յարտասուս հարեալ՝ սկսաւ կծծել անմխի-
թար։

Եւ իբրև ետես զնա՝ զի գայր, փութացաւ
փակեաց զդուրս տանն, և ասէր մեծաձայն
՚ի ներքուստ. Ի բաց կացցէ յինէն՝ որ ՚ի
բաց եթող զած, և ստեաց տն այ իւրում.
մի լիցի ինձ խօսել ընդ բերանոյ՝ որ ուրացաւ
զած իւր, կամ լսել զխօսս լեզուին՝ որ նենգա-
ւորեաց առաջի արարչին իւրոյ։ Եւ ապա
առ նա ինքն դարձուցեալ զբանն՝ ասէր խիստ
բարբառով. ով հեգդ քան զամ մարդ, ո՞
ստիպեաց զքեզ բուռն հարկանել ՚ի գործ,
զոր ոչն կամէիր կատարել. կամ ո՞ որոշեաց

զքեզ ՚ի գեղեցիկ նաւահանգստէ ։ զիա՛րդ զէնընկէց փախեար ՚ի պատերազմէ՝ չև ըզ-թշնամին տեսեալ քո ։ և ո՞րպէս կարեվէր խոցեցար առանց ընդունելոյ զնետ ։ Վա՛յ ինձ, զի չեղէ արժանի կոչիլ կին մարտիրոսի, այլ գտայ լծակից դասալքի ուրացողի ։ առ փոքր մի ժամանակ եղև ինձ պարծիլ, և յաւիտեան մնասցեն ինձ նախատինք ։ առ վա՛յր մի երանելի երևեցայ ՚ի մէջ կանանց, և ահա ամօթալից գտայ ՚ի նոցա միջի ։

Իսկ երանելին ադրիանոս իբրև զայսոսիկ լուեալ, կայր մնայր երկայնմտութբ ։ զի հեշտալի թուէրն նմա բանք նորա ։ այլ առաւել փութայր դառնալ կատարել զընթացս իւր՝ որում անձկացեալն էր ։ Միանգամայն զարմացեալ էր ընդ արիութին սրտի կնոջն, որ զայնպիսի բանս բարբառէր առնացի ոգւով ։ և այն զի մանկամարդ էր հասակաւ, և չև էին լցեալ երեքտասան ամիսք ամուսնութե նոցա ։ Արդ իբրև ետես զնա ՚ի ձախողակ կարծիս անկեալ վասն իւր, ձայնեաց և ասէ ։ բա՛ց ինձ տիկին անաստոլա ։ ո՛չ որպէս դուդ կարծես՝ ՚ի մարտիրոսութենէ փախուցեալ եմ ես ։ քա՛ւ մի՛ լիցի ։ այլ եկի ՚ի հրաւիրել զքեզ, զի տեսօղ լիցիս կատարման մերոյ, ո՞րպ ժամադիր եղաք ՚ի մերում միջի ։ Նայց նա տակաւին անհաւատանայր նմա ։ զի ոչ ունէր ակն՝ եթէ անձամբ գայցէ ՚ի կոչել զնա ։

Յայնժամ ասէ ադրիանոս ։ բա՛ց ինձ քո՛յր, զի մի՛ առանց տեսանելոյ զքեզ մեկնեցայց աստի, և ցաւ լինիցի քեզ անփարատելի

զԴմ՝ աւուրս կենաց քոց. զի ոչ իսկ է ինձ յամենայն ասա. քանզի երաշխաւորս կացուցեալ է իմ զԴքսն վՐ ժամուս. և եթէ յետ այնորիկ խնդրեսցեն զիս դաՀիՃք և ոչ գըտանիցեն, ինքեանք Տր վկայքն ունին կրել և զիմ տանջանս 'ի վՐ տանջանաց իւրեանց. ուր նոքա Հասեալ են 'ի դրունս մաՀու գըլխովին յերեսաց անՀնարին խոշտանգանաց՝
զոր 'ի վՐ էած նց բռնաւորն :

Զայս իբրև լուաւ անատոլն, փութացաւ եբաց զդուրսն ուրախութեն. և զիրկս արկեալ ողջունեցին զմիմեանս : Եւ ասէ ցնա ադրիանոս. երանելի՛ ես քո՛յր 'ի մէջ կանանց. զի դու միայն խոստացեր օգտել ամեքում, եղել Ճշմարիտ այրասէր. արդ բարձր արասցէ զքեզ Տր, և տացէ քեզ պսակ յաղթողական իբրև իւրոց վկայից առանց չարչարանաց : Ապա առեալ զնա ընդ իւր՝ երթայր խնդամիտ 'ի բանտ. և 'ի Ճանապարհի ասէ ադրիանոս ցանատոլն. զի՞նչ եղեւ Հրամանն վՐ տան : Իսկ նա ասէ. մի՛ ինչ ածեր զմտաւ տէր իմ վՐ ժամանակեայս և անցաւորաց. զի մի՛ նսեմացուսցեն զմիտս քո անտիք սնոտեաց. զմի կէթ Հոգասցես, զի զոր սկսարն՝ զնոյն և կատարեսցես. մոռա՛ զերկրաւորս, և խնդրեա՛ զերկնաւոր զանանցական բարիս, որ պաՀեալ են քեզ և
նոցին որ ընդ քեզ :

Իբրև Հասին 'ի բանտն, մատուցեալ անատոլայ առ նոսա՝ Համբուրէր զկապանս նց. այլ տեսեալ զնոսա զարդարեալ 'ի Հարուածոց ք-
ջին

մինչև եռեալ որդանց 'ի նեխեալ մարմինս նց , գալարեցան աղիք նորա 'ի վերայ ծառայիցն այ . և առաքեաց փութանակի զնաժիշտս իւր , և ետ բերել զառաւել մեծագինս 'ի պատուական պաստառաց և յազնիւ կտաւոց . և առեալ զնս՝ պատառէր 'ի ծըծենս , և որբեալ զխղխայթեալ վէրս մարմնոց նցն՝ պատէր զձեռս և զոտս նց , որք հերձոտեալք էին 'ի շղթայից : Իսկ այնպէս եկաց երանելին անպատուլա 'ի բանտի անդ զաւուրս եօթն ; յամ՛ սրտէ ծառայելով նց մինչև 'ի կոչիլ նց յատեան :

Յետ այսորիկ եկեալ դահճաց արքունի հրամանաւ 'ի բանտն՝ առին զնսն , և բարձին զնս 'ի վր մերկ գրաստուց՝ առ հասարակ 'ի մի շղթայ կապեալ և պնդեալ . զի ամենեքին լուծեալք էին յանդամոց . իսկ երանելին ադրիանոս հետի ընթանայր՝ ձեռս յետս կապեալ :

Որև մերձեցան 'ի տեղի ատենին , ազդ արար արքայի ոստիկանն , եթէ ահա առ դուրս հասեալ կան մահապարտքն : Ասէ բռնաւորն . մօյծ այսր զնոսա միահամուռ անարգական ձեւով մահապարտաց . զի 'ի հարցանել և 'ի տանջել զմի մի 'ի նոցանէ՝ իւրաքանչիւր ոք տեսցէ զվիշտ վտանգի ընկերացն , և հաւանեսցի ուրանալ զդենս իւր : Իսկ ոստիկանն ասէ . որք կանխաւ տանջեցանն , առ յետին հարուածոցն անկարօղք են այժմ 'ի հարցափորձ մատչիլ . միայն ադրիանոս ողջանդամ կայ , և կարօղ է տանել զամ տան-

ջանաց. ուր այլոցն փտեալ են գլխովքն ան-
դամք, մինչ կողիցն անգամ երեւիլ. վ̃յ
բարուոք թուի թողուլ զն̃ն աւուրս քանի մի,
մինչեւ զօրասցին, եւ այլ եւս չարչարեսցին.
ապա թէ ոչ՝ եթէ յայժմուս տանջանք ինչ
յաւելցին՚ի նո̃ւ վր̃, հեշտեաւ վճարին՚ի կե-
նաց. սմին իրի եթէ կամք իցեն ո̃րուէդ,
ադրիանոս մատուցի յատեան:

Հաճոյ թուեցաւ բանն առաջի բռնաւորին,
եւ հրամայեաց բերել զադրիանոս զառա-
ջեաւ՚ի ձեւ մահապարտի: Յայնժամ մեր-
կացուցին զնա դահիճքն, եւ բարձին փայտ
յուս նր̃՝ տանել եւ մուծանել՚ի տեղի ատե-
նին: Զայն տեսեալ ընկերաց նր̃ սր̃ց՝ ասեն.
ահաւասիկ ադրիանէ արժանի եղեր բառնալ
զխաչ քո, եւ գնալ զհետ ո̃ն. տես, զի մի
իւիք խոտորեսցիս՚ի հետոց նր̃. զի մի կապ-
տեսցէ բանսարկուն զգանձ հոգւոյ քո.
մի երկնչիր՝ յորոց տեսանես, այլ հայեաց՝
որոց ակն ունիս. արհամարհեա զբռնաւորն.
զի ոչ են արժանի չարչարանք ժմկիս՝ հանդեր-
ձելոցն փառաց, որ յայտնելոցն են՚ի մեզ:
Եւ երանելին անատոլա մատուցեալ առ կեն-
դանի նահատակն՝ ասէր. տէր իմ՝ առ ո̃ծ
անդր միայն յառեսջի՛ր զակն քո. մի զար-
հուրեցուսցէ զսիրտ քո տեսիլ տանջանացն.
սակաւ եւ առժամայն է աշխատութիւն, մեծ
եւ յաւիտենական՝ վարձքն. սուղ ինչ՝ չար-
չարանքն, եւ մշտնջենաւոր՝ հանգիստն.
յերկրի նահատակութի, եւ յերկինս պսակ:
Զի եթէ յորժամ ը̃ մարմնոյ զինուորեալն
էիր,

էիր, բազում այն էր՝ զի մի՛ առօրեայ Թո-
շակի խոստանդանս կրէիր 'ի պետաց և 'ի
մերակացուաց, որչափ և առաւել արժան
է տանել չարչարանաց 'ի մի՛ Հաւելոց, զի
զերկնից ժառանգեսցես զԹագաւորութի
յաւիտեան, և յաւիտեանս և ևս :
Ընդ իբրև ածին մուծին զերանելին Ադրիա-
նոս յատեան, հայեցաւ ընդ նա Թագաւորն,
և ասէ․ դեռևս կաս մնաս 'ի յիմարութեդ
Թշուառական : Պատասխանի ետ սուրբն Ադրիանոս․
այժմ 'ի բաց եդի զամ յիմարութի, և փու-
Թամ ձգնիմ, զի մի՛ կորնչիցի հոգի իմ : Ասէ
ցնա բռնաւորն․ ածէ՛ արդ լո՛ւր ինձ, և մա-
տուցեր զոհս ածոց մեծաց, և երկի՛ր պագ՝
որպէս ամենեքին մեք․ ապա Թէ ոչ՝ մատ-
նեսցիս 'ի տանջանս ահագինս, զորս չիցէ
քո լուեալ : Սրբն Ադրիանոս ասէ․ ո՛վ Թա-
գաւոր՝ զմէ՞ մոլորիք դուք երկիրպագանե-
լով անշունչ և անմռունչ կռոց, Թողեալ զած
կենդանի, որ արարն զերկինս և զերկիր,
զծով, և զամ որ 'ի նմա․ այլ ես չասեմ զնոսա
ածս երբէք, և ոչ իւիք հաւանիմ երկիր պա-
գանել խլից և համրոց և անզգայ քարանց՝
քոց նմանեաց․ հապա զի՞նչ կամիս՝ վաղվա-
ղակի արա՛ :
Ի սրտմտութի բարկութե բորբոքեցաւ Թա-
գաւորն․ և հրաման ետ չարաչար հարկա-
նել զնա ջաղատիւք : Լու եղև երանելւոյն
Նատաղեայ, եԹէ տանջեն զԱդրիանոս․
ընԹացաւ առ նոսն, պատմեաց նմա, և ասէ․
Տէրն իմ սկիզբն արար հանդիսի վկայութե․

և նմա լուեալ զայն՝ սկսան աղօթել վն նր։ Լու այնպէս անխնայ և յերկար տանջեցին զնքն աղբրխանս, մինչև մարմնոյ նր պատառ պատառ անկանիլ յերկիր, և վտականեալ արեանն։ Ասէ ցնա բռնաւորն. անշուշտ մոլորեցուցիչքն այն՝ ով Թշուառական, ուսուցին քեզ զանմտութիւն զայդ։ Սրբն ասէ. զի՞ մոլորեցուցիչ կարդաս զայնոսիկ, որք առաջնորդեն ՚ի յաւիտենից կեանսն. ստուգապէս դուք էք մոլորեցուցիչք, որսողք մարդկան և մատնիչք ՚ի կորուստ։

Զայրացեալ բռնաւորին՝ հրամայեաց տայր գանել զնա և եւս քքոյք։ Իսկ սրբն ասէ ցնա. որքան յաճախես յիս զտեսակս տանջանաց, այնչափ առաւելուս ինձ զվարձս մրցանաց։ Այլ զսմ՝ զոր լուեր ՚ի բերանոյ բռնաւորին, և զպխնխս աղբրխանսն, պատմէր սրբյն երանելին անաստղա։ Դարձեալ ասէ Թագաւորն ցաղբրխանսն. խնայեմ յառոյգ տիս մանկութե քո ով հեգացեալդ, և մի փայլրապար զանձնդ կորուսաներ. երդուեալ ՚ի դիս՝ տեսանեմ զվայելչութի պատկերիդ, և գթամ յայժ ՚ի վերայ քո։ Պնխնի ետ սրբն. յայդմ իսկ խնայեմ ես յիս, զի ոչ զոհեմ։ Բռնաւորն ասէ. խոստովանեա՛ զոծս, և քաւիչ լինին քեզ. և մեք մեծարեսցուք զքեզ մեծապէս, և կացուսցուք յառաջին կարգի պատուոյդ. զի ազնուադի ես դու, և մեծատուն ծնողաց որդի. իսկ ընկերքք քո՝ արք դռեհիկք, ծնեալք ՚ի շինականազոյն և յաղքատ ծնողաց։ Սրբն ասէ.

ասէ ․ գիտեմ, զի գիտես զառումն հօր իմոյ և զապիրատոհմութիւն իմ և զիմոց նախնեաց ․ բայց թէ ծանուցեալ էր քո և զընկերաց իմոց զհայրենիս և զծոխութիւս և զազնուատոհմութի, դու ինքնին աղաչէիր զնա աղօթս առնել վ՟ քս, զի ազատեսցիս 'ի դատն գերութէ գերցդ քոց, և արժանի լինիցիս կցորդ լինել պայծառութե նց և փառաւորութե ։

Յայնժամ առաւել բարկացեալ բռնաւորն հրամայեաց, զի հարցեն զփորն նր արբ չորք ․ և իբրև այնչափ հարին, մինչև տեսանել անօրինին զաղիս նր յերկիր վայթեալ, եա ապա թողացուցանել զնա 'ի տանջանաց ․ զի էր ծաղկահասակ և փափկամարմին ․ և ցնա ասէ ․ տեսանես, որչափ խնայեմ 'ի քեզ մղղրիանէ, և դու ոչ առնուս 'ի միտ զիմ սէր, և ոչ կամիս ապաշաւել ․ և արդ կարդա զդծս, և ես տաց հրաման կոչել զբժիշկս, և բուժեսցեն զմարմին քո ․ և եղիցիս ընդ իս 'ի պալատանն ։ Առ այս եւ պինդն նահատակն առաքինի ծաղրելով ․ քանզի խոստացար ինձ բժշկել զիս 'ի ձեռն բժշկացդ, և 'ի պատիւ հանել, և տանել 'ի պալատդ արքունի, ահա յառաջագոյն առասցեն ինձ դծքն քո, թէ զի՞նչ համդերձեալ են առնել ինձ ․ զի գիտացից՝ եթէ զօրութի ինչ է 'ի նոսա ։

Ասէ կայսրն ․ դծքն չտան պատգամս, և ոչ խօսին ։ Սբն ասէ ․ արդ որովհետև ո՛վ ամպարիշտ՝ չաստծքն քո ոչ խօսել գիտեն, և ոչ պատգամս տան, է՞ր վ՟ զոհես նց և երկիր-

պատգամնես • և ոչ միայն անձամբ զայդ առանես, այլև զմեզ զբանիւ պատուէրքս հաղկեցուցանես զոհել նմ̃ : Յայնժամ զամօթի հարեալ բռնաւորին՝ ետ տանել զս̃ն առհասարակ կապանօք անդրէն 'ի բանտ, կարգեալ զայլ օր պնդագոյն ևս հարցափորձել զն̃ս : Արդ առեալ զօրականաց զս̃ն՝ ածելին 'ի բանտ, ուր զոր դեռ յուժի կային՝ չարաչար ձգձգելով, և ուր զոր լուծեալս 'ի տանջանաց և անկարօղս ոտն յատանել փոխել՝ ը̃ երկիր քարշելով իբրև կոճեղս անշունչս :

Իսկ երանելին անատոլա կազդուրէր զս̃ն ադրիանոս՝ եդեալ զձեռն 'ի ներքոյ պարանոցի նր̃ • և ասէր ցնա զճանապարհայն • երանի է քեզ տէր իմ ադրիանէ, զի ահա առժանի եղեր համարիլ 'ի թիւ̂ ս̃ցն, և չարչարիլ վ̃ն նր̃՝ որ վ̃ն քո չարչարեցաւ • ահա գնաս 'ի տեսանել զփառս նր̃ • զի որ միանգամ կցորդ լինիս չարչարանաց նր̃, հաղորդ եղիցին և փառաց նր̃ :

Ապա իբրև հասին 'ի տուն բանտին, 'ի մի վայր եկեալ ս̃ցն միաբան՝ ողջունեցին զերանելին ադրիանոս • մինչև խորտակելոցն անդամ անդամօք՝ սողոսկիլ ձեռօք և խաղաղութե̃ տալ նմա ողջունիւ̂ 'ի համբոյր սրբութե̃ • յորում վայրի և երանելին անատոլա սրբէր ձեռօք իւրովք զարիւն նր̃, և օծանէր զմարմինն իւղով : Իսկ ս̃քն յողջոյն տալ իւրեանց՝ այսպէս ասէին • ուրախ լեր 'ի տէր եղբայր, զի անուն քո գրեալ է ը̃ կատարելոց ն̃ցս մարտիրոսաց : Ապա երանելին ադրիա-

նոս

նաս առնէ . ուրախ լերուք և դուք յայնմ ժամ .
այլ աղօթս արարէք վ՛ս իմ, զի մի՛ լինիցի 'ի միա-
սակարաց սերմանեսցէ յիս սատանայ . զի
յոյժ եմ նուաղեալ : Ասեն ցնա նոքա . զօ-
րացի՛ր եղբայր Ադրիանէ , ոչ եւս լինի հա-
կառակ քո չարն . զի 'ի փախուստ դարձաւ՝
զահի հարեալ 'ի քումմէ համբերութենէ .
քանզի և մեք խնթայաք վասն քո՝ ցորչափ
մարդ տկար էիր . այլ յորմէ հետէ գեր 'ի
վերոյ հանդիսացար քան զմարդկեղէն բնու-
թիւն , վստահ եմք 'ի տէր՝ զի ոչ այլ համարձա-
կի ընդդէմ քո չարն . վ՛յ մի՛ երբէք զանգի-
տեր , և մի՛ երկմտիր ամենևին :

Պայլին սնէպ 'ի բանտին ընդ Նատաղեայ և
այլ բարեպաշտ կանայք ազնուականք և սար-
կաւագուհիք՝ պաշտել զսրբսն . ոմն զթարախս
վիրացն սրբէր , ոմն զխանձողեալ մարմինս
զարմանէր . այլ ոմն զտեղի գանիցն սփո-
փէր . և առհասարակ բաժանեալ 'ի սպաս
նոցին՝ խնամարկէին և յանձանձէին զնոսա :
Արդ և եհաս բանն յականջս բռնաւորին , թէ
կանայք պատուականք յաճախեն 'ի բանտս ,
բարկացաւ յոյժ , պատուիրեաց չթողուլ զոք
'ի կանանց մտանել 'ի բանտ : Զայն տե-
սեալ երանելւոյն Նատաղեայ՝ կտրեաց զհերս
իւր , և զգեցեալ ձև առնացի՝ այնպէս մտա-
նէր և ելանէր , և ծառայէր ս՛րբցն ամենե-
ցուն , և դարմանէր զնոսա թեթև կերակրովք .
զի տկարացեալ էին յոյժ և նուաղեալ 'ի
սաստիկ հարուածոց և 'ի տանջանաց :
Ի միում նուագի նստեալ առ ոտս ս՛րբյն Ադ-
րիա

ըխանոսի՝ աղերս արկանէր Նմա, և ասէր. աղաչեմ զքեզ տէր, յիշեա՛ զըծակից քո, զի գործակից եղէ քեզ 'ի մարտիրոսութեդ, և օծի զքեզ իւրև ըմբիշ 'ի մրցմանս պատրաստեալ, և խրախուսեցի զքեզ առ պսակն. արդ աղաչեա՛ զտէր քո, զի ընկալցի զիս ընդ քեզ. զի ո՞չ հաւասարորդ գտայ յաղցաւոր և 'ի մեղսասէր կենցաղս յայս, սոյնպէս և երանելի և անաշխատ ժառանգութեն այնմ հաղորդակից լիցուք 'ի միասին. և այս եղեցի երեխայրիք խնդրուածոցդ. քանզի գիտեմ՝ եթէ տացէ քեզ քս զխնդիր քո զայս. վս զի սիրէ զայսպիսի խնդիրս: Քանզի ո՛չ ես անգիտակ եմ՛ իմ անառակութե քաղաքիս և ամպարշտութե թագաւորին. գուցէ առեալ բռնաւորին՝ տացէ զիս 'ի ըծակցուե միում յանածից անտի, և մատնեացի սրբասէր ամուսին քո 'ի ձեռս առն անզգամի. արդ քեզ անկ է պահել զիս, ո՞չ և ուսար յառաքելոյ. և արդ շնորհեա՛ ինձ 'ի վարձ պարկեշտութե իմոյ զՔս քեզ մեռանելն. և ուսցին կանայք բարիս առնել արանց իւրեանց, տեսանելով զքո առ իս բարեսիրութիւն:

Իսկ այլոց կանանց բարեպաշտից իմացեալ զոր արարն անատոլա, 'ի նախանձ բարի բերեալ՝ զգեցան և նք հանդերձ առն, և հատին կանայք ազնուականք զհերս իւրեանց. և այնպէս համարձակ մտանէին և պաշտէին զսբսն ը փափաքմանց իւրեանց: Երբև զայն ես իմացաւ բռնաւորն, զարմացաւ յոյժ, և

ինչ

ինչ ոչ առաց ։ Սպա 'ի վերայ համեալ, թէ մերձ են 'ի մեռանիլ նահատակքն 'ի սաստկութէ հարուածոց և ցաւոց, հրաման ետ դնել սալս պղնձիս Ը ոտիւք նց, և երկաթի նդօք խորտակել զբարձս նց . ասէ . մի զհապարակաց մահ մեռանիցին ։

Սրդ յորժամ դայլին դահիճքն 'ի բանտ, և բարձեալ բերէին զգործիսն, Ը առաջ ընթացաւ նց երանելին անատոլա, և հայցէր 'ի նցէ ասելով . աղաչեմ զձեզ, զառաջինն սկիզբն արարէք յադրիանոսէ ։ Օ այս ասէր՝ երկնչելով, զի մի 'ի տեսանել նր զ̃բսն յառաջ քան զինքն յայն դառն տանջանս, 'ի զարհուրանս ինչ անկանիցի ։ Եւ յորժամ եդաւ սալն, կալեալ երանելւոյն անատոլայ զոտս ադրիանոսի՝ տարածեաց 'ի վր սալին . և դահիճքն հարին ուժգին, և հատին զոտս նր, ջախջախելով միանգամայն և զսրունսն ։ Ապա ասէ ցնա անատոլա, աղաչեմ զքեզ ծառայ քի, մինչդեռ տակաւին շունչ քո 'ի քեզ է, դու ինքնին ձգեա զձեռն քո, և հատցին 'ի քէն . զի և յայսմիկ նմանօղ լինիցիս նցն . քանզի և նոքա բազմօք աւելի քան զքեզ տանջեցան ։ Եւ նայն առեալ նմա զձեռն՝ եդ 'ի վերայ սալին . և դահիճքն հարին և կտրեցին զայն . և նոյնժամայն աւանդեաց երանելին զհոգին 'ի ձեռս նն ։ Յակ դահճացն մատուցեալ առ մի մի 'ի նցն՝ խորտակեցին զսրունս նց, որք ինքնակամ կանխէին պարզէին զոտս իւրեանց, և ասէին մեծաձայն . տր յո քո ընկալ զհոգիս մեր .

և

**և այսու օրհնականաւ աւանդեցին երանելիքն առ հասարակ զհոգիս իւրեանց 'ի ձեռս այ ։**

Իսկ անօրէն կայսրն հրաման ետ 'ի հուր արկանել զմարմինս նցն. ասէ. մի՛ գուցէ եկեալ գալիլեացւոց՝ առցեն զնս, և պաշտօնեսցեն իբրև ածս ։ Յայնժամ վայրի երանելին Անատոլիա բառնայր գաղտ զձեռն նյն ադրիանոսի, և պահէր ։ Եւ յորժամ տանէին դահիճք զմարմինս նց յայրումն՝ 'ի տեղին, ուր բորբոքեալ կայր հնոց մեծ, գնայր մօտ և Անատոլիա ընդ նս, և առեալ ձեռօք զկաթուածս արեան նցն՝ օծանէր զանձն ։ Որպէս և այլք 'ի կանանց բարեպաշտից թացեալ մաքուր կտաւս և ծիրանեգոյն բեհեզս յարիւն նց նահատակաց՝ թաքուցանէին 'ի ծոցս իւրեանց. և ոչ այսչափ միայն, այլ և տուեալ ոսկի բազում և ականս պատուականս՝ գնեցին և զհանդերձս դահճաց զթաթաւեալս արեամբ վկայից ։ Որդ իբրև հասին 'ի տեղի հնոցին, առեալ դահճաց զմարմինս նցն՝ արկանէին 'ի հնոցն ընդ վերնաբերանն. իսկ ածասէր կանայքն կացեալ մեկուսի՝ մռնչէին արտասուօք և ասէին. յիշեցէ՛ք զմեզ տեարք 'ի հանդիստ ձեր ։ Իսկ առաւել երջանիկն 'ի կանայս Անատոլիա՝ կենդանի նահատակն և հրով հոգւոյն վառեալն, յայսկոյս յայնկոյս ընթանայր հեծեծանօք՝ ուխտիւք փափաքելով նահատակակից լինել նցն, և եթէ հնար ինչ էր՝ ըղձանալով արկանել զանձն 'ի հնոցն. գոչէր 'ի սերտ սրտէ, և ասէր. ընկա՛լ և զիս

Է

Է՜ քեզ երանելի՛դ Ադրիանէ , եւ մի՛ Թողուր զիս յաղցաւոր կեանս Տէր . եւ զայս ասացեալ՝ լուռ լինէր իբրեւ անբարբառ :

Այլ եղեւ յետ արկանելոյ զմարմինս պատուական վկայից 'ի հնոցն՝ յանկարծակի որոտացին երկինք սաստիկ շառաչմամբք եւ ահագին փայլատակմամբք . մինչեւ սասանիլ երկրի եւ բոլորապատ քաղաքին . եւ էջ հեղեղ անձրեւաց , եւ շիջոյց զհնոցն . եւ դահճացն պակուցեալ յերկիւղէ՝ կէսք 'ի փախուստ դառնային 'ի տեղւոջէն , եւ ոմանք անկեալ 'ի վերայ երեսաց՝ ընչասպառ սատակէին : Յայնժամ փութապէս ընԹացեալ մերձակայ քրիստոնէից հանդերձ երանելեաւն Անաստասեաւ եւ այլովք բարեպաշտ կանամբք՝ գողացան զպատուական մարմինս փառաւոր վկայիցն , գտեալ զնոսա ողջ անդամօք գլխովին . զի եւ ոչ մազ մի 'ի գլխոյ նոցա կիզեալ էր 'ի հրոյ անտի :

Իսկ այր ոմն պատուական եւ մեծատէր՝ եւսեբիոս անուն նորա , եկեալ 'ի բիւզանդիոյ 'ի նիկոմիդիա հանդերձ կնաւ իւրով , անկեալ յոտս երանելւոյն Անաստասեայ եւ այլոց հաւատացեալ եղբարց՝ աղաչէր զնոսա , եւ ասէր . մեք յառաջագոյն բնակէաք հուպ 'ի քաղաքս . այլ տեսեալ մեր զամպարշտուԹիւն յարուցելոյ 'ի սմին՝ 'ի բազմաց հետէ չուեցաք գնացաք 'ի բիւզանդիոն , Թողեալ զտուն ինչ մեր : Արդ՝ տո՛ւք մեզ զնշխարսդ , եւ դիցուք զնոսա 'ի նաւ , եւ տարեալ ամփոփեսցուք 'ի տեղիս բնակուԹեան մերոյ՝ մինչեւ ցօր մահուան անօ-

րեն Թագաւորին. և ապա զկատարեալ փո-
խադրութիւն կատարեսցուք ամ պատուով և
պաշտամամբ աղօթից. քանզի այս իսկ է մեր
սովորութիւն։ Օ ի թէ տատանօր կամիցիք
ամփոփել զնա, 'ի վ͞ր հասեալ անօրէն բռ-
նաւորին՝ հանէ զնա, և միւսանգամ հրոյ
մատնէ. և դուք լինիք մատնիչ ն͞րցն, զոր
մ͞ծ ահագին նշանօք անարատ պահեաց։
Հաճոյ թուեցաւ ամենեցուն բանս. վ͞ոյ ա-
ռեալ եղին զն͞րան 'ի նաւ. և խաղացուցին
'ի Բիւզանդիոն՝ 'ի շնչել յաջողակ հողմոյ։
Բայց երանելին անատոլս պահեաց առ իւր
զձեռն ն͞րյն Ադրիանոսի. քանզի ասէր. դա-
ցէ իբրև 'ի յայտ դայցեն մարմինք ն͞րց վկա-
յիցն, եւ լինքնին մատնիչ գտայց լինել յու-
սոյ իմոյ. զի և ես ը̃ նոսին մատնի։ Վ͞ոյ ա-
ռեալ զպատուական զայն ձեռն՝ պատեաց 'ի
ծիրանիս հանդերձ խնկօք և անոյշ իւղովք.
և եդ 'ի սնարս մահճին իւրոյ՝ առանց ուրուք
գիտելոյ։

Եւ եղև յետ աւուրց ինչ այր ոմն 'ի քաղա-
քէն Նիկոմիդացւոց՝ ը̃ պատուոյ հազարա-
պետ, մատուցեալ առ թագաւորն՝ խնդրէր
առնուլ իւր 'ի կնութի զանատոլս, հարեալ
'ի սէր ընչից ն͞րա և 'ի գեղ ն͞րա. և յղեաց եւ
առ նա զոմանս 'ի կանանց ծանօթից՝ խօսել
վ͞ն բանիս այսորիկ։ Իսկ երանելին անատո-
լա խաբանօք եւս պխնի՝ որոց առաքեցանն
'ի նմանէ, և ասէ. և ես ուրախ եմ ը̃ այդ.
այլ տուք ինձ ժամիս երիս, զի պատրաստե-
ցայց. զի ո՛չ դուեհիկ ոք է՝ որ խնդրէն զիս։

Օայս

Զայս ասացեալ՝ արձակեաց զեկեալսն. և ինքն պատրաստէր փութալ փախչել լաւլեայն ի Բիւզանդիա՝ ի տեղին, ուր փոխեցան մարմինք սրբոցն ։

Արդ մատուցեալ ի գլուխ մահճացն՝ ուր պահէր զձեռն սրբոյն Ադրիանոսի, անկաւ ի վերայ երեսաց իւրոց, յաղօթս եկաց արտասուօք, և ասէ. Տէր Աստուած իմ, մխիթար վշտագնելոց և զօրավիգն սրտից բեկելոց, նայեաց յաղախին քո, և մի՛ տար ի պղծութիւն զլծակիցն և զմի մարմինն ընդ Ադրիանոսի ծառայի քո ։ Ողորմած Տէր՝ միթէ մոռասցիս զջարդումն ոտից նորա և զհատումն ձեռացն. ողորմած Տէր՝ միթէ ունայն արարցես զցաւսն, զորս ժուժկալեցին ծառայք քո վասն անուան քո սրբոյ. յիշեա՛ Տէր զհամբերութիւն և զժուժկալութիւն նոցա, և ազատեա՛ զիս ի շաղախմանէ ատելեաց քոց. մի՛ պղծեսցէ, մարդասէր Տէր՝ այր կռապարիշտ զանկողինս ծառայի քո Ադրիանոսի. այլ փրկեա՛ զիս յանկնկալութենէ և ի դարանակալութենէ պղծոյն և ամպարշտին. զի դու ես Աստուած բարերարութ և բազումողորմ. և քեզ վայելէ փառք յաւիտեանս. ամէն ։

Զայս ասացեալ՝ ի քուն եղև ի բազում հոգոց և ի տրտմութենէն. և ահա մին ի սրբոց երևեալ նմա՝ ասէր. խաղաղութիւն ընդ քեզ անատոլեա՝ աղախին Տեառն. արդ քաջալերեա՛ց, զի ո՛չ անտես արար զքեզ Աստուած. և ո՛չ մեք մոռացաք զվաստակս քո՝ զոր վաստակեցեր վասն մեր. այլ իսկ և իսկ ընդ երևիլ մեր քեզ՝ մինչ-

նաւդ

Նորա եղեաք վն քո զաւ լաւ մեզ ։ Մահ ցնա
երանելին անապատոլա ․ և որն իմ աղբրանա
երևեցաւ քնի ձեօք հանդերձ ։ Այլ նա ասէ․
այո ․ և յառաջ իսկ քան զմեզ երևեցաւ ․
այլ դու արի մուտ ՚ի նաւ , և նաւարկեալ
եկեսցես առ մեզ ․ զի անդ այց արասցէ քեզ
ած , և հանգիցես ընդ մեզ ։

Յայնժամ զարթեաւ անապատոլա ուրախութբ , և գոհացաւ զնյ ․ և թողեալ զամ ինչ՝ էառ ընդ իւր միայն զձեռն դբյն աղբրանորի ․ և մտեալ ՚ի նաւակ՝ չու արար փութապէս , դէմ եղեալ ՚ի տեղի հանգստեան դքցն ։ Անդ իսկ և ուղեկիցս ոչ սակաւ ՚ի քրիստոնէից , որք փախուցեալ յերեսաց ամպարիշտ թագաւորին մաքսիմիանոսի , և նաւեցան նոքօք հանդերձ ։ Ապա եղև հողարապետին՝ եթէ փախեաւ անապատոլա ․ մատեաւ առ թագաւորն՝ խնդրել ՚ի նմանէ օգնականութի ․ և առեալ բազմութի զօրականաց՝ եմուտ փութանակի ՚ի նաւ՝ հասանել զհետ նց ։ Այլ յետ վարելոյ զնաւն աւուրքս ոչ սակաւ՝ յարեաւ հողմն ՚ի մէնէ հակառակ անօրինացն , և դարձոյց զնս յետս ․ թող զորս ծովահեղձոյց եղեն յերեսաց ալեկոծութե ։

Իսկ բանսարկուն սատանայ երևեալ զհասարակ գիշերաւ՝ որոց նաւէինն ընդ անապալեայ , հնարէր յետս դարձուցանել զնս կմ կորուսանել ՚ի ծովու ․ քանզի երևեցոյց զանձն իբրև ճարտար նաւապետ նստեալ ՚ի նաւի միում հանդերձ քաջ նաւավարօք , և հուպ եղեալ ՚ի նաւն անապատոլեանց՝ հարցանէր ,

ուստի՞ գայք , կմ յո՞ երթայք ։ Մեք եսուն ողխնի ․ 'ի Նիկոմիդեայ ելաք , և 'ի բիւզան-դիոն նաւեմք ։ Մաւ ցնծ սուտ նաւապետն ․ մոլորիք , զի ոչ այս ճանապարհ է՝ ընդ որ գնայցէք 'ի դէմ եդեալ տեղւոյդ ․ այլ 'ի ձա-խակողմն կոյս դարձջիք ։ Իսկ նոցա կարծե-ցեալ՝ եթէ արդարև զուղղորդն յուցանէ ճա-նապարհ , յարեան կազմեցին զառագաստն՝ ուղղել յայն կողմն անդր , զոր ասաց նոցա պիղծ ոգին մոլորութե ։

Յայնժամ երևեցաւ նց յանկարծակի սրբն ադրիանոս՝ իբրև 'ի մէջ նաւակի ․ ձայն ետ , և ասէ ․ բարւոք ընթանայք ․ մի լսէք չար խրատատուծիդ , որ կամի զձեզ կորուսանել ․ և նոյն ժամայն անհետ եղև այսն չար ։ Նա-բեաւ երանելին անատոլա , և ետես զսրբն ադրիանոս , զի գնայր առաջի իւրեանց ․ լցաւ ուրախութբ , ձայն եբարձ , և ասէ ․ ահա՛ և սրբն իմ ադրիանոս ․ և այլ ոչ ևս երևեցաւ նց սրբն ։ Իսկ նց նաւեալ աջողակ հողմով՝ եկին նախ քան զլուսանալ առաւօտու յար-կիւռոպօլիս , որ է յանդիման բիւզանդիոյ ․ և իբրև հասին 'ի տեղի նշխարաց սրբցն՝ ե-լեալ երանելույն անատոլեայ 'ի ցամաք , մա-տեաւ փափաքմամբ և ողջունեաց զպատուա-կան և զճգնազգեաց մարմինս վկայից ․ և առեալ զձեռն՝ որ էր ը̃ նմա , եդ առ մար-մնոյ սրբյն ադրիանոսի ․ և ծունր եդեալ աղօ-թեաց զօգուտ ժամս ։

Մաս եկեալ ողջունէր զմարմն եղբարս և դքորս , աղաչելով զնա աղօթս առնել վմ իւր ․ զի

հալածէ զկնի սրբոյն . քանզի էր անդ 'ի տան Եւսեբիոսի առն բարեպաշտի բազմութիւն հաւատացելոց . որք և աղաչէին զնա , զի հանգիցէ սակաւ մի քնով . քանզի էր խոնջեալ յոյժ : Այլ առհա երևեցաւ նմա 'ի տեսլեան այրն Ադրիանոս , և ասէ . խաղաղութիւն ընդ քեզ աղախին իմ , և դուստր և քոյր մարտիրոսաց . արդ եկ առ զվարձս վաստակոց քոց ընդ արժանեաց : և նոյնժամայն աւանդեաց զհոգին իւր 'ի ձեռս տն :

Այլ յորժամ մատեան եղբարքն զարթուցանել զնա 'ի քնոյ , գտին վախճանեալ 'ի քս . և արարեալ աղօթս արտասուօք հանդերձ՝ ամփոփեցին զնա բազում պատուով ընդ երից երանելի վկայից նոցա . և միաբանեալ հաւատացելոցն զտունն Եւսեբիոսի իբրև վկայարան և տուն աղօթից . քանզի էր իսկ շինեալ բոլորչի զմբեթաձև կամարակապ . և բազումք յարանց և 'ի կանանց թողին զամ ինչս իւրեանց , և արարին 'ի տեղւոջն բնակութի՝ պարապեալ աղօթից և պահոց , ծառայելով տն և սրբոց նր ամ զուարթութբ :

Նահատակութիւն սրբոյն Ադրիանոսի և ընկերաց նր մեծայաղթ վկայիցն քսի՝ եղև 'ի քսաներորդ վեցերորդ աւուր օգոստոսի , յամի տն իբր 305 , կամ 310 . 'ի Նիկոմիդիա քաղաքի . և երջանիկ փոխումն անապականեայ նահատակակցի նոցուն՝ աւուրբք ինչ զկնի 'ի բիւզանդիա :

Սոյն Ադրիանոս է մին 'ի նշանաւորագոյն վկայից . որոյ բազմամատուռք էին սքանչելիք աւ

յիշա

հարուԹբ․ զի անաչառ ցուցցէ զանձն իմաստնոց առա-
ջի ։ Վա զի նախ՝ եԹէ յիրաւի անկեղծ իցէ առող ինչ յօրի-
նակէն սախլանինդայ, որ Թերևս կայր յօրինակի Թարգ-
մանչին, ահա վճարեալ է բանն․ յորմէ իմանամք, Թէ
բաղում խնդիրք վայրապար ծագեն 'ի գրչացն անհո-
գուԹէ ։ Երկրորդ՝ եդեալ Թէ Թարգմանիչն յաւել
զայն հատուած, այս անհաւատարիմ ցուցանէ, բայց և
անշուշտ ստուգաբան․ զի զայն ինչ ասաց, զոր և բուն
վկայաբանն ենԹադրէ․ և արդարև եԹէ գիտէին հե-
ղինակք՝ Թէ յետադայք ոչ իմաստասիրեն զյայտնի պա-
րագայս լսելոյ, զոմն գրուածս կրկին և երեքկին ու-
նէին յերկարել ։ Այս ասելի է երրորդ, Թէև ոչ հաւա-
նեացուք մեկնուԹե Թարգմանչին ( զոր և մեք չասեմք
յանձն՝ վա չգտանելոյ 'ի յունական օրինակի առ սախլ-
ատինդայ ), պարտական եմք զնմանօրինակ մեկնուԹի ինչ
'ի վր բերել մօաք․ զի Թէ՝ կամ յետևառաջուԹբ բա-
նից կամի ասել հեղինակն, Թէ յառաջ յաջօԹելն եանս
անստորլա զայն ասէիլ, և յաջորդնելն զեղբարս՝ պատ-
մեաց նդ, որ յայտ է Թէ պատմեաց զանսիլն՝ որ 'ի
նաւաս․ և ապա 'ի ննջելն աւանդեաց զոգին ը հրա-
ւիրմանն ադրիանոսի․ և կամ որովհետև յետ զայլ ան-
սիլս և զգործս պատմելոյ՝ աղօԹս խնդրեաց անստորլ
'ի հաւատացելոց փափաքանօք հաստանելոյ զկնի ոՁն
ադրիանոսի, ընդ ասացանելն եղբարց՝ Թէ առ օրին և
առժամայն աւանդեալ է զոգին, յայտնապէս իմացանի՝
Թէ ոՁն ադրիանոս հրաւիրեաց զնա․ և յայս միտս խօ-
սի և վկայաբանն, Իւ կամ Թէ զհակիրճ բանս ասա-
ցեալն իբրև յերազի խօսեալ լուեալ մերձակայք․ ըստ
այսմ և այլ բազմապատիկ եղանակք մարԹին լինել
յայտնուԹե անյայտ կարծեցեալ բանից ։ Իսկ որ մեծն
է՝ պատմօղն յորժամ ոչ տարակուսի, այլ պարզապէս
պատմէ զինն եղեալ՝ որ ոչ է անկարելի, աւելորդ է
ընԹերցողին վարանիլ Է զիարդ լինելն․ զի Թէ անլի-
նելի գիտէր գրողն, գրէր խակ ոչ․ ապա հիմն սկի է
հաւատարմուԹեան գրչին, որ լսով եւեւ յամ բանս
իւր ։

(2) Ի Հ․ անխտիր գրի ադրիանոս կամ անդրիանոս․ և
երկրորդս այս է առաւել գործածական 'ի ասնացոյցս,
ը որում ամփոփուն է առ նախնիս մեր երբեմն զվանկն
յունական՝ ադ․ վերածել 'ի հայումն անդ, քան Թէ ադ,
զի անդամանդ, անդրիանուպօլիս, անդրիանոս կայսր
էն․ որ են 'ի բարբառ յունաց և հռովմայեցւոց՝ ադա-

# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Թէոդորոսի ստրատելատի արակլացւոյ:

Հ. յունիս. 8: Յ. փետր. 8. և յունիս. 8: Լ. փետր. 7: Ճառընտ. Մ. երես. նխ=նխե: Բոլլանդ յունիսնեա. Է. հատ. փետր. էջ. 23=37: Մետափր. և այլք: (1)

ՄԵԾԱԶՕՐ ԵՒ ՊԵՐԱ-պայծառ նահատակն քսի սրբն Թէոդորոս Ստրատելատ (որ թարգմանի՝ ամապարգև զօրավար), ծնեալ 'ի քրիստոնեայ և յածասէր ծնողաց 'ի գիւղն Եւխայիտայ՝ որ 'ի սահմանս Ամասիոյ պոնտացւոց, քեռորդի էր քաջայաղթ զինուորին քսի՝ սրբյն Թէոդորոսի տիրոնի, որոյ յիշատակն կատարի յառաջին շաբաթու աղուհացից. և թերևս յանուն քեռւոյն իւրոյ առ կենդանութեամբ իսկ նր կոչեցեալ Թէոդորոս: Սր և մնէ և վարժեալ ամ բարեկարգութեամբ 'ի քս, և զարդարեցեալ հաստակաւ և իմաստութեամբ՝ կրթեալ լինէր 'ի հրահանգս ածպաշտութեն. և հասեալ 'ի տիս երիտասարդութեն՝ երևելի լինէր 'ի զինուորական հանդիսի, յոր գրեցաւ կա

կամաւ կմ̃ականայ . զի էր առոյգ և զօրաւ֊
թագին տեսլեամբ , և ամենիմաստ հանճա֊
րով առլցեալ . մինչև ծանօթ ևս լինէր թա֊
գաւորաց և բռնաւորացժամանակին , ո̃ր մե֊
ծին կոստանդիանոսի այն ինչ թագըրելոյ , և
որոց առ նովաւ ինքնակալաց հեթանոսաց ։
՝Քանզի և 'ի պատերազմունս բարբարոսաց
անպարտելի և յաղթող երևեալ ամենագով֊
ո̃քն և առաջինի նահատակն՝ երթալով եր֊
թայր և զօրանայր . մ̃ոյ և զառաւելագոյն
պատիւ զօրավարութե̃ ընկալեալ ստրատե֊
լատ կոչմամբ՝ մեծաշուք իշխանութե̃ պատ֊
ուեալ լինէր , արարեալ իւր բնակութի̃ 'ի
հերակլեա քաղաքի կապադովկացւոց՝ ուր
կարգեալ էր իշխան բազմութե̃ զօրաց , որ
և առակլեա պօնտոսի կոչի . յորմէ և զարակ֊
լացին անուն ընկալաւ ։ Աստանօր քաղցր և
մարդասէր բարս ցուցեալ առ բնակիչս քա֊
ղաքին , և բովանդակ նահանգին և ազգին
մարխանդացւոց՝ որ ը̃ իշխանութե̃ նո̃ր էին ,
և բազում բարիս առատաձեռնեալ ամենե֊
ցուն , սիրելի լինէր յաչս մեծի և փոքու՝
հաւատացելոց և հեթանոսաց . յորոց և ըզ֊
բազումս ածէր 'ի հաւատս ք̃սի , առաւել 'ի
գնդէ զօրաց իւրոց . զի էր այր լի հոգւով
ս̃բով , բանիբուն գիտութե̃ , և հզօր բանիւք
և արդեամբք յա̃մի ը̃ յաջողութե̃ տ̃ն ։

Օ այնու ժամանակաւ՝ յամի տ̃ն իբր 310 .
գաղերիոս մաքսիմիանոս կայսր՝ ը̃ խորհրդոյ
դիոկղետիանոսի որոշելոյ 'ի կայսերութե̃
արար կեսար զլիկիանոս դակիացի կմ̃ թրա֊
կա֊

կացի զիւր բարեկամ վաղեմի. և տուեալ նմա օգոստոսական անուն՝ մեծարեաց ինքնակալ իշխանութ՟ե. և զկնի իւր երից ամաց նաև կոստանդիանոս մեծն ետ զքոյր իւր կոստանդիա ՚ի կնութ՟ի նորին լիկիանոսի ։ Արդ իբրև զօրացաւ լիկիանոս յիշխանութ՟ե իւրում, գնաց զհետ օրինակին մաքսիմիանոսի և դիոկղետիանոսի՝ զինել զանձն հակառակ ազգին քրիստոնէից, և ստարացեալ ՚ի սիրոյն կոստանդիանոսի և մերոյն տրդատայ ։ Յորոց հալածանս է մ՟ տեղիս՝ յորս հասանէր ձեռն նր. քանզի ունելով զաթոռ իւր յարքայանիստ նիկոմիդիա բիւթանացւոց՝ առաքէր հրովարտակս առ իշխանս և դատաւորս գաւառաց և քաղաքաց սաստիկ հրամանաւ, զի է մ՟ տեղիս բարձցի պաշտօն քրիստոնէութ՟ե, և մ՟ մարդ զոհեսցէ դից հեթանոսաց. և այնպէս հաւատացեալք այն ինչ զերծեալք ՚ի հալածանաց մեծաց՝ միւսանգամ վերստին ՚ի նոյն մատնէին ՚ի փորձութ՟ի. և բազումք արիաբար նահատակէին վ՟ս անուանն ա՟ծ. յորոց սակի են և քառասուն մանկունք սեբաստիոյ՝ այլովքն հանդերձ ։

Նա և ահա յայնպիսի դառնութ՟ե ժամանակի փայլէր իբրև աստղ լուսապայծառ և ջամբար ճառագայթարձակ ՚ի կողմանս արևելոյ ս՟բն թէոդորոս ստրատելատ՝ յամի քաջն և նախամարտիկ զօրականն անյաղթ թագաւորին ք՟սի ։ Նա զինուոր էր և ինքնին անօրէնն լիկիանէ՝ ը՟ստ մարմնոյ արութ՟ե և քաջու-

ջութեն թէոդորոսի և մեծամեծ գործոց նր ·
այլ անգէտ էր գլխովին առաքինութեն հոգ-
ւոյ նր և հաստատուն հաւատոցն ամրութե
որ 'ի քն յն ։ Նրդ՝ ոմանց 'ի չարասէր արքա-
նեկաց բանսարկուին մատուցեալ յունկն
թագաւորին՝ զգացուցանէին վն սրբյն , թէ
ոչ միայն ինքն քրիստոնեայ է , այլև ամ աշ-
խարհն և քաղաքն՝ որ ը ձեռամբ նր , համ-
դերձ զօրօքն հրապուրեալք 'ի նմանէ՝ դար-
ձան 'ի կռոցն երկրպագութե , անհաւան լի-
նելով հրամանաց ձերոց , և զխորհրդական
տօնս ցծոցն ոչ կատարելով , և ոչ 'ի նուի-
րական զոհից նց ճաշակելով ։

Իբրև զայս լուաւ թագաւորն , յիմարեալ
և ապշեալ լի ցասմամբ , վարանէր 'ի խոր-
հուրդս իւր՝ թէ որպէս կարասցէ ըմբռնել
'ի վարմ մահու զայնպիսի երևելի այր (2) ։
Գրել և կոչել առ ինքն անպատշաճ վար-
կանէր · զի մի զխորհուրդ նենգութեն իմա-
ցի , և զարհուրեալ ընդոստուցեալ ընդդի-
մասցի առ է հրամանաց մերոց ։ Խորհէր 'ի
միտ , զի յաղագս պատերազմական գործոյ
պատճառս եղեալ՝ երթայցէ զկողմամբք
կապադովկացւոց , և 'ի նմին իսկ քաղաքի
յառակլիա ըմբռնեսցէ նենգաւ զերանելին ·
և յայս խորհուրդ միոյ եղեալ անօրինին՝
կամեցաւ առաքել զոմանս 'ի պատուաւորաց
նիկոմիդիայ քաղաքին համդերձ զօրօք յա-
ռակլիա , ուր բնակութի էր երանելւոյն ,
գրեալ առ նա թուղթ մեծարանաց և պատ-
ուոյ · Զի թէ հաճոյ թուեսցի առ է կա-

մաց

մայց քոց գալ տեսանել զմեզ և երկրպագու-
թի̃ մատուցանել փառաւոր ծ̃նոց մերոց 'ի
քաղաքիս Նիկոմիդացւոց, եկեսցես բազում
ճոխութ̃բ և երևելի փառօք. ապա եթէ
պատճառք ինչ լինիցին՝ և արգելցին, արժան
մեզ գալ տեսանել զկողմանսդ զայդոսիկ,
և զքաղաքդ՝ յորում բնակեալ ես. զի յոյժ
ցանկացեալ եմք տեսանել և վայելել 'ի
սէր քո :

Նոյնժամ հաւանին առ նա զօրագլուխքն, և
մատուցին զգիր հրամանաց հրովարտակին,
առեալ ընթերցաւ, և ոչինչ երկմտեցաւ.
այլ ուրախացեալ գոհանայր զա̃յ երանելին,
զի զոր ինչ յառաջագոյն խորհէր 'ի սրտի
իւրում՝ յայտնի լինել յաղագս ա̃ծպաշտու-
թե̃, և վկայ լինել ք̃նի, վաղվաղակի առ-
դեամբք կատարէին կամք հաճոյիցն ա̃յ :
Ապա յայնժամ մեծաշուք պատուով ընկա-
լեալ զարսն՝ պարգևս շնորհէր նց̃. և զիւրոյ
գալստեանն անկարութի̃ առ թագաւորն
պատճառեալ յաղագս պիտոյից ե̃ին, առա-
քէր զարսն և հաւանեցուցանէր՝ խոստանա-
լով նց̃ և ինքն, զի երթեալ յորդորեսցեն
զարքայն՝ համդերձ բազմութ̃բ ծ̃նոց իւրոց
գալ 'ի քաղաքն առակլիա. որպ̃ այն թէ տե-
սանելով զայն՝ ա̃մ բազմութի̃ քաղաքին և
գաւառին՝ ուրախացեալ ցնծասցեն, և տօն
մեծ կատարեսցեն համդերձ զոհիւք և եր-
կրպագութ̃բ :

Իսկ արքն այնոքիկ եկեալ առ թագաւորն՝
մատուցին անգէտ խորհրդով զպ̃նիս պատ-

գա

գամանց և Հրովարտակին · զոր առեալ ար-
քայն ընթեռցաւ · և իբրև զմանուկ մի ան-
միտ խաբեալ գարշելի աղեօքն՝ կամեցաւ
չուել 'ի կողմանսն յայնոսիկ · համարէր անօ-
րէնն՝ եթէ ած խորհուրդ իւր յանգ ելեալ
կատարեցաւ ։ Այնուհետև առեալ զբազ-
մութիւն հեծելազօրացն իւրոց ( զոր ոմանք
ութ հազար արանց ասեն ) , գայ հասանէ
'ի քաղաքն առակլիա ։ Եւ լուեալ սրբոյն Թէո-
դորոսի զմերձենալ թագաւորին՝ պատրաս-
տէր զանձն ելանել 'ի վաղիւ անդր ընդ առաջ
նր մեծաշուք պատուով և ձոխութբ · զի և
ինքն իսկ թգրակերպ սպաս և փառս ունէր ։
Եւ յայնմ գիշերի՝ մինչդեռ ննջէր 'ի տան
իւրում երանելին , տեսանէր 'ի տեսլեանն ,
զի ձեռունք տանն վերացան , և կայծակունք
հրոյ փայլատակեալ իջանէին 'ի վր նր · և
ձայն լսելի եղեալ՝ որ ասէր ցնա · զօրացիր
և քաջալերեաց Թէոդորէ , զի ես ընդ քեզ եմ ։
Եւ զարթուցեալ սրբոյն՝ պատմէր մերձա-
կայիցն զտեսիլն , և ասէր · հաճեցաւ ած ,
զի 'ի տեղւոջս յայսմիկ հեղցի արիւն իմ վս
անուանն քի ։ Ապա եդ ծունր , և յաղօթս
եկաց հանդերձ արտասուօք՝ գոհանալով
զայ · և իբրև կատարեաց զաղօթսն , յարու-
ցեալ լուանայր զգեղեցկութիւն պայծառա-
տեսիլ երեսաց իւրոց , և զգենոյր հան-
դերձս մեծագինս բեհեզեայս ։ Ապա հրա-
մայեաց հանդերձել զոսկիականգամ երիվարս
իւր · և հեծեալ հանդերձ զօրօք իւրովք՝ գը-
նաց ընդ առաջ թագաւորին ։ (1)

Եւ

Այս տեսեալ զարքայն՝ երկիր պագանէր նմա ըստ օրինակի թագաւորաց ողջունելով և ասելով. ողջոյն քեզ հզօր և իմաստնական թագաւոր՝ յոյժ տառապեալ։ Նաև թագաւորն իբրև լուաւ զայն, և տեսեալ զմեծամեծութիւն սորին, վաղվաղակի գիրկս արկեալ մեծաւ գթով, և սիրով ընկալեալ՝ համբուրէր զնա, և ասէր. ողջոյն ընդ քեզ արեգակնատեսիլ թագաւորդ լուսոյ. զի պայծառ է և քեզ թագաւորել ընդ իս։ Այս 'ի մտանել արքային 'ի քաղաքն համայերձ բազմութեամբ, որ ելին ընդ առաջ նորա, իջաւանս տայր նմա մեծն թէոդորոս յառանձինն ապարանս իւր՝ կազմեալ ըստ օրինի արքունի պատրաստամն, և արկեալ զահոյս և աթոռս թագաւորին։

Յոր տեսեալ լիկիանեայ՝ ուրախացաւ յոյժ, և գովեաց զքաղաքն և զքաղաքացիսն. և հրամայեաց թէոդորոսի նստել. և ասէ ցնա. ահաւասիկ ըստ գրեցելոցն աղաչանաց առ 'ի քէն ով թէոդորէ՝ հիւրաբար մեծարանս առնելով եկի 'ի տեսանել զքեզ և զքաղաքս քո, բերելով ընդ իս զպատուականագոյնս և զփառաւորագոյնս յիշխանաց մերոց, զի երկիր պագանիցէք և զոհս նոցա մատուցանիցէք։ Մատեաւ առ սէրն թէոդորոս, և ասէ. ով յաղթող և մեծ թագաւոր՝ բարիոք արարեր, զի կատարեցեր զխնդիրս ծառայի քո, ուրախացուցանելով զմեզ գալստեամբդ քո. և առաւել պատուեցեր զմեզ բերմամբ իշխանացդ, զի տեսանելով զնս՝ հաստատեսցին ամենեքեան 'ի հրամանս ինքնապաշտաւէ։ Ընդ՝ աղա-

չեմ զմեծութիւնդ քո, զի փոքր մի հանգիցես յաշխատութենէ ճանապարհիդ. և տացես ինձ զփառաւորագոյն զա̄ծսն ա̄մ. զի տարեալ 'ի տուն իմ՝ օծից իւղովք անուշիւք. և կնդրուկ մատուցեալ խնկեցից նոցա. և երկրպագեալ զոհս մատուցից՝ որպէս և զիտեմ՝ 'ի տան իմում առանձնական. և ապա զկնի այսորիկ բերեալ 'ի հրապարակս առաջի ամենեցուն՝ զօրհնաւորն մատուցից զոհ. զի հայելով և տեսանելով զայն՝ ամենեքեան յորդորեսցին 'ի նոյն նախանձ բարեպաշտութե̄ :

Նորա լուեալ զայս Թագաւորն՝ հաճոյ թըւեցան նմա բանք նորին յոյժ. քանզի չէր տեղեակ խորհրդոց նր̄ա, և հաւատայր առաջելոցն 'ի նմանէ : Նոյ հրամանն տայր բերել և տալ 'ի ձեռս նր̄ա զա̄մ կուռս զոսկեղէնս և զարծաթեղէնս. զոր առեալ սրբոյն՝ տանէր յապարանս իւր. և յարուցեալ 'ի գիշերին յայնմիկ՝ խորտակէր մանր զա̄մ ա̄ծսն, և հանեալ բաշխէր աղքատաց և կարօտելոց. և ինքն պէսպէս հնարիւք տատանէր զմիտս անմիտն լիկիանոսի առ ժամ մի :

Իսկ յաւուրն երրորդի հրամայէր արքայն առ ինքն կոչել զմեծն Թէոդորոս. և ասէ ցնա. ո՛վ ազնուական և փառաւորեալդ 'ի Թագաւորացն՝ որ յառաջ քան զիս էին, որ և առաւել մեծարեալ և պատուեալ եղեր յիմմէ մեծութենէս. արդ ցո՛յց զյօժարութենէր քո՝ որ առ ա̄ծսն մեր և առ մեզ. և մատուցեալ առաջի ա̄մ ժողովրդեանն քաղաքիդ՝

մութեան զօրութս խաբեալ եկի յոտս անօրինութ-
եանս. և եղէ նախատինք գաւառաց և քաղա-
քաց՝ կորուսանելով զբարեյաղթ ածոյն իմ:
Ասէ ցնա քաջն Թէոդորոս. ով անմիտդ և
լցեալդ ամ անօրէնութեամբ յիմարութէ, զայդ
ո՞չ ածեր զմտաւ յառաջագոյն, եթէ ես
քրիստոնեայ գոլով և ծառայ քի՝ զիա՞րդ
խաբեցայց 'ի պատրողական և 'ի կորստա-
կան հրամանաց քոց. այլ զոր գործեցիդ՝ նա-
խնս յայտ արարի քեզ զտղայամտութիւն քո.
զի և ցուցի քեզ զտկարութիւն ածոց քոց, և
յամօթ արարի զամպարշտութիւն քո. որ անո-
ւր և անցաւոր մեծութեամբ հպարտացեալ ես,
և ոչ ունիս յոյս և ակնկալութիւն անանց մե-
ծութեանն և մշտնջենաւոր կենացն. և ոչ ճա-
նաչես զայն՝ որ ետ քեզ զառժամանակեայ
մեծութիւդ. այլ՝ նանրացեալ ես խաբէութ
բանսարկուին, և խաւարեալ 'ի լուսոյ փա-
ռաց միածնի որդւոյն այ. և ամբարհաւա-
ճեալ չարին ապրտեցութեամբ՝ ոչ գիտես զինչ
խօսիս: Իսկ ես զիմ արարածոց զփառս զայ-
տնիկ՝ որք օտարացուցանեն յայ, մնոտիս
համարիմ, զի զյաւիտենական կեանս ժա-
ռանգեցից, զոր ակն ոչ ետես, և ունկն ոչ
լուաւ, և 'ի սիրտ մարդոյ ոչ անկաւ, զոր
պատրաստեաց ած սիրելեաց իւրոց. բայց
ձեզ և ածոց ձերոց նիւթեալ պահի հուրն
յաւիտենականն, որ պատրաստեալն է սա-
տանայի և զօրաց նր:
Թագաւորն ասէ. ով հպարտ և ամենաչար
ամբարտաւան Թէոդորոսէ, զիս Թէ անարգես,
Թե-

Թերեւս համբերիցէ․ զի յաղագս անսալոյ ի-
մոյ եկեսցես 'ի լաւութի․ իսկ զայծսն ընդդէմ
անարգեսցես և կորուսես : Պ̃ախնի ետ ս̃բն,
և ասէ․ այդ իսկ է ցուցումն անմտութեան
քո, զի յետ տեսանելոյ զողորմութի դիմա-
ծայլ պատկերաց քոց՝ դարձեալ յանդգնելով
ա̃ծս անուանես զնոսա, որք են տարբերելիք
կոփեալք 'ի ձեռաց Ճարտարաց, և գիւտք
չարաշուք մտաց, անշունչք և անիմաստք իբ-
րեւ զանասունս զձիս և զջորիս, զի ոչ գոյ 'ի
նս իմաստութի․ այլ առաւել անմտագոյն
դուք՝ որք պաշտէք զանուանեալ ա̃ծսդ : (4)
Յայնժամ Թագաւորն լցեալ սրտմտութեամբ
բարկութեան՝ ասէ․ յայսմ հետէ ոչ համբերե-
ցից քեզ․ 'ի չարաչար տանջանս մատնեմ
զքեզ : Եւ հրամայեաց դահճացն մերկա-
ցուցանել զս̃բն, և տարածել զձեռսն և
զոտսն քառակուսի պրկմամբ․ և գալար ա-
ջառաճիւղօք անխնայ հարկանել զթիկունսն
և զլանջսն և զորովայն ն̃ր : Եւ այնքան հա-
րին զերանելին, մինչև ան̃ծ տանջիչքն
ակարացեալ լինէին․ և մարմին ն̃րայն գզեալ
լինէր 'ի չարաչար հարուածոյն, և արիւն
յորդ հոսէր 'ի նմանէ : (5)

Դարձեալ հրամայէր բռնաւորն կապարեայ
մտրակօք հարկանել զպարանոց ն̃րայն անխնայա-
բար : Եւ յետ այնր տանջանաց հրամայեաց,
զի հանցեն 'ի կախաղան, և զա̃մ մնացեալ
մարմնն ն̃րայ վկային քերեսցեն երկաթի եղն-
գամբք․ և ապա հուր մատուցեալ՝ խանձո-
ղեսցեն զա̃մ վէրս մարմնոյն․ և արարին զա̃մ

ըստ հրամանի Թագաւորին ։ Իսկ առաքինին նահատակն առաւել քան զառաւել համբերէր զուրախութիւն անհնարին նեղութեանցն . և գոհանայր զԱյ , զի ցանկալիքն նր կատարեցան ։ Այլ ոչ առ ոչինչ համարեալ զայնպիսի անհամբերելի տանջանսն՝ ասէր ցԹագաւորն . ով սպասաւոր և արբանեակ սատանայի և Թշնամի ամ արդարութէ ոչ տեսանես՝ զի սպասաւորք քո տկարացեալ եղեն , և յանդգնութի ամբարհաւաճութէ քո նկուն եղև , և բռնութի քո յաղթեցաւ , և հայրն քո սատանայ յամօթ եղև . այլ ես հաստատեալ կամ յանձն իմ կենդանի , զի տր է իմ օգնական և զօրավիգն . և որքան արտաքին մարդն իմ ապականի ՚ի տանջանաց քոց , այնքան ներքին մարդս իմ նորոգի տբ ՚ի կեանսն յաւիտենից ։

Իսկ Թագաւորն դառնացեալ յանձն իւր՝ հրաման ետ զինուորացն , զի բարձցեն յաչաց իւրոց և տարցեն ՚ի բանտ զերանելին . մինչև խորհեսցի վա նորա , Թէ որով մահուամբ սպանցէ զնա ։ Այլ յետ աւուրց ինչ ետ հանել ՚ի բանտէ և ածել առաջի իւր . և բազում բանիւք հարցափորձեալ՝ ոչինչ կարաց հաւանեցուցանել զերանելին ։

Ապա հրամայեաց , զի տարցին զնա ՚ի տեղի երևելի , և հանցեն զնա ՚ի խաչ , և նետաձիգ լինիցին ՚ի նա ամ բազմութի զօրացն . և պէսպէս լլկանօք չարչարեսցեն մահուչափ ։ Այլ նոցա առեալ տանէին զնա . Իսկ վկայն քնի մեծաւ ցնծութբ երթայր զկնի

զին

զինուորացն . և եկեալ 'ի խաչն՝ կապեցին
զձեռս և զոտս նորա , և հանեալ կապեցին
զնա ը̃ խաչափայտն . կմ̃ ոմ̃ այլք ընթեռ-
նուն , պնդեցին զնա բևեռօք ը̃ ձեռս և ը̃
ոտս և ը̃ զիստն . և բազմութ̃ն զօրացն կամ
մանկանց զինուորելոց՝ եդեալ զնա իբրև 'ի
նշաւակ նետաձգութեան՝ արձակէին 'ի նա
զնետս իւրեանց , և առաւելապէս հարկա-
նէին զերեսս և զաչս նորա : Իսկ նահատակն
քի̃ի յայնպիսի անհնարին աղէտս անտրը-
տում ուրախութ̃ համբերելով՝ փառս մա-
տուցանէր այ̃ . և առ ոչինչ գրէր զամ̃ վիշտս
նեղութեանցն առ սէրն քի̃ի :

Ապա մատուցեալ յետ այսորիկ անօրինացն՝
հատին զառնացի անդամս նր̃ . և բազմու-
թիւն՝ որ շուրջ կացեալ էին , լային ամենե-
քեան կարեկցաբար : Անդ էր և աբգար
սպասաւոր և նօտար նորա՝ որ զայսորիկ պատ-
մէ . և 'ի վր̃ բերէ . Ես աբգարոս՝ ծառայ
և դպիր գոլով նորա , որ հրաման առեալ էի
մի ը̃ս միոջէ գրել զամ̃ , իբրև տեսի զայնչափ
նեղութիւն , 'ի բաց ընկեցի զքարտէսն 'ի
ձեռաց իմոց . և երթեալ անկայ առ ոտս նր̃
լալով դառնապէս : Իսկ տեսեալ նորա զար-
տասուսն իմ՝ ասէ ցիս նուաղ և տկար ձայ-
նիւ . ով աբգարոս մի՛ տրտմիր , և մի՛ հեղգար
'ի գործոյդ քումմէ . այլ զոր սկսար՝ կատա-
րեա՛ . և անսա՛ սակաւիկ մի , զի տեսանելով
քո զվախճան կատարածի իմոյ՝ գրեսցես :
Իսկ զայս իբրև ասաց , համբարձ զաչս իւր
յերկինս , և ասէ . Հա՛յր տն̃ մերոյ յի̃ քի̃՝

ած իմ, որ անճառելի բարերարութեամբ քո մա-
տակարարես զմեզ, որ և 'ի ձեռն միածնի որդ-
ւոյ քո և ճշմարիտ Տր. հոգւոյդ պարգևեցեր
ինձ համբերութիւն. զի դու Տր յառաջագոյն
խոստացար ինձ, և ասացեր, թէ ոչ թողից
զքեզ, այլ յամ ժամ եղէց ընդ քեզ, և փրկե-
ցից զքեզ: Արդ ընդէ՞ր թողեր զիս ած
իմ, և հեռի արարեր զգթութիւն քո յինէն.
քանզի վայրենաբարոյ գազանք գիշատեցին
զմարմինս իմ. վասն սիրոյ անուանդ քո բիբք
աչաց իմոց արտասուօք ելին յինէն. մարմինք
իմ հալեցան 'ի հրոյ, և մատունք իմ փշրե-
ցան. և երեսք իմ այլագունեալ՝ արտաքոյ
եղեն մարդկային բնութենս. և անձն իմ սա-
սանեալ դողացաւ յերկիւղէ չարչարանաց խա-
չիս: Արդ՝ Տր իմ և ած, վասն քո համբե-
րեմ այսմ ամի, տարեալ սրոյ և հրոյ և բա-
զումնեղուեց. վասնորոյ աղաչեմ զքեզ. ընկալ
զհոգիս իմ փաղփաղուկի, և հանգո՛ ընդ հաճոյ-
ից քոց. զի դու կարող ես յամի:

Այս զայս իբրև ասաց, լռեաց. քանզի ներ-
գևեալ էին ամ անգամք մարմնոյ վկային.
և յօշեալ տրորեալ էր գոգ որովայնի նորա
'ի քերանացն և յողողածեծն ամենայն.
Յետ այսորիկ կարծեցեալ անօրէն և ամբա-
րիշտ բռնաւորին լիկիանեայ՝ թէ մեռաւ
սբն, հրամայեաց պահապանս կացուցանել
'ի տեղւոյն, զի զօրն և զգիշերն ողջոյն 'ի
վերայ խաչին ագցի մարմինն, և մի՛ անկցի 'ի
ձեռս քրիստոնէից: Իսկ յառաջին պահա-
գիշերոյն առաքեցաւ հրեշտակ յԱյ. և իջա-
ցեալ

ցեալ զնահատակն 'ի խաչէն՝ առողջացոյց
ամենեքին զմարմին նր․ և ասէ․ ուրախ լեր և
զօրացի՛ր, զի տր ած քեզ էր և է և եղիցի յա-
ւիտեան․ և ածէր ասացեր, թէ հեռացար յի-
նէն․ այն՝ որ զօրացոյցն զքեզ յամի․ և արդ
կատարեա՛ զընթացս Ճգնութե քո․ և դու
երթաս առ յս փրկիչն․ և ընկալցիս զանա-
պական պսակն յարքայութե արդարոց․ և
զայս ասացեալ՝ վերացաւ յերկինս ։ Իսկ սրբն
Թէոդորոս տեսեալ զմարմին իւր ամենեքին
բժշկեալ 'ի վերայ անտի՝ ամբարձ զձեռն
իւր յերկինս, գոհանայր զած, և ասէր․
բարձր առնեմ զքեզ ած իմ և թագաւոր իմ,
և օրհնեմ զանուն քո յաւիտեան և յաւի-
տեանս յաւիտենից․ և 'ի բազում ժամս ա-
ղօթեալ՝ առաքեաց զամէնն ։

Իսկ ընդ այգն ընդ առաւօտն կոչեաց թագաւորն
երկուս ոմանս 'ի պատուաւորաց, որոց ան-
ուանք էին անտիոքոս և պատրիկկիոս, և ասէ
ցնս․ երթայք հանդերձ զօրականօքդ՝ իջու-
ցէք 'ի խաչէ անտի զչարամեռ մարմին խաբե-
ղին այնորիկ, և բերջիք առաջի իմ․ զի հրա-
մայեցից դնել 'ի կապարեայ տապանի և ըն-
կենուլ 'ի խորս ծովուն․ զի մի՛ յափշտակեն
քրիստոնեիցն՝ առեն պատուեսցեն ընդ սուր-
բութե իւրեանց ։ Գնացին զօրագլուխքն ընդ
հրամանի արքային․ և մինչ դեռ 'ի բացեայ
էին, տեսին զխաչն ունայն 'ի մարմնոյ սրբ
վկային, և հիացեալ զարմանային ։ Յայն
ժամ ասէ անտիոքոս ցպատրիկկիոս․ արդեօք
Ճշմարիտ է՝ զոր ասեն քրիստոնեայք, եթէ

այխսի սքանչելիս արար. նա միայն է ա՟ծ.
արդ եկա՛յք քարկո՛ծ արասցուք զանօրէն լի-
կիանէս. զի Թագաւոր մեր ա՟ծ է՝ զոր Թէո-
դորոս քարոզեաց : Եւ 'ի լինել այսպիսի
խառնակութե՟ և խռովութե՟ ը՟ն նոր հաւա-
տացեալս և ը՟ն հեթանոսս 'ի տեղւոջ անդ
արտաքոյ քաղաքին, յաւելան և այլք 'ի քա-
ղաքացւոց յերկուց կողմանց յաղմամբ ան-
կարգութե՟. յորմէ և արիւնհեղութի՟ լինէր
'ի մէջ խառնիճաղանջ ռամկին :
Ընդ մի ոմն յանօրինացն՝ որում անուն էր
Լեանդրոս, հանեալ զսուսեր իւր՝ ընթացաւ
'ի վ՟ր ս՟բյն Թէոդորոսի, զի սպանցէ զնա :
Եւ տեսեալ զայն կեստոնեայ բդեշխի՝ ձգեաց
զձեռն իւր, և կորզեաց զս՟րն 'ի նմանէ. և
զԼեանդրոս սպան : Իսկ այլ ոմն՝ որում անուն
էր Մերպաս (ըստ ոմանց՝ 'ի հոնաց ազգէ),
ելեալ ը՟ն մէջ ամբոխին՝ յարձակեցաւ 'ի վ՟ր
բդեշխին, և հարեալ սրով սպան զնա (6) :
Իբրև ետես երանելին Թէոդորոս զբազմու-
թե՟ն խռովութի՟, մտեալ 'ի մէջ ն՟ց՝ աղաչա-
նօք խաղաղացուցանէր զամբոխն ը՟ս իւրում
իմաստութե՟. յայտ արարեալ՝ թէ չէ արժան
որոց զհետ երթան ք՟սի, խռովութի՟ և ապըս-
տամբութի՟ սիրել, և ոչ նմանել զոք սրով,
այլ՝ սիրով հոգւոյն և հեզութ՟բ : Յայնժամ
առեալ բազմութե՟ հաւատացելոց զս՟րն՝ դար-
ձան 'ի քաղաքն բազում ուրախութ՟բ :
Եւ մինչդեռ անցանէին ը՟ն մէջ քաղաքին,
և մերձ եղեն 'ի դուրս բանտին, ուր էին
արգելեալ կալանաւորքն ա՟մ 'ի հրամանէ

լիկիանէսի՝ իբրեւ ձայնակիցք թէոդորոսի , աղաղակեցին ամենեքին 'ի բանտէն , և ասեն . փառաւորեալ մեզ ծառայ այ բարձրելոյ : Եւ ժողովուրդն իբրեւ լուան , ասեն ցերանելին . հրամայեա մեզ , զի խոստովանեսցուք փաղփաղակի զդուռս բանտին , և աղաչես-ցուք զարգելեալսն՝ որ 'ի նմ: Իսկ սրբն առ-գել զնա 'ի խորհրդոցն . և ինքն մերձ եղեւ առ դուրսն՝ աղօթեաց առ ած , և կնքեաց նշանաւ խաչին . և ահա կնքնին բացեալ եղև դուռն , և կապանք նց լուծան . և ելեալ արտաքս՝ անկանէին առ ոտս նր . և գոհանային զնյ և զնրայն : Եւ նա ասէ ցնս . Երթայք խաղաղութ յիւրաքանչիւր տեղիս . և մի ինչ վն իմ խռովութի առնիցիք : Արար ած և այլ բազում սքանչելիս 'ի ձեռն նրայն յաւուր յայնմիկ . զի հիւանդք և ախտաժէտք և այսահարք բժշկէին աղօթիւք նորա :

Եւ տեսեալ անօրինին լիկիանէսի , զի բազմութիք հեղլենացւոց ուրացեալ 'ի բաց կացին յաշտողն պաշտամանէն և հաւատացին 'ի քս , յանհնարս եմուտ , զի ոչ կարէր առ-կաւաձեռն զնոզա նուաճել զնոսա . ապա առաքեաց զերեւելի զօրականս 'ի զինուորացն , զի երթիցեն գաղտ յամբոխեն 'ի տուն բանտին , և հատցեն զգլուխ նրյն . որք եկեալ փաղփաղակի կատարէին զհրամանս նր՝ հատանելով սուսերաւ զգլուխ երանելւոյն : Եւ այսպէս կատարեցաւ յաղթող և մեծ նահատակն քսի նրն թէոդորոս ստրատելատ՝

լատ՝ յամսեանն օգոստոսի , որ օր իւր էր ընդ
Ճաւընտորին , յամի տեառն իբր 315 · կամ 320 ։
Արդ յետ կատարման սրբոյն , ըստ հրամանի
նորին՝ ոչ յառաջագոյն պատուիրեալ էր ար-
գարոյ ծառայի իւրոյ , առեալ զպատուական
մարմինն պատեցին սբ. կտաւօք և անուշա-
հոտ խնկօք , և եդեալ 'ի տապանակի՝ տա-
րեալ հանգուցին 'ի ժառանգութիւն նորա հայ-
րենի 'ի գեղջն Եւխայիտայ ։ Իսկ զի մեկնեալ
էր փութով լիկիանոս 'ի կողմանց անտի առ
ահի ժողովրդեան , գնացին զկնի նշխարաց
սրբոյն Թէոդորոսի բազմութիւն ժողովոյն առակ-
լիայ քաղաքին՝ մոմեղինօք լուցելովք և խն-
կօք անուշութեամբ և երգօք հոգևորօք ընդ սովո-
րութէ քրիստոնէից · և եդին յիւրում հանգս-
տարանին՝ առընթեր քեռւոյն իւրոյ և ան-
ուանակցի՝ սրբոյն Թէոդորոսի զինաւորի ։ Իսկ
բազում սքանչելիս կատարեաց Աստուած 'ի վերայ
գերեզմանի սրբոյն , որոց միանգամ հաւատով
մերձենային 'ի նա · և յոր յիշատակի վկային
լինէր բազմութիւն ժողովոց յամենայն ազգաց , որք
մեծաւ պատուով և ընծայիւք կատարէին
զյիշատակ նորա ։ (7)

Յայս վայր հին վկայաբանն Ճաւընտորաց՝
իբրև 'ի բանից նախկին ականատես և հա-
ւատարիմ գրչի , արգարոյ ասեմ դպրի սրբոյն
Թէոդորոսի · որ և զգրուածն իւր եդ 'ի պա-
հեստի յեկեղեցւոջ՝ որ շինեցաւ յետ սակա-
ւուց առ կոստանդիանոսիւ յանուն սրբոյն յեւ-
խայիտա · ընդ որում նշանակի 'ի ժամագիրս
յունաց ։ Իսկ ոչ 'ի վերայ բերեն այլ ամենայն վկայա-
գիրք ,

Առաջին խաչվառն՝ մեծ զօրավար ձայնեն, էր պատկեր ս̅բ̅յն միքայելի հրեշտակապետի. Երկրորդն էր ս̅բ̅ց հայրապետաց՝ հոգևոր զօրագլխաց, ութոտանի՝ յութեակ վերջաւորս. Երրորդն էր ամենայաղթ նշան ս̅բ̅յ խաչի, յորոյ 'ի չորեսին թևս կային պատկերք չորեցունց քաջ նահատակաց, որ է դեմետրի, պրոկոպիոսի, թէոդորոսի ստրատելատի, և թէոդորոսի զինաւորի. չորրորդն էր ս̅բ̅ գէորգ հեծեալ յերիվար. հինգերորդն՝ վիշապանկար. և վեցերորդն՝ պատկեր կայսեր ձիաւոր. և իւրաքանչիւր ո̃ք գունդ գունդ. որ վեց գունդք դրօշակաց, կամ երկոտասան խաչվառք ։

'Ի կարգի բազմապատիկ նշանագործութեց ս̅բ̅յն թէոդորոսի առաջնոյ կամ երկրորդի անխտիր՝ երևելի է հրաշքն այն, զոր գրէ ս̅բ̅ն յովհան դամասկացի 'ի ճառն Գ. յաղագս պատկերաց, բանիւ՛ ս̅բ̅յն անաստասայ սինեացւոյ. որ ունի այսպէս. * Չորս մղոնաւ հեռի 'ի դամասկոսէ կայ տեղի կոչեցեալ կարսատաս, ուր է տաճար ս̅բ̅յն թէոդորոսի ։ Յայս տաճար մտեալ սարակինոսաց՝ պղծեցին զայն ա̅մ գործովք անարժանութե̅ . . . և 'ի միում յաւուրց յորժամ բազմութ̅ք նստէին անդ և զբանիւք անկանէին, մի ոմն 'ի նոցանէ նետաձիգ եղև 'ի պատկեր ս̅բ̅յն թէոդորոսի, և խոցեաց զաջոյ ուս ն̅ր. և առ ժամայն բղխեաց արիւն, և հոսեաց մինչև 'ի ստորին սպառուածս պատկերին. և զայս ակն յայտնի տեսին ամենեքին՝

քին՝ որ անդն կային, զնետոն ասեմ մնեալ
յուսոյ նոյն, և զարիւնն 'ի դուրս բղխեալ.
այլ ոչինչ զգաստացան 'ի տեսիլ ահագին
հրաշիցն. ո՛չ որ նետաձիգն եղև՝ եկն 'ի
զեղջ, և ոչ այլ ոք 'ի նոցանէ շարժեցաւ 'ի
սրտէ. ո՛չ 'ի տաճարէն մեկնեցան, և ո՛չ 'ի
պղծելոյ զայն դադարեցին. և սակայն 'ի
փախչանի յանձինս ընկալան զպատիժ պա-
տուհասին: Քանզի քաան տունկք էին՝ որք
'ի տաճարի անդ օթէին ընտանեօք. և ահա
'ի սակաւ աւուրս ժանտ ախտիւ մահու ջե-
ռեալ՝ բնաջինջ եղեն առհասարակ. և այն
զի ո՛չ ոք այլ 'ի նոցանէ յեղելոցն 'ի տեղւոջն
յայնմիկ մնաց յայն աւուրս՝ բաց յօթա-
գայելոցն 'ի տաճարի անդ: Նաև այս պատ-
կեր նետահար (ասէ նոյն անաստասա՝ որ էր
'ի փախչան վեցերորդ դարու) կայ մինչ
տակաւին, և ունի զխոցուած նետին, և
զհետս արեան: Նաև յոլովք լուկ 'ի նոցա-
նէ՝ որք տեսող եղեն իրացն, գոլով 'ի ժա-
մանակի անդ՝ յորում այս հրաշք գործեցան,
տակաւին կենդանի են: Նաև ես գլխովին
տեսող եղէ նորին պատկերի. և զոր տեսի՝
'ի գրի դրոշմեցի առ յիշատակէ Ս:

Իսկ պատուական մարմին նորին Թէոդորոսի
ստրատելատի՝ զկնի ժամանակաց փոխա-
դրեցաւ յարևմուտս 'ի պանծալին վենետիկ
քաղաք իտալիոյ. ուր և ցայժմ տեսանեմք
հանգուցեալ յեկեղեցին՝ որ կոչի սբ փր-
կիչ: Ստոյգ է և այն՝ զի յառաջ ժամանա-
կաւ առաջին պաշտպան վենետիկեան ազնը-
ուա

ուխտապետութեն էր նորա Թէոդորոս, և յանուն նո՛ր շինեցաւ ՚ի ներքուստ պատրկէ Հայկազնոյ ՚ի մեծ զօրավարէ յունաց մայր եկեղեցին, որ յետոյ եղև Հոյակապ տաճար, և կոչեցաւ նոր մարկոս՝ յորժամ բերաւ անդր մարմին նորա աւետարանչին, և ծանուցաւ գլխաւոր պաշտպան քաղաքին և ազգին: Իսկ ՚ի մեծի հրապարակի կանգնեցին ՚ի վե՛ր երկուց մեծամեծ կճեայ սեանց զարձան յիշատակի երկոցունց պաշտպանացս. յորոց մին է առիւծ թևաւոր՝ որ է նշանակ նորին մարկոսի. և միւսն՝ զօրական վահանաւոր և նիզակաւոր, նշանակ նորին Թէոդորոսի. Թէպէտ և ՚ի վե՛ր վիշապի կոխեալ, զի զսպանումն վիշապի ՚ի նորին Թէոդորոսէ տուողին՝ աբեմնեայք շփոթութիւ ընծայեն նորին Թէոդորոսի աստուածելայի. այլ և վե՛ր մարմնոյն՝ որ ՚ի վենետիկ, են որ առաջնոյ, և են որ երկրորդին Թէոդորոսի լինել ասեն. բայց զօրացեալ է կարծիքն՝ որ վե՛ր աստուածելայի : (8)

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) [illegible]ւր օրինակ առնուք ՚ի վկայաբանութեան Թէոդորոսի առաջնոյ, զի չիք սուրբգրոյն և անստգիւ քան զօրինակն մեր՝ որ ՚ի ճառընտիրս, նոյնպէս և առաջիկայս վկայաբանութի աստուածելայի [illegible] նշանակեալ ճառընտրի մերում՝ է նախապատիւ քան զայլ օրինակաց եղելոց առ յոյնս և առ լատինս: Զի Թէպէտև համօրէն վկայագիրք ակզբնաբար առեալ իցեն ՚ի միոյ տպերէ՝ [illegible] յաւելուածս [illegible] գրքէ, որ սպառաւորն

գիւղ գայլ բան։ Զէ՛ հարկ ցուցանել և զմիաձայնութիւն Հ. և Յ. Է. մեզ. զի զնոյն պատմութիւն Խորենացւոյն համառօտեն երկոքեանն։ Յոյնք 'ի փետր. 8. պատմեն ըզնահատակութիւն սորին. և 'ի յունիսի 8. զփոխադրութիւն մարմնոյն 'ի Հերակլիոյ յեւքայիտա, կրկնելով և զպատմութիւն նահատակութեան։

Նիկեփորոս Կալլիստոս, գիրք. Է. գլ. 44. յետ ուղիղ համառօտելոյ զվկայաբանութիւն Խորենացւոյս, բարւոք առնէ ծանուցանել՝ թէ այլ է և սորին Թէոդորոս անուն հրով նահատակեալ յաւուրս առ Մաքսիմիանոսիւ. և դարձեալ այլ ևս Թէոդորոս խաչեալ 'ի Պերգէ Պամփիւլեայ. զոր տօնեն Յոյնք յապրիլի 19. և Լատինք 'ի մարտ. 20։ Նոյն յաւել, թէ այլ է և ևս Թէոդորոս կետարացի՝ փառաւոր վկայ հայոց. որոյ պատմութիւն գրի 'ի Ճառընտ. Բ. երես. պկհ. այլ զայսմանէ 'ի կարգս յիշատակաց։

(2) Զայս Նախընթաց վարանս Թագաւորին, և զյետագայ հարկաւոր հնարս երթալոյ առ Նա պատճառանօք պատերազմի՝ զանց առնեն լատին վկայագիրք ընդ Մետափրաստեսի. որով փոքր մի գժուարանայ չու լինելն 'ի Հերակլիա անպատճառ։ Այլ զի մի զայսպիսի հանգամանս բանից ածից միշտ 'ի բողոքանութիւն, զայս միայն ասեմ, բազմօք կարգաւորեալ է ընթացք վկայաբանութեանս ըստ Ճառընտրաց՝ քան ըստ այլոց։

(3) Անանուն գրիչն լատին դնէ աստ զայս պատճառս. * հեծաւ 'ի դարդանօս երիվար իւր մեծաշուք, որով ** և զվիշապն սպան ||. զնոյն բազմօք նկարագրէ և բանիւս երկարաբանէն. որ է չփոթել զանցս Թէոդորոսի զինուորի և ստրատելատի. զի երկոքին ևս լայնաբար՝ զօրավար կոչին։

(4) Մետափրաստեան պատճառս է՝ և զոր յարմարեն աստ այլք 'ի բերանոյ սորին սուգաբանել զանուն իւր՝ ծածապարգև, կամ պարգև Այ. և զԼիկինիանոսին՝ հողմավար կամ հոսիչ. ոչ և Ծին Թրակիոյ յարմարել զբառս անթռաքս, որ է կայծակն կամ հրատ. ևս և ասել, թէ դու պաշտես զանլիսպիս չածն, և ես զ'ի վերայ սերոբէից. ևն։

(5) Թիւ հարուածոց ոչ նշանակի 'ի Ճ. եթէ չիցէ անհոգութիւն գրչի 'ի բաց անկեալ. ուր 'ի Հ. ասի, հարին զանձն և զթիկունս համարով ՃԾ. և զորովայնն Ծ։ 'ի Յ. ժմ. առաջինն դնի 700. և երկրորդն՝ 50։ Իսկ անանունն լատ. զառաջինն ասէ 600. և զերկրորդն՝ 50.

դինոսի յուստինեայ 'ի ՉԼ գիրս վենետիկեան անցից, Թէ
* կամեցեալ Ներսեսի (պատրկի 'ի վեցերորդ դարու)
„ կատարել զուխտ իւր՝ որ առ ած, շինէ յաւարէ պա_
„ տերազմին զվկայարանս 'ի հռոմ և 'ի հաւեննա. և
„ ոչ մնացեալ նաև զուխտ իւր առ վենետիկեցիս, փոյթ
„ տանի կառուցանել և անդ երկուս վկայարանս 'ի տե_
„ ղին կոչեցեալ ռիալդո (ջր բարձր կմ խորին առու,
որ և ջրանցք ծովու) 'ի յիշատակ անցից իւրոց Ը այն.
„ զմին յանուն Թէոդորոսի վկայի, անդ՝ ուր է այժմ
„ եկեղեցի սրբոյն մարկոսի, այն՝ որ զառ 'ի ներքսէ շի_
„ նեալ տաճարն Թէոդորոսի 'ի մէջ իւր փակէ այժմ
„ Ըարձակ շինուածով՝ յետ փոխադրութեան մարմնոյ երա_
„ նելի աւետարանչին 'ի վենետիկ. և միւս ևս յանուն
„ մինասայ և գեմինիանոսի ||: Ջերկրորդս զայս՝ որ էր
հանդէպ սրբոյն մարկոսի, բարձին 'ի հիմանց յաւուրս
յայսոսիկ, և արարին այլ շինուած հանդէպ երկուց
կողմանց մեծի հրապարակին:





# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Թէոփիլոսի , և որոց ը՟ նմա :

Հ. Յ. դեկտ. 14 : Լ. յունուար. 28 : Բոլլանտեան յունի. 'ի Է հատ. ժող. եղ. 808=832 : Մնացորդք. առ առաք. հատ. Զ. 1000=1016 :(1)



ԲԱՕՄԱՋԱԲՋԱԲ և բազմահանդէս վկայն ք՟ի Թէոփիլոս էր 'ի բիւթանիոյ ասիացւոց , 'ի կեսարիա անուն քաղաքէ պրոպոնտոսի 'ի կողմանս Նիկիոյ և պրուսայու (2) , 'ի ժամանակս հալածանաց դեկոսի կայսեր , զաւակ հեթանոսի՝ 'ի ծածուկ քրիստոնեայ . որ և յառաջ քան զմկրտիլն եռայր հոգւով , և փութայր հեղուլ զարիւն իւր վ՟ն օրինացն ք՟ի յուսով կենացն յաւիտենից : Նոյն եղև՝ զի ոմն 'ի գործակալաց դեկոսի կամբրուտիոս կ՟մ կումբրիկիոս անուն եկեալ դատաւորական իշխանութ՟բ յասիա՝ շրջէր ը՟ քաղաքս քաղաքս , 'ի նիկամիդիա , յապամիա և 'ի կեսարիա . զոհէր դիցն իւրաքանչիւր քաղաքի , և ստիպէր զամենեսին 'ի զոհել . զի յայտնի լիցին քրիստոնեայք , և յոչն հաւանիլ՝ մահու դատեսցին :

Յայն

Հայնժամ այր մի 'ի քրիստոնէից կեսարիոյ
լեռնկիոս անուն՝ պատուական և իմաստուն,
մատեաւ առ Նշխանն, և յանդիմանեաց ա-
ներկիւղ համարձակութեամբ զգործս անարժա-
նութեան նորա՝ պաշտօնեայ լինելով արարածոց
փոխանակ արարչին, և յարիւն անպարտ
ձեռն մխելով 'ի գիշատել զազանաբար զհա-
ւատացեալս քրի: Նա բանաւորն փորձեաց
զնա զանխիւք և քերանօք. և ոչ կարացեալ
ձգել զնա 'ի կամս իւր՝ ետ հրաման հատա-
նել զգլուխ նր. և նա ուրախութեամբ և արիա-
բար մատոյց զպարանոց իւր սրոյ, և այնպէս
կատարեցաւ 'ի քս. և այն եղև քաջալերու-
թիւն սրտի ամ հաւատացելոց, և յորդոր բա-
րի 'ի վկայութիւն վս անուանն տն. և առա-
ւել ևս քաջին Թիւրսոսի՝ 'ի յայտնի առնել
զանձն փութայէր:

Նորա յեղանել զատաւորին յետ երկուց ա-
ւուրց ընդ դուռն կեսարիոյ ելլեսպոնտեան
անուանեալ՝ է առաջ եւ նմա Թիւրսոս, և
ասէ. ողջոյն մեծի կուսակալիդ: Կոմբրու-
տիոս ասէ. ողջոյն և քեզ բարեկամիդ մծոց:
Նա Թիւրսոս. եթէ օրէնն իցէ առնել ումեք
համարձակ զճշմարտութիւն՝ զոր գիտէ, լուր
ինձ աղաչեմ: Նշխանն ասէ. և կարի իսկ
բարւօք. և ես գլխովին պատրաստ եմ 'ի լսել:
Հայնժամ ասէ Թիւրսոս. մի և ճշմարիտ ած
բարձրեալ պատուիրէ ինքեան միայնոյ երկիր-
պագանել, և զնա միայն պաշտել. ապա չէ
արժան խոտորիլ զհետ այլոց պաշտամանց
սնոտեաց, և բռնի խոտորեցուցանել զմար-

դիկ զկնի այնպիսի մոլորութեան ։

Իշխանն ասէ ․ և զիա՞րդ թուի քեզ այր դու ․ միթէ անիրաւ ինչ իցեն հրամանք ինքնակալաց, կամ թէ մոլորութիւն իցէ պաշտել զբարերար ածս ։ Ասէ Թիւրոս ․ մի՛ խաբիր իշխանդ քաջ ․ դիք հեթանոսաց կուռք են անշունչք՝ ձեռագործք մարդկան ․ ո՛չ չար ինչ առնել կարող են, և ո՛չ բարի ։ Բարկացաւ իշխանն, և ետ ունել զնա և ածել ընդ իւր ՚ի տուն ատենին ․ խօսել սկսաւ ընդ նմա, և ասէ ․ զի՞նչ էր բանդ՝ զոր լուա՛յ ՚ի քէն ․ ո՞չ ապաքէն յանդգնութի քո այդ յայտ առնէ, թէ յաղանդոյ անտի քրիստոնէից ես դու ․ ապա թէ ոչ՝ փութա՛ ՚ի զոհել իբրև զպաշտօնասէր ․ և մի՛ շատախօս լինիր, զի մի՛ չարաչար կորիցես ։

Պ͞նի ետ ս͞ն, և ասէ ․ եթէ եդեալ է քո ՚ի մտի առ հ արկանել ինձ, զայս գիտեա՛, զի յս͞յ ճշմարտէ և եթ երկնչիմ, վ͞յ և ոչ անսամ քեզ ․ իսկ յերեսաց և ՚ի սպառնալեաց առն մահկանացուի ինչ ոչ զանգիտեմ ․ և ո՛չ շատախօս լինիմ, ուր զճշմարտութի խօսեցայ և խօսիմ ․ իսկ շատախօսն ո՛չ է ճշմարտախօս ։ Ասէ իշխանն ․ երթ խորհեա՛ ՚ի գալ ՚ի միտս առողջս ․ զի մի՛ յետ տանջանաց զգաստասցիս ։ Նա ասէ ․ վաղու ես խորհեցայ, և զգաստ միտք եղէ քեզ յանդիման ․ զի ՚ի բազում ժամանակաց քննեալ զպաշտամունս ձեր՝ ծիծաղեցայ ՚ի վ͞ր նց ․ և ընտրեցի զիտութի խորհրդով զճշմարտութիւն ք͞սի ․ յորոյ վ͞ր մեռանիլ ես պատրաստ եմ, որ է ինձ կեանք ։

կեանք ։

Այնու հետեւ հրաման տայր կոմքրուտիոս հարկանել զնահատակն բռնցի եւ աքացի, եւ ծեծել զնա կապարեայ կռանօք, մինչեւ ցճմլումն եւ 'ի խորտակումն անդամոց ։ Իսկ նա ասէր 'ի գանս անդ. ոչինչ զարհուրեցուցանեն զիս առժամանակեայս տանջանք. այլ դու երկի՛ր 'ի մշտնջենականէն. եւ մի՛ յիս խնայեր, այլ 'ի սպասաւորս քո՝ որք խոնջեցան 'ի հարկանելոյ ծանր կռանօք ։ Բռնաւորն ասէ. անամօթ ըմբիշն թէեւ յաղթեացի՝ մինչ 'ի վախճան կամակորի. այլ իբրեւ արտաքս ընկեսցի յասպարիզէ, յայնժամ ծաղր լինի ամենեցուն. սոյնպէս եւ դու յամառիս անհաւանութ̃, մինչեւ յօշեսցին ամ̃ անդամք քո, եւ արկցիս 'ի կերակուր շանց ։ Ասէ վկայն. ինչ մի ճշմարիտ խօսեցար աշակերտեալդ ստութե̃. քանզի արդարեւ ըմբիշ եմ քո՝ օծեալ աներեւոյթ զօրութ̃, եւ հզօրացեալ տր̃ ը̃դէմ ուսուցչին քո սատանայի. մինչեւ տեսից զքեզ նովաւ հանդերձ նկուն եղեալ յերեսաց ամենակալին ։

Յետ այսորիկ կապեցին զմատունս ձեռաց եւ ոտից նորին բարակ չուա՛նօք, մինչեւ ճարճատիլ ոսկերացն. իսկ նա յոչինչ գրէր ըզվիշտսն, եւ գրգռէր զդատաւորն՝ մեծ եւս չարչարանս պատրաստել ։ Ասէ դատաւորն. դու չես 'ի բնէ քրիստոնեայ. վա՛յ եւ ո՛չ առ մարտիրոսս կալցին զքեզ նազովրացիք ։ Սբ̃ն ասէ. ո՛վ անմիտ, մարտիրոս զիս գրեաց քս̃ 'ի ժամէն յայնմանէ՝ յորմէ հետէ ես ինձ

վկայ լինել աստուածութեան նորա չարչարանօք ։ Ասէ բռնաւորն ․ համպա յաւելցին չարչարանք ՚ի վերայ դորա ․ բերէք չանկս, և քանցեցէք զարտևանունս աչաց, զի անչքասցի և անքուն հայեցիւք մոլորեսցի ընդ չարիսն՝ զոր անձամբ անձին հասոյց չուառականն ։

Իսկ երբև ոչ կարաց լուծանել զպնդութիւն քաջ նահատակին, ետ պղնձի գնտօք հարկանել զծնօտս նորա, և թափել զատամունս ․ իսկ նա ասէր ․ որովք զիս խոշտանգել համարիս, նովիմբք փառաւորես առաջի երկնի և երկրի ։ Իշխանն ասէ ․ զոհեա դից մի՛ թիւրսէ, և թող անդր զաղճատանս բանից ։ Թիւրսոս ասէ ․ զորս ծանեայ դևս գոլ, ոչ կարեմ զոհել նոցա ․ և եթէ դուք անօրէն հրամանի թագաւորաց ձերոց լսէք, մեք ոչ կարեմք անլսօղ լինել հրամանաց ճշմարտութեան և արդարութեան Թագաւորին երկնի և երկրի ։

Հրաման ետ բռնաւորն, և բերին սան պղնձի, և արկեալ ՚ի նա կապար՝ հալեցին իբրև զջուր ․ և զԹիւրսոս տարածեցին ՚ի վերայ երկաթի մահճաց՝ հեղուլ զկապարն եռացեալ ՚ի վերայ թիկանց նորա ։ Յայնժամ կարդաց երանելին առ Տէր, և ասէ ․ Աստուած երկնից փառաւորեալ ՚ի դասուց հրեշտակաց, որ տարագրեցեր յերեսաց փառաց քոց զիշխանն կորստեան, մի՛ թողուր զանձն՝ որ խոստովան առնի առ քեզ ․ և մի՛ իշխեսցէ սմա չար բռնաւորն՝ զոր յամօթ արարեր կամօք քո մինչև ցայժմ ․ զքեզ կարդամ յօգնութիւն լոյս կենաց իմոց ․ փրկեա զիս ՚ի թշնամեաց իմոց Աստուած,

ա̄ծ , և դարձո զչարիս նց̄ 'ի գլուխս նոցա . զի ատեցեն հեթանոսք զփառս քո , և ծանի- ցեն՝ թէ անուն քո ա̄ծ է :

Եւ ընդ առնել զայս 'որյն , այն ինչ կալեալ դահճաց զունելեաց կաթսային՝ հեղուլ կա- մէին միանգամայն զանձամբ 'որյն , յանկար- ծակի եռաց կապարն 'ի վեր , և զեղեալ զդահ- ճօք՝ իսկ և իսկ լափեաց զնոսա : Յայնժամ աղաղակեաց բազմութի հանդիսին . մե՛ծ է ա̄ծն քրիստոնէից . և վկայն ասէ ցբռնա- ւորն . աստ զճշմարիտն , զե՛թ անօգուտ ա- պե՛ր 'ի մեա , զի ա̄ծ թագաւոր է յերկինս , որ արար այսօր զքանչելիս առաջի աչաց քոց . որպէս և գրեալ է . արդարն փրծանի յորոգայթէ , և փոխանակ նր̄ մատնին ամբա- րիշտք :

Կոմենտարիոս ասէ . եթէ համարեցի՞ս թէ՞ կար- ասէ յաղթել կախարդութե̄ք քով մեզ , և կա՞մ ապկզեպլիոսն . երդնում 'ի դիս , զի այսօր քե հաշտեցին ե̄ Դի , յորժամ տեսանիցեն զարիւն քո հեղեալ 'ի պատիւ իւրեանց : Վկայն ասէ . հեղցի՛ արիւն իմ վս̄ քո̄ ա̄յ իմոյ , որ յառաջագոյն եհեղ զարիւն իւր 'որ 'ի փրկութի մեղաւորացս . այլ զքեզ և զասկ- ղեպիադն քո ընկալցի հուրն անշէջ՝ հանդերձ ամենեքումբք , որ ձեզդ լսեն :

Յայնժամ ասէ բռնաւորն . բերէ՛ք սուսեր , և խաղացուցէ՛ք ե̄ պորտ նորա . և այնպէս թրածեծ առնէին զերանելին : Իսկ նա ա- սէր . յայսմ սուրզապէս մահուչափ ձգնիմ . ա̄ռ զի մարմինս իմ մեղանչական տանջեսցի , և

և հոգի իմ պաշտեսցի տն իմոյ • այլ դու տր ած իմ, նայեաց առ իս, և մերկեա զիս յապականացու մարմնոյ աստի • և ցոյց ինձ զորդիդ քո միածին զորդ իմ, որ վն զայսոսիկ կրեմ։ Յայնմ վայրի լոյս ծագեաց 'ի վերուստ, և պայծառացան երեսք նորին աքանչելի փայլմամբ • և հնչեաց բարբառ մի 'ի միջոյ ամպոյն, զի ասէր • քաջալերեաց Թիւրսէ, ես եմ՝ վասն որոյ չարչարիս • մի՛ վհատիր նահատակդ իմ առաքինի • օգնեցի, և օգնեցից քեզ։

Եւ եղև յանկարծակի շարժումն մեծ զկնի ձայնին, և դղրդեցաւ տեղի ատենին • իսկ անօրէն իշխանն ասէ • զօրացան արհեստք մոգութե՛ կախարդիս, մեկնեսցուք 'ի տեղւոջէս • տարայք զդա կապանօք 'ի բանտ, և արկէք պահ զգուշութեան, մինչև կոչեցից զդա 'ի Նիկոմիդիա, ուր եմն երթամ։ Իսկ երանելին Թիւրսոս կացեալ 'ի բանտ գիշերին և խաւարչտին՝ խորհէր գտանել զոք, որ մկրտեսցէ զնա, և ոչ գտանէր։ Եւ եղև խնամօքն այ, զի գտաւ նա եպս ոմն փիլէաս կամ փիլենաս անուն, որ կայր 'ի Թաքստի մերձ 'ի տուն բանտին, կմ ըն այլոց՝ 'ի պահեստի էր յայլում բանտի • և առաջնորդութբ հրեշտակի մկրտեցաւ 'ի նմանէ վկայն, և ընկալեալ զկնիք սրբութե՝ հաղորդեցաւ պատուական խորհրդոյ մարմնոյ և արեան տն • և նմ հոգևոր օրհնութբ լցեալ զուարթացաւ և զօրացաւ յոյժ յոյժ։

Յաւուրսն յայնոսիկ եկն փոխանակ կոմբրատայ

տայ այլ դատաւոր ասխակողման՝ սիրղոճա-
նոս կոմս կարդացեր․ և իբրև զգացոյց նմա
կոմբրուտիոս վն կապելոյն Թիւրոսի՝ ետ
ածել զնա զառաջեաւ ՚ի քաղաքի անդ կե-
սարիոյ բիւԹանացւոց, կմ ը այլոց ՚ի նիկո-
միդիա ։ Հարցանէր զնա սիրղոճանոս․ զի՞նչ
անուն է քո, և զո՞ր դեն պաշտես ։ Պատնի
ետ Տրն․ անուն իմ Թիւրոս կոչի, և հաւա-
տովս քրիստոնեայ եմ, ոնպ քաջ գիտէ իշխա-
նակիցդ քո կոմբրուտիոս ։

Սիրղոճանոս կոմսն ասէ․ գիտակ եղէ և ես
ա՛յ Թշուառական և Թշնամի ածոց․ և ըն-
դէ՞ր ոչ զոհես նց, որովք եղեն ամն ։ Թիւր-
սոս ասէ․ և որո՞ց ասես զոհել իբրև այ ։
Կոմսն ասէ․ սիրղոճանու և ապողոնի դից ։
Թիւրոս ասէ․ ես զսիրղոճանոսդ մարդ տե-
սանեմ, և ոչ ած․ իսկ զապողոնն բնաւ իսկ
ճանաչեմ ո՛չ ։ Բարկացաւ կոմսն, և ասէ
ցսպասաւորսն․ հարէք ը պարանոցս խստա-
պարանոցիդ, զի մի՛ ծաղրեսցէ զմեզ ։ Եւ
իբրև հարին, ասէ վկայն․ լո՛ւր ինձ կո՛մս,
որ զճշմարիտն ասեմ քեզ․ ես ինքնին ՚ի դմին
կայի մոլորութե յաւուրս անգիտութեան՝
համարելով ինչ զկուռս և զդիս հեԹանո-
սաց․ այլ ՚ի ծագել լուսոյ ածգիտութեան՝
փարատեցաւ յինէն այն խաւար ՚ի բաց, և
այժմ իբրև աչօք բացօք պայծառ տեսանեմ,
զի խաղք դիւաց և ցնորք պատրանաց են
այդ ամ չար պաշտամունք․ քանզի մարդիկ
են՝ որ ճարտարեն ինքեանց ձեռօք ածս ՚ի
զանազան նիւԹոց․ և արհեստագործն է՝

որ

որ կերպարանէ զկուռս, ոչ և հաճի. այլ եթէ անհաճոյ թուի, խորտակէ զնոյն։ Ասէ ցնա կոմսն. ո՞ կացոյց զքեզ քննիչ բըռ-նութեան ածոցն. ո՞չ ծնողք քո դիցապաշտք էին, և դու հի՞մ օտարացար ՚ի դենէդ։ Պատասխանի ետ վկայն. եթէ ծնողք մեր պատուա-գրոսք լինէին կմ՚ ձեռնատք կմ՚ կոյրք, միթէ արժան ի՞նչ էր և մեզ փութալ նմանել նց. և եթէ զմարմնաւոր նց տկարութիւնս չառ-նումք յանձն, զիա՞րդ յանձին կալցուք զհի-ւանդութիւն հոգւոց. այն զի լաւ է մարմնով անառողջ լինել, և հոգւով քաջառողջ։ Իսկ կոմսն ետ ածել զնա բռնութբ ՚ի մեհեանն. գնաց և ինքն համդերձ բազմութբ ՚ի զո-հել. և եղև ՚ի կարդալ նոցա առ նր՝ ցուցա-նել զսքանչելիս իւր, յանկարծակի շարժե-ցաւ բագինն, և կործանեալ փշրեցաւ որ-ձանն ապողոնի. և ասէ երանելին. տեսէք զախն պաշտօնդ ձեր, և ՚ի մի առնէք զյիմա-րութիւն կռապաշտութե։

Յայնժամ զամօթի հարեալ կոմսին՝ ետ տա-նել զնա ծանր շղթայիւք ՚ի բանտ. և յայլ օր հարցափորձեալ զնա յատեանն՝ ետ գլխ ՚ի վայր կախել ՚ի մէջ ջրալից անօթոյ միջով-չափ. յորմէ ել նա անվնաս։ Ապա պատրաս-տեաց մեքենայ ահագին սրալից մօտ առ պարսպին. զի ընդ արկանել զնա ՚ի ներքս՝ յօշոտեսցի չարաչար. բայց հրեշտակք այ յափշտակեցին զնա, և կացուցին ՚ի վերայ պարսպին. ուր սկսաւ երանելին սաղմոսել, և ասել. ՚ի տր յուսացայ. որպէս ասիցէք ցանձն

ցանձն իմ, փոփոխեսցի 'ի լերինս ոսկի ձրնձ-
ղուկ : Ապշեցաւ կոմսն, և ասէր ցկոմբրու-
տիոս. զի՞նչ արարցուք դմա, զի կարասցուք
յաղթել. և նա ասէ. մոգութեան համարես-
ջի՞ր զկրօնս : Իսկ մի ոմն 'ի դահճաց վիտաղիոս
անուն՝ մինչդեռ սանդուղս եդեալ կամէր
իջուցանել զնըսն 'ի վայր, անկաւ 'ի վ͞ր մե-
քենայից. և նոյնժամայն կործանեալ 'ի սու-
սերաց և 'ի բևեռաց՝ յօշ յօշ պատառեցաւ.
և վկայն սաղմոսելով ասէ. որոգայթ պա-
տրաստեցին առաջի երեսաց իմոց. փորեցին
խորխորատ առաջի երեսաց իմոց, և ին-
քեանք անկան 'ի նոյն :

Կոչեաց տիղամանոս զԹիւրսոս. և ասէ. մին-
չև ցե՞րբ ոչ դադարես 'ի մոլութենէդ. և ո՞րն
յանդիմանեաց զնա վ͞ր խստասրտութեան.
զի զսքանչելիսն ո՞յ կախարդութեն առնէր :
Յետ այսորիկ 'ի չուել կոմսին ͞ը կոմբրու-
տայ յապամիա՝ տարաւ ͞ը իւր և զԹիւրսոս
կապանօք. և 'ի ճանապարհի ոչ դադարէր
'ի ստիպելոյ զնա դառնալ 'ի դիցն պաշտօն :
Իսկ ս͞րբն սաստեաց նմա. և ասէ. եթէ տա-
կաւին 'ի դոյն մնաս մոլորութեան կաս դու և
կոմբրուտիոս ͞ը քեզ, 'ի մօտոյ հասցէ ձեզ
սատակումն 'ի տ͞ն երկնից. և 'ի ծիծաղել
նոցա զբանիւք ս͞րբյն՝ չարաչար օրհասաւ կո-
րեան երկոքեանն յապամիա 'ի տեղւոջ և յաղ-
հաւլոս ա͞մ հեթանոսաց. մինչև բազմաց 'ի
նչէ անկանիլ յոտս ս͞րբյն, աղաչելով ողոր-
միլ նոցա վ͞ր սիրոյ ք͞ նի իւրոյ, զի մի և ին-
քեանց հասցէ չար ինչ. և ս͞րբն՝ որք պա-
հէ

հեղին զվկայն 'ի պահեստի բանտին մինչև 'ի գալուստ այլում դատաւորի, ապա ածէին 'ի նմանէ ։

Պաւղոս տմն լրբեցալ յետ աւուրց եկեալ յապարանս իշխանութե՛ն, կոչեաց զկապեալն Թիւրսոս առաջի իւր, և ասէ ցնա . լո՛ւայ և ընթերցայ զմ՛մ անցս ստահակութե քո ընդդէմ ածոցն և ինքնակալաց . այսուհետև զգօ՛ն լեր, և շահեա՛ զկեանս քո, զոհելով դից՝ զոր ինքնակալն և իշխանք նր պաշտեն . ապա թէ ոչ՝ մի՛ ակն ունիցիս ապրել 'ի ձեռաց իմոց ։ Նա պնդի նահատակն, և ասէ . ոչինչ աւելի ասեմ քեզ՝ քան զոր լուա՛ն առաջինք քո . քրիստոնեայ եմ, և ո՛չ կարեմ զոհել դիւա՛ց . այլ պատրաստ եմ 'ի մահ սրոյ և հրոյ վ՛ն փառաւորեալ անուա՛ն տ՛ն իմոյ յ՛սի ք՛սի ։

Յետ այսց բանից և այլ ևս պնդառօ՛ւեց՝ տեսեալ բռնաւորին զանվանելի ամրութի ոգւոյ վկային, ետ տարածել զնա յորսայս, և ջարդել բրօք զանդամս նր, և ապա պնդել շղթայիւք ձեռս յետս, և կծկեալ իբրև զնտակ՝ դնել 'ի քուրձ մի, և կարեալ բզբերանն և ծծել կապարաւ՝ հրամայեաց ընկենուլ 'ի խորս ծովու ։ Իսկ սր՛ն Թիւրսոս ասէր . լո՛ւր տր և նայեա՛ց տծ իմ . 'ի միոյ վկայի վերայ պատրաստին տանջանք աւելի քան զանդամաթի՛ւս մարմնոյն ։

Մոդ իբրև տարան զերանելին նաւակաւ, և արկին յանդունդս ջրոյ, յանկարծակի իջին հրեշտակք, և հանին զնա 'ի վեր, և եդեալ

դեալ՝ ի ծովեզրն՝ քակեցին զքուրձն, և ող-
ջացուցին զնա բոլորովին. և ասեն ցնա սի-
րով ողջունի. զօրացի՛ր քա՛ջդ Թիւրսէ, զի
տէր առաքեաց զմեզ յօգնականութիւն քեզ.
քանզի և մեք պաշտօնեայք եմք նորա՝ զոր
դուդ պաշտես : Իսկ ժողովուրդն՝ որ կայր
անդ նաւավարօք և զինուորօքն հանդերձ,
տեսեալ զսքանչելիսն՝ յահի եղեն, և փա-
ռաւոր առնէին զանձն քրիստոնէից. և ոմանք
ընթացան և պատմեցին դատաւորին զե-
ղեալսն. և ասեն. զօրականք օտարք և ահա-
ւորք եկեալ են՝ ի թիկունս օգնականութեան
Թիւրսոսի :

Իսկ նա փութապէս յղեաց զհազարապետն
հանդերձ գնդաւն. և ինքն ևս եհաս զկնի.
և տեսեալ զնահատակն քի ողջանդամ և
զուարթ, զարմացաւ. և ասէ ցնա. Իսկ արդ
ո՞ւր են Թի՛ւրսէ զօրականք օտարք՝ որք հա-
նին զքեզ՝ ի ծովէ. զի ոչ երևին : Թիւրսոս
ասէ. եթէ յստակ աչս ունէիր, կարող էիր
տեսանել և դու : Իսկ անօրէնն բարկոս ա-
սէ. գիտեմ, զի բազում ինչս խոստացար կամ
ծախեցեր՝ ի նաւավարս. և նոքա ապրեցու-
ցին զքեզ՝ ի ծովէ : Բայց արդ անսա՛ ինձ և
զոհեա՛. ապա թէ ոչ՝ եթէ ալիք ծովու չըն-
կալան զքեզ, ընկալցին ժանիք գազանաց :
Թիւրսոս ասէ. ո՛վ գազան անմարդի, մինչև
յե՞րբ չառնուս՝ ի միտ զզօրութիւն տեառն. և ոչ
իմանաս՝ զի որ փրկեաց զիս յանդնդոց, կա-
րող է պահել և՝ ի բերանոյ գազանաց. զի
նոյն տէր է, որ զյոնան ապրեցոյց՝ ի փորոյ կէ-

* տին,

տին, և զլանիլ 'ի գբոյ առիւծուց:
Յետ աւուրց եկն Պաւղոս 'ի Կեսարիա, ըն-
րեալ Ը խուր և զկապեալն Թիւրոսս. ուր և
կրկին հարցափորձեալ զմիկոյն՝ հրաման ետ
հարկանել արջառաջլօք զթիկունս և զփոր
նր: Իսկ եղեն անդ զարմանալիք. զի դա-
հիճքն՝ որ հարկանէին, եկեալ յոտս դատա-
ւորին՝ բողոք բառնային ասելով. խնայեա
'ի մեզ աղաչեմք, խնայեա. զի յոգնիս ապառ-
տան եղեաք, և ոչ ևս կարեմք ձեռս ամբառ-
նալ 'ի վՏ առնդ. քանզի հարուածեն զմեզ
բուռն զօրութ֊ք սպիտակահանդերձ զօրա-
կանք հրեշտէն գաւազանօք: Իսկ անօրէնն
ասէ ցնահատակն. այ կախարդաւոր այր՝
եթէ կորուսանել կամիցիս մոգութ֊ք քով
զսպասաւորս իմ, մինչև է քո 'ի կորուստ եր-
թեալ. ոչ այդպէս, տարայք զդա 'ի բանտ.
և պատրաստեցէք զտեղի տապարիցն; զի
գազանաց արկից զնա կերակուր յանդիման
քաղաքիս:
Իսկ արարին այնպէս. այլ յորժամ արձակե-
ցին զգազանսն 'ի վՏ սրբոյն, եկեալ նք յոտս
սրբոյն՝ քծնէին զնովաւ, և լեզուին մեղմով
զմէջս նորա: Յայնժամ աղաղակեաց բազ-
մութիւն, արձակեա զայր արդար ով դատա-
ւոր, զի ոչ ուղիղ դատեցար: Իսկ իբրև ակն-
արկեաց նմն 'ի գազանսն յանուն ՔՍի՝ եր-
թալ խաղաղութ֊ք 'ի տեղիս իւրեանց, և
նոքա գնացին, վերստին ամբարձաւ գոչումն
աղաղակի բազմութե, զի ասէին. մե՛ծ է ԱծՆ
քրիստոնէից. երանի՜ որոց պաշտեն զնա և

արձակեմ զքեզ ։ Թիւրսոս ասէ․ ո՛վ կար-
ծեմ ո՛վ դատաւոր, հաճոյ թուի՛ դիցդ ձերոց
մեկնիլ 'ի ձեռն իմ յԱծ̃էն յունաց․ արդ եթէ
փոյթ ինչ է ձեր, գէ՛թ զմին պահեցէք, զի
մի՛ անպաշտօնս մնայցէք․ ապա թէ ոչ՝ եկա՛յք
երթիցուք տեսանել և զնոսա օգնականութ̃
բարձրելոյն ։

Այլ իբրև մտին 'ի տաճար կռոց բազմութ̃,
կարդաց ս̃բն յերկինս, և ասէ․ Տ̃ծ իմ գո-
հանամ զքէն, զի հրաման ետուր ինձ ան-
ուանմբ քով Տ̃րվ բառնալ զկուռս հեթանո-
սաց․ ի՞ցէ թէ զո՛ր օրինակ կործանեմ զնոսա
զօրութ̃բ քով, նոյնպէս և զկռապաշտս դար-
ձուցանէիր առ քեզ ։ Այս զոյգ ը̃ բանին Տ̃րյն
դղրդեցան և անկան չորեքին բագինքն, և
մանր խորտակեցան ոպ̃ փոշի ։ Յայնժամ
եղև խռովութ̃ մեծ յամբոխին և հերձուած․
կէսքն աղաղակէին․ մեծ է Ած̃ն քրիստո-
նէից, զոր Թիւրսոս քարոզէ․ և կէսք բողո-
քէին առ դատաւորն, բա՛րձ զկախարդդ 'ի
միջոյ․ զի չէ՛ արժան դմա կեալ ։

Այլ իբրև կամէր բաւդոս տալ վճիռ մահու
ը̃դէմ Տ̃րյն, մատեաւ կալինիկոս քուրմ հա-
ւատացեալն 'ի սրտէ, և ասէ․ հաւատա՛
ինձ ո՛վ դատաւոր, ո՛չ կախարդութի̃ ինչ առ-
ա՛ւեստական կմ̃ դիւական տեսաք յայրդ՝ որ
մինչև ցայսօր մնաց կենդանի, այլ ոպ̃ ինձ
թուի՝ զօրութի̃ ինչ մեծ Ած̃յ է 'ի նմա, իշ-
խօղ և 'ի վր̃ ա̃ծոց բոլորեցունց ։ Բաւդոս
ասէ․ թո՛յլ տուր և 'ի բա՛ց գնա յինէն 'ի ժա-
մուս․ զի դառնացեալ է ինձ կեանք իմ, և
հա

հաշիմ 'ի տրտմութենս : Կալլինիկոս ասէ . մի՛
տ̃ր իմ մի՛, եկ հաւատացուք յա̃ծն Թիւրսո-
սի . և անդէն փարատին 'ի մէնջ ա̃մ հոգք և
տրտմութիւնք . զի զի՞նչ ցայսվայր շահեցաք 'ի
'ի կռոց անտի, բայց զի և զնո̃ կորուսաք :
Յայնժամ այլադունեցան երեսք բաւդոսի,
և ասէ ցԿալլինիկոս . և զքե՞զ ևս ո՞վ չուա-
ռական խաբեաց ուրեմն կախարդուն̃ Թիւր-
սոսի . զի իշխեցեր ասել բան զայդպիսի յա-
տենիս : Կալլինիկոս ասէ . մի՛ յագէնար բար-
կութ̃ ո՛վ դատաւոր . այլ համբե՛ր սակաւիկ
մի, և արբցես զարիւն իմ . և ապա հանդար-
տեսցիս 'ի մոլեգնութենդ : Մռնչեաց դա-
տաւորն իբրև զգազան, և ասէ . տեսէ՛ք զա-
նօրէն մահապարտդ, որ մինչև ցայսօր հա-
մարեալ էր քաջարար ա̃ծոց, և հաւատա-
րիմ խորհրդական իշխանաց, Թէ զիա՞րդ
վաղվաղակի 'ի բանս եղև Թիւրսոսի մոլորե-
ցուցչի : Իսկ Կալլինիկոս ասէ . ո՛չ զիս Թիւր-
սոս ձգեաց զկնի իւր ., այլ քո̃ ա̃ծ կենդանի՝
զոր Թիւրսոսն պաշտէ, նա ազդեաց յիս, զի
Թողեալ զունայնութիւն՝ ճշմարտութե̃ զհետ
ընթացայց, և զանձն իմ գլխովին նուիրա-
կան պատարագ մատուցից ճշմարտին ա̃յ :
Յայնժամ ասէ բռնաւորն ցդահիճս իւր .
առէ՛ք տարա՛յք 'ի բաց զչարագործդ, և ըս̃մ
ազգ տանջանաց հեղէ՛ք զդովաւ, և մի՛ Թա-
ղուցուք մասն ողջ 'ի մարմնոյ դորա . եթէ
տանջանք կարճեցին զնա 'ի կենաց, ահա
յաղթեցաք նմա . և եթէ տոկայցէ մար-
մինն, ցաւք տիրեսցեն նմա : Իսկ ն̃ք ձգե-

ցին վերանելոյն, և քարշէին տանէին ընդ փողոցս չարաչար ըլկանօք և պէսպէս կտտանօք. իսկ նա զուարթութեամբ փառս մատուցանէր այ. զի արժանի եղև չարչարակից լինել և նահատակակից մեծի վկային Թիւրսոսի:

Այլ իբրև անցուցանէին զնա առաջի դրաց մեհենին ասկղեպիոսի, որ կանգնեալ էր 'ի մէջ սեանց հարիւրոց, ասէ կալլինիկոս ցդահիճս. անկցի դուռն իմ առաջի ձեր, զի ահա կիզանող տապ արևուն քաղէ զնուաղեալ ոգիս. տարայք զիս 'ի սրահ անդր մեհենին, զի 'ի հովանւոյն փոքր մի ոգի առից. և նք լուան նմ: Իսկ կալլինիկոս իբ մտանել ընդ յարկաւ տաճարին, ձայն ետ առ բագինն ասկղեպիոսի, և ասէ. տուր փառս այ. քանզի գիտեմ, զի դև ես դու, և ոչ ած. դու միայն մնացեր՝ որ Թաքեար յերեսաց Թիւրսոսի ծառայի այն. արդ տր հրամայեաց ինձ այսօր բառնալ 'ի միջոյ՝ զոր նա Թողացոյց. և ետ ինձ նշան, զի իբ անցանելն իմ ընդ այս տեղի, անկցիս 'ի կայից քոց ամենայաղԹ զօրուԹեամբն քսի՝ որ դատաւորն է կենդանեաց և մեռելոց:

Այլ իբ ասել նր զայս՝ անկաւ կործանեցաւ ասկղեպիոս, և փշրեալ մանրեցաւ. զոր տեսեալ՝ հաւատացին 'ի քս հնգետասան քուրմք, որք ծանօԹ էին կալլինիկոսի: Նադ եղև դատաւորին՝ որ ինչ եղեն. և յղեաց հրաման հատանել վաղվաղակի զգլուխ կալլինիկոսի. իսկ երանելոյն ուրախուԹեամբ մատու-

տուցեալ ղպարանոց իւր որոյ՝ ասէր ․ յառա-
ջընթաց առաքեցեր զիս ով երանելիդ Թիւր-
սէ ․ փութա ժամանել զկնի իմ, զի 'ի միա-
սին մտցուք առաջի քի ուրախութբ ։ Ընդ-
նմին կատարեցան ը̅ ոմանց և հնգետասան
քուրմք, որք դարձան առ տր̅ ․ այլ զմարմինս
նոցին կալինիկոսի էառ ոմն 'ի քրիստոնէից՝
Աքողիոս անուն ։

Սոյնպէս և 'ի նմին Թիւրսոսի հրաման տայր
բռնաւորն առ օրէն չարաչար մահու կար-
ձել 'ի կենաց՝ սղոցելով զնա ը̅ մէջ 'ի մէջ
մամլոց ․ և այնպէս կատարեցաւ 'ի քս ։ Բայց
այլք գրեն, թէ ած̅ որ պահեաց զնա յայն-
չափ տանջանս, ոչ եթող մեռանել և այ-
սու չարչարանօք ․ զի թէպէտև աշխատ ե-
ղեն յոյժ երկու դահիճք վիտաղիոս և սա-
բինոս 'ի վր̅ սմին, այլ ոչ կծեաց 'ի նա սղ-
ղոցն ամենևին ։ Յայնմ վայրի երկիւղք որո-
տացին, և եկն ձայն՝ որ ասէր առ սա ․
մուտ Թիւրսէ յուրախութի տն̅ քո ․ զի զօրա-
ցար իբրև քաջ նահատակ 'ի պատերազմի,
և վանեցեր զսատանայ ․ ահա պատրաստեալ
է քեզ պսակ փառաց ․ այսօր ը̅ իս իցես 'ի
դրախտին ։ Իսկ անդէն աւանդեաց երանե-
լին զհոգին իւր 'ի ձեռս տն̅ ուրախութբ՝ յամի
տն̅ իւրոյ 250 ․ 'ի քաղաքն ապողոնիա, կմ ը̅
այլոց 'ի մերձակայ քաղաքն մելիտոս անուն ։
Յաւուր յայնմիկ հարաւ 'ի տնէ չարաչար
հարուածովք բաւղոս ․ և ասէր ․ մն ծա-
ռային տն̅ տանջիմ ես ։ Սոյն և յաղաչել զնա
փիլիպպոսի առն երևելւոյ 'ի մէջ հաւատա-

ցելոց վն մարմնոյ նորին, եւ հրաման բառ-
նալ թաղել զնա համարձակ. և եկն կեսա-
րիոս եպս և լաւոդիկ քահանայ հանդերձ
պաշտօնէիւք. և տարեալ ամփոփեցին յայրի
միում 'ի տեղին կոչեցեալ դափնէ՝ մօտ 'ի
ծովեզերեայ քաղաք կարիացւոց 'ի միլիտոս
(ռամկօրէն՝ միլասսօ). ուր բազում նշանք
եղեն բարեխօսութբ բազմայաղթ նահա-
տակին թիւրսոսի:

Ո կնի ժամանակաց յաւուրս քրիստոնէութե
համարի փոխադրեալ մարմին նորին թիւրսո-
սի 'ի կողմանց բիւթանիոյ 'ի բիւզանդիա:
Քանզի գրէ սողոմենոս յամի տն իբր 197.
(Գիրք. Թ. Գլ. 2), թէ * Կեսարիոս այր ե-
րեւելի և հզօր 'ի ժամանակին յայնմիկ, որ
և հասեալ իսկ էր 'ի պատիւ հիւպատոսութե
և նախարարութե, շինեաց հոյակապ տա-
ճար մյ 'ի պատիւ նորին թիւրսոսի վկայի՝ ար-
տաքոյ պարսպին կոստանդնուպօլսոյ....
(ուր կային ծածկեալ և նշխարք ինչ քառա-
սունն մանկանց սեբաստիոյ): Յետ ամաց
ինչ երեւեցաւ սքանչելին թիւրսոս երից՝
պողքերայ թագուհւոյ քեռն թէոդոսի կայ-
սեր փոքու. և նշանակեալ զծածկեալսն Ը
հողով՝ հրաման ետ բերել զնս առ ինքն, զի
նմին տեղւոյ և պատուոյ կցորդ լինիցին.
նոյնպէս յայտնեցին զանձինս և ինքեանք
նը քառասունքն երեւելիք 'ի հանդերձս պայ-
ծառս... (և 'ի գտանել զայն նը նշխարս)
ընթացան 'ի վկայարանն թագուհին և եպս
քաղաքին: Յայնժամ թագուհին փառա-
մա

մնացուցանէր ինչ վ՚ն արժանի առնելոյ զնա այնպիսում մեծի յայտնութե : Ապա առեալ զգտեալ նշխարսն , և պատուեալ զվկայսն փառաւոր տապանակաւ՝ հանդոյց առընթեր երանելւոյն Թիւրսոսի՝ մեծահանդէս տօնախմբութե , ուր վայելէր , վայելուչ շքով և փառօք՝ հանդերձ երգովք սաղմոսաց . յորում հանդիսի առաջիկայ գտայ և ես ինքնին գլխովին... Նա ունէր յայնժամ զաթոռ եկեղեցւոյն կոստանդնուպօլսոյ պրոկղոս Ա. այն է սրբն պրոկղ՝ որ նստաւ յամի ՆԼԴ.

434 :

Յիշէ պրոկոպիոս շինեալ և զայլ եկեղեցի ՚ի յաջորդ դարու ՚ի կոստանդինուպօլիս ՚ի մեծէն յուստինիանոսէ կայսերէ : Նա որպէս կարծի՝ ՚ի կոստանդնուպօլսոյ փոխադրեցան յարևմուտս նշխարք ինչ սրբյն Թիւրսոսի , որք յիշին ՚ի գաղղիա յեկեղեցին լեմովկեցւոց . ուր և ՚ի սպանիա ասի լինել ձեռն սրբյն Թիւրսոսի ՚ի տաճարի սրբյն ստեփաննոսի՝ որ ՚ի բալնէօլեան վանս գերունդեան թեմի . և այլ մասունք յայլ տեղիս , և զանազան եկեղեցիք յանուն սրբյն : (3)

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ.

(1) Թիւրսոս անուն համաձայն յունականին , որ է Թիրսոս կմ Թերսոս , հնրկորէն ՚ի տօնացոյցս մեր պակասութ միոյ տառի գրի Թիւրսոս . զոր և յետինք ոմանք Ը կամի գրեցին ևլևԹիւրսոս . սոյնպէս և որ ուղիղ գրելին է լեւկիոս , ՚ի Հ. գնի լիւկիոս . ուր և առ լատինս

զայս բարւոք վկայութիւն, այլ ծայրէ 'ի ծայր Է խարտա-
ցաւ գրչի անցուցանէին առաւել քան զվարս այլոց
բազմաչարչար և նշանագործ վկայից. և Է հակառակն՝
իցէ՞ թէ 'ի ձեռս խոհական գլխոյ նշ, սորին յովհաննու-
սեամ բոլլանդայ՝ անկանէր վարք լուսաւորչին մերոյ.
զի յայնժամ անտարակոյս եմք, թէ նա ոչ ոք զյովհան-
նէս ստիլտինգ խօսէր Էվայր հարկանելով, այլ ամէն
արդարացուցանէր և դնէր 'ի վերոյ ամբառնայր՝ գոնէ
առ համեմատութե վկայաբանութեանս Թիւրսոսի, զոր
արժանահաւատ և հաստատուն ասել ոչ ամօթ համա-
րեցաւ: Պատճառն է, զի թէ հնարաւոր դառնոց զայս-
չափ բազմաթիւ հրաշս և զչարչարանս վն միոյ առան-
ձին մարտիրոսի, յորմէ չեղև երևելի այցելութիւն գար-
ձի՝ բաց 'ի սակաւուց ումանց, և չէք իսկ զնմանէ հան-
րական աւանդութիւն ինչ գէթ առ գաւառակիցս, քա-
նի՞ն արժանահաւատ ունի գրել զանցս որ հօրն մերոյ.
որոյ հրաշալի հանդէս վկայութեն կարգեալ էր յոյ 'ի
դարձ ազգի և Դի միոյ ողջոյն. և պատմութի նր այն-
չափ հաստատուն աւանդութե իջանէ 'ի մէջ նոյն ազ-
գին, մինչև զի յետ քնի լուսաւորիչն է ծանուցեալ
պաշտելի: Զայս յայն սակս յուշ արարի, զի մի կար-
ծիցեն ընթերցօղք, թէ մեք՝ որ առաք 'ի բոլլանդայ
զառաջինկայս վկայաբանութիւն սբյն Թիւրսոսի, այնչափ
ստոյգ համարիմք զայս՝ որպս զվարս լուսաւորչի. այլ
միայն զարժանահաւատ դատեալն 'ի բոլլանդայ և մեք
իբրև հաւանական պատմութի քաղեցաք. և այն՝ թօ-
թափելով յերկարապատում բանից, և Է կարի ընտրե-
լով զառաւել տանելին 'ի մէջ չորից նախայիշել վկայա-
բանութեց. է՞ զի այսմ, և է՞ զի այնմ հետևող լինե-
լով, զի մի օտարասցուք 'ի հաւանականութե շաւղէ.
ապա թէ ոչ՝ 'ի բազում դժուարութիս մտանէաք, եթէ
ոչ զանձինս, գոնէ զգրիչս. որք թէպէտև 'ի գոյացուն
պատմութե միաբանին, այլ յեղանակն բազմօք տարբե-
րին. թող զի զատենախօսութիս այր իւրաքանչիւր պէս
պէս օրինակաւ յարմարէն: Ինչ մի զարմանալի մեզ թը-
ուեցաւ, զի ուրեք ուրեք և 'ի տարբերել տեղիս գլխո-
վին՝ տողք տողք բանից բառ առ բառ միաձայնէին. որ
է նշանակ՝ թէ 'ի միոյ աղբերէ են առեալ. և Է ոճոյ իւ-
րեանց յերիւրեալ: Թերևս եկեսցէ ժամանակ, զի բուն
աղբիւրն 'ի վեր երևեսցի. առ այժմ չիք է մեզ, զի 'ի
միաբանութե անմիաբան գրչաց մորթացաք բովանդա-
կել զիբան իբրև ստոյգ ըստ գոյացութե. որ միայն է
խնդ-

տոսի, ուր էին նշխարք նորա փոխադրեալք յաստրագու-
Թացւոց • և Թէ՝ նշխարքս այս պահեալ կային 'ի տոլէ-
տոն, մինչև էր մուրիտանացւոց առեալ զքաղաքն •
այլ առ երկիւղի արշաւանաց նց՝ ուրբանոս արքեպս
տոլէտայ փոխադրել իցէ զնոսին յովետոն, ուր նաստան
առ ժամանակ մի գոԹայի Թագաւորք աստուրիացւոց:
Եւ մինչև ցայսօր՝ ասէ բոլլանդ., թէ գրելոյ փրանկիս-
կոսի պիշայի՝ պահին 'ի քաղաքի անդ ովետոնի սբ նշ-
խարքս Թիւրսոսի տապանակաւ • և վս այսր իսկ կանգ-
նեալ տաճն 'ի նմին քաղաքի զվկայարան յանուն սբյն
Թիւրսոսի արքայն ալփոնսոս կաստոս • թէ նմին օրինա-
կի և այլ բազում վկայարանք շինեցան 'ի պատիւ նորին
սրբոյ 'ի նոյն ովետեան Թեմի • և մինչ ցարդ մեծապես
պատուի յիշատակ սբյն Թիւրսոսի և ընկերաց նորա 'ի
վիճակն աստուրեան • ոչ և այլ եկեղեցի սբյն Թիւր-
սոսի առի լինել 'ի քաղաքն պրակատոյ, և այլ ևս յայլ
տեղիս:

Իսկ եկեղեցին՝ որ 'ի տոլէտոն, շինեաց կմ նորոգեաց
յամի տն ի ըր • 777 • առ սիղոնիւ արքայիւ կիքսիլլաս
եպս քաղաքին • որոյ յիշատակին և տանուտր բանք ինչ
'ի գովեստ սբյն Թիւրսոսի, կմ թէ այլոց հատուած ինչ
'ի տաղս սբյն Թիւրսոսի՝ յօրինեալս յառաջագոյն, ոչ
ասեն, 'ի սբյն իսիդորոսէ: Աւերակք այդր հին եկե-
ղեցւոյ 'ի վեր երևեցան յամի • 1595 • 'ի հիմնարկուԹե
իրիք շինուածոյ: Զայս ամ տեղեկուԹի առեալ է բոլ-
լանդ յնեան 'ի ձեռն աշխատասիրուԹե յովհաննու եւ-
սեբիոսի ներիմբերգացւոյ՝ իւրումն կարգակցի • այն է
հեղինակն գրոց՝ որ կոչի կշիռ ժամանակի:



# ՄԱՐՏ



# ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ

## Թովմայի առաքելոյն ։

Հ. օգոստ. 22. նաև և հոկտ. 6 (յոբելեանն էին) ։ Յ. հոկտ. 6 ։ Լ. դեկտ. 21 ։ Ղ'ասոր-ընթեր. Ա. նէէ=նէն ։ Մենոլոգ. սաս սաւր. դեկտ. 21 ։ Ասեման. հատ. Գ. էջ. 25=35. և յայլ հա-տոր տեղիս ։ Աստրամեա յաւի գլ. 44. և 57. և այլն ։



ԹՈՎՄԱՍ ԱՌԱՔԵԱԼ մին յընտրելոց երկոտասանից, անուանեալն երկուորեակ, համարեալ է համածին եղբայր ոմն Թադէոսի Հայոց առաքելոյն՝ որ մին է յեօթանասնից ։ Անուամս Թովմաս՝ կարծի յոմանց նոյն լինել ընդ անուանակոչութեան երկուորեակ, որ եբրայեցերէն Թէոմ ասի, և յունարէն դիդիմոս . և որք զայս ասեն, գտեն՝ թէ բնիկ անուն նորա էր Յուդաս (1) ։ Իսկ ըստ այլոց՝ բուն անուն նորա է Թովմաս, ծագեալ յեբրայական ձայնէս Թէհէմ, որ թարգմանի խորք . իսկ երկուորեակն է մականուն 'ի գործոյ առեալ . որպէս և Յուդաս՝ անուան տանն և ազգատոհմի . վոյ յոմանց դրի Թովմաս Յուդայեանց ։ Ազգաւերինա-ցի՝

ցի՝ գիտեմք, այլ քաղաքաւ և գաւառաւ՝ եէմացի՞ իցէ արդեօք, կամ գալիլեացի որպէս զայլ առաքեալս, չունիմք 'ի գրոց ։ Այն՝ որ ծննդեամբ անտիոքացի առ գնեն զԹովմաս, Թէպէտև յեբրայեցի ծնողաց ծնեալ, և 'ի պաղեստին բնակացեալ. զանուն հօր նորա կոչեն դիոփանէս, և մօրն՝ հռոա. և համածին քոյր նորա սոեղծանեն զոմն լիւսիա կամ ասիա անուն. որ են անստոյգ բանք ։

Այս առաւել անստոյգ և անհիմն ճանաչին՝ զոր միանգամ աւանդեն զքարոզուէ Թովմայի ասորիք և արաբացիք, յորոց ածանցեալ է ինչ ինչ և 'ի յոյնս և 'ի հայս, առեալ յերկարապատում և 'ի ստայօդ գրուածոց ուստեք, որ կոչի շրջագայութիւն կամ պատմութիւն նորա առաքելոյն Թովմայի. զոր և նոյն հարք առաջինք անընդունելի դատեցան՝ իբրև խիթալի կազմութիւն անհաւատարիմ մարդոց աղանդաւորաց. զորմէ տեսցես 'ի կարգի ծանօթութեանց ։ Բայց որ ինչ ստոյգ և հաստատուն բանք իցեն զնորին Թովմայէ, կես մի յաւետարանէ անտի, և կես մի 'ի միաձայն աւանդութենէ նորա վկայաց, բովանդակին յառաջիկայս ։ (2)

Արևելեան յիշատակ բանից սորին Թովմայի յաւետարանի՝ է այն բարբառ նորա երկդիմի առ աշակերտակիցս իւր. * ( )՝ն եկայք և մեք, զի ընդ նմա մեռցուք ||. զոր ոմանք 'ի վկայաց համարեցան լինել ապացուցած երկչոտ մտաց. բայց այլք յոլովագոյնք 'ի մեծանուն հարց սորա և 'ի մեկնչաց իրաւամբք 'ի գովելի միտս առ.

տանուն . զի ս̅բ աւետարանն ոչ վայրապար 'ի մէջ առնու զայն բանն Թովմայի , այլ 'ի յայտնի առնել , թէ ուր այլ աշակերտքն զանգիտէին երթալ միաբանգամ 'ի հրէաստան՝ յերեսաց հալածանաց հրէից , Թովմաս միայն համարձակեցաւ խրախոյս տալ եղբարց իւրոց՝ երթալ անվեհեր ը̅ տ̅ն իւրեանց և վ̅րդ̅պի , թէև մեռանել ևս հասանիցէ ը̅ ն̅մ . ուր որչափ երկիւղ մահու նշանակի , նոյնչափ և աներկիւղութ̅ի 'ի մահուանէ ցուցեալ լինի . արդ չէ՞ արժան՝ զոր ինչ 'ի բարուոք միտս է իմանալ , յոչ բարին մեկնել :

Յայտնի է և անաչառ հարցուածն այն Թովմայի 'ի վերջին ընթրիս . * Տէր , ո՛չ գիտեմք յո՞ երթաս . և զիա՞րդ զճանապարհն կարասցուք գիտել ‖ . որով արժանի եղև ը̅ունել 'ի տ̅նէ պ̅խնի բարձրագոյն 'ի կարևոր ուսումն անձին իւրոյ և ընկերացն և ա̅մ աշակերտելոց ճշմարտութ̅ե . զայն՝ թէ * ես եմ ճանապարհ , և ճշմարտութ̅ի , և կեանք . ոչ ոք գայ առ հայր , եթէ ոչ ինև ‖ :

Այլ առաւել նշանաւոր և Յաքարող բան և գործ Թովմայի հանդիսացաւ յաւուրս յարութ̅ե փրկչին , յորժամ յանձին Թովմայի աւանդեցաւ կանոն ա̅մ հաւատացելոց՝ հաւատալ անտեսանելի խորհրդոց , և ոչ տեսանելեաց . մինչ զի կարծեցեալն թերահաւատութ̅ի Թովմայի՝ հաստատութ̅ի եղև հաւատոյ ա̅մ քրիստոնէից : Փափաքանաց և կարօտանաց էր ձայնն . * եթէ ոչ տեսից 'ի

ձեռս

ձեռս նո՛ր զնշան բեւեռացն , եւ արկից զմա-
տունս իմ՚ի տեղիս բեւեռացն , եւ մխեցից
զձեռս իմ՚ի կողս նո՛ր , ո՛չ հաւատամ ։ Այս
կերպք են բնութեան · դժուարաւ հաւատալ
ուրախալի աւետեաց՝ քան տրտմական լրոյ ·
Եւս առաւել անհաւան լինել կցորդելոցն մե-
ծաց բարեաց՝ յորոց զուրկ ոք զանձն տեսա-
նէ , ուր եւ ինքեան հասանէր այնմ կցորդ-
լինել ։ Ապաքէն չէր Թովմաս տեսօղ խաչե-
լութեան անձամբ , զի փախեաւ ընդ այլ աշա-
կերտսն · բայց զի ետես զտէրն ըմբռնեալ ,
եւ լուաւ զբեւեռելն ՚ի խաչ եւ զխոցումն կո-
ղին , ոչինչ թերեհաւատեաց · զի տրտմա-
կան էին կիրքն , յորոց եւ միշտ կասկածէր՝
ընդ նախապատմելոյ տն իւրոյ եւ վրդպի · այլ
զյարութեան աւետիս բերկրաւէտ՝ զոր ՚ի նոյն
ականատեսից եւ յառաւել բազմաւէ վկայից
լսէր , եւ նոյնօրինակ ակն ունէր ընդ յառաջա-
գոյն ասելոյ տն , դժուարանայր հաւատալ ·
յայտ է թէ առ առաւելութեան փափաքանաց
տեսութեանն եւ ՚ի գեղեցիկ բարենախանձու-
թէ · ո՛չ ասէր ցաշակերտակիցսն , թէ դուք
չասէք զճշմարիտն , այլ թէ ես ո՛չ հաւա-
տամ · է՞ր վն · զի դուք տեսիք , եւ ես ո՛չ ·
դուք վայելեցիք , ես զուրկ մնացի · եւ ահա
մեռանիմ յերգիծանաց սրտիս , եթէ ոչ տե-
սից եւ ես ։

Առ այս ՚ի դէմս ածէին արդեօք առաքեալքն ·
զի՞ գործես Թովմաս · եթէ ընտանիդ եւ ա-
շակերտդ անհաւատանաս , զիա՞րդ հրեայք
եւ օտարք հաւատասցեն · եթէ առաքեալդ
եւ

և սիրելիք չընդունէին զլուր յարութեն , որք
ընկալցին զայն խաչահանուք և թշնամիք .
և եթէ մեք զաշակերտակիցդ մեր չկարեմք
հաւանեցուցանել , ո՞ւր տեղի զտանիցեն
բանք մեր 'ի լսելիս հեթանոսաց և արտաք-
նոց առհասարակ . ո՞չ յիշես զայնչափ սքան-
չելիս երկնաւոր վիճակին մերոյ . ո՞չ նոյն տէր
է՝ որ զմեռեալս յարոյց , և զղազար չորեքօ-
րեայ զիւր բարեկամ և զմեր , և զանձինս
վկայեաց յառնել յաւուր երրորդի . և ահա
բանքն արդիւնք եղեն , զոր և աչօք մերովք
տեսաք և ձեռօք շօշափեցաք . և դու դժուա-
րի՞ն 'ի հաւատալ .

Հաւատարիմ են բանքդ՝ ասէր թովմաս ,
այլ ես չկարեմ հաւատալ . մի՞ համարիք զիս
կամակոր և անլսող , այլ տո՛ւք խրատուէս
փափաքանաց սրտիս . տո՛ւք խրատուէս և բա-
նից իմոց 'ի պէտս բանից ձերոց . ո՞չ ապաքէն
դուք զովին այդու՞իկ ունիք հաւանեցուցա-
նել զհրէայս և զհեթանոսս , զի ականատես
վկայս ասէք զանձինս յարութե՛ վիճակին տիե-
զերաց , և շօշափօղս ձեռօք 'ի վէ՛րս բանին կե-
նաց . իսկ ինձ ո՞ հաւատայցէ , եթէ 'ի լրոյ
խօսեցայց՝ առանց տեսոյ և շօշափման . և
միթէ ես միայն յետնեալ գտայց քան զձեզ
առաքելալս . արդ ո՛չ դուք տեսիք և հաւա-
տացիք , որով և զայլս համարձակիք հաւա-
տայեցուցանել , նոյնպէս և ես կամիմ տեսա-
նել՝ զի հաւատացից և հաւատացուցից : Այս
եթէ ո՞րն իմ և վէ՛պ համարի զիս իւր աշա-
կերտ՝ ո՛չ զձեռ , լցցէ աներկբայ և զփափա-

քումն սրտի իմոյ . և ցուցցէ ինձ զդէմս իւր քաղցր , և զնշանակ կենարար վիրաց և խոցուածոյն . զայս ասէր և յորդ արտասուօք Թախանձէր զլռումն տենչանաց սրտին :

Զայսպիսի ըղձափափաք և բարի տենչումն Թովմայի գիտելով և երկնաւոր վ̃դպին , յետ զեօթնեակ մի խրատելոյ զնա անտեսութ̃՝ զի ուսցի չմնալ արտաքոյ միաբան ժողովոյ եղբարց , և ոչ անլուր լինել միաձայն վ̃դպութե̃ աշակերտաց իւրոց , ելից տիրաբար զկարօտ ն̃ր յաւուրն ութերորդի . և ասէ ցնա առաջի առաքելոց . * բե̃ր զմատունս քո , և արկ այսր . և տե̃ս զձեռս իմ . և բե̃ր զձեռն քո , և մխեա՛ ՚ի կողս իմ . և մի՛ լինիր անհաւատ , այլ՝ հաւատացեալ || : Ո՞ւ ո՞ կարէ պատմել զայնր ժամու կիրս խնդութե̃ և սիրոյ զեղեն̃ զԹովմայիւ . որ ոչ ամօթոյ ինչ իրս վարկանէր զի̃ն յանդիմանուի , այլ սիրողապէս ը̃ունէր ո̃ղ պաքեալ ծարաւի՝ զզօդացուցիչ աղբիւրն կենդանութե̃ . և անդէն վաղվաղակի իբրև ծառ ոռոգեալ և դալարացեալ՝ զարդիւնս անգամ պտղաբերէր կենդանի հաւատոյ , գոչելով սրտիւ և բերանով . * տ̃ր իմ , և ա̃ծ իմ || : Այս է , հաւատացի և հաւատամ , զի նոյն տ̃ր ես՝ որ կամաւ յանձն առեր զմահ խաչի տնօրինաբար , և յարեար անդրէն ա̃ծաբար . ոչ ևս յերկուանամ ը̃ յարութ̃ե քո՝ յարութ̃ե մեր և կեանք , այլ աներկբայ հնչեցուցանեմ զփող յարուե̃ իբրև ականատես ՚ի լսելիս համօրէն տիեզերաց :

Նախ փրկիչն 'ի վ՛ր եած . * այդ զի տեսերդ զիս, և հաւատացեր . երանի՛ որոց ոչ իցէ տեսեալ, և հաւատասցեն ։ Սրով բանիւ՛ կրկին խրատ լուսաւորութե ընկալաւ հաւատարիմ աշակերտն 'ի բերանոյ երկնաւոր վ՟ժ՟պին՝ վ՟ժ՟պել 'ի մխիթարութի մեզ հաւատացելոցս . քանզի և զայն բան խորև զէն զօրաւոր 'ի ձեռին ունէր այնուհետև. Երանելին Թովմաս առ. 'ի հաւատարիմ առնել ամենեցուն զառաքելականն քարոզութի . զի թէ չէր տն զայդ ասացեալ, կարօղ էին լսօղքն յարուծ 'ի Թովմայէ՝ 'ի դէմս ածել նմա, եթէ որպէս դու նախ տեսանել կամեցար, և ապա հաւատալ, նոյնպէս և մեզ տուր տեսանել նախ զքս, և ապա հաւատասցուք ։ Այլ Թովմաս ուսեալ 'ի տնէ զարժանաւոր պասխանին՝ զնոյն երկրորդէր . երանի՛ ձեզ՝ երբ առանց տեսութե ընծայէք հաւատս, զի անսուտ վկայութեան տն իմոյ և վ՟ժ՟պի . քանզի և հաւատք գլխաւորին՝ է յանդիմանութի անտեսից . հոգւոյ աչաց է տեսանելի, և ոչ մարմնոյ . ապա այն անցք՝ որ զի իս անցին, 'ի խրատ և 'ի վ՟ժ՟պութի են հաւատացեալ . և նոյն տր՝ որ ասաց ցմեզ, երանի՛ աչաց ձերոց՝ որք տեսանեն զիս, և ականջաց ձերոց՝ որք լսեն զբանս իմ, ասաց և առ իս 'ի դէմս բոլորեցունց . երանի՛ որոց ոչ իցէ տեսեալ, և հաւատասցեն ։

Այս աւուր՝ ոչ տմ ջի, նոյնպէս և տմ առաքելոց՝ քարոզչաց բանին, մեծամեծ բարեաց առիթ եղև այն անցք Թովմայի . զի առաւել

ւեղ հաստատեցան 'ի հաւատս յարութեան, և
առնուել ուսան զօրինակ հաստատելոյ զայլս
'ի նոյն հաւատս ճշմարտութեան : Այլ ոչ ան-
գոսնեալքն զերանելին Թովմաս մի իրացն ե-
ղելոց, այլ առնուել շնորհ ունէին նմա. զի
նորին պատճառաւ արժանացան կրկին տե-
սութեան փրկչին, և լսելոյ զկենարար վրդպութեն
նր. Թող զի առնուել շահ եղև աշակերտաց
լսելն 'ի բերանոյ Թովմայի զբացայայտ խոս-
տովանութիւն զեղեցիկ զաւանութեանս, * Տր
իմ և Ած իմ, քան զկարծեցեալ զայթակ-
ղութիւն նց ընդ անագան հաւատալ նր բանի
յարութեան :
Այս նա ինքն սբն Թովմաս՝ որ առ ժամն ե-
րևեցաւ իբրև տկարագոյն քան զայլ առա-
քեալս, յայնմհետէ ցուցաւ զօրագոյն քան
զամենեսեան. և ետ զանձն 'ի քարոզութիւն
աւետարանին յետ ընդունելութեան հոգւոյն
սբյ՝ ամ համարձակութբ և անխոնջ վաստա-
կաւորութբ. զի ոչ ոք իբրև զԹովմաս շըր-
ջեցաւ յաշխարհս հեռաւորս և բազումս :
Քանզի ԺԲ միաբանաւանդութեան հարց և վկա-
յագրաց՝ յորժամ սփռեցան առաքեալքն ԺԲ [illegible]
ամ 'ի քարոզել զաւետարանն ամ արարա-
ծոց ԺԲ ազն բանի, եհաս վիճակ սբյն Թով-
մայի գնալ 'ի Հնդիկս. ուստի պէտք եղեն
նմա յածիլ քարոզութբ ԺԲ բազում ազգս ան-
ծանօթս 'ի սահմանս արևելից. մինչ աւր,
թէ քարոզեաց պարթևաց և մարաց, պար-
սից և կարմանաց, բակտրիացւոց և մոգուց
կամ բրահմանաց երկրին մարգաստանի, և ա-

րեւելեան Հնդկաց մինչեւ 'ի Սինէացիս. ընդ ամ տեղիս առնելով նշանս եւ արուեստս անուամբն քսի, եւ դարձուցանելով զբազումս, եւ կարգելով պաշտօնեայս 'ի տեղիս տեղիս:

Շրջեցաւ ասեն եւ յԵթէովպացւոց Ֆ, որ եւ Հնդիկք կմ խափշիկք կոչին. գնաց ասեն եւ 'ի գաւառս երից Թագաւորաց, յո երջանիկ մոգուց եկելոց յերկրպագութի ծննդեանն քսի. եւ գտեալ զնս մկրտեաց. եւ աշակերտեալ ինքեան՝ արար գործակիցս իւր 'ի քարոզութի աւետարանին. եւ այս թերեւս յառանձին հրամանէ փրկչին. զոր օրինակ եւ զմանաւոր խոստումն տն առ աբգար հաւատացեալ արքայ հայոց՝ սա ինքն սբն Թովմաս փութացաւ լնուլ՝ իբրեւ նոտար եւ գործակալ տն իւրոյ եւ վկայի. զի որովհետեւ 'ի ձեռն Թովմայի գրեաց տրն մեր զպխնի Թղթոյն աբգարու, նա ինքն սբն Թովմաս խնամ կալաւ անյապաղ կատարել զբանն տն՝ առաքելով յեդեսիա զեղբայր իւր զսբն Թադէոս:

Եւ ինքն իսկ Թովմաս էանց ը այն տեղիս՝ ը միջագետս հայոց եւ ասորւոց, եւ ճանապարհ արար ը Ֆն ասորեստանեայց 'ի գնալ իւրում 'ի խորին արեւելս մինչեւ 'ի Հնդիկս, հաստատելով 'ի զանազան տեղիս եկեղեցիս եւ քահանայս. որոյ վն իսկ ասորիք եւ քաղդէացիք կոչեն զաթոռ պատրիարգութե իւրեանց իբրեւ աթոռակալութի սբ առաքելոյն Թովմայի, զոյգ ընդ Թադէոսի եւ բարթողիմէոսի լուսաւորչացն հայաստանեայց:

Այլ առաւել իրաւամբք Հնդիկք ճանաչեն

զսբն

զնշխարսն Թովմասու իբրև սեպհական առաքեալ իւրեանց ․ զի անդ կատարեաց զընթացս քարոզութեան իւրոյ ․ և անդ կատարեցաւ յաւուրս Մծդեհի արքայի Հնդկաց՝ խոցեալ գեղարդեամբ 'ի չորից զինուորաց , որպէս գրեն ամենայն վկայագիրք՝ 'ի Քաղամիդիս կամ 'ի Կաղամինայ քաղաքի , որ և Մալապուր քաղաք 'ի Նարսինգայ գաւառի Հնդկաց՝ քանի մի մղոնաւ հեռի 'ի Մադրասայ , երևելի ուխտատեղի գերեզմանի նորա առաքելոյն մինչև ցայսօր , կոչեցեալ քաղաք նորին Թովմայի (3) ։ Բայց թէ զիա՞րդ գտաւ 'ի յետին ժամանակս յեշատակ նշխարն գրել 'ի վաղուց 'ի հրաշաւոր խաչի , արձանագրեաց արժանահաւատ պատմաբանն Հնդկային անցից՝ Հերոնիմոս Օսորիոս Լիսբոնացի՝ եպիսկոպոս Սիլվայ , այր երևելի՝ կիկերոն լուսիտանացւոց կարդացեալ , որ մեռաւ յամի տեառն 1580 ․ և այս բանք են նորա՝ յառաջ բերեալ 'ի Բարոնիոսէ յամի ․ 57 ․ համար ․ ծզե ։

* 'Ի նմին քաղաքի՝ որ ըստ ասացելոցս Մալիպուր կոչէր , և այժմ յետ սկսանելոյ լուսիտանացւոց յաձախել անդր՝ քաղաք նորին Թովմայի կոչի , շինեալ կայր մատուռն մի 'ի բլրին ․ քանզի հաստատէին բնակիչք տեղւոյն , թէ 'ի նմին վայրի սպանեալ իցէ Թովմաս 'ի թշնամեաց կրօնի ։ Եւ էր այս ինչ օրէնք հանդիսացեալ , զի 'ի նմին մատուռն՝ ութ աւուրբք յառաջ քան զծնունդ Քրիստոսի ժողովէին քրիստոնեայք ամենայն , և մատչէր աստուածային պատարագ ։ Եւ էր գտեալ հնգե-

տասան ամօք յառաջ 'ի նոյն բլուր՝ խաչ մի վիմափոր. յորոյ 'ի գագաթան կայր պատկեր աղաւնւոյ. իսկ պատուանդանն էր 'ի նմանութիւն մարգագետնոյ. և ոտք գագաթն՝ նոյնպէս և թևքն և պատուանդանն շուշանաձև վերջաւորօք: Իսկ շուրջ պատէր զխաչն ողջոյն կամար աղեղնաձև 'ի նմին քարէ. իսկ 'ի կամարի անդ փորագրեալ կային նշանագիրք, զորս ոչ ոք բաւական լինէր ընթեռնուլ: Այս կազմած բովանդակ՝ որ ունէր զբաւական մեծութիւն, 'ի ձեռն բազմութեան բարձեալ կանգնեցաւ 'ի վերայ խորանի նորին մատրան. և էր տեսանել 'ի խաչի անդ երևելի նիշս արեան:

Որդ՝ դէպ եղև, զի յաւուր՝ յորում ժողովքն հաւատացեալք 'ի տօնախմբել 'ի նմին եկեղեցւոյ զաւետաբեր ողջոյն հրեշտակին առ ամենասուրբ կոյսն, ութ աւուրբք յառաջ քան զծնունդն Քի, այն մինչ քահանայն՝ որ պատարագէր, սկիզբն արար աւետարանի, խաչն 'ի դոյն թուխ յեղափոխէր, և աւելի ևս անհաւատալի յորդութեամբ բղխէր 'ի նմանէ. ապա դոյն սևուէ յերկնագոյն կապուտակ դարձաւ. իսկ 'ի տեղիսն՝ յորս նիշք արեան կային, վարդագոյն փայլուն նշաղէր: Իսկ յայնհետէ ամյամէ նոյն սքանչելիք երևէին միշտ 'ի նմին աւուր. քանզի՝ որ մեծամեծս զարմանս բերէր, ո՛չ յայլ օր երևէր նշանս այս 'ի խաչի անդ. և քանզի առժամանակ մի դադարեաց, զարմանք կալաւ զամենեսեան:

Իսկ

Իսկ յամի 1561 · յորժամ ժողովեցան քրիստոնեայք 'ի նոյն տեղի նովին հանդիսիւ՛ և տօնախմբութե՛ , յայնմ աւուր՝ յորում խաչն սովոր էր ցոլել զշիթս , 'ի ժամ պատարագի 'ի սկզբան աւետարանի , որ և այն էր զարմանալի՝ զի ոչ երբէք նախ քան զընթերցուած աւետարանին լինէր փոխումն այն խաչին , սկսաւ յանկարծակի խաչն 'ի վեր երևեցուցանել բիծս սեաւս , բայց լուսափայլս · մինչև առ փոքր փոքր ծաւալեալ գունոյն՝ ողջոյն թխատիպ լինէր · և այնպէս շողայր՝ ոչ թէ իւղով իցէ օծեալ : Սպա սկսան չիթք հոսել 'ի նմանութի ցօղոյ · որք երթալով երթային և յորդէին , մինչև զխաչն բովանդակ տամկացուցանել առատութե խոնաւութե : Կատարեաց քահանայն զպատարագն արտասուօք և տխէպ հառաչանօք · յետ այնորիկ եւ 'ի խորանն , և ոք կտաւօք սրբեաց զխաչն · և ահա կտաւքն ներկեցան արիւնագոյն պիսակօք : Յայնժամ սկսան իշխան քաղաքին և ամ բազմութի ժողովելոցն ձեռս յերկինս ամբառնալ , և կարդալ զանունն քո , թողութի խնդրել յանցանաց , և յեռանդն մեծ բորբոքիլ ածպաշտութե : Իսկ խաչն յետ բղխելոյ զաւիշն բազում՝ սկսաւ առաւել պայծառանալ , և գոյն արեան ևս քան զևս յայտնի լուսափայլէր : Նշանս այս շարժեաց զքաղաքապետն և զաւագ քահանայն՝ 'ի խնդիր լինել փութով պնդութե , եթէ գտանիցի ոք՝ որ կարող իցէ թարգմանել զայն նշանագիրս :

Մասն բնակքն. 'ի տրութեն նարօինգայ կայ բրակմանն ոմն գերազանցեալ քան զամ բրակմանս գրով և հմտութեամբ, որ գիտակ իսկ է լեզուաց բազմաց։ Կոչեն փագփաղակի զայրն, և հարցանեն՝ եթէ ճանաչիցէ՞ որդեօք զայն տառս։ Նա ետ պինի. այս նշանագիրք են վաղեմի, որովք վարէին իմաստունքն առաջինք. այլ առ պղերգութե մարդկան կորեաւ ծանօթութի նց. թող զի և զբարբառն՝ որով գրեալ են, առ կարի սակաւս է գտանել։ Յայնժամ ասացին բրակմանին՝ 'ի խորանն ելանել։ Նա ընդդէմ դարձաւ, և անարժան գործ ապիրատութե ասէր լինել՝ կոխել ոտից մարդոյ 'ի սեղանն, յորում ածայինն կատարի խորհուրդ։ Նայց բռնադատեալ 'ի հարկէ իրացն՝ միջամուխ եղև, և ընթերցաւ զնշանագիրսն, որոց այսպիսի է ասէ գրութի, զի մի նշանագիր դնի փոխան տառն և հնգետասան և քսան տառից (այսէ՝ փոխանակ ամբողջ բառի՝ ոչ առ սինէացիս). իսկ իմաստ գրենոյն այն է, թէ Թովմաս ածարեալ այր առաքեցաւ յորդւոյն ածյ, որոյ էր աշակերտ, 'ի կողմանս յայսոսիկ՝ 'ի ժամանակս սեգամայ արքայի, ուսուցանել ազգացն այնոցիկ զգիտութի մեծին ածյ. և տաճար կառոյց աստանօր, և գործս սքանչելիս գործեաց. և 'ի վախճանի՝ յորժամ ծունր եդեալ առաջի խաչին՝ աղօթս մատուցանէր առ ած, 'ի բրակմանէ ումեմնէ խոցեցաւ գեղարդեամբ. և մնաց խաչս այս ներկեալ արեամբ նրյ առն 'ի յաւերժական յիշատակ

տառ

առաքելութեան նր ։ Այս իմաստ էր բովան-
դակեալ 'ի նշանագիրս անդ ։ Առաւել ևս
հաւաստարմացոյց զիրսն և այլ ոմն այր 'ի
նոյն աղանդոյ՝ որ այլուստ կոչեցեալ եղև, հին
աւուրց և մեծանունն յիմաստութեան մասին .
Քզի և նա 'ի նոյն միտս թարգմանեաց զայն
տառս ։ Արդ՝ զայսր խաչի զօրինակ ունիմ առ
իս (. տես պատկերն), փորագրեալ 'ի վերայ
նոյնպիսի փայտի՝ յորմէ շինեալ է աստն եկե-
ղեցին այն, հանդերձ վաւերական թղթովք
և կնքովք վկայութեան արանց բազմաց ։ Նը-
իրացս հաւաստարմութիւն այնչափ ցուցակու-
թիւք հաստատեալ եղև յայնժամ, մինչ զի
անմարթ է ումեք երկուանալ ընդ այնչափ
յայտնի և հաստատուն յիշատակս ճշմարեալ
առն ||։

Սոյն նշանաւոր խաչի և արձանագրի Սբ առա-
քելոյն Թովմայի գտելոյ 'ի Հնդիկս՝ այս-
չափ ։ Իսկ յաղագս մարմնոյ նր միաբան ա-
ւանդեն ոմ վկայաբանք և մատենագիրք ,
թէ զառաջինն թաղեցաւ անդ 'ի Հնդիկս 'ի
կաղամինա կմ 'ի մալապուր քղքի . բայց 'ի
նոյն իսկ աւուրս աշակերտ առաքելոյն քսան-
թիկոս անուն եբարձ զայն անտի , և բերեալ
ամփոփեաց 'ի միջագետս յեդեսիա քաղաքի .
և անդ էր 'ի չորրորդ դարու , որպ վկայեն
ականատես պատմաբանք , յեկեղեցին շի-
նեալ յանուն նորին Սբյն Թովմայի ։ Բայց
քանզի գերեզմանն նր էր 'ի Հնդիկս , նաստու-
ածի բնակիչք Հնդկաց կարծէին և զնշխարս
Սբյն անդ լինել . և նովին սուտ կարծեօք
լու-

լուսաւորանայցիք ոմանք յանցեալ դարու բար-ձին ոսկերս ինչ յանուն Թովմայի, և տարան 'ի գաւառ կղզի. զոր ոչ ոք յիմաստնոց վաւերական գրէ. իսկ այլ մատենագիրք անյիշատակ Թողուն, Թէ ստոյգ նշխարք նորին Թովմայի յետ փոխադրութե 'ի Միջագետս՝ զի՞նչ արդեօք եղեն յապա ժամանակս: Եւ աՀա առ մեզ միայն գտանի Հին յիշատակ իրացս ընդարձակ պատմութե՝ որ 'ի Ճառընտիրս, Թէ մարմին նր առաքելոյն փոխադրեալ եղև զկնի յերկրէն Միջագետաց յՏն Հայոց (4). արդ ժամ է լսել զբանս Ճառընտրաց:

## ԳԻՒՏ ԵՒ ՓՈԽԱԴՐՈՒԹԻՒՆ

### Նշխարաց նր առաքելոյն Թովմայի:

Հ'աւրնր . Մ . Նշ=նն . և Ր . յՅԿ=յէ .

Մի ոմն յաշակերտաց նր առաքելոյն Թովմայի՝ քաննիթիկոս անուն, որ ընդ իւր իսկ երթեալ էր 'ի Հնդիկս, այր բարեպաշտօն և երկիւղած յԱյ, ազգաւ ասորի 'ի Միջագետաց, և սարկաւագ ձեռնադրեալ յառաքելոյն, և չարչարակից լեալ նմին յամանցս, յետ կատարման նր Թովմայի՝ առեալ 'ի գիշերի զնր և զպատուական նշխարս նորա՝ գնաց փախստեամբ յերկրէն Հնդկաց, և եկեալ բնակեցաւ 'ի Միջագետս ասորւոց՝ ընդ իւր ունելով զգանձն պատուական. և պատուաւորէր 'ի ծածուկ նր ոսկերացն, մի-

մաւ

փայլել էր նորա սրբութեան ։

Ապա յետ ժամանակի փոխի յաշխարհէս քանաթիկոս բարի խոստովանութեամբ` թողեալ զնորա նշխարսն հաւատարիմն և սրբազան քեռն իւրոյ և այլոց կանանց, որք ծածկաբար սպասաւորէին նորին ։ Մինչև յետ դարուց անցելոց` առ մեծն կոստանդիանոսիւ 'ի փայլել տիեզերաց քրիստոնէութեամբ` յայտնեցաւ զօրութիւն հրաշալի նշխարաց նորա առաքելոյն Թովմայի. և առնէր մեծամեծ սքանչելիս ամենեցուն` որք հաւատով մերձենային առ նմա. վասն որոյ և հաւատացեալքն եւս քան զեւս մեծարեցին զտեղի բնակութեան նորա ( յեդեսիա քաղաքի ). վանս կանանց շինեցին, և կարգեցին 'ի նմա կուսանս նորա` սպասաւորել նորա առաքելոյն.

Շինեցին և եկեղեցի 'ի վկայարան նորին, և շքեղազարդ պայծառացուցին զնա մեծագոյն սպասուք ։ Եւ մեծ հայրապետն նորին յակովբ Մծբնայ իւրովք իսկ եկեալ 'ի տեղին` երկիրպագանէր նորա և պատուական նշխարաց առաքելոյն, և յորդորէր զամենեսեան պատուել զնա ընդ արժանւոյն. ( որպէս և նորին եփրեմ աշակերտ նորա` որ զբազում ժամանակս զտեղի կալեալ յեդեսիա և 'ի սահմանս նորա ) ։

Եւ եղև 'ի սատակման յուլիանոսի ուրացողին 'ի պարսս` զօրքն պարսից յարձակեցան մինչև 'ի միջագետս ասորւոց ։ Եւ մի ոմն 'ի զօրագլխաց պարսից հանդիպեալ գտանէ զնշխարս նորա առաքելոյն Թովմայի եդեալ 'ի

պատ

պատուհական գզրոցի՝ ծածկեալ մեծագին
հանդերձիւ . համարեցաւ զանձ պատուհա_
կան գտանել կամ մարգարիտ գեղեցիկ . և
'ի խնդութենն ոչ եբաց զայն առժամայն մինչ_
չև ցերեկոյն . և իբրև նսեմացաւ՝ խնդրեաց
լոյս , և եբաց զգուշութբ : Այլ իբրև ե_
տես զնբ ոսկերսն , տրտմեցաւ յոյժ . և սրտ_
մտեալ բարկութբ մեծաւ՝ ընկէց զոսկերսն
յատս երիվարացն . և ինքն տրտմութբ նիր_
հեալ 'ի քուն եմուտ :

Իսկ երիվարքն սկսան ամբոխել , և միմեանց
կիցս ընկենլով զմիմեանս վիրաւորէին , խըռ_
խինջս առնէին , և դափր հատանէին , և ոչ
կարէին հանդարտիլ և ուտել զզարմանս իւ_
րեանց : Եւ էր այր մի յայլազգեացն յով_
սէփ ( կիմեուսուֆ ) անուն՝ դարմանիչ երի_
վարացն . սա իբրև ետես պեղեալսն , զար_
մացաւ էջ յատս երիվարացն , և զննէր՝ թէ
զի՞նչ է ամբոխիլ նց . ապա նկատեալ զե_
տինն՝ տեսանէ լոյս սաստիկ ծագեալ 'ի նբ
ոսկերացն : Ապա ազդեալ նմա ոք յոյ՝ խո_
նարհեալ ժողովէր զնբ ոսկերսն 'ի դոյզն
ինչ կապերտ . և ինքն զարհուրեալ միտա_
խորհ լինէր , թէ զի՞նչ իցէ ահագին եր_
ևումն :

Եւ իբրև 'ի քուն մտանէր , տեսանէ զեր_
կինս բացեալ զարմանալի հրաշիւք . և հրեշ_
տակ մի ահեղակերպ տեսլեամբ 'ի նմանու_
թիւն բոցոյ հրոյ իջեալ կայր առ նա . կարդաց
զանուն նր հեզաբար և ասէ . տես և 'ի միտ
առ զմեծամեծս այս , և հայեաց 'ի զօրութի
նր

նր ոսկերացդ՝ որ կան ՟է մնարս քո։ Զհայն-
ժամ համբարձ զաչս իւր, և տեսանէր սիւն
մի հրեղէն մերձ առ իւր ՚ի վերայ ոսկեղէն
խարսխի՝ ահագին բարձրութբ մինչև յեր-
կինս, և խաչ մի լուսեղէն ՚ի վր նր ՚ի նմա-
նութի ական շափիղայ. և հեռագոյն ՚ի նմա-
նէ երևէին այլ սիւնք մետասանք նոյնպէս
հրեղէնք և սքանչելիք յոյժ. որոց խարիսխք
հաստատեալ կային ՚ի վերայ երկրի՝ իբրև
զկարծր ապառաժ վէմս անշարժս և հաս-
տատունս յոյժ. և ՚ի վերայ իւրաքանչիւր
սեանց երկնաբերձ երևելոց մի մի խաչ լու-
սեղէն յականց շափիղայ. և կամարք սքան-
չելատեսակք ՚ի միմեանս կապեալք՝ ՚ի գոյն
զարդու սալխտակուն մարգարտի. և ՚ի վր
կամարացն այլ ջրեղէն կամար երկնագոյն,
կապուտակ սառնաձև իբրև զամպ մածու-
ցեալ՝ լի բազմութբ խաչագծեալ լուսափայլ
մարդկան։

Իսկ ՚ի վերայ ջրեղէն կամարացն կառք ա՟ծա-
կառք՝ զարմանատեսք՝ անիմանալիք. և որ
նստէր ՚ի վերայ նր՝ անճառելի և անպատ-
մելի փառօք զարդարեալ. որոյ տեսիլն ըզ-
հրեղէնսն զարհուրեցուցանէր. և սրովբէք
կային շուրջ զնովաւ վեցթևեանք, որոց
թևքն էին իբրև զբոց հրոյ բորբոքելոյ. և
քրովբէք բազմաչեայք կային զարքունական
աթոռովն, որք նայել ոչ իշխէին ՚ի փառս
ա՟ծային երևմանն։ Իսկ երկոտասան առա-
քեալքն երկոտասան աթոռովք նստեալ
յաջմէ և յահեկէ կառացն. և յառաջին սեա-
նէն

նկէն ելանէր լոյս ահեղակերպ 'ի նմանութիւն շողոյ, և ոլանայր յարևելս կոյս:

Եւ հրեշտակն՝ որ իջեալ կայր առ յովսե- փայ, ասէ ցնա . տեսեր զսքանչելիսդ՝ որ երևեցաւ քեզ: Եւ նա ասէ . աղաչեմ զքեզ տէր, պատմեա ինձ, զի՞նչ է ահագին և զար- մանալի տեսիլս երևեալ: Եւ ասէ ցնա հրեշ- տակն . սիւնդ առաջին՝ զոր տեսեր մերձ առ սնարս քո, այդ քարոզութիւն առաքելոյն Թումայի է, որ աշակերտեաց զհնդիկս և զաղուանս և զհայս . որոյ ոսկերքն կան ընդ սնարս քո . և միւս ևս սիւնքն՝ զոր տեսեր, իւրաքանչիւր առաքելոցն քարոզութիւն է յիւ- րաքանչիւր վիճակս հաստատեալ: Եւ կա- մարքդ լուսեղէնք 'ի վերայ սեանցդ՝ այդ ընդհանրական եկեղեցիք են՝ շինեալ 'ի վերայ հիման առաքելոց և մարգարէից: Եւ ջրե- ղէն կամարքդ երկնագոյն՝ կաղապարակ՝ ամ- պատեսիլ՝ լի անբաւ բազմութեամբ խաչազգե- ցից, այդ մկրտութիւն Նք աւազանին է . զի լու- սաւորեալքն Նք աւազանաւ՝ մաքրագործ- փայլեն 'ի կամարս երկնից 'ի դասս վերին եէմի:

Եւ կառքդ ահեղակերպ՝ զոր տեսերդ, այդ ծնութիւն է՝ հանդուցեալ 'ի վերայ նոր մկրտե- լոցն և քարոզութեան առաքելոցն . և նստեալն 'ի մէջ կառացն Քս է որդին այ . և երկոտա- սան առաքեալքն նոր բազմեալք 'ի դատաւորա- կան աթոռս, ըստ խոստմանն տեառն՝ որ առ նա: Եւ լոյսն ցոլացեալ յառաջին սիւնէդ յա- րևելս կոյս, այդ քեզ առաջնորդէ յարևելս տա

տանել զնշխարսդ՝ որում դու արժանաւորե-
ցար հանդիպել. և սպասաւորեսցես զմա
մինչև յօր ելից քոց յաշխարհէս. և ուրանօր դա-
դարուածն առնու լոյսն ցոլացեալ յարևելս,
այն է տեղի բնակութեան սրբոյ առաքելոյն. և
յորժամ մերձեսցիս յաշխարհն հայոց, մկրտես-
ցիս յանուն հօր և որդւոյ և հոգւոյն սրբոյ:
Եւ զարթուցեալ այրն՝ հիացեալ զարմա-
ցեալ կայր իբրև զարբեալ, և ոչ գիտէր՝ թէ
զինչ առնիցէ: Ապա լոյսն՝ որ 'ի սիւնէն ցո-
լացաւ, յայտնապէս երևէր՝ առաջնորդել
նմա. և նա յարուցեալ վաղվաղակի անյապաղ
փոյթ ընդ փոյթ գնայր զկնի լուսոյն ցոլացե-
լոյ՝ հանդերձ սրբոյ նշխարօքն: Եւ իբրև եհաս
լոյսն յաշխարհն հայոց 'ի գաւառն աղձնեաց՝ 'ի տե-
ղի մի, որ է մերձ 'ի բերդն սեղմ (կամ սեմղ)
կոչեցեալ, որ էր ընդ իշխանութեամբ տաճկաց,
և առ դեղջն հողց կոչեցեալ, և անուն տեղ-
ւոյն պալի (կամ պաղ) կոչի, անդանօր դա-
դարուածն առնու լոյսն. և գիտաց այրն՝ ե-
թէ անդ է բնակութիւն սրբոյն:
Եւ էր 'ի տեղւոջն յայնմիկ եկեղեցի մի, և
սպասաւոր եկեղեցւոյն քահանայ մի բարե-
պաշտօն և երկիւղած յԱստուծոյ: Զայն տեսեալ
առնն՝ յԱստուծոյ եղեալ զպատահումն համարե-
ցաւ. ապա մերձեցաւ 'ի քահանայէն յայն-
մանէ. և կոչեցաւ անուն նորա յովսէփ՝ ըստ ձայ-
նելոյ զնա հրեշտակին. և զգեցաւ կրօնա-
ւորական զգեստ, և բնակեցաւ 'ի տեղւոջն
հանդերձ սրբոյ նշխարօքն. և անուանեցաւ տե-
ղւոյն պալի վանս: Եւ այրն յովսէփ սպասա-

ւո

ւորէր զնոյն 'ի տեղւոջն յայնմիկ ամս վեց
սրբութեամբ և կրօնաւորական կերպիւ :

Ապա յետ ամացն այն անցելոց՝ նոյն տեսիլ երևէր նմա ոմն զառաջինն, լոյս ցոլացեալ 'ի նշխարացն յարևելս. և նա յարուցեալ առնոյր զնշխարսն, և դնայր զհետ լուսոյն՝ մինչև ցբլրակ մի, որ կայ հանդէպ մանակերտոյ՝ 'ի վերայ գեղջն, որ կոչի Քծխծս (Կիմպծխծս) : Եւ անդ էր բնակեալ միայնակեաց մի հրեշտակակրօն վարուք. և բնակեցաւ առ նմա այրն Յովսէփ հանդերձ նշ͞ առաքելոյն. և կրօնաւորէին 'ի միասին՝ սպասաւորէին նոյն արժանապէս մինչև ցօր մահուան իւրեանց :

Եւ նախարարքն Ծոփին՝ որ էին 'ի մեծ տանէն արծրունեաց, վանս շինեցին զտեղին. և կարգեցին 'ի նմա քահանայս հանդերձ կրօնաւորօք. և փառաւորեցին զտեղին առաւելապէս. յորում տեղւոջ բժշկութիւնք բազումք լինին 'ի փառս ամենասուրբ Երրորդութեան յաւիտեանս յաւիտենից. ամէն :

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) Թողեալ զանվաւերական վկայութեն անյայտ գրոց, ուր ասէպ սրբն Թովմաս առաքեալ՝ կոչի միանգամայն և յուդա, անժխտելի կարծի վկայութեն եւսեբի կեսարացւոյ, որ ասէ գոնէ ը օրինակաց ինչ՝ 'ի պատմ. եկեղ. գլ 13. կմ յերես. 33. ը ասսեմ. Թէ * յետ համբարձման
„ յսի քսի, յուդաս՝ որ և Թովմաս անուանեալ, առա-
„ քեաց առ աբգար զԹադէոս առաքեալ զմին յեօթա-

ԺԷ „ նաս

„ Նաանից || ։ Զոր՝ ոչ կարծեմ, փոքր մի այլազգ վեր-
ծանեալ ոմանց՝ անկան յայն կարծիս, թէ Թադէոս ա-
ռաքեալն հայոց իցէ մին յերկոտասանից՝ յուդաս զե-
բէոս անուն, որ անուանեցաւ Թադէոս ։ Բայց հաս-
տատէ զնախագրեալ ընթերցուած եւսեբեայ և ոչն եփ-
րեմ, որ 'ի տաղս հաւատոյ՝ առ աստուածաննեայ. հատ. ա.
երես. 101. այսպէս նուագէ. * հարիւրապետն հաւա-
• տաց, յուդաս Թովմաս շօշափել և զննել կամեցաւ.
• զնա գովեաց տրն, զառ յանդիմանեաց վէպն ||. Այդ
գրէ աստուածան. յերես. 318. * ամին իրի բարձցի խիղճն
• վարդապետի, որ զզգաստութիւն եւսեբեան զառ 'ի դե-
• սանէ եգեսացւոց փոխագրեալ՝ սովին պատճառա-
• նօք 'ի կասկած արկանէ, 'ի մի ածեալ և զայն՝ թէ,
„ այլ Թերեւս զայս վրիպակ առասցուք լինել եւսեբեայ,
„ որ ընծայեալ իցէ Թովմայի զմականութիւնն՝ զոր պարտ
„ էր տալ Թադէի ։ Բայց ( սաէ աստուածան ) Թովմաան
• ոչ էր անուն, այլ՝ մականուն առաքելոյն հնդկաց.
• որ նշանակէ երկուորեակ. ոչ յայտ է հմուտ ուղեւորեց
• եբրայական և ասորի լեզուաց ||. այն է՝ որ յունա-
րէն դիդիմոս ասի ։

(2) 'Ի բազմապատիկ բանից անտի վիպաց և հին մատե-
նագրաց և վկայաբանից կիրճառընտրաց յայտնապէս ուսանիմք
խմանալ, թէ կրկին էին սոսկոք պատմութիւնք 'ի վերայ
սորին Թովմայի 'ի վաղուց 'ի վեր երեւեալք ։ Առաջինն
էր գործ աղանդաւորաց մանիքեցւոց՝ լի ոչ միայն սուտ
պատումն կեղծեօք, այլև յայտնի մոլորութիւնք և հայ-
հոյութիւնք ընդդէմ ճշմարտութեան ուղղափառ դաւանութեան ։
Իսկ երկրորդն էր գործ զոկեալ 'ի ձեռն ուղղափառաց՝
Թօթափմամբ 'ի մոլար վիպութեանց, բայց պահեալ ըստ
պատմական մասին՝ նոյնպիսի անհեթեթ և երազապա-
տում բանիւք ։ Արդ՝ ոչ առաջինն էր դատապարտե-
լի, նոյնպէս և երկրորդն անընդունելի՝ դասեալ ը երկ-
բայական գիրս, որ ծածուկք կամ անյայտք կոչին. և
սա է՝ որ զատանի ը մասին փոխանցել առ զանազան պատ-
միչս այլեւայլ ազգաց, ոչ և 'ի ձեռս ընտիրս մեր. յորոց
ինչ ոչ կամեցաք ածանել յայսմ մասին ։ Այլ միայն դի-
ցուք աստ զդատաստան հարց և մատենագրաց, որք
զերկոցունց անտանկ նախանշանակելոց իւրև զմիոյ
խօսին ընհանրապէս ։

Սոյն աթանաս, 'ի համառօտութեան սբ գրոց. հատ. բ. երես.
154. 'ի կարգի հակառակելի և անյայտ գրոց նորոյ կտա-
կի թուէ զայսոսիկ. * Շրջագայութիւնք պետրոսի. շրջ

,, Հաւատալութիւնք յաւիտեանս. չհաւատալութիւնք Թովմայի.
,, աւետարան մը Թովմայի. վճռալութիւն առաքելոց. հրե-
,, մեայք, յորոց թարգմանեցան ինչ ինչ ծանօթագրութիւնք
,, և ծածանելոյք. այն իսկ են վերծանելոյն ||։

Այն օգոստինոս, 'ի վերջ բանից ին 'ի լերին. Գիրք Ը. համ-
մար. 65. այն է հատ. Զ. մասն Ը. երես. 194. խօսելով առ-
մանիքեցիս՝ ասէ. * Գտէք յայն գիրս՝ որոց ինքեանք
,, ընծայեն զմեծ հեղինակութիւն, 'ի մէս ասացեն՝ զոր
,, ասեմքս. ուր գրեալ է, թէ առաքեալն Թովմաս
,, խնդրեաց ումեմն՝ յորմէ ապտակեալն էր, զաղագոթ
,, զառն մահու, այլ պահելով զհոգի նր՝ զի խնայեսցի
,, նմա 'ի հանդերձեալն. զորոյ՝ իւրև տալանաւ յառաջ-
,, ծէ, զձեռն քանցեալ 'ի մեացէ մարմնոյ՝ եբեր շունն
,, 'ի սեղան անդր, ուր ճաշէր առաքեալն։ Այսմ գրոց
,, չէ 'ի գէպ մեզ հաւատալ. զի ոչ է 'ի կաթուղիկէ
,, կանոնի. բայց նք՝ քանզի ընթեռնուն զայն, և իբր
,, անվթար և ամէն ճշմարիտ յարգեն, չյիշեն որպիսի
,, կուրութե զայրացողնին ճգեմ մարթասոր վրէժխնդ-
,, րութեց եղելոց 'ի հին կտակարանի, անգիտացեալք
,, զխորհին՝ թէ որով ոգւով յորդորեալ ժամանակի
,, գործեցան ||,

Զնոյն պատմութիւն ապտակահարութե (զոր գտանեմք և 'ի ճառընտիրս ինչ) 'ի նոյն անյայտ գրոց քուննելով առ մանիքեցիս՝ երկրորդէ նա ինքն օգոստինոս յայլ եւայլ տեղիս, մերթ կոչելով զայնպիսի գրուածս՝ կարկատուն առասպելս յօգեալս յանուն առաքելոց 'ի մանիքեցւոց, և տարագրելս յեկեղեցական կանոնէ սբ գրոց։

Գելասիոս հռովմայ հայրապետ յառաջնում ժողով եօթանասուն եպսկոպոսաց՝ յամի տն. 494. վն որոշման նր գրոց յանյայտից, այսպէս ունի 'ի Է հատ. ժողովոց. երես. 150.
* Գործք յանուն Թովմայի առաքելոյ՝ գիրք. Ժ. ան-
,, յայտք . . . . Աւետարանն յանուն Թովմայի՝ որով
,, վարին մանիքեցիք. անյայտ . . . . Գիրք ծնն՝ զորս ա-
,, րար փիւկիոս (կմ զոււկիոս) աշակերտն սատանայի.
,, անյայտ . . . , Յայտնութիւն՝ որ կոչի Թովմայի առա-
,, քելոյ, անյայտ ||. Նոյնպէս թուէ և զայլ գործս և զաւետարանս յանուն այլոց առաքելոց, և զայլ գրուածս ինչ պատմականս, զորոց չէ աստ տեղի ասել։

Ըստ պատմելոյ սբյն եպիփանու 'ի հերձ. իէ. և կը, ոչ և թէոդորետոսի և այլոց, (զորս յիշէ ասեման. հատ. Գ. երես. 28.) մանի առաջնորդ մանիքեցւոց չար աղանդոյն՝ ժողովեաց իւր աշակերտս երկոտասան, կամելով
ան-

,, հաստատուն նա եղև 'ի կողմանս պարթևաց և մարաց և
,, որք նաև հնդիկք կոչին || . զի այդ չմիաբանի ընդ այլ
բանս իւր , այլ և ոչ է բանս այլոց հին և նոր մատե-
նագրաց . և եթէ զառաջինսն հեգնելով խօսի , իւր կար-
ծիքն լինի ծաղրելի :

Լուծիցուք և զաւանդութիւն արևելեան կողմանց ըստ աս-
սեմանայ . որ 'ի հատ. Դ. երես. 387. ասէ . * Վս Թովմայի
,, առաքելոյն արևելից' հաստատուն աւանդութիւն է ա-
,, սորւոց' եթէ՛ ուղղափառաց , և եթէ յակոբիկեանց
,, և նեստորականաց , զոր 'ի մէջ բերէ բարեբրեյոս ,
,, թէ զառաջինսն 'ի միջագետս , և յՅիսն քաղդէացւոց և
,, ասորեստանեայց և պարսից քարոզեաց զաւետարանն .
,, և թէ երթեալ յետոյ 'ի համատարած Յս հնդկաց'
,, կատարեցաւ մարտիրոսութբ 'ի կաղամինա : Նրգ.
,, որովհետև 'ի նախկին դարուց անտի եկեղեցւոյ' քրիս-
,, տոնեայքն արևելից . քաղդէացիք ասեմ և պարսիկք .
,, որ էին ը տրութբ թագաւորացն պարսից , ունէին
,, եպսունս . և նախագահ և գլուխ նոցա այն էր , որ
,, նստէր 'ի Տիզբոնական քաղաքն 'ի սղակ և 'ի սելևկիոն ,
,, այլ նեղքոյ անկեալ անտիոքայ պատրիարգին , սորին
,, զի եթէ՛ յակոբիկք և եթէ նեստորականք 'ի կամիլն
,, գրել զդաւաղանագիրս այնց աթոռակալաց , որք յե-
,, տոյ յարմարեցին անձանց անուանս պատոնէոյ պատ-
,, րիարգ և մաֆրիան կոչմամբ (որ 'ի վայր էր քան զպատ-
րիարգ , և 'ի վեր քան զմետրապոլիտ ) , անդստին 'ի Թով-
,, մայէ առաքելոյ և յայլոց եւ աշակերտաց առաքելոց
,, սկիզբն առնէն , այլ թէ նորին աթոռոյ նշ գոլքա ժա-
,, ռանգք իցեն ||:

Բարեբրեյոսն յիշատակեալ յասսեմանայ' գրէ 'ի ժա-
մանակագրութեն իւրում . հտն. Գ . գլ. ա . թէ Թովմաս
առաքեալ յորժամ անցանէր ընդ միջագետս' կամելով
գնալ 'ի հնդիկս , քարոզեաց այլևայլ ազգաց , զ պար-
թևաց , մարաց , պարսից , ևն . և յայնժամ ասէ դար-
ձոյց 'ի մոգութէ 'ի հաւատս քի զզահապանս սահմա-
նաց թզրունն պարսից' կարգեալս յարաւշրայ արքայէ
'ի տագրիտ քաղաքէ . և էր ասէ անուն գլխաւորի նց
բարհադբեսիա : Զայս բան գծուծարանայ իմանալ և
մեկնել ասեման . այլ մեզ անտարակոյս երևի , զի բա-
րեբրեյոս պատուհասեալ է զերան չփոթութբ 'ի պատ-
մութէ սոյց սուքիասանց եղելոց յաւուրս արտաշէսի
հայոց արքայի' եկելոց 'ի գրանէ ալանաց . զորս դար-
ձոյց ոմն թադէոս եղբայր Թովմայի . և գլխաւոր նո-

,, ցայսօր, թէ առ իւրեանս էր մարմին Թովմայի առա֊
,, քելոյ 'ի մալիապոր մինչև յանցեալ դար. յորում ժա֊
,, մանակի փոխադրեալ իցեն զայն լուսիտանացիք 'ի
,, գոա. . . Զայսմ աւանդութէ նեստորականաց, և ըղ֊
,, բարեպաշտական դիւրահաւանութէ լուսիտանացւոց
,, չէ՛ տեղւոյս վճ.ռել. միայն յուշ առնեմ, զի յայսմ մա֊
,, սին ընդդէմ դառնան լուսիտանացւոց նախնի մատե֊
,, նագիրք ասորւոց, յունաց, լատինացւոց և նեստո֊
,, րականաց. քանզի գրեն՝ թէ մարմին սրբոյն Թովմայի
,, անդստին 'ի չորրորդ դարէ քնի փոխադրեալ եղև յե֊
,, դեսիա միջագետաց. և անդ 'ի պատիւ նորա կանգնե֊
,, ցաւ վկայարան հոյակապ, ուր զինքն հաւատացեալք
,, 'ի հեռաւոր տեղեաց մեծ բարեպաշտութեմբ ||: Արդ՝
ըստ այս գրութի է անտարակուսելի, նոյնպէս և փո֊
խադրութիւն յեդեսիոյ 'ի հայս չերևի ինձ տարակու֊
սելի. զի ուր կայ առ մեզ աւանդութի պատմական՝
որոյ չիք հակառակն առ այլս, մնայ իրաւունքն ըստ
իրաւաբանից՝ 'ի ձեռս ժառանգողին ։



# ՎԱՐՔ ՍՐԲՈՅ ՀՕՐՆ ՄԵՐՈՅ

## մեծին Մեսրոպայ վրդպի.

Հ. Փետր. 19. Նո. և Սեպտ. 19: Կորիւն. Խորենացի. Փարպեցի. և այլ ամ պատմագիրք հայոց:'



ՄԵԾ ՎԱՐԴԱՊԵՏՆ ամ Հայոց՝ Տրն Մեսրոպ կմ Մեսրովբ, Ճշմարիտ այր Այ և առաքելաշնորհ վրդպ, անմահական յիշատակաց արժանի և երիցս տօնելի, էր ծննդեամբ 'ի տարօն գաւառէ՝ (որ է Մուշ), 'ի Հացեկաց աւանէ, որ է Հացիկք, որդի առն ածասիրի և երանելւոյ՝ վարդան կոչեցելոյ: Նա էր առաջին և սովորական անուն նր վարդապետիս՝ Մաշտոց կամ Մաշթոց. իսկ Մեսրոպն անուն եղև յորջորջումն յաւելեալ իբրև մականուն, թերևս զկնի վրդպութեն, ոչ թէ ձեծ բառին ստուգաբանելի, կամ ճշտ բառիւ:

Արդ՝ երանելիս այս 'ի մանկութեան տիսն սնեալ ամ երկիւղածութբ և բարեպաշտութբ, և վարժեալ հելլենական դպրութբ ընդ ամ կարգի դրաւորական իմաստից, միանգամայն և ասորի և պարսիկ գրոց լեալ խելամուտ՝ առ 'ի չգոյէ հայերէն դպրութե 'ի

ժա

ժամանակին յայնմիկ, աշակերտեցաւ սբ̅.
Հայրապետին մերոյ մեծին Ներսեսի պար-
թեւի, և եղև նր̅ նօտար: Սրոյ և մահուանն
առաջիկայ գտեալ՝ լսօղ եղև և մարգարեա-
կան գուշակութե̅ց նորին. ը̅ որում՛ ՚ի վերս
անդ ը̅բյն ներսեսի ը̅ Ճառընտրաց յայտնա-
պէս նշանակի ՚ի բերանոյ նորին մաշտոցի, ը̅
մեսրոպայ. վ̅ոյ և առաջին արձանագրող
անցից և գուշակութե̅ց մեծին ներսեսի սա
ինքն երանելին մեսրոպ Ճանաչի, զոր յետ
ժամանակաց այլ ոմն մեսրոպ անուն երէց
անցոյց ՚ի կարգս երկարապատում գրոց իւ-
րոց ը̅ բուզանդեան ոճոյ:

Իսկ եղև յետ փոխման մեծին ներսեսի յԾէ՝
գնաց մաշտոց ՚ի դուռն արքունի, և եկաց
յարքունական դիւանին ՚ի ժամանակս թա-
գաւորացն Հայոց՝ վարազդատայ, արշակայ
և վաղարշակայ, և խոսրովու վերջնոյ՝ որք
սակաւ ամօք կեցին, յաւուրս Հազարապե-
տութե̅ առաւանայ մեծի իշխանի. և կար-
գեցաւ դիւանադպիր թագաւորաց՝ վ̅ն իւրոյ
բազմահմուտ գիտութե̅ և գրաւոր Ճարտա-
րութե̅. թօղ զի և յաջողակ իսկ էր յա̅մ ՚ի
գործս՝ սպասաւորել արքայատուր հրաման-
նին: Իսկ այնպէս կացեալ ՚ի դրան ամս իբր
եօթն՝ մինչև ցերրորդ ամն խոսրովու, քա-
ջահմուտ և կիրթ լինէր ա̅մ կարգի թագա-
ւորութե̅, և վարժ ՚ի մարգս զինուորութե̅.
մինչև ցանկալի լինել զինուորական արուե-
տին իւրոց զօրականաց, և սիրելի յաչս թա-
գաւորին և աւագանւոյն, ա̅մ պատրաստու-
թե̅

թէ զանձն յորդորեալ 'ի գլուխ տանել զգոր-
ինչ և յանձն առնէին նմա 'ի գործս թագա-
ւորութե̃ն ։

Այլ որ մեծն է, և մ̃ծ գովութեց արժանա-
ւոր, յայնպիսի աւէկած ժամանակի մ̃րուն
Հայոց Ազին, և յանպարապ զբաղմնս առաս-
նադպրութե̃ և զինաւորութե̃, ոչ ինչ կա-
սեցաւ երանելին Մաշտոց 'ի փութոյ մ̃ծ-
պաշտաւն և հոգևորական կրթանաց ։ այլ
անդէն 'ի դրան ուշ եդեալ փութով սնդու-
թե̃ ընթերցուածոց մ̃ծեղէն գրոց՝ որ 'ի
յոյն և յասորի բարբառ, ժամ պարապոյ գտա-
նելով զցայգ և զցերեկ՝ անխափան դեգե-
րէր 'ի կատարեալ հմտութի̃ մ̃ծատուր հրա-
մանաց ։ որով միշտն լուսաւորեալ պայծա-
ռանայր օր քան զօր հոգւով գիտութե̃ ։

Ապա ը̃ն մ̃ծայլին գաղտնի աղդեցութե̃ յոր-
մէ առ մեծամեծս էր սահմանեալ, զգուշա-
ցեալ անձին՝ զի մի 'ի իշխանական փառաց և
պատուոյ յորդութե̃ն յԴի խափան ինչ լինիցի
հոգւոյն ընթացից և ճգնութե̃, եդ 'ի միտ-
սաւ զանձն բոլորովին 'ի ծառայութե̃ երկ-
նաւոր Թագաւորին և մարդասիրին Տ̃յ՝ ըստ
կատարեալ չափու աւետարանական կատա-
րելութե̃, այս է՝ մտանելով 'ի կարգ կրօնա-
ւորական ։

Մերկանայր այնուհետև զ̃զ Դի զինուորու-
թին և զիշխանակիր ցանկութիւն, և հրա-
ժարէր յամ̃ Յազքսս երկրաւոր զբաղմանց ։
և առեալ զխաչն պարծանաց՝ ելանէր զհետ
ամենակեցոյց խաչելոյն ։ և հանձեալ գեղե-

ցիկ խորատու տրունեան հրամանաց՝ քաղցը ըմպել և թեթև բեռամբ փրկչին՝ 'ի խաչակիր գունդն քնի խառնեք: Այլ վաղվաղակի 'ի վանական կարգ մտանեք 'ի մենաստան ուրեք, որ 'ի գողթան գաւառի 'ի վերնակողմն փառաւորական էր. և ընկալեալ զկերպարանս վանականութե 'ի մէջ բազմութե եղբարց՝ լինէր ընտիր յամի և երևելի, կիրթ յառաքինութիւս և փորձ յամ բարեկրօնութիւս: Այլ ձեռնադրեալ 'ի քահանայութի յամենայնի կոչմանէ՝ առաւելոյր հրեշտակակրօն սրբութբ 'ի ջերմ ծառայութիւն և 'ի պաշտօն տն այ իւրոյ. մինչև լինել ամենեցուն կենդանի օրինակ սքանչելի վարուց: Ապա ըստ կատարեալ կարգի յառաջադիմութե՝ յառաւելագոյնս միշտ բերեալ վերնապարգև շնորհօքն այ, ցանկացաւ միայնանալ յանապատ ուրեք, և առանձին ճգնիլ. և այնպէս յանապատական կրօնս փոխեալ՝ կատարեալ միանձնեաց լինէր, և քան զամ միանձունս զարմանալի երևէր և հռչակաւոր, բնակեալ 'ի քարանձաւս խստամբեր վարուք և մեծապէս առաքինութբ. ըստ որում գրէ ձեռամբ յաշակերտս նորա երանելին կորիւն, ասէ. * Բազում և ազգի ազգի
„ վշտակեցութի ըստ աւետարանին կրէր ամ
„ իրաց, ամ կրթութբ հոգևորացն զանձն
„ տուեալ միաւորութբ լեռնակեցութե,
„ քաղցի և ծարաւոյ և բանջարաճաշակու-
„ թեց, արգելանաց անլուսից, խարազնազ-
„ գեստ և գետնատարած անկողնոց. և բա-

„ զում

,, զուամ անգամ զհեշտական հանգիստ գիշե-
,, րոյն. և զհարկ քնոյ յոտանաւոր տքնութեն
,, 'ի թօթափել ական վճարէր . և զայս ամ
,, առնէր ոչ սակաւ ժամանակս : Այս գտեալ
,, և ս զամանս՝ յինքն յարեցուցանէր , աշա-
,, կերտեալ նմին սովորական աւետարանու-
,, թեն . և այնպէս ամ փորձուեց 'ի վերայ
,, հասելոց կամանյական քաջութբ տարեալ,
,, և պայծառացեալ՝ ծանօթական և հաճոյ
,, լինէր այ և մարդկան ‖ :

Այս քանզի խորհուրդ մի կարևոր և օգտա-
կար տնկեղէր այ 'ի սիրտ երանելւոյն մաշ-
տոցի՝ ձեռնտու լինել կրկին լուսաւորութե
ազգին իւրոյ գրաւոր վճպութբ և առաքե-
լական քարոզութբ , սիրով ժողովէր առ ինքն
զինքնայօժար եղբարս եկեալս 'ի նմանօղ
լինել առաքինակրօն վարուց նորա բարեխնա-
խանձ եռանդեամբ ածպաշտութե . և այն-
պէս օր քան զօր բազմացուցեալ զաշակերտս՝
հրահանգէր զնս 'ի կատարեալ վարս առա-
քինութե , և 'ի լուսաւոր կարգս ածեղէն
իմաստութե :

Այս իբրև ետես երանելին , եթէ յաջողեաց
նմա ած զառաջարկութի խորհրդոց իւրոց ,
տալով ինքեան վաստակակիցս 'ի մշակութի
հոգւոց արս ընտիրս , այնուհետև անյապաղ
դիմեալ իջանէր յանապատէ անտի իւրմէ
աշակերտօքն հանդերձ 'ի մերձակայ տեղիս
գողթան գաւառի . ուր գտանէին անձինք
տխմարք և բարբարոսամիտք՝ անկարգ. և ան-
դարման կենօք՝ ըստ առաջին գնացից հեթա-
նոս

ճոխութեան․ և ոմանք ոմանք 'ի նմին իսկ 'ի կատարելիշտ օրինօք շաղեալ կայիր՝ դիւրաց և դիւրակաւ բախտից պաշտօն մատուցանելով։ Այնժամ է առաջ եկանէր երանելոյն իշխանին գողթան՝ այր երկիւղած և նմանէր ընդ աշակերտութեան հաւատոցն քրի, և մեծախնդութ. որհնէր զգալուստ նորին յայցելութեն իւրոյ գաւառին։

Իսկ երանելոյն Մաշտոցի առաւել խնդամտեալ է այն՝ փառաւորակի զաւետարանական արուեստն 'ի մէջ առնոյր, և ձեռն արկանէր զգաւառողն՝ հանդերձ միամիտ սատարութեամբ իշխանին, և գործակցութ. աշակերտաց իւրոց; քարոզել զբանն կենաց, խրատել և ուսուցանել․ և այնպէս փութանակի գերեալ զանձինսն 'ի ծնոտի աւանդից հայրենեաց և 'ի սատանայական դիւապաշտ մոլորութենէն՝ 'ի հնազանդութիւն քրի մատուցանէր, զարմանալի որ լուսաւորչին լցեալ յանձին, և իբրև լուսաւոր Տր երևեալ․ քանզի և որ ինքնին ձեռնհասլու էր ծառային իւրոյ Մաշտոցի․ և նշանք մեծամեծք երևէին ականյանդիման բնակչաց գաւառին։ զի ոչ երբեմն յաւուրս նորին գործորի, նոյնպէս և յայնժամ աղօթիւք սրբոյն Մաշտոցի և զօրութ. ամենայաղթ նշանի խաչին՝ կերպակերպ նմանութ. փախստական եղեալ դիւաց՝ անկանէին 'ի կողմանս Մարաց։

Մաշտոցին այսպէս եղելոյ մեծ յաջողութ.՝ իղձ լինէր երանելին Մաշտոց վասն գրաւորական պայծառութեան հայաստանեայց Տր․ զի

ուր

ուր լոյս աձգիտութեան ծաւալեալ էր ընդ ամ երկիրն Հայոց 'ի նոյն դրկպարէ Հեռէ, առ 'ի չգոյէ Հայերէն դպրութեան՝ անընտել մնայ-ին ժողովուրդքն ամ լուսոյն աստուածային առ-ուրց, որք ընթերցեալ լինէին յեկեղեցիս յոյն և ասորի բարբառով. զոր գիտնաւորաց էր իմանալ, և ոչ բազմութեան ռամկին. և ստա-ուել՝ առանց կրթանաց գրոց գիտութեան՝ զօ-րանայր խակամտութի, և խամրանայր մարդ-կութի և աձպաշտութի։ Մինչ իբր յարու-ցեալ գնաց առ Ներսէս կաթուղիկոսն Հայոց մեծ-ն Սահակ պարթև, որ այն ժամ նստեալ էր յա-թոռ Հայրապետութեան. և էր մտերիմ իւր և օգնական անդադարին 'ի մանկութէ, երբ ինքն դպիրն էր Հօր նորա մեծին Ներսէսի. և Հրա-մանն առեալ 'ի նմանէ՝ շրջէր այսր անդր 'ի քարոզութիւն իւրովք ընկերօք. և ուր և Հա-սանէր՝ ընթեռնոյր 'ի լսելիս նց զգիրս նոցա, և Հայերէն մեկնաբանէր։

Բայց բազում վաստակեալ 'ի սոյն, և սա-կաւ օգտակար մատուցեալ բազմութեան անհա-մար ժողովրդոց, հոգ 'ի մտի արկանէր՝ զի-որ ինքնին այց արասցէ ազգին՝ լնուլ զգրա-ւոր կարօտութի նց կարևոր. և մինչ սակայ հնարս զմտաւ ածէր, այլ առաւելապէս յա-ղօթս կանխէր մշտնջենաւորունչս, և 'ի բազ-կատարած պաղատանս առ ած և յարատասուս անդադարս. և զառաքելականն երկրորդէր, տրտմութի է ինձ, և անպակաս ցաւք սրտի իմոյ վն եղբարց իմոց և ազգականաց, զի մի մնասցեն յանգիտութեան դպրութեան, և զարկ

'ի

'ի գրոց մխիթարութե̃ ։

Այս երբեմն աւուրս բազումս յայս միտս վարանէր, եթէ որպիսի արդեօք եւս իւրեանց զաւանիցէ, յարուցեալ այնուհետեւ 'ի հինգերորդ ամի վռամշապհոյ հայոց արքայի՝ միւսանգամ հասանէր առ Տր կթ̃ղկսն սահակ ։ Այս երբեմն ծանոյց նմա զիւր խորհուրդս, եգիտ զնա առաւել քան զինքն փափաքող այնմ, եւ պատրաստական 'ի նոյն փոյթ գովելի . եւ պէսպէս փորձս փորձեալ վ̃ն գիւտի գրոյ ըս̃ յարմարութե̃ հայկական հարուստ բարբառոյ՝ չգտանէին ինչ առ ժամն ըստ ըղձանաց իւրեանց . վ̃նյ եւ երկոքեանն հանդերձ ընդակից աշակերտելովք յաղօթս մեծամեծս կանխէին առ Ա̃ծ՝ վասն հասանելոյ խնդրոյ իւրեանց, զոր գիտէին լինել ամենայն ոգւոց պատճառ քնաբեր փրկութե̃ . եւ զայն առնէին աւուրս բազումս ։

Այս յորժամ ազդ արարին վասն որոցին իրաց նաեւ բարեպաշտ արքային հայոց վռամշապհոյ, յայնժամ պատմէր նմ̃ արքայն վ̃ն ուրումն ասորի եպ̃սի եկելոյ՝ դանիէլ կոչեցելոյ, թէ լուայ զնմանէ յիջանել իմնում 'ի միջագետս՝ եթէ ունի առ իւր նշանագիրս իմն ալփաբետաց հայերէն լեզուին, գտեալս ուստեք կմ̃ յարմարեալս ։ Զայս երբեմն լուեալ 'ի թագաւորէն, անյապաղ փափագմամբ յաժարեցին զարքայ՝ փոյթ առնել վ̃ն պիտոյիցն այնոցիկ . եւ նա առաքէր դեսպանութե̃ զայր ոմն յաւագաց վահրիճ անուն յազգէ խաղունեաց՝ հանդերձ հրովարտակաւ առ վահա-

կան

կան ամն հաբէլ երէց կոչեցեալ, որոյ աստա-
ցեալ էր յառաջագոյն ցվռամշապուհ ար-
քայ վն իրացս․ որ և մերձաւոր էր դանիէլի
եպսի՝ առ որում նշանագիրքն կային ։ Չայն
ժամ փութապս գնաց վանականն առ եպսն․
և անձամբ տեղեկացեալ ՚ի նմանէ զկարգ
նշանագրացն՝ առեալ ածէր ընդ վահրիճայ
յերկիրն հայոց․ և եդև ուրախութի մեծ
թագաւորին և սբ հայրապետին սահակայ
և երանելւոյն մաշտոցի ։

Ապա առեալ երանելի հոգաբարձուացս
զյանկարծագիւտ խնդրելին, խնդրէին ևս
յարքայէ մանկունս մատաղս՝ առ ՚ի դիւրաւ
ծաւալել զուսումն այս դանիէլեան նշանա-
գրաց ։ Եւ յորժամ բազումք ՚ի նոցանէ տե-
ղեկանային, ապա հրամանս տայր թգրն ամ
ուրեք նովին կրթել՝ Բ ընդ հանուր վերա-
կացութբ և վարժապետութբ երանելւոյն
մաշտոցայ, զոր յայսմ հետէ մեսրոպ անուա-
նեմք․ քանզի և ՚ի նմին ժամանակի ընկա-
լաւ զաստիճան վրդպութե ՚ի սբյն սահակայ
հայրապետէ, և ծանուցաւ մեծ րաբունն ամ
հայոց ։

Արդ իբրև ամս երկուս կարգեալ երանել-
ւոյն մեսրոպայ զվրդպութի իւր դանիէլեան
նշանագրովք, և նովիմբք վարեալ ՚ի դրա-
ւոր վերծանութիս և ՚ի քարոզութիս հայե-
րէն բարբառոյ, ՚ի վր եհաս տիրապէս՝ թէ
չէին բաւական նշանագիրքն այն ողջ և ան-
թերի բաղյօդել զվանկս և զկապս հայկա-
կան լեզուոյն․ մանաւանդ թէ և հետազօ-

և եդ 'ի դպրոցս յոյն և ասորի ուսմանց 'ի կողմանս միջագետաց ։

Այր յեդեսիա երևելի ճեմարան ուսման. երբև դիւան ամ̃ դպրութեանց յաւուրց անտի հեթանոսութեան . և 'ի ժամանակին յայնմ. էր իշխան և փարժապետ դիւանին՝ պղատոս ոմն ճարտասան հեթանոս՝ այր անուանի ։ Առ սա չոգաւ ամ̃ վ̃րդն մեսրոպ , և յայտնեաց զփափագ իւր . և նմ̃ խնդութ̃բ ընկալեալ զերանելին՝ փորձ փորձեաց վ̃ս գիւտի իւրացն . զի զոր ինչ միանգամ 'ի միտ առնոյր բան հայերէն՝ վերածեալ 'ի պէսպիսութ̃ն այլևայլ հնչմանց տառից , հնարէր ամփոփել 'ի կարգ ինչ աթուլթայից , և ըս այնմ նշանագիրս յարմարել . և շատ ջանացեալ և ոչ օգտեալ՝ տգիտութ̃ի խոստովանեաց հռետորն . զի չէին կամք նոյ մարդկեղէն ճարտարութ̃բ վճարիլ իրացն , այլ վերնատուր շնորհօք տալ կատարել զայն մեծին մեսրոպայ ։ Յայնժամ պատմեաց պղատոս մեսրոպայ , թէ գոյր իմ վ̃րդ մեծանուն՝ վերակացու դիւանիս յառաջ քան զիս՝ եպիփանոս անուն հեթանոս . որոյ առեալ յետոյ զճարտարացն գրեանս 'ի դիւանէս աստի եգնեալ՝ գնաց զկնի համբաւոյ մեծին եպիփանու կիպրացւոց եպս̃ի , և 'ի քրս̃ հաւատաց . և այժմ առանձնացեալ է յանապատս սարէք . զնա խնդրեալ գտցես . զի թերևս նա կարողասցի լնուլ զփափագդ քո ։

Զայս լուեալ մեսրոպայ՝ եկն անդրէն առ րաբէլոս եպս̃ եդեսիոյ . և սուրբ գագոյնս ան-

տեղեկացեալ մ՚ն այնր եպիփանիոսի իմաստասիրի և միայնակեցի՝ լուեալ, եթէ վախճանեալ է այն սակաւ ինչ աւուրբք յառաջ. միայն կայ առէ աշակերտ մի նորա հռուփանոս անուն քրիստոնեայ և եկեղեցական այր, հրաշալի արուեստիւ հելլէն գրչութե. որ նստի միայնացեալ 'ի սամոս, այս է 'ի քաղաքն սամոսատ: Աչինչ դանդաղեցաւ ոճն մերօրայ գնալ և անդր 'ի քաղաքն սամոստացւոց՝ քանի մի աշակերտօք. ուր և մեծապատուիւ մեծարեալ լինէր յեպիսկոպոսէն և յեկեղեցւոյն. և գտեալ զհռուփանոս, և յայսմ ևս անշահ մնացեալ, այնուհետև իսպառ անյոյս եղև 'ի մարդկային օգնականութե, և յամն միայն ապաստան արար զիւրսն, զամենակալն 'ի ձեռս առեալ զաղօթս և զարքնութիւն և զպաղատանս արտասուալից, զխստամբերութիւս, և զհոգս Յահեծս, յիշելով զասացեալն՝ եթէ յորժամ հեծեծեսցես, յայնժամ կեցցես:

Եւ այնպէս թագուցում աշխատութեանց համբերեալ մ՚ն բարւոյ ազգին և Յին, արժանի լինէր 'ի վերին շնորհաց ընդունել զխնդրելին՝ առաւել քան զոր խնդրէր և իմանայր. և պարգևեալ լինէր նմա վիճակ յամենաշնորհ հոգւոյն այ՝ հայրաբար ծնանել յիւրմէ ծննունդս նորոգ և սքանչելի, և ինքնին աջովն իւրով գծագրել նշանագիրս հայերէն լեզուին՝ դրոշմեալս աջով հզօրին 'ի սրտի նորուն 'ի ձեռն երկնաւոր տեսլեան. մինչև բաւական լինել այնուհետև ոչ միոյ ազգի,

այլ և

այլև այլոց անգիր լեզուաց գիր ստեղծանել ։

Բանզի մինչդեռ կայր յաւուր միում յաղօթս անդէն 'ի սամոս՝ խոնարհ աղերսիւք հեղլով զանձն իմն առաջի, տեսանէ՝ ոչ 'ի քուն երազ, և ոչ յարթնութեան տեսիլ, այլ 'ի սրտին գործարանի երևութացեալ հոգեղէն իմն թաթ ձեռին աջոյ գրելով 'ի վերայ վիմի, և իբր խորագոյնս դրոշմելով 'ի քարն՝ որպէս եթէ մատամբ ոք 'ի ձիւն կակուղ ներգործեսցէ զձևս տառից. և ոչ միայն երևութացաւ, այլև համագամանք ամենայն որպէս յաման
ինչ 'ի միտս նորին հաւաքեցաւ ։

Յայնժամ յարուցեալ յաղօթիցն՝ լի զուարթութեամբ և անպատմելի ուրախութեամբ՝ գոհացաւ զվերնատուողն ամենայն պարգևաց. և անդէն փաղփաղակի արդեամբ ստեղծանէր ըղնշանագիրս ամենայն տառս՝ նշանակելով զօրինակ տառիցն 'ի մագաղաթի, անուանելով և կարգեալ յօրինուածովք սիղոբայից և հեգենայից ։ Նա և երթեալ առ Հռոփանոս՝ ցուցանէր նմա, եթէ այսու օրինակաւ բովանդակին հնչմունք հայերէն բարբառոյ ընդ գրով. և գործակցութեամբ նորա և միաբան խորհրդով՝ 'ի կարգ դպրութեան և 'ի ձև վայելուչ յերիւրէր զամենայն, ուրոյն ուրոյն որոշելով զամենայն ընտրութիւն նշանագրացն, զնրբագոյնսն և զթանձրագոյնս, զկարճն և զերկայնն, զառանձինն և զկրկնաւորն, մեսրոպայ կերպաձևելով զգիրն առ ձեռն պատրաստ, և Հռոփանոսի ճարտար գրչութեամբ համաձևեալ,

փոխադրելով զհայերէն ածուծայսն ըստ շա-
րադասութէ յունական ալփաբետաց. յորմէ
և կանոն տառադարձութէ և լծորդատառից,
և ըստ հանգամանք քերականական և քեր-
թողական արուեստից:

Այս անդէն վաղվաղակի պատուէր յղէր Սբ վրդպն Մեսրոպ առ աշակերտս իւր՝ որ 'ի Մօտակայ քաղաքաց դպրոցս, փութանակի առ ինքն ժողովիլ. և ինքն ընդ ծարաւի ոգւով առ աղբիւր դիմեալ զովացուցիչ՝ իսկ և իսկ 'ի թարգմանութի ածաշունչ տառից ձեռնարկանէր հոգւովն Սբվ, հանդերձ երկու հասուն աշակերտօք իւրովք՝ որք առ նմա կային, յովհան եկեղեցացի, և յովսէփ պաղնացի. եդեն սկիզբն խորհրդաբար նախ յառակացն սողոմոնի՝ 'ի պէտս աշակերտեալ մանկանց ածային դպրութէ. որ 'ի սկզբանն իսկ ընծայեցուցանէ ամենեցուն ծանօթս իմաստութեն լինել. այս է, Ճանաչել զիմաստութի և զխրատ, իմանալ զբանս հանճարոյ, այլովքն հանդերձ. որ և գրեցաւ գեղեցիկ գրչութբ 'ի ձեռն հռուփանոսի ճարտար գրչի: Ձեռն էարկ անդէն սբն Մեսրոպ և 'ի թարգմանութի նոր կտակարանաց. որ կարևորագոյնն է քան զամ գիրս Սբս. միանգամայն և 'ի հրահանգել զաշակերտսն 'ի նոր դպրութի անդր հայերէն. քանզի և աւուրքն էին ձմերայնոյ՝ անյարմար 'ի ճանապարհորդել փութով 'ի հայս:

Այս եղև գիւտ գրոյն հայոց 'ի վախճան թըւականութեն քի 406. ընդ աւուր՝ յամսեանն

նոյ-

նոյեմբերի , որ օր իէ էր . այն ամ եօթնե-տասներորդ էր կթողիկոսութեան սրբոյն սահակայ , և հնգետասաներորդ ամ վռամշապհոյ հայ-ոց արքայի , յետ տասն ամաց իջանելոյ սրբոյն մեսրոպայ յանապատէ 'ի քարոզութիւն . որ և սքանչելի իմն խորհրդով եկաց զկնի այսո-րիկ ամս երեսուն և հինգ կամ երեսուն և վեց , մինչ թէ պարգևեալ նմա այ այլ ևս ամս ցկատարումն թուոյ տարւոյ շնորհելոցն 'ի վերուստ :

Արդ իբրև ժամ լինէր ուղղոյն յաջողութեան 'ի սկիզբն ամի տն 407 , եկն նախ շնորհա-զարդ սբ վրդպն մեսրոպ իւրովքն հանդերձ յայցելութիւն եպսաց , առ որս դիմեալ էր յառաջագոյն վս գիւտի իրացն . և առաջի արկեալ նց զնշանագիրս ածատուր՝ պատ-մեաց , եթէ այս է գործ աջոյն բարձրելոյ . և որք լուանն՝ փառս ետուն այ , և ուրախ եղեն յոյժ . և բազում պատուով արձակե-ցին զերանելին : Եւ այնպէս ը ամ տեղիս յաջողութբ և հոգելից ուրախութբ ճանա-պարհորդեալ՝ եկեալ հասանէր 'ի հայաստան և 'ի կողմանս այրարատեան գաւառին առ-սահմանօք նոր քաղաքին , այն է արքայա-նիստն և դահանիստն վաղարշապատ , ուր է սբ էջմիածինն :

Եւ իբրև ազդ լինէր բարեպաշտ թագաւո-րին հայոց վռամշապհոյ և սրյ հայրապետին սահակայ , առեալ նց զամ նախարարադունդ աւագանւոյն բազմութբ հանդերձ ուխտիւ եկեղեցւոյ և խուռն ամբոխիւ ժղվրդեան ,

պատահէին երանելոյն զափամբ ռահ գե-տոյն. և զցանկալի ողջոյնն միմեանց տր-ւեալ՝ ընդունէին զայրն այ զմեսրոպ երբև զերկրորդ մովսէս իջեալ 'ի լեռնէն այ աստուածատուր տախտակօք: Իսկ լուեալ զսքանչելիսն այ՝ որ եղեն առ նա, և տեսեալ զնշանա-գիրսն և զթարգմանութիւն գրեալ նորաս-տեղծ հայկական տառիւք 'ի հայրենի բար-բառ հայաստան երկրին, անպատում ուրա-խութբ զեղուին սիրտք նց. և այնպէս բար-բառօք ցնծութե և երգօք հոգևորօք և բար-ձրագոյն օրհնութբ 'ի քաղաքն դառնային. և զաւուրս տօնական ուրախութբ անցու-ցանէին:

Այնուհետև արքունի հրամանաւ ժողովե-ցան մանկունք, և բացան դպրոցք հայերէն դպրութե. և սկսաւ ծաղկիլ հայաստան երկիր իբրև զդրախտ այ ազգի ազգի անկօք դրա-ւորական իմաստութե: Իսկ թէ որպէս եղև թարգմանութի այծաշնչելին և այլ բազմապա-տիկ մատենից հարց մրց և արանց իմաստ-նոց 'ի ձեռն մրյն սահակայ պարթևի՝ գոր-ծակցութբ մրյն մեսրոպայ և աշակերտաց նց, ահա գրեալ է 'ի վարս մեծին սահակայ, բաց 'ի տօնէ թարգմանչաց:

Աստ զայն նշանակել արժան է, զի որով-հետև ծիսարան եկեղեցական պաշտամանց հաւաքեալ 'ի ձեռն աշակերտաց մրց թարգ-մանչաց՝ 'ի մրյն մեսրոպայ կարգաւորեցաւ և յօրինեցաւ, յանուն նորա և գիրքն այն Մաշտոց անուանեցաւ յաւուրց անտի նորա

մին

մինչև ցայժմ. թող զի և յայլ ա̃մ բարեկար-
գութիւս եկեղեցւոյ հայաստանեայց՝ որ ե-
դեն 'ի ձեռն սր̃բյն սահակայ, համաշխատակ
գործակից և աջակից էր սր̃բն մեսրոպայ. որ և
երկոքեան կրկին լուսաւորիչք ազգիս Ճա-
նաչին ։

Նաև իբրև լուան վիրք զա̃ծատուր շնորհս՝ որ
տուաւ մեծին մեսրոպայ ստեղծանել գիր
հայոց, առաքեցին և ինքեանք հրաւիրակս
առ երանելին՝ հանդերձ աղերսական գրով
մեծի իշխանին կամ արքային իւրեանց բա-
կուրայ, և եպ̃սապետին կմ̃ կաթողիկոսին մով-
սեսի, ընդ և զիւրեանց կարօտութի. քան-
զի և նոքա չունէին գիր առանձին, այլ յու-
նականաւ և այլ ևս օտար նշանագրօք վա-
րէին ։ Յայնժամ առեալ մեսրոպայ ը̃ իւր
թարգմանս զոմն ջաղայ անուն՝ քանի մի աշա-
կերտօք հանդերձ, գնաց 'ի վիրս. և արար
նց̃ նշանագիրս՝ ը̃ յատկութե̃ բնիկ բարբա-
ռոյ նց̃. այն գիր է՝ զոր վարեն եկեղեցա-
կան մատեանք վրաց մինչև ցայժմ. ուր սո-
վորական գրչութի ռամկաց ունի խտիր ոչ
սակաւ. ոմ̃ և որ 'ի մեզ երկաթագիրն ան-
ուանի՝ է հարազատ գիր մեսրոպեան. յոր-
մէ դիւրութի արագագրութե̃ դարուց 'ի
դարս ձևացոյց զբոլոր գիրն, և զկնի զնօտ-
րագիրն իբր նօտարագիր ։

Իսկ նմին օրինակի յետ ամաց ինչ գնաց սր̃բն
մեսրոպ և յաղուանս, աղաչեցեալ յարսվա-
ղենայ արքայէ նոցա և յերեմիայ եպ̃սապե-
տէն. և ստեղծ և նոցա նշանագիրս առան-
ձինն.

ծինն. և նովին գրով արար երեմիա կթղկսն աղօթանաց զթարգմանութիւն ամենայնի՝ ի բարբառ աղօթանաց։ Այլ այսմ երեցունց միանգամայն սահմանակից ազգաց՝ մեծաց բարեաց, որ անմոռաց յիշատակաց արժանի, դպրութե ասեմ պատճառ եղև ամլ որք մինչայն մեսրոպ։ Որ և զսովորականն ՚ի կիր արկեալ զքարոզութիւն աւետարանականն՝ զամն աւուրս կենաց իւրոց պարապէր յուսուցանել և ՚ի խրատել զամենեսին բանիւք և գրով և օրինակաւ իւրով։

Քանզի այսմ բաժանեցին ՚ի մէջ իւրեանց երկոքին ամոլք հաւատոյ զհոգս եկեղեցեաց. զի սրբն սահակ հայրապետն զարարատեան ծին հայոց և զերևելի վիճակաց զհոգևոր խնամս ունիցի. և որք մինչայն մեսրոպ հանդերձ առաքինի մշակօք զբանն կենաց սերմանեացէ առաքելական քարոզութ. մանաւանդ ուր ուրեք կային ՚ի ծագս հայոց ծին մնացուածք հեթանոսութե կամ բարբարոսական աղանդոց, տարածելով և ըզթարգմանութի գրոց սրց, առաւել զնոր կտակարանին։ Այլ նախ երթեալ իջանէր մեսրոպ ՚ի գողթն գաւառ՝ յառաջին ղաստակերտն իւր, ուր զառաջինն քարոզեաց ըզբանն կենաց. և անդ ընդելական սովորութ ՚ի կիր արկեալ զվճպութին՝ լի առնէր զգաւառն ողջունիւ աւետարանին քրի. և կարգէր յամ գիւղս գաւառին զասս [illegible]ականաց, և յիւրոց անտի վերակացուս ՚ի վերայ նց։

Մ.Ն

Ընտիր 'ի սահմանակից գաւառն սիւնեաց եղեալ՝ ուր կայրն վայրենազգոյն բնակիչք 'ի տեղիս տեղիս, ժողովէր մանկունս առ 'ի նիւթ վրդպութեն. և այնչափ փոյթ 'ի նոցա վ̃ր ցուցանէր՝ դայեկաբար սնուցանելով և խրատելով, մինչև 'ի նոցունց իսկ 'ի վայրենեացն ընտրեցան անձինք արժանաւորք յեպիսկոպոսութի. զի շնորհք հոգւոյն բղխեալ 'ի բերանոյ հոգելից վրդպին Մեսրոպայ՝ յայր այլ շրջէր զաշակերտեալսն. և զերկիրն սիւնեաց դասուք վանականաց լնոյր ։ Զնոյն արար երանելին և 'ի մերձակայ սահմանս վրաց աշ̃ին. յորում Մլիձակի եպս կարգեցաւ և սքանչելին կորիւն՝ մին յաշակերտաց ն̃րին Մեսրոպայ՝ պատմօղ բանիցս ։

Իսկ ապա դարձ արարեալ Մեսրոպայ յայրարատ, և պատահեալ սահակայ հայրապետին՝ պատմէր նմա զեղելոցն ողջոյն, փառաւոր առնելով զմեծ և զհզօր անունն ք̃րի ա̃յ մերոյ ։ Իսկ դարձեալ ելանէր շրջէր համգոյն պօղոսի յայցելութի աշակերտելոցն ը̃ն աշ̃ն հայոց, զուարթացուցանել՝ նորոգել և հաստատել. և յորժամ այնպէս ը̃ն ա̃մ տեղիս լի առնէր զ̃ոբ աւետարանն ա̃ն, և ամենեցուն առաջի առնէր 'ի հայ բարբառ և 'ի գիր զպատգամս ա̃ն, և խելամտեցուցանէր զկենաց ճանապարհն վարելոյ, զայր այնուհետև խորհուրդ 'ի մէջ առնոյր ը̃ն հայրապետին սահակայ վ̃ն կէս ազգին հայոց, որ էր ը̃ն իշխանութ̃բ թագաւորին հոռոմոց. քանզի և ն̃բն սահակ 'ի բաժինն անդր յու-

նաց

նաց չուեաց առ ժամանակ մի վն խռովութ-
եանն՝ որ 'ի բաժնին պարսից : Այլ զի բնա-
կիչք յունական բաժնին անկեալ էին ընդ-
առաջնորդութբ յոյն եպիսկոպոսին կեսարիոյ
կապադովկացւոց , վերակացուք յունաց չե-
տուն զարժանաւոր պատիւ նոյն սահակայ .
և ոչ յօժարէին թողուլ զնորին մեսրոպ ուսու-
ցանել հայոց եղելոց յայնմ բաժնի զհայե-
րէն դպրութի .

Յայնժամ առաքեաց նոյն սահակ զմեսրոպ
վրդպ և զվարդան զօրավար 'ի կոստանդնու-
պօլիս հանդերձ թղթովք առ կայսրն թէո-
դոս փոքր , և առ ատտիկոս պատրիարգ քա-
ղաքին : Այլ նոքա բազում մեծարանօք ընկա-
լեալ զնոր վրդպն մեսրոպ՝ զորոյ զհամբաւն
լուեալ իսկ էին , կատարեցին զամ խնդիր
նր և զնոյն սահակայ , հրաման տալով հով-
ուել և համարձակ ուսուցանել ը ամ տե-
ղիս հայոց՝ որ 'ի բաժնին յունաց . և ել հրա-
ման 'ի կայսերէ վայելուչ մեծարանօք կո-
չել զնորին մեսրոպ ակումիտ , այն է ըն յունաց
ազնիմիդիս . որ թարգմանի աննինջ կամ տրք-
նօղ կամ անհանգիստ . զի զայս անուն տային
երեւելի վրդպաց անձանձիր պարապելոց 'ի
քարոզութի բանին , ոչ և հսկօղ միանձանց .
որքի էին բնակեալքն 'ի վանս անհանգստից ,
յորոց ելին այրք երեւելիք իմաստութբ և սր-
բութբ : Մեսրոպ և զվարդան կարգեաց կայսրն
ստրատելատ , այս է սպարապետ զօրաց նաև
յիւրում բաժնի , հրաման տալով շինել և
քաղաք նոր 'ի գաւառին կարնոյ , որ կոչե-
ցաւ

ցաւ Թէոդուպօլիս . այն է արզրում ։
Իսկ ատտիկոս պատրիարք կոչեաց զՄեսրոպ՝ եկղեսիաստիկոս . որ էր անուն պատուոյ 'ի նշանակ կատարելութե յեկեղեցական ուսման, և յայտ առնէր զգանձիքուն վէպ ժողովօղ բանից և քարոզ օրինաց ։ Այլ յայսր ամի վէ՞ մեղադիր եղև սիրով, թէ ընդէ՞ր այնչափ աշխատ եղեր շրջիլ յաստորիս առ 'ի գիւտ գրոց, և ոչ եկիր առ մեզ 'ի կոստանդինուպօլիս՝ ուր ծաղկեալն էր բերանն ոսկի ՚որն յովհան . և նա անձամբ և կամ 'ի ձեռն այլոց 'ի յունաց աստի կարօղ էր լնուլ զփափաք քո . բայց ուրախ եմք առէն, զի ամ խնքնին լցեր է զկարօտուն ձեր ։ Օ այսպիսի բանս գրեաց ատտիկոս և 'ի թուղթն առ սհն սահակ . և յաւել յորդորել զնա՝ ոտք և զՄեսրոպ, զի փոյթ տարցին՝ եթէ եկեղեցական իշխանութե՞ և եթէ Յակոբ սաստի՜ ուղղել զազգն բարբարոսաց, որ էին անաշխիք ոմանք աղանդաւորք սփռեալք յանծանօթ վայրս փոքուն հայոց 'ի բաժնին յունաց ։

Արդ յետ կալոյ ՚որյն մեսրոպայ հանդերձ վարդանաւ 'ի Թ̄քրական քաղաքի զժամանակ ինչ բազում պատուով և արքունի դարմանովք, ապա յետ պասեքին ելին անտի արքունատուր կառօք և բազում շքով . և եկեալ յԾն հայոց՝ որ 'ի բաժնին յունաց, 'ի գլուխ տարան զա՞մ գործ՝ ըստ կարգելոյ կայսերն իւրով հրովարտակաւ առ անտիոքոս ստրատեղատ արևելից ։ Ժողովեցին և

մանկ

մանկունս հայոց 'ի բաժնել անուռ յունաց, և եդին 'ի դպրոցս․ յորոց մի՛ն կարգեաց ո՟րն մեծարոյ զգլխաւորս յաշակերտաց իւրոց․ և ինքն երանելին զսովորական վ՟րդպուն 'ի կիր արկեալ՝ քաղցրացուցանէր 'ի լսելիս ժողովելոցն ։ Ապա յետ այնորիկ ձեռն արկանէր քննել և զգժպատեհ և զկամակոր բարբարիանոս աղանդն․ և իբրև ոչինչ գտանէր հնարս յուղղուն ածելոյ, յձակսն ատենի ձեռս տայր․ և յոչ նուաձիլն նց՝ յձէն գլխովին 'ի բաց հանէր խարանօք դրոշմեալս․ զի ա՟մ ուրեք ծանիցի պատուհասութեանց, և մի՛ ոք յարեացի 'ի նս ։

Եւ ինքն ը՟ ս՟րբյն սահակայ 'ի վ՟րդպուն սեպհական հօտին զառնայր․ և բազում շնորհագիր մատեանս զհարցն եկեղեցւոյ ստացեալ՝ ծովացուցանէր զվ՟րդպութեն խօսուն, և լցեալ զերկիր ա՟մ բարուէք․ և անձանձրոյթ շրջեալ զա՟մ աշակերտօքն՝ պատուիրէր կալ 'ի ճշմարտութե, և որ քան զոր յառաջադէմ լինել 'ի բարիս կարգօք ա՟ծպաշտութե և ուսմամբ ա՟ծխմաստ դիտութե․ և անդրէն դառնայր յայրարատ, ուր եկեալ էր և ս՟րբն սահակ 'ի բաժնելէն յունաց ։

Ապա յետ դարձեալ այնպիսի սաստուել և բարձրագոյն վարդապետութեն (ասէ կորիւն՝ հանգոյն առաքելոցն ազաթանգեղոսի զմայլ լուսաւորչէն), * Սկսեալ երանելոյն
,, մաշթոցի ճառս յաճախագոյնս, դիւրա-
,, պատումս, շնորհագիրս, բազմադիմս, 'ի
,, լուսաւորութէ և 'ի հիւթոյ գրոց մար-
,, գա-

,, գաղղիականաց՝ կարգել և յօրինել, ըստ նմ
,, Ճաշակօք աւետարանական հաւատոցն
,, Ճշմարտութե. յորս քրմ նմանութիւն և օրէ-
,, նակս 'ի յանցաւորացս աստի՝ առաւել մն
,, յարութենական յուսոյն առ 'ի հանդեր-
,, ձեալն՝ յերկիւղէ կազմեալ. զի հեշտըն-
,, կալք և դիւրահասոյցք տխմարագունիցն
,, և մարմնական իրք զգալեացն լինիցին,
,, առ 'ի սթափել և զարթուցանել, և հաս-
,, տահիմն առ 'ի խոստացեալ աւետիսն քա-
,, ջալերել::

Այլ եղև յետ աւարտմանց նորին սահմանաց 'ի
տարւոյս 'ի պատճառս արտաշրի մերձին Թա-
գաւորին հայոց արշակունեաց, յորում ժա-
մանակի նորն մեսրոպ էր՝ որ ընդ յանձին
զփխանորդութի քաջ հովուին, յորժամ
դարձաւ յաթոռ իւր մեծն սահակ, և վախ-
ճանեցաւ 'ի խոր ծերութե յամի տն 440, կա-
լաւ զաթոռ նր տեղապահութե նա ինքն
նորին մեսրոպ, որ և յայնժամ ալեւորեալ իսկ
էր: Այլ զի առանձինն մնաց երանելին՝ քա-
ժանեալ 'ի համաշունչ ընտրելակցէ իւրմէ,
'ի սուգ անհնարին պաշարեալ լինէր. և Թէ-
պէտև միայնաւորութեն արտմութի ոչ տայր
նմա ըմբերթանալ, սակայն զաւետարանա-
կան ընթացն և զվերակացութի նոյ եկե-
ղեցւոյ շնորհօքն այ առանց պակասութե տա-
նէր: Այլ հայեցեալ 'ի վիճակ ազգին՝ յորմէ
բարձաւ սոյնուհետև Թագաւորութի արշա-
կունեաց, և սպառնացաւ քահանայական
զարմ 'ի ցեղէ նորա լուսաւորչին, զնմ փոյթ
'ի

'ի մէջ առնոյր՝ զի մի՛ վարատեսցի հօտն քնի 'ի գայլոց ապականչաց. խնամէր անտեսէր հայրաբար զամենեսին, և հոգեւոր բանիւք յորդորէր 'ի լաւ անդր. մերձաւորաց առ ինքն եղելոց զհոգևոր եռանդն զեղոյր, և առ հեռաւորս ընդ մ թուղթս խրատագիրս և զգացուցիչս առաքէր ը͞ ա͞մ գաւառս :

Նա զցայգ և զցերեկ պահօք և աղօթիւք և ուժգին խնդրուածովք կանխէր առ ած. և զոր յուշ առնէր ամենեցուն իբր բարձրագոյն բարբառով զածադիր պատուիրանացն հրամանս, յանձն իւր առնէր առաւելապէս զդժուարագոյն վարուց կրթութիւն՝ խաչակրօն մեռելութբ իբրև կենդանի նահատակ քնի : Նա զօր ամ զմնաւ ածեալ զօր վախճանին անյագ փափաքմամբ առ անձկալին իւր քն՝ չտայր քուն աչաց, և ոչ նիրհ արտեւանաց, մինչև 'ի հասանել 'ի հանգիստ ան : Նա աhա յետ ամսոց վեցից անցելոց զկնի վախճանելոյ երանելւոյն սահակայ, յորժամ էր սբ վրդպն մեսրոպ 'ի հայրապետանոցի կմ 'ի մերձակայ ապարանս ուրեք 'ի վաղարշապատ քաղաքի՝ նովին հոգեկրօն վարուք, հասանէր սբյն քնակոչ կատարուածին՝ յետ սակաւ ինչ աւուրց հիւանդութեան, յերեքտասաներորդում ամսեանն մեհեկանի, յամի տն 441. այն է 'ի ժդ փետրվարի՝ ը͞ համեմատութե տարւոյն այնորիկ. կմ ըստ յայսմաւուրաց՝ որ հայր 'ի համեմատութի աւուրց թարգմանութե՝ 'ի ժթ. փետրվարի :

Սմլ յորժամ հանդերձեալ էր փոխիլ երա-

 նե-

նեղլին, թէպէտև չէին առ նմա յոլովք 'ի կրտսեր աշակերտաց՝ որք առաքեցանն յուսումն 'ի հեռաւոր դպրոցս և յաթէնս, բայց առաջիկայ գտան երիցագոյն աշակերտք ձեռնասունք, յորս երևելի էին սբն յովսէփ և սբն թաթիկ, հանդերձ այլ ևս բազմութե աւագաց։

Արդ իբրև յանձին զգաց այրն այ սբն մեսրոպ, եթէ հասեալ է կէտ կոչման իւրոյ՝ որոշիլ յիւրոցն և խառնիլ 'ի գունդն քրէ, թևթևացեալ և սթափեալ 'ի ցաւոցն՝ կանգնեալ նստաւ 'ի ժողովոյն միջի. և բացեալ զձեռսն հանապազատարած յերկինս՝ յանձն արար շնորհացն այ զամ մնացեալսն, հայցելով վն նոցա օգնականութիւն 'ի տնէ։ Այլ մինչդեռ ձեռք նորա ը երկինս կարկառեալ էին, տեսիլ աքանչելի խաչանման լուսաւոր շողաւոր ձևացեալ երևէր 'ի վր ապարանիցն, յորում էր երանելին. և այն այնպէս յայտնի և ակներև, մինչև ամ ուրուք ինքնատես եղեալ, և ոչ առ 'ի յընկերէ պատմեալ, խուռն դիմեալ գային 'ի տեղի անդր։ Այլ յայնմ վայրի զվերջին ողջոյն տուեալ նորա ժողովելոցն առ նա, և զսէր և զմիաբանութի իբրև կտակ անյեղլի աւանդեալ նց, աւարտեաց զբանս իւր յօրհնութի՝ օրհնութե պսակելով զմերձաւորս և զհեռաւորս. և այնպէս զհանձնականն աղօթս 'ի քս հաստուցեալ՝ նոյնժամայն աւանդեաց զհոգին իւր սբ 'ի ձեռս փրկչին։

Յայնժամ եղև սուգ և ողբումն մեծ ամենե-

ցուն վն որբանալոյն 'ի հաստատակաց հօրէն , զոր ունէինք ըհատ ճանաչէլին 'ի լուսաւորչէն հոգւոց ։ Այլ առ անձուկ սիրոյն՝ սաստիկ վէճ յարուցանէին վն ժառանգորդ լինելոյ պատուական նշխարաց նորին ։ Եւ նախ բնակիչք վաղարշապատու չկամեցեալ հանել զանգին զայն գանձ 'ի ձեռաց՝ անդէն յէջմիածինն 'ի հանգիստ ոսցն ամփոփել կամէին ։ այլք 'ի համատոհմից եւ 'ի գաւառակցաց ասէին տանել 'ի բնիկ գաւառ իւր 'ի տարօն ։ Եւ կէսք յաշակերտելոց վրդպութէ նր ասէին թաղել 'ի գողթն գաւառ՝ իբրեւ յառաջին դաստակերտ քարոզութե իւրոյ , 'ի վանսն՝ որ շինեալ էր անդ 'ի նմանէ ։ որ եւ ըս յայսմաւուրաց մատրեվանք կոչի , այս է մեծոփա-

պայ վանք ։

Իսկ յաղթեաց ամենեցուն վահան ամատունի՝ մեծ հազարապետ հայոց Յին , եւ առեալ տարաւ 'ի գիւղն իւր ոշական ( իբր երեք ժամու հեռի յէջմիածնէ ) , միաբանութբ երանելւոյն հմայեկայ մամիկոնենի եղբօր սբյն վարդանայ , հանդերձ Յագումար բազմութբ եկեղեցականաց եւ Յականաց , սաղմոսիւք եւ օրհնութբ եւ հոգեւոր ցնծութբք , կանթեղօք վառելովք եւ ջահիւք բորբոքելովք , եւ սմ լուսաճաճանչ զարդուք յերկրէ եւ յերկնէ ։ քանզի եւ երկնային նշանն լուսաւոր խաչաձեւ յառաջախաղաց լինէր ընդ սմ ճանապարհն 'ի վերայ դագաղացն ։ Այլ իբրեւ հասին յաւանն ոշական , եւ անդ 'ի վկայարանն ոսց ամփոփեալ զպատուական մարմին

մեն աւուր մ՟յ՝ կատարեցին զօրինաւոր յիշատակն, ապա և նշանն աներևոյթ լինէր. և այր իւրաքանչիւր 'ի տեղիս իւրեանց դառնային: Իսկ զի այսպիսի երևելի նշան եղև յա՟յ 'ի նշանակ սրբութե՟ երանելւոյն Մեսրոպայ՝ ճշմարիտ վ՟դպի ճշմարտութե՟, բազումք յանհաւատից տեսօղ լեալ սքանչելեացն՝ դարձան 'ի ք՟ս հաւատս, և մկրտեցան 'ի քահանայից հայոց:

Իսկ յետ երից ամաց անցելոց յաջողեցաւ վահանայ ամատունւոյ ք՟աւէր իշխանի խորան սքանչելի կանգնել 'ի վկայարանի անդ. տաշածոյ վիմօք քանդակելով, և 'ի ներքսագոյն խորանին զհանգիստ ս՟րյն յօրինել. ուր և այսօր վայելչուչս՝ գունագոյնս՝ պայծառատեսիլս՝ ոսկւով և արծաթով և ակամբք պատուականօք 'ի յիշատակարան սեղանոյն կենդանարար մարմնոյ և արեանն ք՟ի պատրաստեաց. և ՟մմ պանծալի զարդուք շքեղացոյց զայն վկայարան՝ հանդերձ բազմութ՟ նշխարաց խաչակրօն ս՟բ վկայից ք՟ի. յորոց միջի հանգչէր պատուական մարմին ս՟րյն Մեսրոպայ, որ և Մաշդոց: Որոյ և դժնենասուն [illegible]կերան զերանելին թաթիկ կարդէր 'ի [illegible]ացութե՟ տեղւոյն. այն որ յետոյ եղե[illegible] քանենոյ, և ապա վկայական մահուամբ կատարեցաւ յաւուրս ս՟րց ղևոնդեանց. ով և ս՟րյն յովսէփ 'ի վայոց ձորոյ՝ որ զաթոռ հայրապետութե՟ կալաւ, նահատակեցաւ ընդ ղևոնդեանց. և 'ի խնդրոյ և 'ի հրամանէ նորին ս՟րյն յովսէփայ գրեաց սքան-

չելին կորիւն զվարս սրբոյն Մեսրոպայ ․ յորմէ
և մեք առաք՝ համեմատութ. բանից երանել-
ւոյն Մովսեսի խորենացւոյ ․ որ վր յաթենս
գոլոյն՝ ի ժամանակին՝ չեղև առաջիկայ փոխ-
ման երկոցունց հրեշտակատիպ հարց և վար-
դապետաց իւրոց ․ վր և ողբս ցաւագինս
եառ ՚ի վր գերեզմանաց նց, և նոյնօրինակ
ողբովք կնքեաց զգիրս պատմութե իւրոյ ․
այլ արժան է լսել զոր ասէն յղբս սբյն Մես-
րոպայ ․ ( Գիրք ․ Գ ․ Գլ ․ 67 ․ )
* Գերազանցեալ քան զամ որք զայնու ժա-
,, մանակաւ էին առաքինիք ․ քանզի ամբար-
,, տաւանութի և մարդահաճութի ՚ի նոցա
,, վարս տեղի գտանել երբեք ոչ կարացին ․
,, այլ՝ բարեխորհուրդ, հեզ և լաւակամ
,, գոլով, և երկնայնոցն զարդարեալ սովո-
,, րութբ՝ զինքն բոլորիցն ցուցանէր ։ Որ
,, գոյր տեսլեամբ հրեշտակական, միտք
,, ծննդական, բանիւք պայծառ, գործովք
,, ժուժկալ, մարմնով արտափայլեալ, սուրբ
,, ոգւք անճառ, խորհրդակցութ մեծ, հաւա-
,, տով ուղիղ, յուսով համբերող, սիրով ան-
,, կեղծաւոր, ուսուցանելով անձանձրոյթ ‖ ։
Որում լիցի և մեզ կցորդ լինել՝ ոչ աշակեր-
տութ յուսմունս ճշմարտութե, նոյնպէս
և նմանութ առաքինափայլ վարուց ․ զի
և երջանիկ մասին նր հաղորդս լինել արժա-
նասցուք ընդ նս ամ յանանց ուրախութիս ՚ի
քս յս ՚ի տր մեր ։

Վ.Ե.Ր.Ջ.



# ՎԱՐՔ ՍՐԲՈՑ

## ՎԱՐԴԱՊԵՏԱՑ ՄԵՐՈՑ

### Եղիշէի, Մովսէսի քերթողի, և Դաւթի անյաղթ փիլիսոփայի ։

Յ· փետր · 27 · և սեպտ · 17 ։ Տօնապատճառ, յիշատակարանք, և պարծանք հայոց ։

ԳԵՂԵՑԻԿ ԽՈՐՀՐԴՈՎ է մեծի րաբունապետի տանն Թորգոմեան ազգին մեսրոպայ տօնախմբի և յիշատակ երից րաբունեացս գլխաւոր աշակերտաց նորին, որք փայլեցին առաքինի սրբութեամբ և ծծիմաստ գիտութեամբ, և եղեն լուսաւոր վիճակք եկեղեցւոյ Հայաստանեայց ։ Զի թէպէտև բազում եղեն աշակերտք որոց թարգմանչաց սահակայ և մեսրոպայ, և ինքեանք իսկ թարգմանիչք անուանեցան իբրև գործակիցք վարդապետաց իւրեանց, այլ երեքին սրբոց նշանաւորք եղեն առաւել գրով և բանիւ և օրինակաւ, և անմահ յիշատակ թողին յաշխարհի, անեալք 'ի տղայ տիոց առ ոտս հոգեկիրթ վարժողաց 'ի վարս կատարեալ առաքինութեամբ,

թէ, և լցեալք հոգւով իմաստութե և հանճարոյ, կատարեալք յարտաքին և յածային դպրութիւն, և 'ի հմտութիւն արևելեան և արևմտեան լեզուաց, և 'ի հրահանգս աթենական ուսմանց և փիլիսոփայական և ածաբանական իմաստից. լցին զպակասութե հարց իւրեանց, և յաւելին թարգմանութիւն յոլովս 'ի բանից նախնի վրդպաց և մեծանուն իմաստասիրաց. և ինքեանք ևս յանձախութե յօրինեցին ճառս և մեկնութիւն, և ազգի ազգի մատեանս և պիտանութիւն բանասիրականս, քերթողականս, վիպասանականս, խրատականս և կանոնականս։ Ի լիակատար պատմութե վարուց երից երանելեացս առաւել փափաքօղ գտանիմք՝ քան ստացօղ. այլ որ ինչ աւանդին տեղեկութիւնք կայցեն զմիոյ միոյ, տեսցուք փոքր 'ի շատէ։

Մե̃ հայրն մեր և վրդպն եղիշէ՝ որ և եղիշա ճգնաւորն, ասի լինել դպրապետ նորին վարդանայ հայոց սպարապետի. և ոմ̃ կարծի՝ մերձաւոր իսկ նր̃ սր̃ մարտիրոսի 'ի տանէ մամիկոնեանց. որ և անձամբ աւաջիկայ գտեալ անցից անցելոց ընդ ազգն հայոց առ ժամանակօք նահատակութե նոցին վարդանանց զօրավարաց և նոցին ղևոնդեանց քահանայից, գեղեցիկ ոճանագրեաց զլիակատար պատմութիւնս, 'ի խնդրոյ պատուական երիցու դաւթի մամիկոնէնի, այն՝ որ գտաւ 'ի ժողովն արտաշատու. և հաւանական իսկ է՝ թէ և նա ինքն նոյն եղիշէ է այն, զոր 'ի նմին

ժո

ժողովն յիշատակէ նոքնին երանելին ընդ անուամբս՝ եղիշա եպս ամատունեաց. ոչ և այլք յընտրելոց աշակերտաց բազում մասամբ եղեն եպսունք և կաթողիկոսունք ժամանակին ։

Ս եպիսկոպոսական աստիճան սորին եղիշէի յայտ առնեն և կանոնադրութիւք նր խրատականք, որք գտանին 'ի կանոնագիրս. ըս որում և յայսմաւուրք երկրորդեն զնմանէ, թէ արար գիրս կանոնականս համեղ և ախորժ բանիւք ։ Արար երանելիս և զմեկնութի տրարածոցն գրոց լուսաւոր և պարզ բանիւք. ոչ և զգրոցն յեսուայ և զդատաւորաց, գուցէ և զայլոց. նոյնպէս և զմեկնութի հայրմերին հօգելից իմաստիւք, և ձառս ընտիրս վս ողորմութե, և վս չարչարանաց քսի և թաղման և յարութե. և զքանչելի խրատ միանձանց ։ Յորս զոյգ ընդ հօգեկիր հանձարոյ և ձարտար կարգաբանութե փայլէ և հարազատ հայկաբանութիւն անխառն 'ի հելլենախօսութէ ։

Նաև ըս գեղեցիկ քաղաքավարութե էր իբրև զուարթուն 'ի մարմնի, մեռեալ աշխարհի և որոց յաշխարհի ։ Առժամանակ մի կրօնաւորեալ բնակեցաւ սրբն եղիշէ յառանձնութե մեծաւ ձըգնութբ 'ի վանս և յանապատս. և առ ժամանակ մի հարկեալ 'ի սիրոյ՝ օգնական եղև ժողովրդեանն տն այցելութբ և վրդպական քարոզութբ ։ Նա և ապա միւսանգամ զամայութիւն խնդրեաց՝ բնակեալ 'ի լերինս և 'ի յայրս. և անտես 'ի մարդկանէ լեալ՝ խստա

Ճարակ լինէր 'ի լերինս մոկաց , և վայրի բանջարօք շատանայր . մինչև յետ ժամանակաց գտեալ զնա հովուաց ոմանց յայրի միում նքողեալ և ճնշեալ 'ի խստակրօն վարուցն՝ համբաւեցին զերանելին և զտեղի ճգնութե̃ նորա ։

Իսկ ս̃րն եղիշէ խոյս տուեալ անտի՝ եկն նստաւ 'ի հանդարտութե̃ 'ի գաւառն ռշտունեաց նովին անձաւամուտ և միակեցական վարուք առանձնութե̃ 'ի փապարս լերանց . ուր և ա̃ծամերձ ընտանութե̃ վախճանեալ փոխի 'ի ք̃ս ։ Նու յետ բազում աւուրց եկեալ ոմանց 'ի տեղին՝ գտին անապականն զմարմին ն̃րյն ո̃պ 'ի քուն , և զարմացան . և հարցափորձիւ 'ի վ̃ր հասեալ տեղեկացան և ծանեան զնա , որ ս̃րն եղիշէ ճգնազգեացն է՝ գտեալն երբեմն 'ի հովուաց 'ի գաւառն մոկաց . և շինեցին յանուն նորա եկեղեցի , և փոխեցին անդ զն̃րն 'ի հանգիստ ։ Իսկ իշխանն մոկաց եկն յետոյ , և եհառ զգլուխ ն̃րյն և զաջն . և տարեալ եդ յառաջին խուղն, շինեալ 'ի վ̃ր ն̃ր վայելուչ եկեղեցի . և այնպէս յերկոսին ճգնարանս , ուր երանելին փառաւորեաց զա̃ծ 'ի միայնութե̃ , փառաւորեաց և զնա ա̃ծ բզ̃մ նշանօք՝ զոր առնէր 'ի ձեռն պատուական նշխարաց ն̃ր ։

Րռաւեալ պայծառ ցուցաւ 'ի նմին ժամանակի հանդիսիւ քաջափայլ առաքինութե̃ և կատարեալ իմաստութե̃ այրն ա̃յ ս̃րն մովսէս խորենացի , մականուանեալն քերթող կամ քերթողահայր , այս է բանահիւս և

գլուխ

գլուխ բանաստեղծից ․ Զի ՚ի գրաւորական մասին զկնի վրդպաց իւրոց սահակայ և Մեսրոպայ մի միայն գտաւ սա , Թէպէտև հեղղենաբանութ̃ի ուրեք ուրեք մթնացեալ , այլ և ՚ի հայկաբանութ̃են ոչ վերջացեալ ․ Նոյնպէս և որ քաղաքավարութ̃ի և հոգևոր վ̃դպութ̃ի սքանչելի ։

Այս էր ինքն հայրենեօք ՚ի խորնի աւանէ տարօնոյ , վ̃յ և մովսէս տարօնեցի և խորենացի կոչի անխտիր , գաւառակից և առհմակից գլխովին համարեալ սբ̃յն մեսրոպայ , և առաւել ընտանի ձեռնասուն ՚ի մէջ աշակերտաց զկնի գիւտոյ հայերէն գրոց , և մի ՚ի գլխաւորաց առաքելոց յաթենական ուսմունս ։ Սա և շրջեալ ը̃ ամն յունաց և հռովմայեցւոց մինչև ՚ի մեծն հռովմ , ուր և ՚ի բիւզանդիոն , ՚ի պաղեստին և յասորիս դեգերեալ , զա̃մ հմտութ̃ի յանձին ժողովեաց , և ա̃մ հնութ̃եց եղև քաջ խելամուտ ․ զօրաւոր դրչաւ և հզօր բանիւ̂ ․ և որբակրօն վարուք փայլեալ՝ յոքունց գերազանց ։ Որոյ զարմանաւոր գովութ̃ի սուղ բանիւ̂ տիրապէս նշանակեաց սահակ արծրունի երևելի իշխան հայոց ՚ի վասպուրական , կոչելով զնա ՚ի թղթի իւրում" որ առ նա ․ * Հրեշտակ և սպասաւոր մեծութ̃եցն քո՝ յերկրի երկնայինդ ցուցեալ այր երկնակենցաղ , և լուսաւորիչ խաւարելոցս ․ ․ ․ ․ որ տռ̂արդ մեզ երկրորդ սահակ և մեսրոպ յետ գնալոյ նց̃ առ ա̃մ ‖ , այլովքն հանդերձ ։

Այս զի այսպիսի ոք էր ծանուցեալ առ ամե-

նե-

նեսին, և անմարթ էր թաքչել տան՝ որ 'ի մէջ լերանց Հայոց, կամ դնիլ ճրագի ընդ գըրուանաւ, եդաւ 'ի մէջ աշտանակի եկեղեցւոյ 'ի լուսատու լինել դիտապետութեամբ. քանզի յետ վախճանի երջանիկ աշակերտակցին իւրոյ եզնըկայ կողբացւոյ՝ որ մին էր յառաջին թարգմանչացն, կարգեցաւ յաթոռ նորա յեպիսկոպոսութիւն բագրեւանդայ և արշարունեաց, այն է երկիրն կամսարականաց. և հովուեաց հօտի իւրում մեծ արթնութեամբ և իմաստութեամբ ընդ ժամանակս երկայնս, անխոնջ վաստակեալ 'ի հոգևոր երկասիրութիւնս բանիւ և գրով մինչև ցխորին ծերութիւն և ցալիս հնութեան. որ և բազմօք յառաջ քան զվախճան իւր՝ առէ զանձնէ լինել այր ծեր և պարապեալ 'ի թարգմանութիւնս. իսկ ընդ վկայելոյ թովմայի արծրունւոյ՝ ամի կեցեալ զամս հարիւր և քսան, իբրև ընդ չափու հասակի վարդապետին իւրոյ սրբոյն սահակայ պարթևի:

Արդ 'ի բիւրապատիկ դրաւոր վաստակոց երանելւոյն մնացին մինչև ցարդ քանի մի յիշատակք նորա. որ Պատմագրութիւն հայկազեան տոհմիս 'ի սկզբանէ մինչև ցաւուրս իւր, 'ի խնդրոյ երանելւոյն սահակայ ասպետի բագրատունւոյ, այն՝ որ յաւուրս մեծին վահանայ եղբօրորդւոյ սրբոյն վարդանայ եհեղ զարիւն իւր 'ի պատերազմի ընդդէմ կրակապաշտ պարսից: Աշխարհագրութիւն ճիշդ և կարևոր: Հռետորական գիրք պիտոյից 'ի խնդրոյ Թէոդորի ուրումն աշակերտի: Նե-

բա

րականական և քերթողական հատուածք պէսպէս ։ Ճառ ներբողական 'ի սմ՟ կայսն հոխոխումն . և պատմութիւն ճանապարհորդութեան հոխոխմանց 'ի հռովմայ մինչև 'ի հայս՝ յայլ առանձին ճառ ։ Տարականք հրաշալի յօրինուածով . թող զթարգմանութիւս յոլովս . որպէս և զվերջին լրումն թարգմանութեան ածաշնչի սորին ընծայել չէ ինչ տարադէպ ։

Այլ առանձին յիշատակաց է արժանի նամակն երանելւոյս գրեալ 'ի պինի թղթոյն տահակայ արծրունւոյ . ուր առաջի դնէ ըղպատմութիւն սքանչելագործ պատկերին տր ածածնին , որ կայր 'ի հոգւոց վանս՝ բերել 'ի մէջն բարթուղիմեայ առաքելոյն , հանդերձ ստորագրութբ ազգատոհմի տիրամօր կուսին , և վերափոխման նր ։ Այդ 'ի գրի անդ փայլէ ոչ միայն կատարեալ խոնարհութիւն առն այ և յուրացութին նր՝ 'ի հրաժարելն 'ի գովութեան ընծայելոյ նմ և 'ի հրաւիրանաց պատուոյ , այլև առաքելաշնորհ մեծանձնութիւն , և մարգարէական հոգետեսութիւն , յասել անդ իւրում . * Վեղ ասեմ իշխանդ արծրունեաց . եցոյց ինձ տր , զի յորդւոց քոց երեք եղբարք վս քո 'ի մահ մատնեալք՝ երկուքն արեամբ վկայք լինին քո , և միոյն վրիպել 'ի նոցանէ՝ և ոչ յայսմ վայելէ ։ Ես նշ ած զթագն թագաւորին սենեքերիմայ յորդիս քո դարձուցեալ՝ յերկարաձգէ յերկրի ։ Նաև բագրատունւոյդ ասեմ , յիշէ տր զքանոն իւր առ աբրահամ , եթէ

թա-

թագաւորք 'ի քէն ելցեն . և թագաւորեք 'ի դուռն : Այլ այլ ինչ ունիմ ասել ձեզ, յոր-
ժամ տացէ Տր տեսանել :

Այս կատարեցաւ ամն ը բանի սրբոյն . զի յարծրունեաց անտի էին փառաւոր նահապետքն քնի երկոքին ընտրել հարազատք , սրբոյն Սահակ և Համազասպ իշխանք Հայոց . որոց եղբայրն երրորդ՝ Մերուժան անուն՝ անկել 'ի հաւատոց՝ փութով սպանաւ 'ի դաւթէ Մամիկոնեանց . և արծրունեաց թագաւորն կանգնեցաւ յետ ժամանակաց 'ի վասպուրականւի , ուր և բագրատունեացն 'ի դուռն : Այս այն զի՝ այս գործք գործեցան բազում զարուք զկնի յաւուրց անտի խորենացւոյն . մինչև չմնալոյ երկբայութե 'ի վերայ մծագեցիկ մարգարէութե սրբոյն : Իսկ ինքն երանելին լցեալ զաւուրս իւր երկայնս՝ ընդ արդեամբք և գովութբ բն այ , հանգեաւ խաղաղութբ 'ի քս :

Իսկ երանելին Դաւիթ՝ անյաղթ փիլիսոփայ կոչեցեալ յարդեանց , ասի լինել քեռորդի սրբոյն Մովսեսի խորենացւոյն , ծնընդեամբ 'ի Հարք գաւառէ և 'ի ներգին աւանէ՝ որ առ սահմանօք տարօնոյ . վոյ և կոչի ներգինացի , համարեալ 'ի վերջին դասուց թարգմանչաց , և հելլենական ուսմամբք գերազանցեալ զամենեքումբք . վոյ և անուն առեալ յունական : Սա անխտիր փայլեաց 'ի մէջ Հայոց և հելլենացւոց՝ իմաստասիրութբ և ածսիրութբ . որ վն և 'ի յունարէն օրինակս փիլիսոփայական գրուածոց

նը

նորա տեսանեմք զնա պատուեալ մեծասէր անուամբ , կամ ըստ յունականին գերադրական կոչմամբ՝ դաւիթ թէոփիլէսդադօս , այս է ամենամեծասէր ։ Այր մի ասէ առաքել վրդպ սիւնեցի , թէ յոյնք հնարին զերանելիս ըզդաւիթ յիւրեանս ձգել 'ի պարծանս ազգի իւրեանց ։ յայտ է թէ մի գտանելոյ գրուածոց նորա և 'ի նոցին բարբառ ։ զի միօրինակ ախորժակ էր յերկոսին դպրութիս , և անխորտիր կարօղ էր գրել հայերէն և յունարէն՝ որչափ ինչ գտանեմք յիմաստասիրական բանից նորա ։ զի բաց 'ի քերականութենէ՝ գրեաց զգիրս սահմանաց և էակաց , և զվերլուծութիւնս ներածութեանցն պորփիւրի , և ստորոգութեանցն արիստոտէլի ։ զորոց և զգիրս վերածեալ 'ի հայ բարբառ ։

Շարագրեաց և այլ բազմապատիկ ճառս վսեմ ոճով ։ յորս յանուանէ յիշատակին ներբողեան 'ի ծնունդ տն , և բարձրացուցէքն 'ի նշ խաչն մեծընկալ ։ որ և կայ մինչև ցայսօր հանդիսացեալ առ ամենեսին , առաւել յետ գրելոյ նորին ներսեսի շնորհալւոյ ըզպատճառս և զմեկնութիւն նորա ։ որ և երկբան բմն կարծիս յիշատակէ , ասել ոմանց՝ թէ առաջի յունաց իցէ խօսեցեալ զայն , և այլոց՝ եթէ առաջի հայոց ։ և զերկրորդս զայս աւանդութիւն հաստատէ ոչ միայն այն , զի զճառ խաչին չգտանեմք յունարէն , այլ միայն հայերէն , այլև որպիսի և իցէ յիշատակարանն պատմական գտեալ 'ի տօնապատճառս հայոց ։ զոր երկրորդեմք աստանօր՝

նօր՝ առ չունելոյ զայլ ստուգագոյն տեղե-
կութիւն զվարուց և զգործոց Դաւթի անյաղ-
թի. Է̃ որ ողբայ իրաւամբք ամ̃ իմաստուն :
Որդ այս բանք են տօնապատճառին. * Յա-
ւուրս վերադիտողութե Հայոց տ̃ն Գիւտոյ
եկին արք ոմանք 'ի Նահանգէն Անտիոքայ
( ասորւոց ), 'ի գեղջէն՝ որ կոչի օղին ( կամ
աւլին ). որոց անուանքն կոստանդին և պետ-
րոս և Թէոդորէ, խարազնազգեստք, բո-
կագնացք, պահօղք և կերծաւորք . . . . 'ի
ցոյց մարդկան. որք ասէին ոչ գոլ զմարմին
ա̃ծածին, և ոչ զխաչն՝ ա̃ծընկալ, այլ զո-
ղոց պատժարան : Սորա լուաւ Գիւտ զգալըն
դաւթի ( և զընկերացն ), բերկրեցաւ և
մխիթարեցաւ յոգի. և գրեաց առ Դաւիթ
( նամակ, որ ունէր օրինակ զայս ) :
,, Երկնաւորին ցանկացեալ մեծութե՝ գտող
գանձի, և ա̃ծային լուսոյն. որ ձգեալ
հասեր 'ի տիրապէս տենչումն, 'ի գերակայ
և 'ի պատարուն պայման գտեալ և ծած-
կեալ, բացայայտեալ բոց բարեաց բարե-
տրապէս բարուց քոց. զոր 'ի վարժ վաճառի
քում խնդրելի մեզ վ̃դպութ̃ի խուզողացս
խօսել խորհրդով 'ի խաչն ք̃ի. զնորին ե-
րախտեացն հատուցանել որ առ 'ի մէնջ գո-
հութ̃ի փրկելոյս՝ փրկաւէտ փայտին փա-
ռաց փեսային : Ո՛ի պաշտելի է և պատուե-
լի մեզ, և պանծալի ըստ Պօղոսի պարծել
'ի պատուականն պսակն ք̃ի, և 'ի Թագ նո-
րոյս սիոնի. զի բարձցի սերմ հերձուածոյ
հերեսիովտացն հայհոյչաց, և խլեսցի յա-
գա

զարդակաց փունջք փառաբանիք՝, և որոնց սա-տանեայական սերմանն, որք 'ի մարդ յու-սան, և ոչ յամ: Պիւս՝ զագաշեալ զար-շապար գերեզմանի՝ մահու մերձաւոր, դըր-ուժաւ հայցեմ, հայոց հովուապետ և վե-րադիտօղ տանս արշարունի (կամ արշակու-նեաց). ընկալ զթուղթդ թախանձանաց

դաւիթ,,:

Ու նա ասէ անդրէն պխնի անդրադար-ձութք. ,, Ով առ 'ի յամծուստ պատուեալ զերիցս երջանիկ և զմեծի հայրապետի և զաթոռակալի Տեառն գրիգորի, հայոց մե-ծաց վերադիտողի, զամահրաման խնդիր հարկապահանջութե եկեղեցական գործառ-նութե, զոր հրամայեցեր մերումս կրտսե-րութե՝ գրով դրոշմել 'ի քարտիսի մատե-նագրութե, (ընկալայ). զի կացցէ 'մնաս-ցէ 'ի յարձանի՝ անջրելի և անջնջելի յիշա-տակ զկնի՝ ազգաց եկելոց. զոր ոչ այլաբար ինչ թուի (ասել), քան թէ իշխանութեդ քումդ գերազանցութե պատուոյ՝ զհարկե-ցուցիչ և զանհնարին հրամանաց ծանրութե: Սակս որոյ սարսեալ սարսափեմ, և երկեղ ոչ դուզնաքեայ յիս բերի. զի գտանի քան զկար մեր գերազանց խնդիրդ. և զի հարկ 'ի վերայ կայ աւետարանել հնազանդութե, զի մի վայն վիճակեսցի: Սակայն սատարես-ցէ որբամատոյց աղօթք ձեր սարտուցելոցս. զի բանն Տն տացէ բան բանի մերոյ մասին, և հանձար հմտութե հոգին Տր՝ խորհել

խորհրդով և խօսել,,:

Արդ եթէ հարազատ իցեն այս նամականութիւնք, եթէ յայլոց ումանց իմաստակաց պաճոյճ բանիւք յարմարեալ՝ մանաւանդ նոյնատառութիւք ՚ի դէմս դիւտայ, եւ ոչ գիտեմ. այլ զայս գիտեմ, զի ճառ խաչին է գերապանծ և վսեմ յօրինուա՞ծ՝ աթենական ոգւոյ ցուցակ. յորմէ իմանամք, թէ՝ և այլ բազմադիմի գործք երանելւոյն դաւթի և ընկերաց նորա պարտին լինել, որք այժմ չերեւին ՚ի միջի։



# ՎԱՐՔ ՍՐԲՈՅ ՀՕՐՆ ՄԵՐՈՅ

Գրիգորի Նարեկացւոյ ։

Տ. փետր. 27 ։ և յիշատակարանս ։



ՀՐԵՇՏԱԿՆ 'Ի ՄԱՐ-մնի՝ անուամբ և արդեամբք հսկօղն զուարթուն՝ սբն Գրի-գոր Նարեկացի, հոգեկիր հռե-տոր և ա̃ծարեալ բարուն՝ ընտրեալ 'ի բիւ-րուց, էր 'ի վասպուրական Ձէ յանձևացեաց գաւառէ, որդի երանելւոյն Խոսրովու մե-ծի՝ անձևացւոց եպս, գեղեցիկ շառաւիղ 'ի բարի արմատոյ, ծնեալ 'ի Թուին Հայոց իբր Ն̃. այս է յամի տն 951. 'ի ժամանակս աշոտոյ ողորմածի Հայոց արքայի 'ի տանէ բագրատունեաց, և աբուսահլի արծրունւոյ առանձին Թագաւորին վասպուրականի, և տն անանիայի կթղկսի ։

Որդ զառաջինն սնաւ երանելւոյն գրիգոր Ե̃ աւագ եղբօր իւրում յովհաննու, և սահա-կայ կրտսերոյ, 'ի տան բարեպաշտ ծնողացն տմ կարգօք ա̃ծպաշտութ̃. և ապա առ ոտս երանելւոյն անանիայի Նարեկացւոյ, որ էր հօրեղբայր մօր իւրոյ, և առաջնորդ վանիցն Նարեկայ՝ որ 'ի գաւառին ռշտունեաց առ-

վանայ ծովուն ։ Վասնզի առեալ անանիայ վճպի առ իւր զերկուսին որդիս դստեր եղբօր իւրոյ՝ զյովհաննէս և զգրիգոր՝ վարժեաց զնս յուսումն ածային գրոց 'ի վանս անդ Նարեկայ, համդերձ հրեշտակական վարուք առաքինութե ։ Եւ եղեն երկոքին հարազատք մի քան զմի յառաջադէմ 'ի սըրբութե և յիմաստութե ․ վսն զկնի վախճանի սն անանիայի՝ ընտրեցաւ յառաջնորդութի ուխտին աւագ եղբայրն գրիգորի յովհաննէս վանական ․ իսկ ինքն գրիգոր ձեռնադրեալ 'ի քահանայութի՝ էր ոչ վարժապետ միանձանց և գործակից եղբօր իւրոյ, առաւելեալ յօժ յօժ եռանդեամբ հոգւոյն, և գերազանցեալ շնորհօք գիտութե քան զբնաւս ։

Այլ որ մեծն է՝ սբ առաւելութե շնորհացն որ 'ի նմա, զարդարեալ էր երանելին գրիգոր սմ խոնարհութբ, իբր նուաստ ունելով զանձն քան զամենեսին ․ և քանզի հանգիստ այ է խոնարհն հոգւով, որպէս եղև ըու-նարան հոգւոյն այ, և վառարան ածային սիրոյն ․ որով բորբոքեալ որ քան զոր՝ եա զանձն բոլորովին 'ի հայեցողական տեսուե ածայնոց, և յաղօթս մշտամռունչս, և յանդադար վերծանութիւնս ածեղէն տառից, համդերձ ճգնողական վարուք պահեցողութե և խստամբերութե, և կատարեալ մրցանօք առաքինի նահատակութե՝ ընդդէմ պատերազմաց աներևոյթ թշնամւոյն ։ Հրաշալի էր և յանծանօթական վճպութե և յատենա-

խօս

խօս քարոզութեան, պերճ և առատ բանիւք և քաղցրաբուղխ շրթամբք. նոյն և յաջողակ 'ի գիր՝ և զօրաւոր, որով զարմացուցանէր զմերձաւորս և զհեռաւորս. և քարոզեալ լինէր համբաւ սրբութեան և իմաստութեան նր՟ ը՟ ամ՟ն հայոց առաջի թգ՟րաց և կթ՟ղկսաց ժամանակին:

Մ՝ինչդեռ տակաւին նորընծայ քահանայ էր երանելին գրիգոր՝ իբրև 'ի քսան և վեցե-րորդ ամի հասակի իւրոյ, գուրգէն արքայ արծրունի՝ որդի աբուսահլի և եղբայր աշո-տոյ և սենեքերիմայ՝ յղեաց առ նա պատուէր խառն ը՟ ազերսանաց, գրել զմեկնութիւն եր-գոց երգոյն սողոմոնի: Նա և այլոյն ա՟յ անդի-մադարձ գտեալ արքունի հրամանին՝ որպս՟ թէ յա՟յ հրամայեալ, յանձին կալաւ ամ՟ խո-նարհութ՟բ, և կատարեաց զխնդիրն գործակ-ցութ՟բ հոգւոյն ս՟րբ, որչափ համառօտ՝ նոյն-չափ և բազմիմաստ տեսութ՟բ. և այնպիսի պարզ և վայելչական յօրինուածով՝ մինչև չի՛ք իբրև զնա գեղեցիկ թարգման այնր դժուարին և գաղտնի մատենի. և այս գոր-ծեցաւ 'ի թուականութեան հայոց նի՟զ. այն ամ՟ տ՟ն է 977:

Յայնմ ժամանակի անդ 'ի վասպուրական էր վտարանդեալ վահան հարազատ կաթողիկոս հայոց. որոյ փոխան նստաւ ստեփաննոս ոմն, և ապա խաչիկ. զի կայր խնդիր հակառա-կութեան 'ի մէջ եպ՟սաց և վ՟րդպաց վ՟ս պէսպս՟ իրաց, և վ՟ս բանի քաղկեդոնականաց: Իսկ երանելին գրիգոր ստուգութ՟բ 'ի վ՟ն հասեալ,

եթէ տարապարտ և վնասակար պառակ-տումն է եկեղեցւոյ, ուր երկպառակելոց ընդ ձայնին՝ նոյն երևէր ողջմտութիւն ՚ի վրդպու-թէ, յորդորէր զամենեսեան հոգւով հեզու-թէ և խաղաղութե ՚ի սէր և ՚ի միաբանու-թի. և զորս տեսանէր պնդեալս ՚ի բանսա-կռուութի յոչինչ պէտս ՚ի կործանումն լսո-ղաց՝ խրատէր և յանդիմանէր, և զանհա-ւանս ՚ի բաց պարուրէր. և զոր ինչ միանգամ արժանի ուղղութե և բարեկարգութե գի-տէր, խնամով փոյթ առնէր ՚ի գլուխ տանել:

Այլ զի ըստ այսմ օրինակի ջան և փոյթ էր նորա (ասեն յայսմաւուրք) վ̃ս միաբանու-թե եկեղեցւոյ, զի զեղծեալ և զանփոյթ արարեալ կարգս եկեղեցւոյ ՚ի ծուլից և ՚ի մարմնասէր առաջնորդաց կամէր հաստա-տել և վերստին նորոգել, վ̃ս այպանէին զնա բիրտ և սոպռ մարդիկ, և համբաւէին զնա ծայթ. որ էր անուն նախատանաց իբր հռոմայեցւոյ և հաւատափոխ եղելոյ. և այն զի՝ այսպիսի կոչմամբ թշնամանել լինէին այնպիսի անձինք ևեթ, որք ճշմարտութե զուղղութի և զբարեկարգութի ազգին խնդ-րէին. ո՛չ և անձամբ փորձ գոլով իրացս՝ աւաղէ երանելւոյն խոսրով հայրն նորին գրի-գորի ՚ի մեկնութե ժամագրքի ընդ ձեռագիր օրինակաց:

Այլ եղև իբրև բազմացան չարախօսք նորին գրիգորի, յայնժամ ժողովեալ ՚ի մի վայր եպիսկոպոսունք և վրդպք՝ հանդերձ ազատ իշխանօք և տանուտերօք, սկսան խորհուրդ առնել

վ̃ս

վճռի․ և յղեալ կոչեցին զնա՝ առ՚ի դատել և յանդիմանել յատենի, և պատուհասել կմ աքսորել զնա որպէս զհերձուածող ։ Այլ իբրև եկին առ նորին հրաւիրակքն՝ զի տարցին զնա, եւ ընդ առաջ նոցա այրն Այ զուարթ սրտիւ և անայլայլակ դիմօք․ և գիտացեալ զխորհուրդ կոչման իւրոյ՝ կամեցաւ իմաստութբ յանդիմանել զանմտութիւն նց, որք խնդրէին զանձն նր ։ Ասաց ցեկեալսն․ նախ կերիցուք հաց, և ապա գնասցուք ։ Այլ եւ տապակել աղաւնիս՝ այն որ զհեզութիւն ունէր աղաւնւոյ, և իսպառ հրաժարեալ էր յմս խորտիկաց․ և բերեալ եդ առաջի նոցա սեղան, զի կերիցեն․ և օրն էր ուրբաթ ։ Ընդ որ առաւել ևս գայթակղեալ եկելոցն՝ ասեն ցնա․ վարդապետ՝ ո՞չ է օրս ուրբաթ ։ Իսկ նա յանդէտս եղեալ՝ ասէր․ թողութիւն արարէք եղբարք, ես ոչ գիտացի զաւուրս պատկեր ։ Յայնժամ ասէ ցտապակեալ աղաւնիսն․ արի՛ք գնացէք 'ի տեղիս ձեր և յերամս, զի պահս է օրս այս ։ Այլ նոյնժամայն ընդ ասել սբյն՝ կենդանացան աղաւնիքն, և թևս առեալ թռեան առաջի ամենեցուն ։

Այլ նց տեսեալ զզարմանալի սքանչելիսն՝ որ եղև, լցան ահիւ մեծաւ և ափշութբ․ և յարուցեալ անկան յոտս նրյն և երկիրպագին․ և թողութիւն անձանց հայցելով փառս տային Այ ։ Այլ ոչ համարձակեալ այնուհետև ձեռն արկանել յայրն Այ, դարձան 'ի ժողովս՝ ուստի առաքեցան․ և պատմեցին

ամենեցուն զհրաշսն՝ որ եղեն. և նոքա լուեցին 'ի խորհրդոցն. և անուանեցին զնորին Գրիգոր վն նշանագործութեն երկրորդ սքանչելագործ. ոչ և այլք յաղագս լուսաւոր վկայութեն երկրորդ լուսաւորիչ կարդային: Այս նա այսպիսի սքանչելեօքս և ճշմարտասէր մտօքն, խստակրօն վարուքն և ածաբան քարոզութեամբն փայլեաց յԵրիս քան զարեգակն. և ըստ աւանդութեան ասացեալ, զոր և լսին իմն խորհրդաբանութբ թուի ակնարկել ինքն տեղն ոյ յաղօթագիրս իւր, արժանի եղև տեսանել և զմանկացեալն ած՝ բազմեալ 'ի վր գրկաց ամենօրհնեալ ածածնի, յանդիման վանացն Նարեկայ՝ 'ի վր ատեր կղզւոյ ծովուն աղթամարայ: Այս ոչինչ են զարմանք. քանզի իսպառ ընկղմեալ էր համապազորդեան խորհուրդ սրտի նորայն 'ի հրաշալի խորհուրդս տնօրէնութե բանին 'ի մարմնի, և զեղեալ ընտանի օրով փրկչին, համդերձ ջերմ և առանձին ընտանութբ 'ի տէր նա ածամօրն. ոչ յայտնանդիմանութբ ցուցանեն աղօթք և ճառք և գանձք և տաղք

հոգեկիր հռետորիս:

Գլուխ և պսակ գործոց երանելւոյն՝ որ բազմապատիկ բանս յօրինեաց հոգելից, վկայեալ է յամենեցունց լինել աղօթամատոյց նր անուամբ, Նարեկ կարդացեալ յանուն վանացն նորին. գործ սքանչելի սեպհական այնպիսում հրեշտակահանգէտ աղօթականի և ածիմաստ բանահիւսի. զոր շարադրեաց յամի թվն 1002. և 'ի թուականին

հայոց՝ նծա. ԺԸ հայցման նոցա միաբանից, և
ԺԸ անկնարկութեան եղբօր իւրոյ յովհաննու.
զոր և առ յետին խոնարհութեան իւրոյ էառ
իբրև գործակից 'ի լրումն այնր մատենի.
վասյ և զանուն նորա յաւել 'ի յիշատակարանն
իբրև գործակցի ։

Բազմօք յառաջ յօրինեալ էր և զպատմու-
թիւն ՍԲ խաչին ապարանից՝ որ բերաւ 'ի յու-
նաց 'ի հայս յամի 983. ՆԼԲ. 'ի խնդրոյ պր-
ոսկանեան ստեփաննոսի եպիսկոպոսին մոկաց, 'ի
նոյն յարելով և ներբողեան 'ի ՍԲ խաչն ըստ
այբուբենից տառից՝ խրթին ոճով վսեմութ.
և ներբողեան առանձին առ ՍԲ ածածինն՝
գերապանծ և գեղապանծ բանիւք և հրա-
շալի հոգւով ։

Արար դարձեալ և ճառս ներբողականս ըն-
տիրս 'ի ՍԲ առաքելոյն, և 'ի ՍԲն յակոբա
մծբնայ հայրապետին. և գանձս քարոզա-
կանս 'ի խորհուրդ տէրունական տօնից, և 'ի
պատիւ ՍԲց մարտիրոսաց, համդերձ մեղե-
դեօք և տաղիւք. զի էր կատարեալ քեր-
թող, և հռետորաց հռետոր ։ Արար և ըզ-
մեկնութիւն ո՛վ է դայլին՝ որ 'ի գիրս յոբայ.
Թող զայլ գործս՝ որ չերևին 'ի միջի ։

Հետ կատարման աղօթագրոց՝ 'ի նմին ամի
երևի վախճանեալ յովհաննէս վանականն
անդրանիկն եղբայր ՍԲյն գրիգորի. յետ նր
և ինքն երանելին նոյն վանից նարեկայ վա-
նական՝ ոչ յերկարեալ 'ի մարմնի, փոխե-
ցաւ առ ցանկալին իւր ՔՍ, և խառնեցաւ
հրեշտակն երկրաւոր 'ի դասս երկնաւոր զը-

ճարթնոյ, 'ի հասանել յիսուն և մի՝ կամ յիսուն և երկու ամաց, յամի տն 1003. և 'ի թուին հայոց ՆԾԲ. 'ի մեհեկի իա. որ յայն ժամանակս էր՝ հոկտեմբերի 6. կմ՛ ըԵ յայս մնացորաց՝ փետրվարի. 27. 'ի կաթողիկոսութե տն սարգսի: Նոյն որբասնեալ մարմինն մաքուր եղաւ 'ի վանս անդ Նարեկայ՝ հուպ եկեղեցւոյ սրբուհւոյն սանդխտոյ:

Ապա յետ ամաց անցելոց իբրև տասնևութից, յորժամ սենեքերիմ արքայ վասպուրականի չու արար 'ի սեբաստիա՝ առեալ ըն իւր և զվարդապետայ նորա նշանն, յամի 1021. Նհ. ասի՝ թէ գնացին ըն նմա և բազումք 'ի միաբանից Նարեկայ. և շինեալ վանս նմանակուն 'ի գիւղ ուրեք մօտ ակնայ՝ նարեկ անուանեն, անդ հանգուցին զնշխարս նորին. ուր և ցարդ պատուի գերեզմանն նորին 'ի տեղւոջն՝ որ կոչի գիւղ արակայ. ոմ և 'ի բնիկ հանգստարանի և 'ի ճգնարանի նորին՝ որ է ուխտատեղի հաւատացելոց, երևին զօրութիւք սքանչելեաց նորին 'ի սկզբանէ հետէ: Յորում կարգի է և միւս ևս հրաշք վն ձագուց յարուցելոց, զոր յիշատակէ յայսմաւուրքն լեալ 'ի վանս Նարեկայ:

Ի յետին ժամանակս (ասէ) քուրդ մի տիրէր Նարեկայ. և քուրդն այն ետ հաւ մի 'ի շինականն իւր, որ էր կին այրի, 'ի թուխս դնել. և եդ կինն զհաւն 'ի թուխս, մինչև ելին ձագքն. և շրջէր հաւն ձագերովն աւուրս երիս. և ապա երթեալ յահէ անձրևի՝ եմուտ ձագուքն հանդերձ 'ի ներքոյ եր-

երկանաքարի, որ յեցեալ էր յորմն կոյս. և յաղդմանէ չարին անկանի երկանաքարն, և ջարդէ զհաւն և զձագս նր̄։ Յայնժամ 'ի հոգս և 'ի վարանս անկաւ կինն տառապեալ, զի ահաբեկ լինէր 'ի ցասմանէ քրդոյն. ապա յուսացեալ յա̄ծ և յաղօթս Սբյն Գրիգորի, որ զաղաւնիսն խորովեալս կենդանացոյց, դնէ զմեռեալ հաւն և զխորտակեալ ձագսն 'ի մաղ մի փոկեայ. և առեալ հաւատով՝ տարաւ եդ առ գերեզմանն Սբյն Գրիգորի. և ինքն դարձաւ 'ի գործ իւր տառապագին. և 'ի միտս իւր աղաչէր զա̄ծ և զՍբն Գրիգոր։ Ապա իբրև ժամ մի էանց 'ի վր̄, ետես զի գայր հաւն գրգալով. և 'ի խնդութե̄ն մեծաձայն քարոզեաց բազմաց զսքանչելիսն. և նոցա հիացեալ փառս ետուն այ̄, և ձագյարոյց Սբյն Գրիգորի։

Այս արդ եթէ 'ի վր̄ անբանից եցոյց սքանչլին Գրիգոր զզօրութի̄ իւր 'ի կենդանութե̄ և յետ մահուն, զի յօգնութի̄ հասցէ բանաւորաց 'ի հոգևոր և 'ի մարմնաւոր կարիս, քանի՞ ևս անպակաս ձեռնտու լինիցի՝ որոց հաւատովք դիմեսցեն 'ի բարեխօսութիւն նր̄ 'ի պէտս առողջութե̄ հոգւոյ և մարմնոյ. որպ̄ և աղօթք նր̄ հաւատովք կարդացեալ՝ յոլովից եղեն և լինին անդադար 'ի փրկութի̄ յա̄մ ախտից հոգևորաց և մարմնաւորաց։ Այցէ՞ թէ աղօթք Սբյն երկրորդեալք 'ի մէնջ՝ նորին հոգւով ելցեն առաջի այ̄. զի և գործովք նմանօղք լիցուք հրեշտակային սրբութե̄ նր̄։

ԱՄԷՆ

# ՎԱՐՔ ՍՐԲՈՅ ՀՕՐՆ ՄԵՐՈՅ

Ներսեսի կլայեցւոյ՝ Շնորհալի
հայրապետի :

Ծ. օգոստ. 9. ըստ յոյն. կամ ըստ այլ, օգոստ. 5. և յունիսի. 13 : Պատմիչք շնորհալւոյն : Մա-
հուանն 'ի Ներսէսեան շնորհ : և այլ պատմագիրք ևս յի-
շատակարանք :



ՆԵՐՍԷՍ ՇՆՈՐՀԱԼԻ, որ և Ներսէս շնորհաց կարդա-
ցեալ՝ 'ի լիութենէ հոգւոյն այ, և կլայեցի վերաձայնեալ՝ 'ի հայ-
րապետական աթոռոյն հռոմկլայու, պատիկ պարծանաց համօրէն հարց և վիճակաց հայ-
աստանեայց, առաջնորդ եկեղեցւոյ լուսա-
ւոր ոպ զլուսաւորիչ, և բարեզարդ կարգա-
ւորիչ ոպ զմեծն Ներսէս, պայծառացուցիչ
զօրաւոր իմաստիւք ոպ զթարգմանիչս, և
հրեշտակային վարուք հրահանգիչ մերձա-
ւորաց և հեռաւորաց ոպ զՆարեկացին, էր
'ի պարթևական զարմէ նը լուսաւորչին մե-
րոյ՝ ըստ տոհմին սերելոյ 'ի դստերէ մեծին
սահակայ պարթևի 'ի մէջ ցեղին մամիկոն-
եանց. քանզի եկաց մնաց մինչև ցայն զաւառ
'ի մէջ ազգիս հայոց սերունդ զարմին սրբոյն
վայր

վարդանայ քաջ նահատակի, որ հայրենեօք
էր մամիկոնեան, և մայրենեօք պահլաւունի
արշակունեան 'ի պարթևական ծննդոց ս̃բյն
գրիգորի. յորոյ 'ի պատիւ ընտրեցին և յե-
տինք առաւել անուանիլ մայրենի ազգաւ՝
քան հայրենեաւ ։

Ի տանն անտի էր բարեպաշտ և մեծանուն
իշխանն հայոց գրիգոր մագիստրոս՝ հայրն
ս̃բյն գրիգորի վկայասիրի, և նախահաւն
ս̃բյն ներսեսի կլայեցւոյ՝ 'ի կողմանէ հան-
ւոյն. քանզի 'ի դստերէ մագիստրոսի ծնան
ուստերք չորք. ապիրատ, վահրամ, վասակ՝
փառաւոր իշխանք, և գրիգորիոս եպ̃ս կող-
մանցն եգիպտոսի ։ Իսկ իշխանն ապիրատ՝
որ էր տ̃ր ծովք դղեկի 'ի կողմանս խարբեր-
դոյ, ծնաւ և ինքն ուստերս չորս. զ̃ են վա-
սիլ իշխան, շահան՝ զօրավար անուն, գրի-
գորիս կաթուղիկոս՝ պահլաւունի և փոքր
վկայասէր կոչեցեալ յոմանց, և ներսէս
կթղ̃կս, որ կլայեցի և շնորհալի անուանե-
ցաւ ։

Արդ երանելին ներսէս ծնաւ յամի տ̃ն իբր
1100, և 'ի թուին հայոց շ̃խթ, և կամ եւս
յառաջ՝ մի և երկու ամօք. և սնաւ ընդ հա-
րազատին իւրում գրիգորիւ ա̃մ ա̃ծապաշտ
կարգօք 'ի տանն բարեպաշտ ծնողացն, և ը̃
հովանեաւ մեծին գրիգորի վկայասիրի, որ
էր քեռի հօրն ն̃ց զ̃ եղբայր մօրն ապիրատայ.
և վարժեցաւ յուսումն ա̃ծեղէն գրոց և ար-
տաքին իմաստից առ ոտս գիտնաւորին ստե-
փաննոսի՝ առաջնորդի կարմիր վանաց 'ի
սեաւ

սեաւ լերինն. որում աշակերտեալ էին և իգ-
նատիոս մեկնիչ ղուկասու, և սարգիս մեկ-
նիչ կաթուղիկեայց:

Այս որ քան զօր աճեցեալ ներսեսի առաւե-
լութիւն գիտութեան քան զհասակակիցս և զե-
րիցագոյնս, և զարգացեալ եօթնարփին շնոր-
հօք հոգւոյն սբյ՝ սքանչելի գտաւ 'ի կատա-
րելութեան իմաստից և առաքինութեան: Այս
եղև յորժամ ընտրեցաւ յաթոռ կաթողիկո-
սութեան աւագ եղբայր նր երանելին գրիգո-
րիս կամ գրիգոր, ձեռնադրեաց զկրտսեր
եղբայր իւր 'ի քահանայութիւն, և անուն եդ
նմա տէր ներսէս (զի առաջին անունն այլ
էր). զի տեսանէր 'ի նմա զշնորհս նախնւ-
ւոյն իւրոյ մեծին ներսեսի պարթևի. և յետ
փոխադրելոյ աթոռոյն 'ի հռոմկլայ՝ եօծ
զնա եպս:

Այս էր սբ. եպսն ներսէս շնորհազարդ՝ գոր-
ծակից եղբօր իւրում սբ. հայրապետին գրի-
գորիսի յամս 'ի վաստակս հովուական պաշ-
տաման. արթուն և տքնօղ յամսի 'ի վն հօ-
տին՝ առ առաջնորդել ամենեցուն 'ի ճանա-
պարհն կենաց և փրկութեան. քարոզ և վկայ
ճշմարտութեան և ուղղութեան բանիւ և գրով,
և առաւել ևս օրինակաւ. զի էր յորդաբուղխ
բանիւ, և յաջողակ յոյժ 'ի շարագրութիւս
անոյշս. քերթող կատարեալ 'ի բնէ, և բա-
նահիւս ճարտար ըստ արուեստի. և լեզու նր
եղև գրիչ արագագրի դպրի հոգւոյն սբյ,
որով սփռեցին և շնորհք 'ի շրթանց նորա 'ի
շինութիւն ամենեցուն: Հեզ և խոնարհ բա-
րուք.

րուք. քաղցր ՚ի խօսս. փարելի ՚ի կենցաղա-
վարութե̅. խրատիչ, ուղղիչ, յանձանձիչ,
և շահեցօղ մերձաւորաց և հեռաւորաց. սի-
րելի յաչս ամենեցուն ոպ̅ հրեշտակ այ̅, և
պատկառելի մեծի և փոքու իբրև առաքե-
լաշնորհ այր այ̅, և հասարակաց հայր ազ-
նուագութ և բարեգործով։

Եթէ աղքատ ոք էր և կարօտեալ, առ նա
դիմէր և լիանայր. եթէ նեղեալ ոք և հարս-
տահարեալ, նովաւ սփոփէր և դիւրանայր.
եթէ տգէտ, նովաւ իմաստնանայր. եթէ մե-
ղաւոր, նովաւ դառնայր. մոլորելոց էր ա-
ռաջնորդ, հիւանդացելոց հոգւով՝ բժիշկ.
ը̅ ամ̅ի ամ̅, և ամենեցուն բարերար. մինչև
զթշնամիս սիրով և հեզութ̅ նուաճել, և
զսիրտս բոլորից յինքն յանկուցանել։

Ոչ առաւել քան զառաւել եղև խնամք
երանելւոյն ՚ի վ̅ր եկեղեցական բարեկար-
գութեց. զառաջնոցն յառաջնորդաց մերոց ըղ-
բարի բարի կարգաւորութիւնս խրթնացեալս
յաւուրս յետինս՝ կրկին և ս նորոգեաց, և
պայծառացոյց եօթնպատիկ վայելչութ̅ քան
զառաջինն. որով և եթող յիշատակ անմա-
հական յեկեղեցիս հայաստանեայց, տիրա-
պէս գոլով վերջին կարգադիր և լրացուցիչ
ամ̅ գլխաւոր ծիսից և ծիսարանաց, պաշտա-
մանց և եկեղեցական կարգացմանց և եր-
գոց, և ամենայն կարգաց գեղեցիկ բարե-
զարդութե̅։

Ոսկեբերան արամեանց կոչեցին զնա և յոյնք
գլխովին, և ա̅ծաբան թորգոմեանց. և եթէ

յայլ

յայլ լեզուս յեղեալ լինէին լուսաւոր և զօրաւոր մատեանք ն̃ցին, որ եզերալոյս վէպ ճառաչիւր առ ամենեսին առաքելաշնորհ հայրապետս հայաստանեայց ։ Նայց սակայն և արդեամբք գործոց առ կենդանութ̃ իւրով ոչ միայն 'ի հայս պայծառացաւ անուն նորա, այլ և մինչև 'ի մեծն հռովմ հնչեաց համբաւ նր̃, որպ̃ վկայէ լամբրոնացին. և 'ի պատիւ երեսաց նորա պատուեցաւ աստ աթոռն հայրապետական 'ի գահէն հռովմայ՝ առաքելով զաւազան և քօղ և այլ օժիտս պէսպէս առ եղբայր նր̃ գրիգորիս կթ̃ղկս, և գրով զսէրն հաստատելով. որպ̃ և 'ի մէջ յունաց պանծալի գովութ̃ քարոզեցաւ անուն ս̃ն ներսեսի 'ի կայսերէ և 'ի պատրիարգէ նց̃. նոյնպէս և ը̃ ա̃մ ասորիս և յայլ ևս եկեղեցիս հռչակելի եղև. թո՛ղ զի և առաջի անհաւատից գլխովին մեծարու և պատկառելի ցուցաւ. մինչ զի և այլասեռքն զայլին պատարագօք 'ի տես ս̃ն գրիգորիսի և ս̃ն ներսեսի, և երկրպագութ̃ պատուէին ։

Այլ որ մեծն է, որչափ և մեծացաւ անուն նորին ներսեսի, և յարդեանց քարոզեցաւ իմաստութ̃, սրբութ̃ և առաքինութ̃ նր̃, նոյնչափ և խորին խոնարհութ̃ զարդարեալ գտանրանելին. միանգամայն և ձգնաւոր, աղօթասէր, արտօսրաբուղխ, և կենակից ընդ ա̃յ 'ի սրտի, յանչափ զբաղմունս եկեղեցւոյ՝ անզբաղ հոգւով ։ Փափաքէր և խուպառ առանձնանալ յանապատ. այլ ոչ թողին զնա մար-

մարդիկ. զի և ոչ կամք էին կացուցանել զնա
եօթնաջահեան ճրագ լուսատու ազգին։
Ոչ իբրև մերձեցան աւուրք վախճանի եր-
ջանիկ կաթողիկոսին գրիգորիսի՝ յետ ծզ ամաց
հայրապետութեան, արար ժողով եպսաց և
վարդապետաց 'ի հայրապետական աթոռն
'ի հռոմկլայ. և առաջի եդեալ նոցա զտկա-
րութիւն ծերութեան իւրոյ, միանգամայն և
գուշակեալ զմերձակայ փոխումն իւր յծէ,
ետ նոցա հովիւ զհարազատն իւր զորն ներսէս.
և թէպէտ նա բազմօք հրաժարէր առ խո-
նարհութեան և առանձնասիրութե, պատճա-
ռելով զիւրն իսկ ծերութի, այլ բռնադա-
տեալ յամենեցուն՝ հարկեցաւ հնազանդ լի-
նել։ Յայնժամ եօծ զնա երանելին գրիգո-
րիս, և զգեցուցեալ նմա զզարդն իւր հայ-
րապետական՝ եարկ 'ի գլուխ նորա զկրկին
քօղ կաթողիկոսական, ետ և զգաւազանն 'ի ձեռս
նր, և նստոյց յաթոռ իւր. և ողջունեաց
զնա երկրպագութբ իբրև կաթուղիկոս ամ
հայոց՝ ինքն և որ ընդ նմա էին ժողովն ամ.
Իսկ շնորհալին նա հայրապետն ներսէս յա-
րուցեալ 'ի մէջ բազմութեան՝ սկսաւ գեղեցիկ
ատենախօսութբ յանդիման առնել զանձին
խոնարհութի, և զմեծ պարտաւորութիւն
հովուապետական. և յայտնի կացոյց բա-
նիւն, թէ որպիսի արժանաւոր հովիւ պար-
տի ընտրել բանաւոր հօտին քի՝ անթերի
սրբութբ և կատարեալ իմաստութբ ըստ այ.
յորմէ վերջացեալ զանձն խոստովանէր երա-
նելին. ուր արդիւնք գործոցն աղաղակէին,

թէ չէր ոք այլ արժանաւոր քան զնա, կամ իբրև զնա. և իցէ՞ թէ գտցէն նմանօղք հետոց նր: Սոյս եղև յամի տն 1165. 'ի Թուականին հայոց ՈԺԴ. մօտ յերս տարւոյն. յորոյ վր իբրև անցին ամիսք երեք, 'ի սկզբան ամին յաջորդի փոխեցաւ 'ի կենաց երանելին գրիգորիս, և թաղեցաւ 'ի հռոմկլայ 'ի շիրմի իւրում:

Յայնժամ գրեաց ՙնք հայրապետն ներսէս թուղթ ընդհանրական առ ամ ազգ հայկազուն ցրուեալ ընդ ամ տեղիս. յորում յիշատակեալ զփոխումն եղբօր իւրոյ յԱծ, և զակամայ ընտրութի իւր յաթոռ կթղկսութե ամ հայոց, յայտ արար զհովուական պարտս իւր 'ի վր լրումն հօտին. և զի անկարանամք ասել ընդ ամենեսին բերանով խօսել և առաջնորդել խրատուք' ոչ արժանն է, գրով ազդառնեմք ամ հեռաւորաց' իբրև 'ի մօտոյ, զոր պարտն է մեզ ասել, և ձեզ լսել և առնել. և սկսեալ 'ի վանականաց և յեպսկպսաց և 'ի քահանայից մինչև ցաշխարհիկս ըն իւրաքանչիւր աստիճանի և վիճակի' 'ի գլուխս գլուխս կարգէ մարգարտաշար խրատս ըն քանչելիս' ածագութ սիրով և հայրախնամ փութով, հոգեբուղխ բանիւ և ածաշնորհ վրդպութբ:

Թող զի յաւել առաքել ընտրանաւ զանձինս, որ ունէին զհոգի ոյ, յայլ և այլ տեղիս 'ի քարոզութի և 'ի մշակութի հոգւոց: Թող և զայլ թուղթս բազումս, զորս առառանձին գաւառս և քաղաքս, և առ զանազան

զան անձինս գրեաց լի հոգւով և շնորհօք : Այլ առաւել ևս յիշատակաց արժանի են Թղթակցութիւնք շնորհալւոյն ը̃ կիւռ Մանուէլի կայսեր յունաց և ը̃ միքայէլի պատրիարգի նոցա , յառաջ քան զկթ̃ղկսութ̃ին և զկնի կթ̃ղկոսու̃ն մինչև ցվախճան իւր ցանկալի . յորոց ունին իմաստասիրել վերծանօղք , եթէ որպէս անհնարին կարծեցելոց հնարաւորիչ եղև հրեշտակային առաքինութիւն և շնորհալից վ̃դպութ̃ի որ հօրս մերոյ , զերկոսին ազգս երկպառակեալս ատելութ̃բ` 'ի սէր զօդել միաբանութ̃ե , բառնալ 'ի միջոյ զհերձուած բաժանման , և միաւորել զամենեսին 'ի մի ուղղափառ դաւանութ̃ի և 'ի հաւատարութ̃ի քրիստոնէական հարազատութ̃ե . որոյ և կատարումն 'ի գործ եդաւ ազգային ժողովով երկոցունց կողմանց յաւուրս գրիգորի կթ̃ղկսի տղայ կոչեցելոյ զկնի փոխման շնորհալւոյն . այլ որ զկնի եկին թագաւորք յունաց և առաջնորդք ազգի և ազգի` յետնեցան գտան 'ի նմին ոգւոյ միաբանական սիրոյ :

Նշեսցուք ծաղկաքաղ և զայլ գրաւոր երկասիրութիւս շնորհալւոյն յայլևայլ ժամանակս : Յաւուրս հասակի նորընծայ քհնյութ̃ե իւրոյ էր յօրինեալ զոտանաւոր վիպասանութ̃ի նախնեաց 'ի թուին հայոց շհ̃գ : Նու յետ առման եդեսիոյ քաղաքի 'ի զանգի ամիրայէն , որ եղև 'ի թուիս մերում շղ̃գ , գրեաց զողբս եդեսիոյ 'ի խնդրոյ եղբօրորդւոյ իւրոյ ապիրատայ , որ և յետ ժամա-

նակաց եղև կիթէքս՝ Գրիգոր ասպիրատ կոչե-
ցաւ․ որպէս և զխոստովանութիւն, որ է եօթն
հարիւր տասն ոտանաւոր՝ իբր քաղուած ա-
ւետարանին, արար ԺԵ խնդրոյ նորուն ասպ-
րատայ 'ի Թուին Ն։ Սմին գրեալ և զայլ
առանձին նամակ ոտանաւոր առ նոյն ասպ-
րատ յերիտասարդութենէ նր 'ի վր գրոյ ան-
ուան նորին ։ Իսկ զողջոյն մատեանն Յս որ-
դի կոչեցեալ 'ի սկզբնաւորութէն, երկու
հազար տուն ոտանաւոր, շարադրեաց 'ի
Թուին Ն և ռա․ որ է գեղեցիկ բովանդա-
կուն հին և նոր կտակարանաց՝ աղօթական
ձևով, և լի հոգևով ՍԲ ։ Սոյն և զայլ սուրբե-
նական տաղաչափութիս 'ի վերայ պէսպէս
իրաց․ և զոտանաւոր գովեստ հրեշտակաց՝
հանդերձ արձակ ներբողենիւ ։ Յայտնի են
և բազմապատիկ երգք և տաղք և գանձք
'ի վր տէրունական տօնից և 'ի պատիւ սրց,
գեղեցիկ և վայելուչ խորհրդածութբք․ յորս
են որ 'ի վր այբուբենի են կարգեալ, և են
որ յօդեն զանունս Ներսէս, կմ Ներսեսի երգ․
ևն ։ Իսկ շարականք նս բազմագոյն՝ մար-
գարտայեա բանիւ և տծխմաստ խորհրդով․
յորս փակին հրաշալի տծաբանութիք և խոր-
հրդական մեկնութիք տծային տառից՝ վսեմ
և դիւրիմաց ոճով․ որ է հրաշալի հոգի շնոր-
հալի վկայիս ։

Արար և ոտանաւոր ներբող 'ի սբ խաչն
տծընկալ՝ հանդերձ արձակ մեկնութե
ձառի գաւթի անյաղթին, որ և պատձառք
ձառի խաչին և մեկնութե բարձրացուցէքին,

'ի

'ի խնդրոյ վարդանայ վդ՟պի՝ որ 'ի վանաց հաղբատու. զո՛ր օրինակ և 'ի խնդրոյ գեորգեայ առաջնորդին հաղբատու 'ի լոյս ած զպատմութիւն սբ՟յն սարգսի զօրավարի 'ի թուին ոէ։ Եւ ըստ խնդրոյ այլում վդ՟պի արար զմեկնութի Մ.Տ չար փանջելի ձառին, որ գտանի 'ի վախճան գրոցն սահմանաց դաւթի անյաղթի՝ առեալ 'ի գրիգորէ նիւսացւոյ։ Գրեաց և զայլ հոգևոր և իմաստասիրական պիտառնութիս անթիւս՝ եթէ ոտանաւոր և եթէ արձակ բանիւ. * Ան-
„ թիւ են բանք՝ զոր նա խօսէր, և անդանն
„ դաղ մատամբք գրէր ‖, ասէ լամբրոնացին։ Մինչ զի և առակս հեշտալուրս յօրինեաց, որ ասին հանելուկք, իբր յեօթն լեզու. զի լիցի 'ի բերանս ռամկաց նիւթ մտացի և խորհրդաւոր զրուցաց՝ փոխանակ շաղփաղփութեց և բամբասանաց։

Ի բերանս հասարակաց է, քահանայից և ժողովրդոց՝ աքանչելի աղօթք նոյն՝ հաւատով խոստովանիմ. զոր խորհրդով՝ պարզ և յըստակ գրեաց 'ի բարբառ գրոց, 'ի պէտս ամենեցուն՝ մեծի և փոքու, արանց և կանանց, բաժանեալ 'ի իդ՟ տունս՝ ըստ ժամուց աւուրն, և ըստ թուոյ մարգարեական տառից. զի մի՛ ոք 'ի հեղգացելոց պատճառանս դիցէ չունել առ ձեռն պատրաստ զբովանդակութի կարևոր աղօթից և հնպ՟զօրդեան խնդրուածոց. որ և թարգմանեցաւ զկնի յմ՟ գոգցես լեզուս ազգաց և ազանց. զի չէ՛ք իբրև զայն 'ի մէջ ամ՟ աղօթական բանից վդ՟պաց

Է՟ համօրէն եկեղեցիս։

Յետ ա՟մ բանից և գործոց արդեօք ձեռն էարկ երանելին և 'ի մեկնութ՟ն ս՟րբյ աւետարանին՝ որ է՟ մատթէոսի, լի ա՟մ հմտութ՟բ և համեղ բանիւք՝ է՟ ընթացից ոսկեբերանին յովհաննու. այլ ցաւ է մեզ, զի որպէս ասի՝ չկարաց 'ի լրու՟մն ածել յերեսաց բազում հոգոց եկեղեցեաց և 'ի կանխելոյ մահու. կամ թէ ոչ գտաւ ցարդ ևս ամբողջ գործն այն. այլ միայն մինչև ցատեղին, * Մ՛ի համարէք՝ եթէ եկի լուծանել || Օ՟ն. յորմէ և անդր լրացոյց զկնի՝ յովհաննն ծործորեցի, որ և երզնկացի. բայց գտանին և արտաքոյ ծործորեցւոյն հատուածք ինչ մեկնութ՟ե մատթէի 'ի միջին գլխոց. ո՛չ գիտեմ, 'ի շնորհալւոյն արդեօք, եթէ յայլմէ աշխատասիրեալ։

Արդ այսպիսի և այլ ևս բարեվաստակ և յաւերժայիշատակ արդեամբք լցեալ զաւուրս իւր ս՟բ հայրապետն, և 'ի չափաւոր ծերութ՟ի հասեալ, այն ինչ զհետ էր զկերջին ժողով գումարելոյ վ՟ս միաբանութ՟ե եկեղեցւոյ, վտանգեցաւ յերեսաց տկարութ՟ե մարմնոյն, զոր ինքն իսկ նիհարացուցեալ էր խստակրօն ճգնութ՟բ, և ցամաքեցուցեալ համապազաբուղխ արտասուօք, և վատակարեկ արարեալ բազմադիմի հոգովք եկեղեցեաց, և անդադար ընթերցանութ՟բ և գրութ՟բ. և այնպէս իբրև ցորեան հասունացեալ ամբարեցաւ 'ի շտեմարանս երկնից արքայութ՟ե՝ է՟ մեծամեծ հայրապետաց

և

և վճարաց եկեղեցւոյ, 'ի հասակի եօթանասուն և հինգ, կմ՝ հզ ամաց, յետ լրման եօթնամեայ ժամանակի կաթողիկոսութեն, յամի տն 1173. և 'ի թուին հայոց ռիբ, յաւուր հինգշաբաթի, որ օր հինգ էր օգոստոս ամսոյ, կամ ըստ այլոց ժզ։

Սա թաղեցաւ մեծաշուք հանդիսիւ՝ 'ի դամբարանի իւրում 'ի Հռոմկլայ՝ առընթեր եղբօր իւրոյ։ Սա եղև սուրբ ամազգիս հայոց, և տանն իսկ յունաց. և ոչ հայք արժանաց կարգեցին իսկ և իսկ՝ տօնախմբել ամ ըստ ամեղօր փոխման երանելւոյն, նոյնպէս և Մանուէլ կայսր հռոմոց ետ դնել յիւր աւուրս գյիշատակ նր 'ի կարգի նախնի որց հայրապետաց։ Գերեզման շնորհալի հայրապետիս փայլեալ նշանագործութբ յաւուրց անտի լուրոց՝ պատուհի և յարդ տր ներքս անուամբ յայլազգեաց անգամ, յորոց 'ի ձեռս է Կլայն. և հրամանաւ նց լինի և հաւատացելոց մտանել 'ի տեղին վս ուխտի. զի թէպէտև դրամս հարկին տալ օտարաց, այլ առնուն 'ի նցյն զամենայն շնորհս՝ զոր խնդրեն։ (1)

XXXXXXXX XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Միախառնմբ տօնախմբութի վերցեցունց որ հայոց և վճարաց մերոց՝ 'ի մեծէն մարտոյա մինչև 'ի շնորհալեն ներսէս, տայ մեզ իմանալ՝ թէ ը ամսոյ փոխման շնորհալւոյն, որ եղև յօգոստոսի, միաւորեալ են և յիշատակք այլոց յայսմ միջոցի. այլա թէ ոչ սրբն մարտոյ 'ի

'ի փետրվարի վախճանեցաւ, և սեպհական տօն նր ու-
նէր լինել 'ի միջոցի առաջաւորաց, անդ՝ ուր տօնեմք
այժմ առանձին զամոլակից նր զսահակ պարթև․ ոպ և
զսահակ 'ի դէպ էր տօնել յայսմ վայրի, զի յօգոստոսի
վախճանեցաւ․ Թող զայլ Թարգմանիչս, որոց չէ յայտ
օր փոխման․ և զնարեկացին՝ որ ըստ միում աւանդութե 'ի
փետրվարի ասի վախճանել, և ըստ այլում հաշուէի՝ 'ի
հոկտեմբերի: Իսկ՞ թէ ունէաք 'ի ձեռին զհնագոյն տօ-
նացոյց գրեալ յետ ք զաւուրս շնորհալւոյն․ զի անտի
ունէաք իմանալ՝ թէ որպիսի էր վաղեմի կարգաւորու-
թն առ համեմատութբ վերջին կարգաւորութեա, որ
'ի շնորհալւոյ և այսր չերևի ընկալեալ զերևելի փոփո-
խութի, բայց միայն՝ զի և զշնորհալին յաւել յաջորդ-
նր 'ի կարգ տօնացուցին լրացելոյ առ նովաւ․ ուր յե-
տոյ ոչ իշխեաց ազգն յաւելուած ինչ առնել զկնի ա-
ւուրց լամբրոնացւոյն: Ազգն ասեմ․ ապա թէ ոչ՝ ա-
ռանձին հեղինակութբ կմ մասնաւոր յօժարութբ յաւե-
լուլ զայս ոք և զայն՝ չէ 'ի համարի․ այլ կայ մնայ 'ի
կարգս սբց յիշատակելեաց ըստ յայսմաւուրաց:

Միայն այս ստոյգ երևի, զի ըստ ներսեսի շնորհալւոյ՝
եթէ ոչ ներգործութբ, գէթ զօրութբ տօնախմբէ
ազգն և զներսէս լամբրոնացի՝ ներսիսեանք կոչմամբ․
գուցէ և զգրիգորիս զեղբայր շնորհալւոյն և զգրիգոր
վկայասէր և զգրիգոր տղայ և զգրիգոր ապիրատ՝ որ
գրիգորիսեանք կոչին, կից ըստ անուան գրիգորի Նարե-
կացւոյ․ քանզի 'ի ձեռագիր յայսմաւուրս յօգոստ․ 9․
համախումբ նշանակին այս հմ սբք այսպէս․ ✱ Յիշա-
„ տակ սբ հայրապետացն մերոց գրիգորիսեանց և Ներ-
„ սիսեանց ||․ ուր և գրին պատմութիք նց՝ սկսեալ 'ի
բարսղէ կթղկսէ և 'ի գրիգորէ վկայասիրէ մինչև ցգրի-
գոր ապիրատն, ոպ և ներսեսի կլայեցւոյն և ներսեսի
լամբրոնացւոյն: Զորս բաժանեալ են յետին օրինակք
և տպագիրք յերիս և 'ի չորս տեղիս․ զո 'ի յունիսի․ 13․
և օգոստ․ 5․ զշնորհալին․ 'ի յուլիսի 17․ զլամբրոնա-
ցին․ և 'ի յուլիսի 30․ զգրիգորիսեանս, պահմամբ նոյն
շարագրութե: Այլ 'ի հին օրինակս ինչ ներսիսեանք
գնին 'ի փետր․ 19․ ըստ սբյն մեսրոպայ:

Ծանիր և զայն, զի 'ի հին պատարագամատուցի՝ որ առ
ժամանակօք կիլիկեցւոց գրեալ, 'ի կարգի յիշատակաց
սբց ասի․ ✱ Առաջնորդացն մերոց ․․․ Ներսէսի, սա-
„ հակայ, դանիէլի, և սբց ներսիսեանցն, և հմ սբց
„ հովուաց || էՆ․ և զկնի․ ✱ Մխանձնացելոց ․․․ պօղայ,

,, մակարայ, Մեսրովբայ վրդպին, Անտփրկոսի || . Եւն. ուր
ուղ խորհրդով սրբն Մեսրոպ դասի զը միանձնացելոց անա-
պատաւորաց, զի եղև միայնակեաց կատարել հանդոյն
սկիտացի հարց . այնպէս և 'ի կարգս առաջնորդաց՝
բաց 'ի մեծէն Ներսիսէ պարթևէ իրաւամբք յիշին Ներ-
սիսեանք, որ Շնորհալին և Լամբրոնացին՝ հանդերձ գոր-
ծակցօք իւրեանց . զի սքք եղեն 'ի վերջին առաջնորդս
ազգին նմանօղք առաջնոց, և լուսաւորիչք հայաստա-
նեայց :

Մեծ է և այն, զի Լամբրոնացին և 'ի կենդանութե ճա-
նաչիւր իբրև զմի յառաջնոց անուի րաբունապետաց ազ-
գին . վսյ և ծերունի ոմն Սամուէլ 'ի վանաց Սկևռայ՝
որոյ առաջնորդ էր Լամբրոնացին, յօրինակել անդ ըզ-
սաղմոսամեկնիչ նր՝ գրէ 'ի վախճանի և զվարս նր իբ-
րև զկենդանի սբյ . և 'ի վր բերէ՝ ասելով . * Յաւար-
,, տումն սորին փոքր ինչ Թողի ձեզ զպատմութե կե-
,, նաց սորին ընԹացից . զի մի մնասցէ տարակոյս յա-
,, ռաջէլ ժամանակին՝ սորին քննողի, ով և ուստի և
,, զիարդն . ուղ և մեք այսօր ունիմք զբաղում հայրա-
,, պետաց մերոց և վրդպաց հայոց . որ զդաւիթ Ներգե-
,, նեցի, և զգրիգոր Նարեկացի, և զմովսէս խորենա-
,, ցի, և զայլս . որոց 'ի բանիցն պարարտութե զոճար-
,, ճանամք . և զիարդն կենաց և վարուց փափագելով
,, գիտել, ոչ ունիմք . և ոչ միաբան վասն երանելեացն
,, պատմութի : Յաղագս այսր զսորայս ( որ զներսեսի
,, Լամբրոնացւոյ արքեպսին տարսոնի ) մինչ ցայս, որ է
,, կենաց իւրոց ժամանակ՝ լը ամ, ցուցաք համառօտ .
,, և մաղԹեմք քնի տալ զսոյն մեզ և յերկարութեամբ
,, աւուրց || . Եւն . Ուղ և անը միջապէս զկնի մահուան
գրեաց զներբողեան նր պատմագրաբար գրիգոր վրդպ
սկևռացի . մինչ զի անտարակոյս է, Թէ գոնէ 'ի կիլի-
կիա տօն Լամբրոնացւոյն կատարիւր զշյդ զը Շնորհալւոյն
և ընդ նախանշանակեալ վրդպաց սբց . վսյ և մեք իրա-
ւամբք տօնեմք, և իրաւունս համարիմք գրել զպատ-
մութի նր 'ի կարգի սբց տօնելեաց :

# ՎԱՐՔ ՍՐԲՈՅ ՀՕՐՆ ՄԵՐՈՅ

## Ներսեսի լամբրոնացւոյ՝ արքեպիսկոպոսին տարսոնի կիլիկեցւոց ։

Հ. օգոստ. 9. կմ փետր. 19. կամ յուլիսի 17 ։
Սամուէլ ծերունի ճգնաւոր ։ Պորփիւր ախտաւոյն. և այլք ։



ԵՐԿՐՈՐԴ ՊՕՂՈՍ փողն տարսոնեան, այլև սքանչելի և քարոզ բանին առաքելանման, լուսաւոր վիճակն եկեղեցւոյ հայաստանեայց՝ Տէրն Ներսէս լամբրոնացի, էր 'ի բնիկ հայկազունեաց՝ խառն յազգականութէ արշակունեաց. որդի օշնի սեբաստոսի հեթումեան՝ տն լամբրոն դղեկի 'ի կիլիկիա, և շահանդխտոյ դստեր շահանայ՝ զօրավար կոչեցելոյ, եղբօր սբյն Ներսեսի շնորհալւոյ. զորոյ և զանուանն ընկալաւ. զի առաջին անուն նր էր սմբատ ։ Եղն նր և չորս եղբարք, հեթում, ապլղարիպ, շահնշահ և գրիգոր. և երեք քորք, մարիամ, շուշան, և տալիթա ։

Մինչդեռ յարգանդի մօր էր սմբատ՝ որ և Ներսէս, ուխտեալ էր ծնողացն՝ տալ ընծայել զզաւակն զայն. այլ յետ ծնանելոյն յամի 1153

1153 կմ 1154, հայեցեալ 'ի հրաշատեսիլ վայ-
ելչութիւն մանկանն՝ ասեն . ոչ է արժան
զայսպիսի գեղ յԱծէ զրկել . տացուք զմի այլ
յորդւոց մերոց Այ փոխանակ սորա . և ահա
հասանէր 'ի վր տղային խօթութի մահա-
ռիթ : Յայնժամ 'ի միտս եկն բարեպաշտու-
հի մայր նորա շահանդուխտ . էառ տարաւ
զնա յեկեղեցի սբ Ածածնի 'ի վանս սկևռայ՝
մօտ յամրոցն լամբրոնի, և կրկին ընծայեաց
զնա Ան ուխտիւք, ուր և ուխտեալ էր նորա
նախ քան զծնունդ մանկանն . և 'ի խանձարու-
րի անդ ետ կարդալ 'ի վր նր զքահանայա-
կան օրհնութիւն՝ առ անլուծանելի մնալոյ
ուխտին . և անդէն վաղվաղակի առողջացաւ
մանուկն :

Իբրև աճեաց փոքր մի, շնորհք Այ երևէին
'ի վր նր . և մնեալ յերկիւղն Այ՝ ցանկալի
լինէր ամենեցուն իբրև հրեշտակ 'ի մարմնի :
Դիպել եղև տանել զնա հօրն 'ի կոստանդնու-
պօլիս առ կայսրն կիւռ մանուէլ . որոյ առեալ
զտղայն 'ի գիրկս՝ գգուէր և յորդորէր կալ
յարքունիս, զի մեծայուցից զքեզ ասէ պատ-
ուով քան զհայր քո : Պխնի ետ մանուկն .
եթէ անանց էին մեծութիւնքս, անսայի բա-
նիցդ . եւ յանանցն փութամ ժամանել մե-
ծութիւն . սմին նման խօսեցաւ երբեմն և առ
լատին կոմսն անտիոքայ :

Յետ այսորիկ մնաց մանուկն 'ի վանս սկև-
ռայ՝ ը հոգևոր դաստիարակութբ յովհան-
նու առաքինւոյ՝ ճգնազգեաց վրդպի . և յա-
ռաջադէմ եղև 'ի վարս սրբութե և 'ի գիտու-
թե

թէ գրոց • զի էր փոյթ 'ի հոգևորս յոյժ , և
յուսմունս իմաստից ծարաւի • ուր և ուշի-
մութ̄ն անմնման , զարդարեալ ձրիւք հոգւոյն
էր : Մետասան ամաց էր ինքն՝ յորժամ մե-
ռաւ հայր նր օշին • որ յանձնեաց կտակաւ ,
զի հեթում որդի իւր լիցի իշխան լամբրոնի
հայրենի պատուով • և սմբատ նուիրեալն
էր՝ լիցի ը̄ ժամանակին առաջնորդ սկեւռայ ,
զորոյ զեկեղեցին ինքն էր շինեալ : Բայց այլ
էին խորհուրդք սրտին սմբատայ • զի նա առ
տենչանաց ձգնութե և անապատականն կե-
նաց՝ կամէր խոյս տալ յառանձնութի , և ոչ
առնուլ յանձն զեկեղեցական պատիւ :
Զայս գիտելով մօր նորա շահանդխտոյ՝
հնարս հնարեցաւ , զի մի հեռասցի զաւակն
յիւրմէ • հանդերձեալ գնալ վասն ուխտի
յեւէմ՝ առեալ տարաւ ը̄ իւր զսմբատ պա-
տանին 'ի հռոմկլայ՝ օրհնել 'ի ձ̄ռ հայրապե-
տին ներսիսի շնորհալւոյ • և զի հօրեղբայր
իւր էր նա , ընտանութ̄ զգացոյց նմա զիրսն :
Իսկ շնորհալին տեսեալ զպատանին՝ ծանեաւ
հոգւով զմեծային շնորհն , որ 'ի նմա • և
բանադատեալ ձեռնադրեաց զնա քահանայ •
և կոչեաց զնա յանուն իւր ներսէս • և պա-
հեաց առժամանակ մի 'ի հայրապետանոցի •
ուր վայելեալ նորընծայ քահանային ներսե-
սի 'ի հոգևոր խնամս ներսեսի շնորհալւոյ՝
զգեցաւ զհոգի նր • և ապա հրամանաւ նր
գնաց 'ի վանս սեաւ լերին • և եկաց ը̄ վար-
ժապետութեամբ ստեփաննոսի գիտնական
վ̄դպի՝ տիրացու կոչեցելոյ • և որ քան զօր

փայ

փայլեաց սրբութեամբ և իմաստութեամբ:

Տեսեալ վանականաց զեռանդն հոգւոյ Ներսեսի աբեղայի՝ ստիպեցին զնա 'ի գործ արկանել զտաղանդն տէրունեան, և լինել քարոզ բանին 'ի քաղաքի իւրում 'ի շահ հոգւոց բազմաց: Սոյն եկն 'ի Լամբրոն, և ութուտասան ամաց գոլով՝ ոչ այր կատարեալ և բանիբուն րաբունի՝ քարոզէր յեկեղեցւոջ հրաշալի բանիւք, և թուէր նոր ոսկեբերան, և բղխէր շնորհս 'ի շրթանց իւրոց. մինչև հռչակեցաւ անուն նորա յոյժ. վասն որոյ միաբան թախանձէին զնա քաղաքացիք՝ լինել իւրեանց եպիսկոպոս, և նստիլ յառաջնորդութեան մօտակայ վանացն Սկեւռայ: Յայնժամ խոյս ետ երանելին ընդ հոգևոր հօր իւրում Յովհաննու յանապատն Սաղրու 'ի մէջ լերանց Տորոսի. ուր կայր վանք միանձանց՝ Աստուածածին Սաղրուի կոչեցեալ՝ 'ի հոսանս գետոյն Ժեռակրեայ՝ մերձ յեկեղեցի սրբոյն Գէորգեայ:

Անդ առանձնացեալ Ներսեսի յանձուկ սենեակ՝ զցայգ և զցերեկ դեգերէր 'ի խորհուրդս Աստուածայինս և յարտաքաբուղխ աղօթս մշտամռունչս, միանգամայն և յընթերցուածս սուրբ գրոց և բանից հարցն սրբոց, և 'ի շարագրութիւնս և 'ի թարգմանութիւնս: Ի կիւրակէէ 'ի կիւրակէ գայր յեկեղեցի վանիցն՝ մատուցանել զսուրբ պատարագն: Իսկ զայլ աւուրս 'ի խցի անցուցանէր՝ մենամարտեալ ընդդէմ անմարմին թշնամւոյն բազմօրինակ հանդիսիւք ճգնութեան. մինչև բազում անգամ եկեալ սպասաւորն՝ որ բերէր զպէտս

նորա

նորա, տեսանէր՝ զի առաջին բերեալքն 'ի
տեղւոջ անդ կային 'ի պատուհանին ։ Նաեւ
ետ նմա Տէր զշնորհս սքանչելագործութեան ․
զի զբազումս բժշկեաց 'ի պէսպէս ախտից,
եւ ազատեաց զայլս յայսոց չարաց ․ այլ փա-
խուցեալ երանելւոյն 'ի փառաց՝ փոխեաց զտե-
ղին ․ եւ սակայն երթայր առ շնորհալւոյն ըստ
կոչման նորա ․ որոյ եւ փոխմանն առաջիկայ
գտեալ՝ դարձաւ յանապատ իւր ։

Յայնժամ յաջորդ շնորհալւոյն գրիգոր կա-
թողիկոս՝ տղայ կոչեցեալ, գրեաց ստիպաւ,
եւ կոչեալ զլամբրոնացին՝ ձեռնադրեաց զնա
արքեպիսկոպոս տարսոնի կիլիկեցւոց 'ի հասակի
քսան եւ երեք ամաց, յամի 1176 ․ ոիե ․ քան-
զի քաջ գիտէր զառաքինութիւն եւ զիմաստու-
թիւն նորա ․ միանգամայն եւ վանականք սկե-
ւռայ յանձն արարին նմա զառաջնորդութիւն
տեղւոյն ․ եւ նա որպէս հովիւ քաջ եւ արթուն
զամենեսին խնամէր ․ եւ էր սքանչելի յաչս
ամենեցուն, եւ հզօր քարոզ ճշմարտութեան՝
բանիւ եւ գրով ։

Այլ յետ տարւոյ տեսեալ նորա՝ թէ զբաղանք
առաջնորդութեան խափան լինին ընթերցասի-
րութեան եւ աղօթասիրութեան իւրում, գաղտագո-
նաց լինէր մինչեւ յանապատ իւր 'ի սաղրու ․
ուր քսան եւ չորս ամաց էր՝ յորժամ գրեաց
'ի խնդրոյ միաբանից զսքանչելին զայն մեկ-
նութիւն եկեղեցական կարգաւորութեանց եւ
խորհրդոյ պատարագին եւ զճառս ժաման-
դաւորաց ․ ոչ եւ 'ի յաջորդ ամի, այն է 'ի
թուին մերում ոիէ, 'ի խնդրոյ յովհաննու հա-

գևոր

գևոր հօր իւրոյ ձեռն եարկ 'ի խորհրդականս մեկնութե սաղմոսի . յորում ժամանակի մայր նորա և եղբարք նորին հանդերձ միաբանօք սկևռայ՝ կարօտեալ սրբոյն , դարձուցին զնա հրամանաւ կթղկսի 'ի վիճակ իւր :

Բայց նա զկնի սակաւուց . խոյս տուեալ 'ի փառաց և 'ի զբաղմանց՝ դիմեաց ընդ ճանա֊պարհն եգիպտոսի թաքչիլ յանապատս նախնի ճգնաւորաց . և զի յետս դարձու֊ցին զնա խնդրակք , հանդարտեաց աւուրս քանի մի . և ելեալ լռելեայն ուղեկցութբ միոյն 'ի մտերմաց՝ ընթացաւ հետի դէպ 'ի սեպուհ լեառն 'ի ճգնարանն սբ լուսաւորչին բազում տաժանմամբ , մինչև պատառո֊տիլ ոտիցն . այլ դարձուցին զնա 'ի կէս ուղ֊ւոյ բռնութբ . այս եղև երկիցս և երիցս՝ 'ի քահանայութե և յեպսութե , զի դարձոյց զնա ժողովուրդն 'ի ճանապարհէն սեպու֊հոյ : Դարձեալ փախեաւ անծանօթ կեր֊պարանօք 'ի կիպրոս կղզի 'ի վանս միանձանց յունաց . զոր անագան ուրեմն իմացեալ ազ֊գականացն՝ եկին և տարան անդրէն առ իւ֊րեանս :

Այնուհետև զիջեալ սբյն 'ի կամս նց՝ նըս֊տաւ առ ժամանակ մի 'ի վիճակի իւրում , և ծովացուցանէր զբանն վրդպութե և արբու֊ցանէր զծարաւեալս . և հնչեաց համբաւ սրբութե և իմաստութե նորա ընդ ամ հայս , ևս և 'ի յոյնս , 'ի լատինս , և յասորիս . և մե֊ծացաւ անուն նորա առաջի իշխանաց : Այլ դարձեալ փախուցեալ 'ի փառաց՝ գնաց 'ի

նախ

մնաց յիշատակ՝ վերջին լրումն ամ̄ բարե-պարգևութեանց և բարեկարգութեանց հայաստա-նեայց եկեղեցւոյ, աջակից և հետևող գո-լով անուանակցին իւրոյ ՙՏր հայրապետին Ներսէսի շնորհալւոյ. վ՚ոյ և Ը̄ մի համար կարգեցաւ տօն և յիշատակ նը՝ անուամբ ներքսեանց՝ Ը̄ գրիգորիսեանս ։

Եւ զոր օրինակ շնորհալին հեղացոյց զյոյնս Ը̄ հայոց, նոյնպէս և լամբրոնացին սիրելի եղև և սիրելի եցոյց զհայս՝ առաջի յունաց և հռովմայեցւոց և ասորւոց և ամ̄ ազգաց քրիս-տոնէից, և պայծառացոյց զեկեղեցի ազգին իւրոյ բազմամբք ։ Առանձին ևս հաստա-տեաց յեկեղեցւոջ տարսոնի՝ որ կոչիւր նը սոփիա, զի յաւուրս չարեքշաբաթի և ուրբա-թու տացի երեք հարիւր աղքատաց հաց և բակլայ. թո՛ղ զայլ գործս խնամոց ՚ի վերայ հօտին իւրոյ ։

Շինեաց և նոր եկեղեցի ՚ի վանս սկեւռայ, և արար զնաւակատիս եկեղեցւոյն շինելոյ յեղբօրէն կամ ՚ի հօրէն իւրմէ՝ յաւուր նոր կիւրակէի. յոր հայր և խորհուրդ շարակա-նի աւուրն ։ Ետ քօղ և զգեստ կրօնաւորու-թե երկուց քերց իւրոց շուշանայ և տաղի-թայի՝ ընդ բարեպաշտուհի մօր իւրում շա-հանդխտոյ. ոք և զկնի կրօնաւորեցաւ նաև միւս քոյրն մարիամ ։

Եհաս լամբրոնացին մինչև ցաւուրս օծման լևոնի ՚ի թ̄գւր հայոց՝ ՚ի գրիգորէ ապիրատայ, յամի 1198. ոխէ. ՚ի յունուարի. 6. և ՚ի նմին եակ տարւոջ եհաս նմա հրաւէր կոչման յեր-կինս՝

կինս՝ ը͞ն հանապազորդեան անհնչանաց իւրոց, որով զդաւթին երկրորդեր երգ. Երբ եկեց երեւեցայց երեսացդ ա͞յ. և ասելով զայս բան, 'ի ձեռս քո յիսուս աւանդեմ զհոգի իմ, ընդկալ զհոգի ներսեսի քոյ, աւանդեաց զմաքրափայլ հոգին՝ 'ի յուլիսի ժ͞զ. քառասուն և հինգ, կամ խ͞զ ամաց. և թաղեցաւ փառօք 'ի նը͞ր ուխտն սկեռայ առ դղեկին համբրոնի ։

Այս 'ի խնդրոյ քեռորդւոյ նը͞ն ներսեսի սըբբակրօն ք͞հնյի, 'ի թուին ռծգ. յօրինեաց Ճառ ներբողական ը͞ւարձակ 'ի վե͞ր նըյն գիտնաւոր վե͞ն գրիգոր սկեռացի կի՛ր համբրոնեցի, որ և Ճանաչի աշակերտ և յաջորդ նըյն ներսեսի համբրոնացւոյ յառաջնորդութե սկեռայ վանաց. թող զի և այլք յիմաստանոց ժամանակին համարին 'ի համարի աշակերտաց սը͞ց ներսիսեանց. որոց յաւիտենական յիշատակ օրհնութը͞ն եղիցի ։ (1)

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Տեսանես 'ի նախընթաց ծանօթութեն՝ որ 'ի կատարած վարուց շնորհալւոյն, թէ ոնց երկոցունց սը͞ց ներսիսեանցս է անբաժանելի. վը͞ս որոյէս շնորհալւն նոյնպէս և համբրոնացին է 'ի կարգէ տոնելի սը͞ց. զորութիւն խմանալի 'ի տօնացուցի. ուր չէ յաւելեալ ներգործութիւն, զի ոչ որք յետ աւուրց համբրոնացւոյն եշխեաց նոր յաւելուած, առնել 'ի հին տօնացոյց ազգին ։ 'ի հին յայսմաւուրս անուանեալ Կիրակոսի արեւելցոյ կի՛ր գետոկցոյ, տատանօր 'ի փետր. ժթ. գնէ, * Վարք

. Ար-

ԻԲ



# ՎԱՐՔ ՍՐԲՈՑՆ

## Եզեկիէլի Մարգարէի։

Հ. Նաւաս. 12։ Յ. Եու. յունվա. 21։ Ժմ. յուլ. 23։ Լ. ապրիլ. 10։ Ըստ յայտնեան Եւսեբեայ ՚ի ռ հարց. առաջ. Երէս. 857։ Աշխարհաւթէ եղեւ։ Ասացի վէպ ՚ի Ճէն. եղեւ. և այլ հարք և մինինչ։ (1)



ԵՐԱՆԱՏԵՍՆ Ի ՏԵսանօղս՝ բազմախորհուրդ և զարմանագուշակ մարգարէն եզեկիէլ, էր քահանայ մի՝ որդի բուզեայ յազգէն ղևեայ, առ գերութե՛ն բաբելացւոց՝ իբր վեց հարիւր ամօք յառաջ քան զՔս. զի ՚ի խաղացուցանել Նաբուգոդոնոսորայ արքային քաղդէացւոց միանգամ և երկիցս և երիցս զյուդա և զայլս ՚ի հրէից ՚ի բաբելոն, վարեցաւ ընդ գերեալսն և եզեկիէլ ՚ի հասակի պատանեկութե։ Իսկ յամին հինգերորդի գերութե յովակիմայ արքայի յուդայ, որ և յեքոնիա հայրն սաղաթիելի, այն ամ հինգերորդ էր թագաւորութե սեդեկիայ արքայի, սկսաւ եզեկիէլ մարգարէանալ անդէն յափն քաղդէացւոց ՚ի մէջ գերութեն. յորում ժամանակի անդ ՚ի բաբելոն էին և դանիէլ և երեք մանկունք,

կուռք, կրտսեր հասակաւ քան զեզեկիէլ.
ոմն և երեմիա 'ի հրէաստան՝ երիցագոյն ։

Սկիզբն մարգարէութեն եզեկիէլի եղև ահա-
ւոր և հրաշալի տեսլեամբ առ ափն քոբարայ
գետոյ. ուր տեսանէր չորեքկերպեան կառս՝
քառաթև և քառադիմի կենդանեօք հան-
դերձ՝ 'ի կերպարանս մարդոյ և առիւծու,
եզին և արծուոյ, 'ի նախանկար օրինակ չո-
րից սր աւետարանչաց, և բազմապատիկ խո-
րին խորհրդոց նորոյ ուխտին և վերին եդեմի.
Նայլ ըստ ճառին դնի պատճառս սքանչելի
տեսլեանս 'ի նախադրութեն գրոց նորա առ-
մեզ՝ ձայնակցութե նոյն յուստինոսի վկայի
և այլոց հարց այսպէս ։

Յետ գերելոյ բազմութեն հրէից հանդերձ
յեքոնիաւ 'ի բաբելոն վն բազմանալոյ անօ-
րէնութեն նց, տակաւին մնացեալքն յեմ
է սեդեկիայ արքայի ոչ զգաստանային. այլ
վստահացեալք 'ի տաճարն ածաբնակ՝ չև ևս
հրկիզեալ, անհնար կարծէին՝ թէ մատնես-
ցէ զայն ած 'ի ձեռս հեթանոսաց. և այնմ
ամբարտաւանեալք յառաջէին 'ի չարիս, զի
և երեմիայ մարգարէի անսաստ դատէ՝ խոր-
հէին սպանանել զնա իբրև համախոհ թըշ-
նամեաց, յասել նր՝ թէ մատնեսցի քաղաքս
և տաճարն 'ի ձեռս քաղդէացւոց ։

Սորին վն էառ ած 'ի ձեռն մարգարէական
շնորհին զեզեկիէլ 'ի բաբելոն. է որում
ոչ գոյր հրէիցն իբրև նախանձու ընդ երե-
միայի. և տայ նմա ձայնակից լինել երե-
միայի 'ի կշտամբանս տանն դառնացողի, և

'ի սպառնալիս կործանման քաղաքին և տաճարին, թէ ոչ դարձցին 'ի չարեաց իւրեանց։ Որդ՝ եսես եղեկիել զտեսիլ փառացն այ 'ի վերայ քրովբէից ահեղահրաշ սքանչելեօք լի, 'ի ցուցանել ընդդէմ կարծեացն հրէից՝ թէ չէ՛ ած կարօտ տաճարին կամ քրովբէիցն որ 'ի տաճարի անդ, զի յետ զարմանալի կենդանեաց պաշտօնի. և չկամնայէ մատնել զտաճարն հանդերձ մնացորդօք անդարձ հրէից 'ի ձեռս նաբուգոդոնոսորայ։ Այլ յայնժամ տեսլեան երևէր հանդերձ ահաւորութբ այ և նշանակ պատուհասին, զոր ունէր ածել 'ի վերայ հրէից 'ի ձեռն սան այնպիսոււոյ, որ թէպէտև մարդ էր բնութբ, բայց միանգամայն բուռն իբրև զառիւծ, և սուր իբրև զարծուի, և կասօղ և մանրող իբրև զուարակ. որ և անձամբ ունէր փոխել 'ի նմանութի արջառոյ. այն իմքն է նաբուգոդոնոսոր. այլ և եկին հասին յետ սակաւուց այս ամ ահարկու սպառնալիք. յորոց 'ի կատարումն հայեին և բաղումք յայլոց անտի տեսլեանց՝ որք ցուցան այնուհետև եղեկիելի, միանգամայն և 'ի նշանակ դարձի գերութե. յետ խորհրդաբար նկարագրելով զայլևայլ գործս տնօրէնութեցն քի յառաջնում և յերկրորդում գալստեանն։

Յայսմ ամի փայլէ տիրապէս ածամբք ընտանութի եղեկիելի և հրեշտակահանդէս առաքինութի նր. զի ոչ միայն խորհրդազգած լինէր տեսլեամբք ածեղէն գաղանեաց, այլև յանձին իւրում օրինակելով ըղբաւ

բողոքում խորհուրդս՝ 'ի բազմապատիկ հան-դէս ձգանաց և մրցանաց առաքինանայր ։ Վասնզի նախ ընկալեալ զմատեանն ջամ-բեալ նմա յա̃յ՝ կերաւ զայն . որով կարգե-ցաւ դէտ և վարժապետ տիեզերաց , և ցու-ցաւ ընդունարան պատգամաց և շնորհաց հոգւոյն ա̃յ . ուր դառնութիւն մատենին 'ի սկզբան՝ յայտ առնէր զսպառնալիս առ տունն դառնացողաց , և զկնի քաղցրութիւն ոպ̃ մե-ղու՝ զքաղցր յոյս մխիթարութեան դարձելոցն առ ա̃ծ ։

Յետ այսորիկ 'ի յանդիմանութիւն անարժա-նիցն ազգի ազգի վշտօք ձգնի մարգարէն ը̃ս տ̃ն հրամանի . քանզի արգելաւ 'ի տան , և իւրքն համարելով զնա ոպ̃ ցնորեալ՝ կապե-ցին կապանօք առաջի խստապարանոց ազ-գին . և ա̃ծ կապեաց զլեզու մարգարէին 'ի քիմս նր̃ , և եղև իբրև համր . զի ոչ կա-րէր խօսել ինչ , բայց միայն յորժամ բան տ̃ն լինէր առ նա , զայն բարբառէր համարձակ ։ Յետ յոչ կամիլ հրէից լսել ականջօք զվերջին պաշարումն և զաւերն ե̃մի , դրոշմեաց մար-գարէն զօրինակ նր̃ յանդիման նց̃ 'ի վերայ աղիւսոյ , զի աչօք տեսանիցեն ։

Ապա բանիւ տ̃ն ննջեաց , այս է ընկողմնե-ցաւ մարգարէն 'ի ձախակողմն իւր անընդ-հատ զաւուրս հարիւր և յիսուն , ( կամ ըստ այլ ընթերցուածոյ 190 , և ը̃ս այլոց 390 .) ոպ̃ թէ օր ը̃ տարւոյ փոխանակելով առ 'ի ցուցանելոյ զչափ պատուհասի տանն ի̃էլի և քաւելոյ զանիրաւութիւս նց̃ . և այլ ևս

աւուրս քառասուն, 'ի նշանակ ամենայն յու-
դայ . զի որպէս ասէ, 'ի մարգարէութեան իւրում
մինչև 'ի դարձ գերութեանն յուդայ յառաջ-
նումն ամի կիւրոսի, անցին ամք քառասուն .
և յաւերածէ տաճարին մինչև 'ի կանգնումն
պարսպացն առ նէեմիաւ՝ յորում եղև այլե-
լութիւն գրեթէ ամ ամենայն իէլի, անցին ամք
հարիւր և յիսուն : Նոյնչափ աւուրս հաց
լոկ և ջուր ճաշակեր մարգարէն այ, և այն՝
կշռով և չափով . իսկ հացն էր կազմեալ
խառն 'ի ցորենոյ, 'ի գարւոյ, յոսպանէ, յո-
լոռէ, 'ի կորեկէ և 'ի հաճարոյ, և եփեալ
'ի հուր քակորոյ արջառոյ . որովք գուշակեր
ճգնօղ մարգարէն զսով և զգերութիւն հրէից՝
ըստ մարմնոյ, և ամ մեղաւորաց՝ ըստ հոգւոյ,
եթէ ոչ դարձցին առ ած :

Նոյն յօրինակ կատարածի ջրով և հրով հրա-
մայեաց և ես ած եզեկիէլի ամանոլ ասաեր
յեսամնաւոր սուր քան զածելիս վարսաւրի-
րաց, և գերծուլ զգլուխ իւր և զմօրուս . և
զմասն ինչ 'ի հերաց ըստ սուր անցուցանել, և
զմասն ինչ՝ հրոյ ճարակ տալ . և զմասն ինչ
հոսել հողմոյ . և զայլ ևս մասն պահել առ
ծմկ մի, և դարձեալ 'ի հուր արկանել : Նոյն զի
մի լիցի կարծել ումեք, թէ 'ի վեր են քան
զչափ մեղաց այս ամ սպառնալիք, եցոյց
ած մարգարէին զանչափութիւն անօրէնութեան
ժողովրդեանն . քանզի համբարձեալ զեզե-
կիէլ 'ի տեսլեանն՝ էած 'ի բաբելոնէ յեմ .
և եցոյց նմ զկռուսն 'ի դրունս և յորմս տա-
ճարին . և թէ զիարդ լային զթամուզն ա-

ռաւ

ստացեալ . և զայլ ազգի ազգի գործս գործելին անարժանութե՝ որ յայտնի և որ 'ի ծածուկ ։ Այլ եցոյց մեր եզեկիէլի և զայն տեսիլ, յորում յարձակեցան վեց արք տապար 'ի ձեռին 'ի կոտորել անխնայ զժողովուրդն . և միայն 'ի դրոշմեալսն 'ի ճակատու թաւ նշանաւ խնայեին, որ են կնքեալք նշանաւ մեր խաչին . և յաւել մեր պատուիրել եզեկիէլի չառնուլ սուգ 'ի վ՟ր կնոջն մեռելոյ, 'ի նշանակ անմխիթար պատուհասից տանն իէլի ։

Ուլ յայսր մեզ վերայ՝ բազմօք սպառնայ մարգարէն բանիւ տն և 'ի վերայ այլազգեաց, որք ոտնհար լինէին հրէից . և յետ յիշելոյ զաւուրսն երմի՝ տայ աւետիս դարձի . զոր և հաստատէ նաև տեսլեամբ յարութե ոսկերաց ցամաքելոց՝ յաւուր հասարակաց . նմն և տեսլեամբ շինուածոյ տաճարին նկարագրէ զշինութի երկրորդ տաճարին առ զորաբաբէլիւ, և զկանգնումն պարսպին և դրանցն երմի առ նեեմեաւ . և խորհրդաբար զշինութի եկեղեցւոյն քսի, և զմայելչութի անձեռագործ տաճարի վերնոյն երմի, և սքանչելի դրանցն ըստ անուան իւրաքանչիւր ցեղի . զոր յայտնագոյն եւս նշանակեաց աւետարանիչն յովհաննէս յիւրումն տեսլեան . քանզի և բազում միաբանութի է ըստ բանս եզեկիէլի և յովհաննու . ըղնոյն իմն և զդանիէլէ, որ գրեթէ 'ի նմին ամի՝ յորում դադարեցին տեսիլք եզեկիէլի, սկսաւ տեսիլս տեսանել և մարգարէա-

նալ 'ի բաբելոն ։

Արդ յետ իբրու քսան կամ քսան և հինգ ամաց, յորս մարգարէացաւ խորագգած տեսանօղն եզեկիէլ՝ տեսլեամբք և օրինակօք, բանիւ և գործով, վախճանեցաւ եղև վկայական մահուամբ ։ Քանզի ըստ միաբան աւանդութե հարց և վկայագրաց, առաջնորդ ցեղին դանայ սպան զմարգարէն այ՝ 'ի յանդիմանել նորա զկռապաշտելն ազգին դանայ և գադայ յերկրի անդ քաղդէացւոց. և այն՝ ոմ ասի, կապեալ զերանելին յագի ձիոյ, և վարեալ ընդ վիմուտ տեղիս ։ Բայց օրինապահք բարձին զմարմին սրբ մարգարէին, և թաղեցին պատուով անդ 'ի բաբելոն, 'ի տեգւոջն՝ որ համարեալ էր 'ի բնակչաց շիրիմ նախնեացն աբրահամու, կամ գերեզմանն սեմայ և արփաքսադայ. և յետ թաղման եզեկիէլի առաւել ևս պատուեցաւ տեղին, զի բազմք գնային յուխտ նորա.

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ։

(1) Այնչափ են խորհրդաւոր խորութիւնք և խրթնութիւնք տեսլեանց 'ի մարգարէութե եզեկիէլի, մինչև ասել հերոնիմոսի 'ի մեկնութե նր. * Եզեկիէլ ովկիա-
„ նոս գրոց, միանգամայն և բաւիղ (ֆ լաբիւրինթոս)
„ խորհրդոցն այ ||։ Այդ 'ի մեկնիչս անդր հայի. բայց և ըստ պատմութե վարուց և գործոցն նր՝ որ մեզ էր անկ. տեսանեմք՝ զի բաց 'ի բանից առելոց 'ի գրոց անուելուրոց՝ բազմօրինակ աւանդք են առ հրէայս, առաւել անստոյգք և սուտք՝ քան ստոյգք և հաւաստիք. յորոց

ոչ

ոչ սակաւ բանք սպրդեցին և առ զանազան մատենագիրս 'ի մէջ քրիստոնէից. զի թէ եզեկիէլ անցուցեալ իցէ ընդ օրինակին մովսէսի զհրէայս ընդ քոբար գետ, անթաց ոտիւք իբրև ընդ ցամաք. և քաղդէացիքն 'ի պնդելն զհետ նոցա գետավէժ կորուսեալ իցեն. և թէ՝ աղօթիւք եզեկիէլի տուեալ իցէ յոյժ ժողովրդեան բազմութի ձկանց յաւուրս սովու 'ի կերակուր. և թէ՝ օձք թունաւորք առ ձակեալ իցեն 'ի վր ցեղին գադայ և դադայ. են:

Գրէ ածաբանն գրիգոր 'ի ճառն. խէ. * Ասեն զեզեկիէլէ, թէ յառաջագոյն ծառայ լեալ իցէ երեմիայի ||: որ ոչ այլազգ արդարանայ, բայց իմանալով զծառայն իբրև պաշտօնեայ կմ աշակերտ, որպ եղիսէ՝ եղիայի. զի և ինքն եզեկիէլ էր 'ի քհնյից անտի: Այլ անհեթեթ է այն, զի հրէայք զծառայն որդի իմանալ կամեցան անտի պատճառանօք սուտ մեկնութե. զի որովհետև եզեկիէլ էր որդի բուզեայ, յերադեցին առաքէք, թէ բուզի՝ որ թարգմանի արհամարհ, իցէ նա ինքն երեմիա, և նր որդի իցէ եզեկիէլ. զի ոչ տանին հրէայք կուսակրօն վարուց երեմիայի:

Եզեկիէլ անուանն թարգմանի յոմանց՝ իշխանութի կմ զօրութի այ. և յայլոց՝ զօրութի այ, կմ հզօրացեալ աստ. և այսմ նշանակ տանն այն՝ որ գրեալն է յեզեկ. Գ. 8. * Եւ ահաւասիկ արարի զդէմս քո հաստատուն առա-
,, ջի երեսաց նց. և զյաղթութի քո զօրացուցից առա-
,, ջի հկռկութե նց. և եղիցի յամ ժամ հաստատուն
,, իբրև զվէմ յաղթութի քո ||: Ուր փոխանակ բառիս հաստատուն յառաջին անգղով՝ եբրայական ձայնն է հազաքիմ. յորմէ երևի ծագեալ անուն հեզեքիէլ. այն է եզեկիէլ:

Այլ որ հետաքննին են է՝ միանգամայն և ծաղրալուր, 'ի վաղեմի գարս չփոթեցին ոմանք զեզեկիէլ մարգարէ ընդ պիւթագորայ փիլիսոփայի: 'Ի պէտս բանասիրաց և զբօսասիրաց 'ի մէջ բերցուք զայս խնդիր յայտնի՝ բանիւ կոռնելիոսի ալափիտէին, որ 'ի յառաջաբ. մեկն. եզեկ. ունի այսպէս. * Եղեն ոմանք յառաջնոց, որք համարե-
,, ցան զեզեկիէլ պիւթագորաս լինել. Նոր կղեմայ
,, (աղեքսանդրացւոյ), զի ասէ 'ի Ա. գիրս յաճախս.
,, Պատմէ աղեքսանդրոս 'ի գիրսն՝ որ յաղագս պիւթա-
,, գորեան նշանաց, թէ պիւթագորաս էր աշակերտ
,, նազարեթի ասորեստանցւոյ. ոմանք զնա եզեկիէլ
,, կարծեցին. բայց ոչ է. որպ ցուցցի զկնի: Իսկ կղէար-
,, քոս ճեմական ասէ զանձնէ, թէ ճանաչէր հրեայ
,, զոմն,

,, հի հարկանիմ. և ոչ գիտեմ, զմինչ կոչեցից զնա, կամ
,, յոր անուն անուանեցից. շնչեն արգելք, եթէ գայլ.
,, եթէ ցուլ, եթէ թռչուն, եթէ զեռուն. եթէ մի-
,, ջայլ, եթէ երկերանչող. զի յամ կենդանիս փոխա-
,, կերպիմ, 'ի ցամաքայինս, 'ի ջրայինս, 'ի թռչունս,
,, 'ի բազմակերպս, 'ի վայրենիս և յընտանիս, յան-
,, բարբառս և 'ի ձայնարձակս, յանբանս և 'ի բանա-
,, ւորս. լուղիմ, թռչիմ, 'ի բարձունս օդոյ վերաբե-
,, րիմ, սողիմ, ընթանամ, նստիմ,,: Երրորդ՝ եղեկիէլ
,, և պիւթագորաս չէին ժամու նոյն, այլ սա յետոյ
,, քան զնա. քանզի եղեկիէլ... կանխագոյն էր քան
,, զպիւթագորաս՝ հնգետասան ողոմպիադիւք. ցի 60
,, ամբ ||: Յայս վայր աւարտի. թող և զայլ քննիչս.
զի ԲԸ ամ շարժէ և այսչափ աշխատասիրել մեզ յայսմի
բանից :



Ա.Ր.Ի.Ի.

# ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ

## Եզրի քահանայի և մարգարէի ։

Հռ. մարտ. 12 ։ Լ. յուլ. 13 ։ Բոլլանդեանն ու-ւերերոս, անդ ։ Նատալէ ։ Յովսեպոս ։ Մեկնիչք Գրոց ընդ հարս ։ (1)

ԵԶՐ, ՈՐ ԵՒ ԵԶՐԱՍ քահանայ ա̃յ և մարգարէ, գրիչ և ուսուցիչ օրինաց, էր որդի սարեայ քահանայապետի՝ որդւոյ ազարեայ որդւոյ քեղկեայ՝ յորդւոց ահարոնի, եղբայր՝ ըստ կարծի՝ յովսեդեկեայ քահանայապետի, և հօրեղբայր յեսուեայ յովսեդեկեանց, ծնեալ 'ի բաբելոն յաւուրս գերութեան, և սնեալ օրինօքն ա̃յ ։ Որոյ յարքունիս հասեալ՝ լցաւ հոգւով ա̃յ, և եղև նախանձաւոր մովսիսական աւանդից, օրէնսուսոյց պատուական առաջի ա̃մ ժողովրդեան. և որ մեծն է՝ նորոգիչ ոչ միայն կարգաց և իրաւանց, այլև բուն իսկ ա̃ծաշունչ տառից. ոյր վ̃ն և կոչի գրիչ օրինաց ։ Սա զի յորժամ այրեցին քաղդէացիք զս̃բ տաճարն Երեմի և զմատեանս ա̃յ, զոր գտին, խորթնացեալ էր 'ի մէջ ինչ դպրութ̃ն հին եբրայական գրոց, ըստ մովսիսական տառից

և

և այլ ևս մարգարէական մատենից՝ որ նախկին նշանագրովք էին դրոշմեալ. և մնացեալ էր օրինակ նոյն նշանագրաց առ սամարացիս ևեթ՝ իբր անծանօթ առ բազումս 'ի հրէից, և զսոյն ուրեք էր տեսանել 'ի Թալքուտի զմեծային մատենանս:

Եւ ապա զի առանձին տօհմութեան և ազդեցութեան հօգևոյն՝ որ խօսեցաւ յօրէնս և 'ի մարգարէս, սա ինքն եզրաս՝ որ քաջ մարզեալ սերտ 'ի բերան ունէր զամենայն գիրս, հաւաքեաց 'ի մի և զհին օրինակս, և բովանդակեալ զամէն՝ նորոգ գրեաց ճարտար գրչութեամբ, ոչ առաջին նշանագրաց, այլ՝ քաղդէական տառիւք, յոր յայնժամ առաւել ընտելացեալ էին հրէայք. և այն գիր է՝ որով ցարդ վարին եբրայեցիք. զի զառաջինսն՝ որ այժմ սամարացւոց կամ շամրատացւոց կոչի, սակաւք են՝ որ գիտիցեն: Եւ այսպէս վերստին ընդելացոյց եզր զտունն իւր 'ի կարգացմունս օրինաց, և նախանձու փառացն ամյ աստէպ ընթեռնուլ 'ի լսել ամենեցուն զօրէնս, և կարթէր զնոյն յօրինապահութիւն անդէն 'ի բաբելոնի, գործակից և օգնական գոլով քահանայապետաց ժամանակին՝ յովսեդեկեայ, յեսուայ, և յաջորդաց նոցա. քանզի և յերկար ժամանակս եկեաց:

Եւ զի այսպիսի անձն էր սա՝ պատուեալ ոչ միայն 'ի հրէից, այլև 'ի հեթանոսաց՝ վն ծայրին իմաստութեան իւրոյ և օգտակարութեան յամի, սիրելի եղև նաև յաչս արտաշէսի արքային պարսից՝ երկայնաձեռն կոչեցելոյ 'ի

կար-

կարգի յաջորդացն կղերոսի ․ և հրամանաւ նր՟ արձակեցաւ 'ի բաբելոնէ յեմ՟ մեծաւ պատուով՝ իբր չորեք հարիւր վաթսուն ամօք յառաջ քան զք՟ս , ուսուցանել հրէից զօրէնս այ՟ բանիւ՛ և գրով ։ Նա և եկեալ սրբեաց զժողովուրդն և զքահանայս , 'ի բաց արձակելով 'ի նոցանէ զայլազգի կանայսն հանդերձ որդւովք իւրեանց ․ և ժողովել զբազմութիւն ազգին 'ի նորաշէն տաճարն զօրաբաբէլի՝ ընթեռնոյր և մեկնէր օր ըստ օրէ յականջս նց՟ ժողովրդեան զօրէնս և զիրաւունս այ՟ , և առաջնորդէր ամենեցուն գնալ 'ի պատուիրանս և 'ի հրամանս նն՟՝ ըս՟ մովսիսական և մարգարէական մատենից ։ Նա և այնպէս բազմամեայ վաստակօք և առաքինի վարուք ելից զաւուրս իւր յեմ՟ ․ և անդ թաղեցաւ պատուով ։

Զսա նր՟ ոչ յարեաւ այլ ոք այր մարգարէ այ՟ բանիւ՛ կմ՟ գրով , մինչև 'ի գալուստ փրկչին , որ տր՟ն էր մարգարէից , և եկն 'ի լնուլ զբանսն՝ զոր խօսեցաւ 'ի ձեռն ծառայից իւրոց , 'ի փրկութիւն տիեզերաց ․ քանզի և մաղաքիաս վերջինն 'ի մարգարէս՝ էր ժմկակից եզրայ ․ մինչև ոմանց ընդ մի համար դնել զերկոսեանսն ․ այլ և այլք նոյնացուցին զերզր բ՟ նէեմեայ , կմ՟ ընդ յովսեդեկեայ ․ զի էր յաւուրս նց՟ , և երևելի ժբ՟ զնն ։

Նա է և եզր ոմն տաղաթիէլ կոչեցեալ , որ արտաքոյ երից գրոցն եզրասայ գրեաց զկնի զգիրսն՝ որ կոչի չորրորդ եզրաս ․ որ միշտ երկբայելի կամ անընդունելի ծանուցաւ ․

մինչ

,, ամենեղէն գիրս վերստին յիշել, և ուսանել հրէից
,, նորանկար եբրայեցւոց նշանագրաց ( որ է քաղդէա-
,, կանն ), վա պատերազմաց Ծին հասանելոյ||:

Այսպէս խօսին և այլ երանոս, տերտուղիանոս, կղե-
մէս աղեքսանդրացի, այլն բարսեղ, հերոնիմոս, իսի-
դորոս, զենոնդիոս, և այլք. որպէս և 'ի յետնոց լևոն
կայսերացի: Եւ զայս ոմանք 'ի քննչաց ոչինչ տարադէպ
վարկանին ըստ իւրեանս. այպաքէն ասեն և մը անտոն
պատուհասցին սերտ 'ի բերան ունէր զնը գիրս ամ. վա
և կորուստ տապանակ ուխտի, կամ արկղ կտակարա-
նաց. և դրիջ իսկ վարուց նը ասէ. * Այնպէս սերտ
,, և աւինդ ունէր 'ի յիշողութն զհին և զնոր կտակա-
,, րանս, մինչև կարող իսկ էր համգոյն եղբ՝ եթէ
,, պէտք իրացն պահանջէին, զամ ամենեղէն տառս ան-
,, թերի 'ի լոյս ընծայել յուշոյ իւրմէ, նոյն և պակա-
,, սէին օրինակք ամ||: Իսկ մեք իսկ տեսող եղեաք ոմանց
ոմանց յարևելս և յարևմուտս, զի զնոր կտակարանս
ողջոյն և զբազում սաղմոս 'ի հնոյն, ոմն և զայլ գրեանս
ինչ ամբողջ 'ի բերան գիտէին և խօսէին կարգաւ.
վա ոչ մեծ զարմանք թուին, եթէ և եզրաս սերտեալ
ունէր զգիրս օրինաց և մարգարէից. թող զի տուեալ
զհինգ գրոց մովսեսի էր բանն:

Այլ սակայն թէպէտև ոչ անհնար թուեսցին իրք,
եւ տուեալ դիւրահնար հոգւով այլով, համարակաց
կարծեօք անտեղի երևի այդմ այդպէս լինել. զի գտնէ-
առ արտաքս պակասէր հին հեղինակութիւն գրոց, և
մնայր բովանդակ հեղինակութիւն յանձին եզրի. զոր
դժուարին է ասել: Այլ ասելի է թէ միայն վերպու-
թն խմաստութն մեկնչաց, թէ համբ իսկ ոչ հաստատեն
զայդ կարծիս, այլ իբրև ուսանդ ինչ յիշատակեն, այսպ-
էս ասի՝ ասելով. իսկ հինն ուսանդիցս է արդէն
երկբայական և անընդունելի. զի առեալ է առաւելա-
պէս 'ի գրոց չորրորդ եզրասայ. 'ի ժդ գլխոյն: Եւ
դարձեալ՝ ոչ գիրք հաստատեն, և ոչ միոք հաւանին,
թէ յայրել քաղդէացւոց զտաճարն և զմատեանս նէմի,
չեցէ մնացեալ այլ օրինակ 'ի մէջ տանն իէլի և յուդայ
և 'ի սփիւռս ազգի նը. այլ զի 'ի պատճառս խռովութ
ժմին և առ ահի հեթանոսաց 'ի թաքստի էին օրի-
նակքն, 'ի լոյս ածեալ զայն եզրի նոր գրով քաղդէաց-
ւոց եւր նոր նորոգութն համարեցաւ իրաւամբք. թող
և զայլ նշանակս 'ի գրոց և 'ի պատմութեց՝ թէ կային
օրինակք ինչ մատենից 'ի ձեռս զանազանից. զը թ պատ-

# ԿԱՐԳՔ ՍՐԲՈՑՆ

## Զաքարիայ հօրն յովհաննու մկրտչի։

Հ. Յ. սեպտ. 5։ Լ. նոյեմ. 5։ Հայք և Լեհնէք։

ԶԱՔԱՐԻԱ ԾՆՈՂ մեծին 'ի ծնունդս կանանց, մարգարէածին և մարգարէաշնորհ 'որ քահանայն զաքարիա՝ էր յազգէն ղևեայ յորդւոցն ահարոնի, 'ի դասակարգէ աբիայ, որ յաւուրս դաւթի արքայի ութերորդ էր 'ի կարգի քսան և չորս երիցանց պաշտօնէից տաճարին յահարոնեան տանէ, որք էին իշխանք սրբութեցն և առաջնորդք 'ի տանն տն։ Այլ ո՛չ այնչափ ստոյգ է քահանայապետն գոլ զաքարիայի՝ որպէս ոմանք յառաջնոց համարեցան, որչափ 'ի համարոյ գլխաւոր քահանայից, որք խնկարկէին առաջի սեղանոյ խնկոց՝ արտաքոյ վարագուրի սրբութն սրբց, և զայլ պաշտամունս կատարէին շաբաթաւոր կարգօք։ Այնպէս և որպէս էր կինն զաքարիայ սքանչելին եղիսաբէթ՝ որ զօրութբ տոհմախմբի ը աւն իւրում, էր 'ի դստերաց ահարոնի, արդար արդարոյ վիճակեալ՝ և 'ի տնէ պատշաճեալ. քանզի երկոքեանն իսկ էին ստուգապէս եր-

կիւզամբք յայ , և տիրապէս արդարք , ո՛չ առ աչս մարդկան՝ որոց առաջի ձևանալ դիւրին է , այլ՝ առաջի այ . և գնային ը̅ աւետարանագրին՝ յամ պատուիրանս և յիրաւունս տն անարատք , բնակեալ 'ի միում 'ի քաղաքաց ցեղին յուդայ 'ի լեռնակողման՝ ոչինչ հեռի յեմէ :

Այլ տէր փակեաց զարգանդ եղիսաբեթի , զի յետ անցանելոյ զաւուրբք՝ կրկնակի սքանչելեօք 'ի լոյս ընծայեսցի մանուկն սքանչելի , որ հանդերձեալ էր կարապետ լինել բանին այ , յամուլ մօրէ պառաւելոյ և յալեօրեալ հօրէ . ոպ և եղև իսկ աւետարանութն մեծին գաբրիէլի առ զաքարիա . զոր մի առ մի ձայնէ աւետարանն ղուկայ : Այլ ոպ իմաստասէրքն վկայեն 'ի բանից անտի սրբոյն ղուկասու , աւետիքս ծննդեանն՝ ոպ զաքարիայի տուեալ 'ի տաճարի , նոյնպէս և եղիսաբեթի յայտնեցաւ 'ի տան՝ հանդերձ անուամբ մանկանն , որ ծնանելոցն էր . զի ուր կայր մնայր զաքարիա պապանձեալ լեզուաւ մինչև ցօր ծննդեան և թլփատութե մանկանն , եղիսաբէթ մայր մանկանն իբրև իրազէտ հոգւով ասնդէր՝ թէ յովհաննէս կոչեսցի անուն զաւակիս . քանզի և եղիսաբէթ էր արժանաւոր հոգւոյն սբ ընդունելութե , և լցեալ եւս էր հոգւով սբվ 'ի գալ առ նա մօր տն և կուսի , մինչդեռ յարգանդի կրէր զառասեակն արեգականն արդարութե :

Այլ որ մեծն է , զոր ասաց մայրն՝ զնոյն և հայրն հաստատեաց , դրեալ 'ի տախտակի՝

եթէ

եթէ յովհաննէս է անուն դորա . և նոյնժամայն արձակեցաւ լեզու հօրն՝ ո̄ւ նշանակել զանուն որդւոյն , որ լինելոց էր ձայն բարբառոյ յանապատի . և լցաւ զաքարիա հոգւով ս̄բ̄վ , և սկսաւ մարգարէանալ օրհնութ̄բ̄ , փառս վերառաքելով ա̄յ վա̄ եղելոցն իրաց և լինելեաց 'ի մօտոյ , և քարոզելով զխորհուրդ աքանչելեացն , եթէ առ ի՞նչ եղև ծնունդ այնպիսի նորանշան զաւակի , և ո՞յր կարապետ և մարգարէ կարգեցաւ մանուկն իւր , այս է յառաջընթաց փրկչին տիեզերաց՝ ք̄սի որդւոյն ա̄յ , որ եկն 'ի փրրկել զորդիս մարդկան 'ի ձեռաց աներևոյթ թշնամւոյն հասարակաց , և լուսաւոր առնել զորս նստէինն 'ի խաւարի և 'ի ստուերս մահու ։

Մ՚եծ եղեն այցելութիւնք ա̄ն՝ որպէս ա̄մծի , նոյնպէս և առաւել ևս՝ տանն զաքարիայ և եղիսաբեթի , ուր եկաւորէր որդին ա̄յ յղացեալն 'ի կուսական արգանդի՝ ելից զտունն և զբնակիչս նո̄ր երախայրեօք երկնաւոր օրհնութե . և մայրն ա̄յ՝ տաճար բանին մարիամ՝ օրհնաբանական երգով տաճարացոյց զտունն զայն . և այնուհետև՝ ո̄պ յովհաննէս յորովայնէ յորովայն երկրպագէր ք̄սի , նոյնպէս և եղիսաբէթ ձայնակից լինէր օրհնութեան կուսին . և զաքարիա քահանայ 'ի դէպ ժամանակի յաւելոյր 'ի նոյն ձայնակցութիւն զօրհնութիւնս 'ի բարձունս ։ Եւ այս ոչ փոքր պատիւ զաքարիայի , զի բանք օրհնութեան

նր՝ զոյգ ընդ մեծացուցէ որհնաբանութե
կուսին հանապազօր պաշտի յեկեղեցի այ
՚ի վեր քան զդաւթեան սաղմոսերգութի ,
զոյգ ընդ ըղձաձայնութեան սիմէոնի ծե-
րունւոյն ։

Իւ արդ՝ եթէ բանիւք զայնպիսիս բարբա-
ռեցաւ զաքարիա մարգարէական տեսանէիս
զորդւոյ իւրմէ զյովհաննէ , և զա̃ծորդւոյ
կուսին , զի՞նչ արդեօք ՚ի սրտին խորհրդա-
զգած լինէր յաւուրս լռութենն , որ տեւեաց
աւելի ք̃ զինն ամսեայ աւուրս . յայտ է թէ
չորչափ անբարբառ մնաց լեզուն , այնչափ
առաւել խելամուտ եղև սիրտ նր̃ խորութե
առաջիկայ խորհրդոց և մեծամեծացն այ ,
զորս զկնի և բերանով բացածանոյց՝ որպէս
փոքր ՚ի շատէ ։

Բայց ոչ զկապանս լեզուին հրաշալի համ-
բերութբ տարաւ՝ կատարեալ միաբանութբ
ը̃ կամս այ , նոյնպէս և ՚ի բանալ բերանոյ
իւրոյ անդրէն՝ ոչ դադարեաց երբեք յօրհ-
նելոյ զա̃ծ զա̃մ աւուրս կենաց իւրոց նոր
երգովք ցնծութե . զի մեծ արար ոչ զողոր-
մութի իւր ը̃ նմա՝ միանգամայն և ա̃մ ազի ,
տալով զայնպիսի զաւակ շնորհաբուծ՝ քարոզ
փրկութե ազի ։

Չեւ այսպիսի ուրախութ կրեաց ծերունին
զաքարիաս և նեղութիւն ոչ սակաւ ՚ի պատ-
ճառս պանծալի զաւակին , մանաւանդ թէ
՚ի պատիւ փառաց երկնաւոր թագաւորին
այն ինչ ծնելոյ . զի ոմ̃ ասի , յորժամ անօ-
րէնն հերովդէս ՚ի խնդիր եղև կոտորանել
զկեն

զկենսատուն տիեզերաց զմանուկն յս, և տաւաքեաց կոտորեաց զմանկունս բեթղեհեմի, յղեաց և խնդրակս 'ի լեռնակողմն վս յովհաննու . զի ասուն նր հնչել էր ՟Ը ամ հրէաստան, թէ զի՞նչ լինիցի մանուկս այս ։ Յայնժամ 'ի տագնապ տարակուսի անկեալ զաքարիայ և եղիսաբեթի՝ փութացան աներևոյթ առնել զմանուկն . և խնամօքն այ ապրեցաւ մանուկն հանդերձ մարբն՝ ղօղել 'ի քարանձաւս լեռնակողման . կմ ըստ այլք ասեն, 'ի փախչել նց յանապատն կոյս՝ բացաւ վէմ մի, և 'ի ներքս ընկալաւ զեղիսաբեթ և զյովհաննէս . մինչև ունայնաձեռն յետս դարձան խնդրակք, և ապա յովհաննէս սնաւ յանապատի առ հօվիւս . իսկ եղիսաբէթ եկեալ 'ի տուն իւր՝ կատարեաց զաւուրս իւր խաղաղութբ ։

Այլ վս զաքարիայի աւանդութի է բազմաց, թէ մատնեցաւ 'ի ձեռս հերովդի արքայի կմ հերովդիանոսաց, և սպանաւ 'ի տաճարի . զի սա կարծի յոմանց զաքարիա որդի բարաքեայ սպանեալ ՟Ը մէջ տաճարին և սեղանոյն . ոմ և յայլոց զաքարիա մարգարէն մին յերկոտասանից ։ Բայց թէպէտ և ստոյգ այս պահեսցի բանն, ոչինչ անկարծելի թուի և սուրբն զաքարիայ քահանայի սպանումն 'ի հերովդէ՝ եթէ 'ի տաճարի, և եթէ արտաքոյ . ոմ և որդին իւր յովհաննէս 'ի միւս հերովդէ գլխատեցաւ . զոր ոչն յիշեաց նորն իբրև քաջածանօթ ամենեցուն 'ի ժամանակին ։ Արդ ասի վասն սուրբն զաքարիայ հօր յով-

յովհաննու մկրտչի՝, թէ զմարմինն նր խող-խողեալ՝ եւ ընկենուլ հերովդէս 'ի խորա-փիտ մի. զոր բարձեալ երկիւղածաց՝ թա-ղեցին 'ի գերեզմանս հարց նորա. և ոմանք ժողովեցին զարիւն նր 'ի փոքրիկ շիշս և 'ի կտաւս:

Հաստատուն աւանդութիւն է սեպհական ազգիս, թէ յաւուրս սրբոյն գրիգորի մեր լուսաւորչին բերաւ 'ի հայս յարենէ սրբոյն զաքարիայի, որ եդեալ էր 'ի շիշ մի փոքրիկ. ընդ նմին և մասն ինչ 'ի նշխարաց սրբոյն պան-դալեոնի բժշկին, որ կատարեցաւ նահա-տակութեամբ առ մաքսիմիանոսիւ: Այլ յորժամ գնաց յաղուանս սուրբն գրիգորիս թոռն սրբոյն գրիգորի, ընդ իւր տարաւ զայն պատուական մասունս սրբոց. իսկ 'ի մարտի-րոսանալ նորա անդէն՝ 'ի գերեզմանի նո-րուն եդին զայնոսիկ հաւատացեալքն. զի մի 'ի ձեռս անկցին բարբարոսաց: Այլ այսա-յաւուրս վաչագանայ բարեպաշտ արքային աղուանից՝ յորժամ յայտնեցան նշխարք սրբոյն գրիգորիսի աղուանից կթղկսի, ընդ նմին 'ի վէր ելին և արիւն զաքարիայի և մասն ոս-կերաց պանդալեոնի՝ յանուանէ նշանակեալ. Իսկ պատմութիւն և պատճառք արեանն նահատակելոյ զաքարիայ հօր յովհաննու մկրտչի, որպէս 'ի յայսմաւուրս հայոց, նոյն-պէս և 'ի յունացն աւանդին՝ առանց ընդ-դէմ ինչ ածելոյ. եւ առաւել 'ի ժամա-գիրս նոցա կան երգք և տաղք նկարագրու-թն նոցին իրաց. թող և զչափազանց ձե

հաւե-

հաւատարմական, որով նուագի անդանօր՝ ոչ թէ արիւն նորա եղև առիթ փրկութե՟ ծի. զոր ոմանց նիւթապէս առեալ՝ ոչ լուաք, խղճեն նուագել. և յիրաւի՝ զի պատերազմօղ է լսելեաց: Հռովմայեցիք յանուանէ յիշեն և զեղիսաբէթ 'ի տօնել անդ զզաքարիա. զոր հայք և յոյնք զօրութ՟բ իմանան, ոչ և զմ՟մ նախամարս 'ի տօնի նախահարց:



# ՏՕՆ ՍՐԲՈՅՆ

## Յովհաննու կարապետին չորրորդ, զկնի երից առաջնոց:

Հ. յուլիս. 5, կմ՟ 11. և օգոստ. 29. և փետր. 24. և յունիս. 14:

Պատճառ տօնիս մեծի Մկրտչին յայսմ հայրե՝ բաղդատելի տեսանի. զի որովհետև յայս և 'ի սոյն միջոց պատահի և խաչի վերացմանն տօնք յուլիս և օգոստոս ամսոց տատանելապէս, եթէ 'ի կարգ յուլիսի անհարթեցուցանք, ծննունդ կարապետին դնի 'ի յայսմաւուրս հայոց 'ի յուլիսի 5, կմ՟ 11. որ և ըստ յունաց և ըստ հռովմայեցւոց փոխի մի յաւուրն կարգի 'ի յունիսի 24: Նա եթէ յընթացս օգոստոսի նկատեմք, գլխատումն է Մկրտչին 'ի 29. օգոստ. միօրինակ ըստ յայսմաւուրաց երեցունց ազգաց: Այլ կամ 'ի խորհուրդ ծննդեանն, և կմ՟ 'ի խորհուրդ գլխատմանն ունի

հայել

տեաց և ձեռնադրեաց 'ի յորձանման յորդանանու, զմարգարէականն և զառաքելական քարոզութիւն զուգաւորեալ ընդ պաշտաման կարապետութեան բանին Աստուծոյ. որ և զընթացն նորա վկայութեամբ և վկայական արեամբ. և մե՛ծ 'ի ծնունդս կանանց վկայեալ լինէր 'ի բերանոյ Ճշմարտութեան, որոյ եղև վկայ: Նազի այս այսպէս, կարի ճահողապէս' ոչ միանգամ և ոչ միւսանգամ տօնախմբել բաւական համարիմք զերիցս երանելին, այլ և երիցս և չորիցս' մինչև 'ի լնուլ զթիւ սրբոց աւետարանչաց. զի և սա կենդանի աւետարանիչ, և յաւետարանչաց գովութեամբ ճառեալ

ըստ քառեակ խորհրդոյ տօնից իւրոց:

Ծնունդ սրբոյ կարապետիս սքանչելի' ճոխաբար պատմի 'ի սկիզբն աւետարանի, որ ըստ ղուկասու. պաշտօն մկրտչին ընդարձակ նկարագրի 'ի միոյ միոյ 'ի չորից աւետարանչաց. և գլխատումն միօրինակ պատմի յերից անտի իբրև 'ի միոջէ բերանոյ, 'ի մատթէոսէ և 'ի մարկոսէ և 'ի ղուկայ. այլ և թաղումն մարմնոյն 'ի ձեռն աշակերտաց' խորհրդով 'ի վեր բերի. յորում և զգիւտ և զփոխադրութիւն պատուական գլխոյն և նշխարացն իմանամք բովանդակապէս. զի թէ չէր ծածկեալ զանձն յագարակի, ապա և ոչ յայտնեալ. և եթէ չէր սգացեալ որպէս կորուսեալ, ոչ ևս էր գտեալ. և այն զի' եթէ գլխատումն տօնելի եղև անտրտում, ապա և գիւտ գլխոյն և նշխարացն կրկին տօնեցի ուրախութեամբ' զոյգ ընդ ցնծութեան ծննդեանն և պաշտաման մկրտութեան.

թեան. քանզի և լուսաւորիչն մեր զմի կար-
գեաց տօն 'ի պատիւ ա̅մ խորհրդոց մկրտչին.
Արդ ինձ ո՞ տացէ յաւուրս հանդիսի բան
բաւական՝ ասել զքոյին մեծամեծս՝ ով մեծդ
'ի ծնունդս կանանց, եթէ ոչ դու շնորհեա-
ցես անարժան անուանակրիդ 'ի ժամուս իբ-
րև 'ի փոխ ցանկալի զգեղեցիկ ձայնդ բար-
բառոյ, լսելի առնել ը̅ տիեզերս զգովութիւս
քո. Թէպէտև այն անկարօտ մերումս գով-
ման. զի քոյդ քաջահնչօղ բարբառ զմ̅նէ
քումմէ՝ և զքեզ քաջածանօթ արար ծա-
գաց 'ի ծագս աշխ̅ի, իբրև պարագլուխ մար-
գարէից և առաքելոց՝ զորոց գրեալն է, ը̅
ա̅մ երկիր ել բարբառ ն̅ց, և մինչև 'ի ծագս
աշխ̅ի են խօսք ն̅ց։

Որ եթէ մարգարէ զքեզ ձայնեսցուք, այո՛,
և առաւել ևս քան զմարգարէ՝ երկրորդէ
զքէն բերանն ա̅ծեղէն. և եթէ առաքեալ,
նոյնպէս հաւատարմացուցանեն բանք մար-
գարէից զքէն երկրորդեալք յաւետարան-
չաց, եթէ դու այն ես՝ զորմէ ասաց որ առա-
քեացն. ահաւասիկ ես առաքեմ զհրեշտակ
իմ առաջի քո, որ հանդերձեսցէ զճանա-
պարհս քո առաջի քո։ Արդ ուրեմն որով
առաքեալ, նովիմբ և հրեշտակ ա̅ն ամենա-
կալի ցուցար, 'ի մարմնի հրեշտակդ՝ հոգւով
զուարթուն հոգեղինաց ցանկալի և նախան-
ձելի. զի որում դասք սերովբէից և քերով-
բէից ահիւ 'ի պաշտօն կային երկրպագութե̅,
դու անդստին յորովայնէ յորովայն նմին եր-
կրպագու՝ 'ի հասանել ժամանակին համար-
ձակ

ձակ ձեռնադրող և մկրտիչ նմին հրամայե-
ցար լինել. և փեսաւէր և բարեկամ երկնա-
ւոր փեսային զանձն անուանել համարձա-
կեցար, որ նա և պսակիչ էր հարսին եկեղե-
ցւոյ ծանուցար, խօսելով զնոր ժողովուրդ-
քնի՝ իբրև զկոյս մի ոք յանդիմանն կացու-
ցանել նմա, զեռիչն մաքրութե և հոգւով խա-
ռովանութե և ապաշխարութե. և այնպէս 'ի
ձեռս աւանդեցեր փեսայացեալ բանին ըղ-
հարսնացեալս եկեղեցի 'ի հնազանդութի, և
զծրին փառաց 'ի տուն ածեր նորոյ սիօնի.
զի ածցէ և սա զնա 'ի տուն հօր իւրոյ երկ-
նաւորի:

Տեսանէ՞ք ով մանկունք սիօնի նորոյ զգե-
րածայրեալ պաշտօն մեծ կարապետին և
մկրտչին յովհաննու. որ և ձեզ փառք պար-
ծանաց՝ աշակերտելոց երկնաւոր վ̄դ̄պին,
իբրև նախավարժիչ ձեր յօրինակին. զի նախ
'ի գլխաւորան յովհաննու մարգեցան՝ որք ար-
ժանաւորեցան կոչիլ յաշակերտութի քնի.
նախ յովհաննու ձայնի բարբառոյ յանապա-
տի լուան՝ ոյք զհետ չոքան ձայնի քաջ հով-
ուապետին. նախ 'ի յովհաննու մկրտութե
կզացան՝ որք վերստին ծնան մկրտութն քնի.
ոչ և նախ 'ի լոյս ճրագին յովհաննու լուսե-
լացան՝ ոյք լուսաւորեցանն յարփիափայլ
ծագման արեգականն արդարութե:

Այլ այս ոչ փոքր պատիւ, բազմարինակ սա-
տար լինել փոքուն 'ի մեծութի փառաց մե-
ծին: Պատիւ անձին գրեք բերդելի գազանա-
դացի ապաստուորութի հարկանել արքային

դաւ

դաւթի առ անցուցանել զնա ընդ յորդանան . ո՞րչափ ևս առաւել մեծաշուք փառք յովհաննու և անհամեմատ պատիւ, սպասահարկու լինել որդւոյ դաւթի, որ և որդի այ, թագաւոր թգրաց և տր տրանց, առ անցուցանել զնա ընդ ջուրս յորդանանու՝ նորահրաշ խորհրդով մկրտութե, յորմէ մաքրութութե և փրկութի ծի ։ Ո՛չ յեսու և ոչ մովսէս առ սովաւ մեծ, ո՞չ սա առ նոքօք մեծագոյն . զի ոչ միայն զժողովուրդն, այլև զփրկիչն գլխովին ժողովրդեան անցուցանէր ընդ ծովծական և ընդ յորդանան մկրտութե ։ Ո՛չ ահարոն առ սովաւ մեծապատիւ, ո՞չ սա առ նովաւ գերապատիւ . զի զքահանայապետն ճշմարիտ ընդ կարգին մելքիսեդեկի ձեռնադրէր կարապետն՝ հանդերձ օծութե հոգւոյն իջելոյ 'ի յորդանան 'ի վր էակցին աղաւնակերպ երևմամբ . որով ղևտացին յովհան որդի ղևտացւոյ զահարոնեանն զքահանայութի խափանելի գոլ վըկայէր առ քնի որդւոյն այ, վն և ոչ ինքն քահանայանայր զկնի հօր իւրոյ զաքարեայ, այլ սարկաւագել մշտնջենաւոր քահանայապետին երկնաւորի՝ գերագոյն փառք և մեծութի անձին գիտէր . զի թէ որ մերձենայ առ մեծն՝ մեծանայ, ապա և ածամերձն՝

ածանման ճանաչի ։

Այլ լռեցարուք զբան ոն ահաւոր, որք մեծութե էք ցանկացողք երկնաւորին, եթէ ի՞նչ է մեծութի յովհաննու 'ի վեր քան ըզ-
ան . զի ուր հաստատեացն անսուտն ճշմար-

մար-

մարտուԹ զմկրտչէն իւրմէ, եԹէ սա է մեծն 'ի ծնունդս կանանց, 'ի վերայ եւած. բայց փոքրիկն յարքայուԹ երկնից մեծ է քան զնա: Փոքրկացամբ ուրեմն արդեօք պատիւ մեծին. և զիա՞րդ. բայց զի իմացուք 'ի խորա և 'ի յորդոր մեզ այսու. եԹէ արդարև յերկրի եւեԹ միայն մեծուԹի յովհաննու, փոքր էր յովհաննէս և քան զյետինն 'ի փոքրկանց երկնից: Իսկ արդ՝ ոչ և ինքն յովհաննէս յետ վկայելոյ Ճշմարտութեան և գլխատելոյ վա վկայութեան, հիւԹական մարմնով յերկրի պարածածկեալ՝ աննիւԹական հոգւով Է քնի յարքայութիւն երկնից վերափոխեցաւ, յայտ է Թէ յաւուր համբարձման տն յերկինս. և կարի իսկ քաջ: Ապա ուրեմն ոչ մեծն փոքրկացաւ, այլ փոքրիկն ևս քան զևս մեծացաւ. և արդարև փոքր էր նր երբեմն մեծութի առ այժմու անանց մեծութե. զի նախ յերկրի էր, և այժմ՝ 'ի վերոյ Է զերկինս երկնից. արդ որչափ հեռի են երկինք յերկրէ, այնչափ բարձր է վերջին մեծութի յովհաննու քան զառաջինն. մինչ զի առաջինն առ վերջինովն՝ փոքրկութի էր քան մեծութի, բայց և վերջինն զառաջինոյն կախեալ:

Եւ ո՞ յերկբայեսցի. զի յերկրի պատիւն էր մեծ, այլ յերկինս փառքն մեծագոյն. աստ պաշտօնն մեծ, անդ պսակն մեծագոյն. յերկրի անշուք ըստ արտաքնոյն, յերկինս արտափայլեալ շքով Է չափու ներքին պայծառութեն հրաշափառապէս. աստ անարգա-

 նայ

ճայճ խոշորազգեաց սուսապատ և մաշկե-
գօտի, անդ փառազգեաց լուսաճաճանչ՝ է
մէջ ածեալ զերկնից ծիածան. աստ մարախ
և մեղր վայրենի չափով կերակրեալ, անդ 'ի
մանանային թաքուցելոյ 'ի բուն 'ի կոչունս
երկնաւոր թագաւորին՝ բարեկամին իւրոյ
վայելեալ, և յուղխից փափկութե արբեալ.
աստ տնանկ և վաստակաւոր 'ի մանկութէ,
անդ 'ի հանգիստ մշտնջենաւոր գոգել։ Եր-
բեմն ճգնաւորն անապատաւոր, և այժմ փա-
ռազուն թագաւոր. երբեմն ձայն բարբա-
ռոյ յանապատի, այժմ ձայնապետ հրեշտա-
կական պարու 'ի յերկնի. երբեմն մշակ ար-
դարութե, այժմ ամբարեալ 'ի շտեմարանս
արքայութե. երբեմն քարոզ և վկայ ճշմար-
տութե և արդարութե, այժմ քարոզեալ
և հռչակեալ ներբողական ձայնիւ՛ զուարթ-
նոցն բազմութեան ։ Եւ պարզաբար՝ որ
երբեմն մարգարէ և առաքեալ և մարտի-
րոս գլխովին արեամբ նահատակեալ, այժմ
փառաւորեալ 'ի գունդս մարգարէից, վե-
րապատուեալ 'ի դասս առաքելոց, և պսա-
կեալ 'ի գլուխ պսակահոյլ բանակաց բիւ-
րաւոր վկայից, վարդագեղ և շուշանափայլ
զարդուք ականաւոր 'ի հոյլս մաքրակրօն
կուսից արեամբ պսակելոց ։

Տեսե՞ր զահաւոր մեծութի մկրտչին է փո-
քրկումն և է մեծամեծս յերկնից արքայու-
թե. տեսե՞ր և զպատճառս մեծանալոյն՝
զաստատանոր խոնարհութիւն, զհիմն ասեմ
երկնաբերձ բարձրութեն. զի թէ ոչ սեր-

մանել սոսա առատութ՟բ զվաստակս առա-
քինութեան, ոչ մեծանայր 'ի փառս անձ. երա-
նութեան: Ո՛ն առեալ և մեք եղբարք, մի՛
ստանօք պատուով և մեծութ՟բ բարձրամբ-
տեսցուք, այլ առաւել խոնարհութ՟բ անդա-
նօր բարձրութե և մեծութե ուշ կալցուք. որում
մի միայն սատար՝ փոքր լինել յերկրի, ևս
առաւել փոքրկանալ յաչս անձին. զի որ
խոնարհեցուցանէ զանձն, բարձրասցի. որ
վաստակի, նոյն և հանգչիցի. որ ճգնին՝
վարձատրեսցի. և որ յաղթէն՝ պսակեսցի.
չի՛ք այլ ճանապարհ յերկինս 'ի վեր՝ յեր-
կիր 'ի խոնարհ:

Որ և ես ինքնին ասէ տ՟ր, որ եմ ճանա-
պարհ, ճշմարտութի և կեանք, յանձնէ ետու
ձեզ օրինակ, կնքեալ բանիւք ո՟տ առաքելոց.
ո՞չ զնոյնս պարտ էր չարչարիլ ք՟րի, և մտա-
նել 'ի փառս իւր. և զնոյն ակնարկեցի ըղ-
կարապետէս նախաճառեալ առածիւ. ո՞չ
զնոյնս պարտ էր կրել յովհաննու մկրտչի՝
անցս ճգնութե, քարոզութե, և նահատա-
կութե, և այնպէս մտանել յիւր փառս. զի
մեծն 'ի ծնունդս կանանց լինիցի մեծ և յե-
րամն արդարոց և 'ի դասս երջանկաց. ապա
թէ ո՞չ՝ եթէ ոչ կատարեսցէ զընթացս իւր
մեծապէս առաքինութ՟բ, ոչ մեծասցի քան
զայլս յարքայութե. ո՞րք և առաքելոցս նոյն
օրինակ ազդեցի, եթէ ոչ առաւելուցու ար-
դարութի ձեր աւելի քան զդպրացն և զփա-
րիսեցւոց, ոչ մտանիցէք յարքայութի երկնից:
Արդ քանզի կատարեցաւ կատարեալն իմ

մեր-

Մկրտիչ կատարելապէս զամ զկամս իմ, վասն և ես պսակեցի զնա փառօք մեծութեան երկնաւոր կատարելութեն, որ ոչ գտանիցի և յերկիրս կանանցածին այլ մեծ քան զյովհաննէս · զի ոչ ոք այլ մօտաւոր առ իս 'ի մէջ խմբից առաքելոց, մարգարէից, վկայից, միաբանակրօնաց, կուսանաց, միանձանց, և ամ դասուց արդարոց՝ որպէս զկարապետն իմ և զմկրտիչն յովհաննէս, որ զբոլորեցուն եցոյց յանձին իւրապէս զառաքինութեանց զհանդէս · ով և ոչ յաստեղս երևելիս գերապայծառ քան զարուսեակն լուսաբեր առաւօտեան՝ գեղեցիկ շողշողեալ, զի որում առաւել համանման և մերձաւոր փայլման գեղեցիկ լուսնի՝ օրինակի մօր իմոյ, և ընտիր արեգական արդարութե ։

Որ և զայնու ոչ է պարտ զանց առնել, զի և հարազատ ազգակցութբ հպաւոր մարիամու և յին՝ մկրտիչն յովհաննէս տեսանի առաւել քան զամ տաճարակիրս կարծեցեալս · զի թէպէտև մերձաւորագոյն երևէին եղբարքն անուանակոչեալքն՝ յազգէ նորին յովսեփայ ծնահայր անուանելոյ, այլ քանզի անհայր ծննդեանն 'ի կուսէն միայնոյ էր Տէրն մեր, ազգականք կուսին մերձագոյն ազգակիցք էին յին · յորս զառաջին տեղին ունի մկրտիչն յովհաննէս ։

Եւ զի այսորիկ այսպէս, եկայք հաւատացեալք քոի՝ 'ի տօնի մեծ կարապետիս, զոր միշտ ունիք բարեխօս համարձական, և պատուէք վայելչապէս փառօք չորեքկին տօ-

նախանձութե, և մեծարէք աղօթիւք և պա֊
հօք · առաւել կամաւոր ծոմապահութբ, է՛
որ եռօրեայ, է՛ որ հնգօրեայ, եւ և եօթ֊
նօրեայ անգամ, զի և գիտէք զնա ուխտա֊
կատար և արագահաս օգնական յամ կարիս
հոգւոյ և մարմնոյ, եկայք առեմ այսօր 'ի
գիւտ պատուական գլխոյ և 'ԶԲ նշխարաց
նր ընթացուք, լինել մեզ դեղ կենաց, որ֊
ք և երբեմն առ մեզ բերեր 'ի նշխարաց անտի
'ի պարգևս մասին լուսաւորիչն հոգւոց մե֊
րոց ։ Բայց 'ի գիւտն ընթացուք՝ այնմ,
զոր մեք կորուսաք, կմ որ 'ի մէնջ ծածկե֊
ցաւ գլուխն պատուական · այս է՝ պատուա֊
կան և գլխաւոր առաքինութեց մեծին յով֊
հաննու · և որբամնքուր նշխարաց նր, մա֊
սանց իմա հանդիսից վարուց լաւութե ։

Խնդրեսցուք զխոնարհութի նր իբրև զառս,
զի գտցուք զբարձրութի նր որպէս զգլուխ ·
խնդրեսցուք զմեալութիւն մարմնոյ նորա՝
սպանանելով զանդամս մարմնոյ զերկրա֊
ւորս, զի գտցուք զկենդանութի նր հոգւով
յանմահ 'ի կեանս երկնաւորս ։ Խնդրե֊
ցուք զբազմամփոստակ քրտունս աշխատութե
նր յամ 'ի կեանս, զի գտցուք զնորումն հան֊
գիստ 'ի մահուան · խնդրեսցուք զվկայութե
նր արեամբ չափ վն ճշմարտութե և արդա֊
րութե, զի գտցուք և զփառս և զպսակս նո
րա անպատումս յերկնաւոր հանդիսադրէն ·
որոց լիցի ամենեցուն մեզ հասանել 'ի ձեռն
զօրաւոր մաղթանաց մեծ կարապետին ։

Ա.Ը.Ր.Ի.



# ՎԱՐՔ ՍՐԲՈՑ

## Յովբայ արդարոյ :

Հ. Յ. Մայիս. 6 : Լ. Մայ. 10 : Ըստ Լատինացւոց, Կենսագրութեան. անդ : Հայոց, և Յունաց : (1)

ՀԱՄԲԵՐՈՂԱՑՆ նախատիպ, և կենդանի նահատակ առաքինութեան՝ յոբ երանելւոյն, վկայեալ յԱյ այր ճշմարիտ, անարատ, արդար, աստուածապաշտ, մեկնեալ յամենայն իրաց չարութենէ մեղաց, եւ յաբրահամեան զաւակէ 'ի սերնդոցն եսաւայ. որպէս զի լինել նորա վեցերորդ յաբրահամէ. քանզի զԱբրահամ ծնաւ զԻսահակ. Իսահակ ծնաւ զԵսաւ և զՅակոբ. Եսաւ՝ որ կոչեցաւն Եդոմ, ծնաւ 'ի Բասեմաթայ դստերէն Իսմայելի Հօրեղբօր իւրոյ զՌագուէլ. Ռագուէլ ծնաւ զԶարեհ. և Զարեհ ծնաւ 'ի Բոսորացի կնոջէ իւրմէ զՅոբաբ, որ և կոչեցաւ Յոբ. որով լինի սա ժամանակակից Մովսեսի, և երիցագոյն քան զնա միով ծննդով. այլ յերկար եւս եկեաց քան զՄովսէս մինչև ցաւուրս դատաւորաց :

Այս էին առ Մովսեսիւ երկու Թագաւորք բաղակ անուն 'ի մէջ այլազգեաց. մին՝ Բա

զակ սեպփորեան արքայ մովաբու, որ եհարց
խորհուրդ 'ի բաղաամայ բէովրեան ընդէմ
իՏէլի. (Թուոց. ԻԲ. եւ յես. ԻԴ). եւ միւսն բա-
ղակ սեպփորեան կմ բէովրեան՝ արքայ եդո-
մայ 'ի դեննաբա, որ էր բարեկամութի ընդ
իՏէլի. (Ծնն. ԼԶ. 32: Ա. մնաց. Ա. 43: եւ յոբ.
ԻԲ. 19.) եւ սորին բաղակայ եդովմայեցւոյ
յաջորդ եղեւ 'ի թագաւորութե յոբաբ, որ եւ յոբ
արդարն, 'ի քաղաքի անդ դեննաբայ կմ 'ի
միում 'ի քաղաքացն եդովմայ. քանզի եւ ինքն
էր ծննդեամբ եւ հայրենեօք յերկրէն աւսի-
տայ, որ եւ ուսիտ, կամ ուս կոչիւր՝ 'ի սահ-
մանս եդոմայեցւոց եւ արաբացւոց (2). այն
է ըստ գրոց երկիր արեւելից անուանեալ 'ի
կողմանս անապատ արաբիոյ. թող զի ոմանք
համարեցան լինել 'ի միջագետս ասորւոց՝ 'ի
մէջ երից քաղաքաց ամդայ, բերդնայ եւ ու-
հայոյ. եւ այլք՝ մերձ 'ի թլկուրան, 'ի սահ-
մանս միջագետաց հայոց. որպէս եւ յովսէփ
քաղդէական մեկնաբանն եդ ապարզապէս 'ի
հայոց [illegible] :

Արդ այլս այս արեւելեան՝ յոբ ընտրեալն
յԱծոյ, եթէ յաւուրս նախորդին իւրոյ բաղա-
կայ, եւ եթէ յետ թագաւորելոյ 'ի տեղի նորա,
ծանուցեալ էր յամենեցուն իբրեւ այր թա-
գաւոր յիւրում գաւառի՝ ըստ ձոխութե եւ հա-
րուստ ստացուածովք, եւ աւատել մեծա-
տուն հաւատով, եւ կատարեալ իմաստութբ,
եւ գործք մեծամեծք էին նորա 'ի վր երկրի.
եւ ոչ կարծեն ոմանք՝ զքահանայականն իսկ
ունել զպատիւ իբրեւ զԾ նմանութե մելքի-
սե-

տեղեկի, ըստ որում հանապազօր մատուցանէր զոհս հաճոյականս ա՟յ բարձրելոյ՝ 'ի քաւութ՟ն տան իւրոյ և 'ի գոհութիւն բարերարին ա՟յ ։

Այլ էր 'ի մէջ արևելեայց կենդանի օրինակ ա՟ծպաշտութ՟ե, և իբրև կենդանի պատգամ յա՟ծակոյս կողմանէ, առաջնորդելով ամենեցուն ը՟ն ճանապարհ ուղղութ՟ե, և արդարապէս դատելով զա՟մ դատաստան. առատաձեռն առ կարօտեալս, և հայր որբոց և այրեաց. խորհրդատու իմաստնոց, և խրատիչ անզգամաց. փայլեալ ա՟մ առաքինութ՟բ, և գովելի և սիրելի յաչս ա՟մ մարդոյ, և առաւել առաջի ա՟յ. մինչև պարծիլ արարչին տիեզերաց 'ի վ՟ր հաւատարիմ ծառային իւրոյ յոբայ, և ասել ցփորձիչն հասարակաց ցսատանայ. նայեցա՞ր մտօք քովք ը՟ն ծառայ իմ յոբ. զի ո՛չ գոյ իբրև զնա 'ի վ՟ր երկրի, այր անարատ՝ ճշմարիտ՝ ա՟ծապաշտ, մեկնեալ յա՟մ իրաց չարաց ։ Ա՟ն զի առանց օրինաց 'ի վեր քան զօրէնս առաքինանայր արդարն, և էր այր ը՟ս սրտին ա՟յ ։

Սորին վ՟ս և չարանախանձ թշնամին մախանօք բերեալ ը՟դէմ արդարոյն՝ չարախօսել ժպրհէր բանսարկութ՟բ զնմանէ առաջի տ՟ն. ասէ. միթէ ձրի՞ պաշտիցէ յոբ զտ՟ր, ուր դու ետուր նմա զա՟մ մեծութ՟ի և զդիւրութիւն կենաց. նմին իրի և գոհ կեանս կեայ. ա՛ղէ թո՛յլ տուր ինձ կորուսանել զա՟մ ինչ զն՟ր, և տես թէ զիա՞րդ այնուհետև փոխանակ օրհնելոյ անիծանիցէ զքեզ ։ . Այսպեցաւ խորա-

մանկ բանսարկուն . զի կամելով սուտ հանել զանսուտ վկայութիւն նոյ՝ եւս քան զեւս հաւատարիմ կացոյց յանդիման նմ աւետերաց, եւ տուեալ եւս վարձուց մեծաց առիթ եղէ առն նոյ . եւ զի զայդ իսկ կամէր նա,

Թոյլ ետ փորձողին առնել զոր գիտէ :

Յայնժամ արձակեաց սատանայ նախ զառաջինն՝ գերեվարս 'ի վր անդէոց եւ հօտից յոբայ եղելոց յագարակս եւ 'ի դաշտս . ուր կային նորա խաշինք եօթն հազար, ուղտք երեքհազար, լուծք եզանց հինգ հարիւր, եւ էշք մատակք արօտականք հինգ հարիւր . եւ ետ գերել զարջառս եւ զէշս, եւ կոտորել զմանկտին՝ որք ունէին զհօտ նոցա . ետ եւ հրոյ անկանել յերկնից, եւ այրեաց զհօտս ոչխարաց եւ զհովիւսն . նոյնպէս արձակեաց ասպատակաւորս, որք գերեցին զուղտս, որոյ ճարակ առեալ զուղտապանսն եւ զայլ ասպատաւորս : Միանգամայն ձեռն էարկ չարն եւ 'ի զաւակս արդարոյն . քանզի էին նր ուստերք եօթն, եւ դստերք երեք . որք ը հանապազորդ սովորութե ժողովեալ էին 'ի տուն եղբօր իւրեանց երիցու . եւ մինչդեռ բազմեալ էին 'ի սեղան ուրախութե, յարոյց դեւն յանկարծակի հողմ մեծ 'ի կողմանէ անապատին, որ եհար զչորեսին անկիւնս տանն . եւ անկաւ տունն 'ի վր նստելոցն, եւ կոտորեաց զամենեսին .

Արդ յայս նմ հարուածոցս հազիւ մի մի անձինք 'ի ծառայից ապրեալ՝ եկին գոյժ տալ յոբայ մի զհետ միոյ . զի մինչդեռ էր առաջ-

նոյ

նոյ քօթափերի վճարեալ զբանս իւր՝ միւսն 'ի վրն հասանէր. և այնպէս 'ի միում ժամու եհաս առ յոբ. քօթն այս ամ անհնարին չխառուց : Իսկ արդարոյն լռեալ զամն հեզիկ լռութբ և սքանչելի համբերութբ՝ ոչինչ դանդատ կալաւ զումեքէ, այլ յարուցեալ պատառեաց զհանդերձս իւր, և կտրեաց զվարսս գլխոյ իւրոյ՝ 'ի նշանակ օրինաւոր սգոյ. և անկեալ 'ի գետին՝ երկիր եպագ անն, և ասէ զյաւերժական յիշատակաց արժանին բան. Մերկ իսկ ելի ես յորովայնէ մօր իմոյ, և մերկանդամ դարձայց անդրէն. տր ետ, և տր էառ. որպէս տն հաճոյ թուեցաւ, նոյնպէս և եղև. եղիցի անուն տն օրհնեալ :

Ահա այսպիսի եղև անպարտելի առաքինութին քաջ նահատակին էդեմ մրցանաց չարին. համբերութե նր անվանելի վանեաց զամուրս բանսարկուին, և ունայնացոյց զամ մեքենայս չարութե նր : Այլ և ած փառաւորեալ 'ի գործոց ծառայիս իւրոյ՝ յերեսս հարկանէր բանսարկուին երկրորդ անգամ. ապաքէն հայեցարս ասէ ի ծառայ իմ յոբ, զի ոչ գոյ իբրև զնա 'ի վր երկրի, այր ճշմարիտ, անարատ. աստուածապաշտ, մեկնեալ յամ չարութէ. և տակաւին կայ արդարն հաստատուն յանմեղութե իւրում. և դու տարապարտ խօսեցար կորուսանել զինչս նր : Յայնժամ նեղեալ ոճն ամյ կրկին ևս խստանայր չարն, և պատճառանս բաղբաղէր ընդդէմ արիութե առաքինւոյն 'ի հանդիսի փորձանաց.

նաց. ով թէ չիցէ՝ ինչ մեծ կորուստ ընչիցն, ուր ինքն ողջ առողջ կայ. թո՛ղ, զի հարկց ասէ զնա չարաչար ախտիւք մինչև 'ի դրունս մահու, և տես թէ մնա՞յ անտրտունջ: Այլ ձեռն թողացոյց նմա, միայն թէ պահեսցէ զոգի նր 'ի մարմնի, և մի սպանցէ. զի և ս քան զևս հանդիսացի քաջութե զօրականին իւրոյ: Այլ եհար սատանայ զյոբ չարաչար կեղով յոտից մինչև ցգլուխ. մինչ լի լինել նմա խղխայթիւք վիրաց և շարաւօք և զազրութ որդանց, և ծառայիցն անհանդուրժելոյ հոտոյն հանել զնա արտաքս 'ի տանէ, և ընկենուլ 'ի տեղի աղբեաց. ուր նստէր ցաւագին անձամբ և անայլայլակ սրտիւ, և առեալ խեցի՝ քերէր զթարախն:

Մ՝եծ էր հարուածն, և ողորմ տեսիլն, տեսանել զայր թագաւոր յաղբիւս նստեալ շարաւալից՝ անօգնական և անմխիթար, զտիւ և զգիշեր յանքերելի ցաւս փարատեալ 'ի վեր քան զամ խօթութիւնս հիւանդութեց. մի զի անսերևոյթ ձեռն դժոխային դահճին խոշտանգէր զնա աննման կտտանօք: Այլ այսպէս՝ բազում ժամանակս անցանէր 'ի վր ասէ գիրն. զոր յոլովք 'ի նախնի վիպաց՝ եօթն ամաւեն լինել. և այլք աւելի կամ պակաս (3). և այն զի՝ թէպէտև սակաւօրեայ լինէր, անտանելի թուէր ամ մարդոյ. իսկ զի՞նչ լինիցի սաստկութիւն ը երկարութե:

Այլ սակայն երանելին նահատակն կատարեալ համբերութ տանէր զայն ամ, և անդադար

օրհ-

որհնէր սրտիւ և բերանով զՏր , յորմէ միայ-
նոյ գիտէր զամ հանգիստ և զտառապանս
աղցաւոր կենցաղոյս . և զի անարատ էր հո-
գին՝ միայնութն անստգիւտ խղճի մտաց կայր
մնայր անալեկոծ 'ի խորհուրդս իւր . գիտէ-
րով չափ , թէ 'ի վարձ , և ոչ 'ի պատիժ են
խրատք Այն 'ի վր երկիւղածաց իւրոց . չէր 'ի
ժամուն տխրապէս գիտակ , թէ սատանայ
ինքնին փորձէ զնա չարակնութբ , այլ քաջ
խելամուտ էր՝ թէ առանձին թոյլտուութի
են Այ իրքն , որք և ամ արկածք յօգուտ ծա-
ռայից Այն ։

Տեսեք բանսարկուին՝ եթէ իսպառ յամօթ
եղև յերեսաց առաքինւոյն , զի թէ [illegible] և
ինչք նր զէնք սովորականք՝ կորուսն եղեն Ը
ոտիւքն նահատակին , և եթէ մարմին և փափ-
կութիւնք նր՝ նոյնպէս յոչինչ համարեցան , 'ի
հին զէնն իւր ընթանայր , և գործի 'ի ձեռն
առնոյր զկինն . զի թերևս նովաւ հնարես-
ցի դղրդուել զամրութի մտաց արդարոյն ,
և տրտմալ ինչ բանս տժգոհութե 'ի բերանոյ
նր ։ Արդ թէպէտև կինն յոբայ էր անդստին
կիրթ յԱծպաշտութե՝ խրատեալ և յառա-
քինի օրինակէ առն , այլ դիւրախաբ գտեալ
'ի գաղտնի թելադրութէ չարին՝ Ը կանա-
ցի բարուցն տկարութե խորհէր զեղելոցն ,
և ոչ կարէր հանդուրժել Ը իրսն . քանզի և
ինքն 'ի պատճառս առն իւրոյ մերկացեալ
էր և ունայնացեալ յամ փառաց տիկնութե ,
և 'ի յետին անանկութի հասեալ , յուստե-
րաց և 'ի դստերաց զրկեալ , և յամ յուսոյ.
կե-

կենաց օտարացեալ․ վասնզի եկն եկաց առաջի Յոբայ, և սկսաւ գանգատել զպիղծակէ երկոցունցն․ և առ դառնութեան ողւոյ իւրոյ ոչ գիտէր զինչ խօսէր․ ասէ՝ ասա՛ բան ինչ ՚ի տ՟ր, և վախճանեաց․ ո՞չ թէ տրտնջեցէ զինէ, և պատուհասեսցէ յայտնապէս՝ փութով ՚ի միջոյ բարձցի։

Իսկ երանելւոյն Յոբայ հայեցեալ ընդ նա խոժոռ դիմօք՝ ասէ․ իբրև զմի ՚ի կանանց անբզգամաց խօսեցար, այն՝ որ յերկիւղածութե և ՚ի բարեպաշտութենէ վարս ունեալ էիր․ և ոչ գիտացեր միով ողւով տանել յաջողութեանց և ձախողութեանց, որք առ հասարակ ՚ի ձեռանէ ա՟յ մեզ բաշխին․ և արդ՝ եթէ զբարիսն ընկալաք ՚ի տ՟նէ, չարեացս ո՞չ համբերիցեմք։ Ո՛վ հրաշալի բարբառ կատարեալ համբերողին և քաջայաղթ նահատակին․ որ սովին բանիւս զվերջինն տարաւ ՚ի գլուխ զյաղթութիւն ընդդէմ սատանայի․ զի չարն ՚ի վ՟ն նմ հարուածոց անչափս պահէր զլեզու արդարոյն՝ զի չար ինչ լուիցէ ՚ի բերանոյ նորա․ բայց անհնար եղև ելանել անիծից յօրհնել բերանոյ, յորում միշտ օրհնութիւնք բղխէին։ Ոչինչ ապա․ տակաւին փորձ փորձէր չարն՝ որսալ զնա բանիւ ՚ի բերանոյ բարեկամաց նր՟, զորս գրգռեաց ընդդէմ երանելւոյն ողւով նախանձաւորութե և եղբայրական յանդիմանութե։

Իսկ բարեկամքն Յոբայ երեքին էին արք երեւելիք ծնպաշտութբ և իմաստութբ, և իշխանք մեծամեծք հանգոյն նմին՝ իբրև թա-

գաւ

դաւորք, սահմանակից տեղեաւ, և մերձա-
ւոր իսկ տոհմակցութբ. անուն միոյն եղի-
փազ արքայ Թեմնացւոց, որ երկրին Թեմա-
նայ՝ 'ի տանէն եսաւայ, որպէս և անուն ան-
դրանկանն եսաւայ էր եղիփազ. երկրորդն՝
բաղդատ բռնաւոր սաւքեցւոց, այս է ինքնա-
գլուխ իշխան երկրին սուքայ (ուր կարծի
լինել յետոյ տեղի գերեզմանին յոբայ). և
երրորդն՝ սովփար արքայ մինեցւոց. որ և
սա 'ի տանէն եսաւայ համարի, զի սովփար
էր անուն եղիփազայ որդւոյ եսաւայ ։ Արդ
'ի գալ սոցա միաբան 'ի լուր աղետիցն յոբայ՝
վն մխիթարելոյ զնա օրինօք բարեկամութե,
տեսեալ զնա 'ի բացուստ՝ ոչ ծանեան զառա-
ջինն. զի էր երանելին իբրև անշունչ պատ-
կեր՝ ողորմալից և շարաւալից. և ապա 'ի վր
հասեալ ստուգութբ՝ ձայն բարձեալ կակա-
նօք լացին 'ի վր նր իբրև 'ի վր մեռելոյ.
պատառեցին զպատմուճանս իւրեանց, և
ցանեցին հող 'ի վր գլխոց իւրեանց՝ ըն եր-
կինս հայելով. և նստան շուրջ զնովաւ յեր-
կրի զեօթն տիւ և զեօթն գիշեր. և ոչ ոք
'ի նոցանէ իշխէր խօսել ըն նմ բան մի 'ի մխի-
թարութե. քանզի տեսանէին զանհնարին
հարուածսն և մեծամեծս յոյժ, ասէ գիր ։
Իսկ թէ զի՞նչ յայն աւուրս ապշութե որո-
ճէին ըն միտս իւրեանց, կմ հծծէին ըն մի-
մեանս, ակնարկի առնելով այր եղբօր իւ-
րում, և զի՞նչ խորհուրդք էին 'ի սրտի յոբայ
արդարոյ, յայտ առնեն բանք սորա և նոցա՝
որք յերկարեցան յոյժ յետ միանգամ սկսա-
նե-

նելոյ, ոչ գետ յորդեալ՚ի գնացս յետ առ-
փողքր մի արգելմանն ։ Քանզի նք երեքեանն
տեսանելով զբարեկամ իւրեանց յայնպիսի
անլուր հարուածս, մարդկօրէն խորհրդով
դատեցան զնա առ գաղտնի յանցանաց չա-
րաչար պատուհասեալ յայ գոլ. զի այս բնու-
թն է մարդկան մեղադրելի յոյժ, ըս տեսա-
նել զոք անկեալ՝ ստնհար լինել, կմ զմիւսան
՚ի վշ հասեալ՝ արժանահաս պատիժ առ-
գնել. և ըս այսմ մեղանչեմք զօրհանապազ
ըղէմ սիրոյ եղբօր ։ Բայց արդարն յոբ՝ որ
ոչն գիտէր զանձին ինչ մեղս արժանի այն-
պիսում պատուհասի, ոչ տայր տեղի մտա-
ծութեց նց և բանից. այլ միայն գաղտնիս
այ զիրսն ցուցանէր լինել՚ի հանդէս երկիւ-
ղածաց իւրոց, և ուսուցանէր աւաղելի գոլ
զունայնութն կենցաղոյս և զփառս անցա-
ւորս, զմեծութն թգրականն և զփափկութիւ-
նսի. որպս թէ լաւ ևս իցէ ոչ տեսանել ան-
գամ զվայելս աւուրեայ կենաց, քան թէ յետ
առժամանակ մի վայելելոյ՝ յայսպիսի ողորմ
վիճակ մատնիլ. և յայս միտ զանձնէ դա-
տախազէր, թէ ընդէր եղև ինձ բնաւ արե-
տեսանել և աւուրս բարօրութե, եթէ զայս-
պիսիս ունէի կրել ։

Այլ որչափ նա այսպիսօրէն վստահութբ ըս
այ խօսէր, այնչափ առաւել զչարեին բարե-
կամքն և վաւէին ըղդէմ նր, ոչ թէ մեղա-
պարտ գոլով՝ իբրև արդար խօսի զանձնէ.
և սկսեալ սիրավ խրատել զնա՝ զի ծանիցէ
զանձն յանցաւոր և արժանաւոր այնմ տնի,

զոր

զոր կրէր, 'ի դառն կշտամբութենէս զկծեցու-ցիչս բարեկամաց լինելին, իբրեւ ոգւով ա̃ծսի-րութեն յեղաշրջատեցութեն կրթեալք. վ̃ոյ եւ արդարն իրաւամբք բժիշկս մեղանչականս կոչէր զնս եւ մխիթարիչս չարեաց. զի կար-ծելով բարերարել նմ̃ խրատուք՝ վայրապար չարախօսէին :

Այլ իբրեւ ոչ կարացին զնա յաղթահարել, յառաջ մատեաւ եղիուս որդի բարաքիելի բուզացի՝ յազգականութենէ արամայ 'ի նոյն ցեղէ աւսիտայ, այր հզօր բանիւք եւ զօրա-ւոր մտօք. եւ բարկացաւ յոյժ յոբայ, զի ար-դարացոյց զանձն արդար առաջի ա̃ծն. նոյնպէս եւ 'ի վ̃ր երեցունց բարեկամաց ն̃ր սրտմտե-ցաւ ոգի նորա, զի ոչ կարացին ըմբերանել զյոբ. եւ ինքն սկսաւ ևս ճարտար բանիւք յանդիմանն առնել յոբայ, թէ ա̃ծ դատա-ւոր արդար ո՛չ պատժէ զարդարս. գիտեա՛-ասէ, զի ա̃ր ո՛չ մերժէ զանմեղն, եւ որ 'ի նոյն հայլին բանք ե̃ն ինքեանն ճշմարտեալք, այլ ոչ ուղիղ յանձն յոբայ առակելք : Այլ եւ յոբ երանելին լուռ եւեթ կայր, եւ ոչ առ-նէր պ̃խնի բանից եղիուսայ. քանզի ետես՝ զի դիմախօսք իւր չարանուն 'ի միտ՝ թէ ո՛չ է արդարութեն վրէժխնդիր, եւ ո՛չ արդա-րութեն ինքնիշխան տ̃րութե. վ̃ոյ ո՛չ անիրաւէ ա̃ծ յածել անդ զարտաքին հարուածս եւ 'ի վ̃ր արդարոց. զո՛ կամի հարկանէ, զո՛ կամի բժշկէ. եւ առաւել տանջէ՝ զոր սիրէ, խրա-տելով իբրեւ զորդի սիրելի. ապա նեղէ, զի 'ի համբերձելութեն առաւել պսակեսցէ փա-ռօք :

կան ծանիր զքեզ առաւել ես զաղտնեաց
իմոց ։

Այլ զի մեծամեծս և զարմանալիս լուաւ յոբ ՚ի Տնէ, և համարէր զնմն ՚ի խրատ և ՚ի յանդիմանութն իւր ասացեալ, ոչ իշխեաց բերան բանալ, և տալ պխնի ։ այլ միայն զանգատանս սիրոյ առաջի արկեալ որդիական երկիւղիւ՝ յայտ արար զպարտութն անձին իւրոյ, միանգամայն և զլքումն սրտին ։ զի ոչ ՚ի մարդկանէ միայն ասէ, այլև ՚ի Տնէ կշտամբանս լսեմ ։ և ես ոչինչ մի եմ ։ և զի՞նչ տաց առ այդ պխնի, բայց եթէ ափն բերան եղէց ։ Բայց Տծ կրկին ես խօսեցաւ ԸՆ ծառայի իւրում սիրելւոյ՝ զօրացուցանելով զնա բանիւն, թէ մի՛ համարիր այլազգինչ արարեալ առ քեզ յայտնութիւն, բայց զի երևեսցիս արդար ։ և յաջորդօքն առաւել ՚ի խոնարհութիւն կրթեաց, զի չի՛ք քո ասէ կար իբր բազուկ առ բազուկ մրցիլ ԸՆ Այ, և տալ պխնի Տմ բանից նր ։ և յաւել յանդիման կացուցանել նմա օրինակաւ կիտին մեծի կամ վիշապ ձկան զգազանութն սադայէլի, որ հնարի որսալ զՏմ ոգիս մարդկան ։ յայտ արարեալ՝ թէ ոչ ոք կարէ յաղթահարել զչարն, եթէ ոչ Տմ ։ և թէ ՚ի հասանել ժամանակին ունի ինքնին Տծ սանձահարել զնա իսպառ՝ զօրութբ խաչին քի, և նուաճել զապստամբն ԸՆ ոտիւք ծառայից իւրոց՝ ծառայ յաւիտենական ։

Սովլիմբք բանիւք՝ զորոց զխորհուրդն խորագոյնս տպաւորէր Տծ ՚ի սիրտ յոբայ, եւ

նմա յայտնապէս ճանաչել, թէ տ՟ր ինք-
նին թոյլ ետ բանսարկուին մարտնչիլ ընդ-
նմա, և ինքն էր՝ որ զօրացոյց զնա յաղթել
չարին. միանգամայն և խորհրդագգած ա-
րար զյոյս մարգարէական հոգւովն՝ խորհր-
դոյ մարդեղութեան միածնի իւրոյ: Արդ վ՟ս
իսկ 'ի կատարած բանից տ՟ն 'ի խորս խոնար-
հութեան ընկղմեալ յոբայ զանձն իւր՝ խոս-
տովան եղև ուրախութ՟, թէ լռեայ զմեծա-
մեծս և զզարմանալիս, որոց ոչ էի խելա-
մուտ. 'ի լուր ականջաց լսէի ասէ զքեն յա-
ռաջագոյն, բայց արդ և ակն իմ իսկ ետես
զքեզ. վ՟ս խոտեցի զանձն, և հալեցայ. և
համարիմ զանձն իմ հող և մոխիր:

Իսկ զի մի կարծեսցեն բարեկամքն յոբայ,
թէ նա իբրև յանցաւոր անպիտանի դատաւ առա-
ջի տ՟ն, յետ ա՟մ բանիցս այսոցիկ ասէ տ՟ր
ցեղիփազ թեմնացի. մեղար դու և երկոքին
բարեկամք քո. զի ոչ խօսեցայք առաջի իմ
ճշմարիտ և ուղիղ իբրև զծառայ իմ յոբ, և
'ի զուր կշտամբեցիք զնա ո՟պ մեղաւոր պա-
տուհասեալ. և ես 'ի պատիւ երեսաց նորա
խնայեցի 'ի ձեզ. ապա թէ ոչ՝ կորուսանէի
զձեզ: Բայց արդ առէք զուարակս եօթն
և խոյս եօթն, և երթայք առ ծառայ իմ
յոբ. և արասցէ ողջակէզս վ՟ս ձեր, և աղօ-
թեսցէ. զի քաւեսցի զմեղս ձեր:

Յայնմ ժամանակի ողջացոյց ա՟ծ զյոբ յա՟մ
հարուածոց և 'ի ցաւոց, նորափետուր զար-
դարեալ. և երեքին բարեկամք ն՟ր արարին
զա՟մ, ո՟պ հրամայեաց ն՟մ տ՟ր, և եկեալ զմեծ

նմ

նց վր յոբայ : Եւ տր աճեցոյց զլոյս , և եւս նմա կրկին՝ քան որչափ ինչ էր նր յառաջագոյն՝ ստացուած և մեծութի բազում յոյժ , և օրհնեաց զվերջինն նր քան զառաջինն : Եւ լուան ամ մերձաւորք նր և ազգականք , և եկին առ նա հանդերձ ընծայիւք . և խըն-դակից եղեն նմա , և մխիթարեցին զնա . և զարմացան 'ի վր ամի՝ զոր եած 'ի վր նորա տր : Եւ ծնան դարձեալ յոբայ ուստերք եօթն , և դստերք երեք . և ոչ գտան համեմատ դստերացն յոբայ ազնուագոյնք 'ի ներքոյ երկնից :

Եւ եկաց արդարն յոբ յետ հարուածոցն ամն հարիւր և եօթանասուն . և զի յառաջագոյն կեցեալ էր նր ամն եօթանասուն և ութ՝ հանդերձ հարուածովքն , ամ ամք կենաց նր եղեն երկերիւր քառասուն և ութ . և վախճանեցաւ երանելին յոբ ծերացեալ և լցեալ աւուրբք և արդեամբք ամծահաճոյ վարուց և կատարեալ համբերութե իւրոյ , յառնել փառօք ընդ այնոսիկ՝ զորս տր յարուցանէ յանմահ 'ի կեանս :

Բայց յառաջ քան զմահ իւր գրեաց զամ անցս՝ որ անցին ընդ նա , 'ի յիշատակ սքանչելեացն այս ազգաց յազգս . ուր պատմական մասն՝ որ 'ի սկիզբն և 'ի վերջն , է արձակ շարադրութի յեբրայական բնագրի . իսկ խօսակցութիւն աստի և անտի , որպիսի է մեծ մասն մատենին , է ստանաւոր ընդ հին քերթողութե արեւելեայց . և զի ոճ գրութենն է ոչ պարզ եբրայեցի , այլ ընդ խիթք և ասորի , արաբացի

և քաղցրեցի, բազմադիմի կարծիք եղեն առ նախնիս և առ յետինս 'ի մեկնչաց, արդեօք զայսօրինակ գրեցաւ սկզբնագիրն 'ի յոբայ կամ 'ի բարեկամացն նր և կմ յեղիուայ, կմ 'ի մովսիսէ, եթէ յետոյ սողոմոն ընտիր-սեաց, քս ոտանաւոր յօրինեաց ըստ խառն բարբառոյ ժամանակին իւրոյ․ զոր անմարթ է տիրապէս որոշել․ Թող զի և չափաբերութեն եղանակ և հանգամանք արուեստին է հին, որում ոչ ոք մինչև ցարդ ի բաւականին եղև հասու։

Ոյնչափ է օգտակարութի ընթերցուածոյ գրոցն յոբայ, մինչև իրաւամբք գրի 'ի նախադրութիս նր այսպէս ։ * Ի աղաւամ մխիթարութի տայ համբերողաց գիրքս, զայլս վշտագնեալ 'ի մէջ բերեալ՝ որ զջանն ընկալաւ ի քնի խորհրդոցն ... Դ տանի սա ամենեցուն խրատ․ Թագաւորաց, քահանայից, իշխանաց, ռամկաց, աղքատաց, մեծամեծաց, վիրաւորաց․ որոց տայ բիւր օրինակս․ և հաստատէ ի ընչից, ի որդւոց, զոս 'ի գայթակղութիս անկանին․ Նա և որք 'ի դիւաց վշտագնին, զհանգիստ և զբժշկութի գտանեն յայսմ գրոյ․ և որք ամս զգուշանան, մեծախորհուրդ տանին զրկանաց ॥։

Ոճն գովելի յոբայ բովանդակեալ տեսանեմք 'ի բանս յակոբոսի առաքելոյն, յասել ասող․ * Ո Համբերութի յոբայ լուարուք (կմ լուայք), և զկատարումն տն տեսէք (կմ տեսիք)॥։ Նաև 'ի գիրսն Տբ վճռպաց կոչի երանելին յոբ, նահապետ, մարգարէ, Թագաւոր, քա-

հաննու յամբ · Թող և զայլ խորհուրդ ասացեն այլք ։ Զարմանալի ինչ գիտուած նշանակեն բոլլանդեանք ; չասացից թէ ծաղրական, վա խնդիր հանելոյ ամանց ’ի ագիտաց ’ի վը տօնելի սբ գոլոյն յորայ · մինչև տարապարտ գլխացաւ տալ և հռոմայ գահին · զոր ’ի խորագգուշութե բանասիրաց նշանակեսցուք բանիւք նոցին իսկ բոլլանդեանց, որք ’ի յաւելուածս է · աւուր մայիսի · երես · 915 · գրեն այսպէս · * Մեծապէս մեզ անհ
,, է յառաջ բերել զխնդիրն, որ յամի 1680, յորում
,, ժամանակի ’ի լոյս ընծայեաք մերս է հատոր մայիսի
,, հանդերձ երկու այլ հատորովք, յուղեցաւ ’ի հռոմ,
,, և խիստ հակաճառութիւնք եղեն ’ի մէջ բազմաց գիտ-
,, նաւոր արանց, ’ի պատճառս տօնին ծագելոյ յալ-
,, բան ( որ ’ի դաշտին հռոմայ ) · ուր հոգաբարձուք
,, անկելանոցին՝ որ յանուն սբ հոգւոյն. ’ի հիւրանո-
,, ցի գեռաստղեաց՝ որ փոքր մի յառաջ եր շինեալ,
,, կազմեցին մատուռն հոյակապ, և ’ի խորանի անդ նը
,, եդին զպատուար պատկեր երանելւոյն յորայ ։ Իսկ
,, փոխանորդն եպիսին խիղճ անձին համարեցաւ թոյլ
,, տալ բանալ զմատուռն, որպս թէ յերկբայս անկեալ
,, եթէ օրէն իցէ արդեօք զյոր այնպէս հանդիսապէս
,, իբրև սբ պաշտել ։
,, Եւ ’ի լինել զանազան դատմանց դէմընդդէմ զայրա-
,, ցաւ վէճն, մինչև հասուցին զխնդիրն յատեան սըր-
,, բազան ժողովոյն՝ որ ’ի վը ծիսից ։ Յովհաննէս Ճրիկ-
,, կիոս հայր վարժապետս՝ սերտ բարեկամն մեր՝ խոր-
,, հրդական այնր ժողովոյ, հանդերձ այլովք ոմամբք
,, մեծանուն արամբք եցոյց զանձն ’ի բացասական կողմն
,, հակառակութե · բայց սակայն յարեան և այլ ոչ նուազ
,, գիտնական անձինք, որք զխնդիրն ըստ առածի ’ի
,, ձուոյ սկսեալ՝ սկիզբն արարին քննութե, որպս թէ
,, ոչ ’ի վը յորայ եւեթ, այլև ’ի վը ամ սրբց հնոյ կտա-
,, կի ։ Եւ յայն աստիճան հասուցին զբանն, մինչ զի
,, երկուստեք վիճաբանութեց հաւաքումն՝ զոր հաւա-
,, քեալ առաջարկուն իւրացս՝ պատուճական պրոմոտէր
,, բառափինոս արքեպս միւռայ, ապացուցութե արժանի
,, գտաւ եղև յառաքելական սենեկէ ։ Եւ մեզ իսկ
,, ’ի դէպ երևեցաւ զանազանութն իւրացդ արձանագրել
,, ’ի կարգի գործոյս ’ի յիշատակ ապագայից՝ իբրև ցու-
,, ցակ խոհեմութե և ծանրութե հռոմայ յայսպիսի
,, իրս · որ զխնդիրս առաջարկեալս իմաստս, թէպէտ
,, այլուստ կարի դուզնաքեայ իցէ մարթասցին հաստ-
,, տել.

զի աւանդութեն բնակչաց տիկինոն քաղաքի խաւլաց-
ւոց. այն է բռւլիա 'ի Լոմպարտիա, թէ յաւուրց ան-
տի Թքըրաց Լոնգոբարտացւոց կային անդ նշխարք սրբոյն
յոբայ 'ի մատուռն սրբոյն ռափայելի հրեշտակապետին՝
զոյգ ը նշխարաց սրբոյն տոբիթայ և տոբիայ բերեալք
'ի հռովմայ. զորս յետոյ գողացեալ եղեն ոմանք, և
խռովութեն մեծ լեալ 'ի բռւլիա: Այսպէս խօսի և զի
այլեայլ եկեղեցեաց՝ որ յանուն սրբոյն յոբայ 'ի վենե-
տիկ, յանտուերպիա, 'ի Լովանիա, ևն. և հիմանգա-
նոցաց շինեալ ը հովանաւորութ̃ նորին յոբայ 'ի բա-
զում տեղիս. և յաւելու ասել. * գրեթէ արտաքոյ
,, եմ գրոց քաղաքացն բեղգացւոց, և բաղում այն է՝
,, զի և 'ի ներքս 'ի պարսպի՝ կայ մատուռն ինչ կամ
,, խորան նուիրեալ 'ի պատիւ նր̃ ||: Յիշէ 'ի պատմու-
թեն և վանք սրբոյն յոբայ երբեմն 'ի կոստանդինուպօլիս
հանդերձ եկեղեցեաւ յանուն նր̃՝ մինչև ցեօթներորդ-
դար. ուր և անկելանոց յանախորք մօտ յեկեղեցի սրբոյն
յոբայ:



ՏՕՆ

էր պատերազմն , զոր միայն ո՛չ էր յաղթահարել . և ընդէմ բանին ո՛չ էր թշնամութիւն չարին . վասն զի և նմա անկ էր խնդրել զվրէժ

չարութեան թշնամւոյն :

Քանզի գլխաւոր պատճառ գումարման մեծի սիւնհոդոսին էր վանումն աղանդոյն արիոսի , որ էր երեց եկեղեցւոյն աղեքսանդրիոյ եգիպտացւոց , այր չարարուեստ , աղուէսաբարոյ , սոփեստէս իմաստակ , փառամոլ և յանձնապաստան : Սա զառաջինն՝ մինչդեռ էր քահանայացեալ , յարեցաւ 'ի մելիտիոս ուրացող եպիսկոպոսն լիկոպօլսոյ ( որ թարգմանի գայլ քաղաք ) , և նովաւ հանդերձ որոշեցաւ յեկեղեցւոյ 'ի ձեռն սրբոյն պետրոսի հայրապետին աղեքսանդրացւոց . և ապա կեղծաւորեալ դարձ՝ ընդունելի եղև 'ի հաղորդութիւն եկեղեցւոյ . և միւսանգամ 'ի փոխածն դարձեալ՝ վերստին հատաւ 'ի հաղորդութենէ : Սոյ մօտ 'ի վերջին աւուրս կատարման նորին պետրոսի՝ յորժամ 'ի բանտի էր նա վասն վկայութեան հաւատոյ , հնարէր արիոս միջնորդ ունել առ նա զերիցունս հայրապետանոցին և զիշխանաւորս՝ զի արձակեսցէ զինքն 'ի կապանաց ոչ զղջացեալ . բայց չէառ յանձն սբ. հայրապետն . զի ետես 'ի նմին գիշերի զՔս ինքն մանուկ պատառեալ պատմուճանաւ , և լուաւ 'ի նմանէ ասել , թէ արիոս պատառեաց զիս . և այս մինչդեռ էր 'ի վեր երևեալ աղանդն արիոսի . զի կամեցաւ նա կանխաւ զգուշացուցանել զամենեսին 'ի չար հերձուածոյն , զոր երկնէր

անօ

անօրէնն. ո՞չ և յետ աւուրց՝ նաև սբ͞յն ան-
տանելի մեծի արքայի ցուցաւ 'ի տեսլեան օրի-
նակ չարեացն արիանոսաց. զի ջօրիք մտեալ
յեկեղեցի՝ աքացէին զսբ. սեղանն:

Որդ. իբրև յետ նահատակելոյ սբ͞յն պետ-
րոսի նստաւ աքիւղաս յաթոռ պատրիարգու-
թե աղեքսանդրու, աղաչէին արիոս զեղջ
յանձին երևեցուցեալ՝ եմուտ յեկեղեցի, և
ձեռնադրեալ իսկ 'ի սարկաւագութի և 'ի քա-
հանայութի՝ թեկն ածեր պատրիարգութե:
Այլ զի ոչ յաջողեցին իրքն ըստ կամս նր, զի յետ
աքիւղայ նստաւ երանելին աղեքսանդրոս,
զչարեցաւ ընդ էմ նորա. և ոչինչ գտեալ պատ-
ճառս յանստգիւտ վարս ոյ հայրապետին՝
սկսաւ հակառակ կալ ողջամիտ վրդութե
նր նորաձև և անլուր հայհոյութբ. քանզի
'ի խօսել հայրապետին 'ի քարոզս իւր յա-
ղագս անճառ ծնունդ բանին, ընթոստացաւ
ժանտն արիոս, և սկսաւ սերմանել 'ի լսե-
լիս բազմաց մոլորութի ահագին, ասելով
զքս ոչ գոլ ա͞ծ ճշմարիտ, այլ արարած գե-
րագոյն և անդրանիկ ա͞մ արարածոց. էր
ասէ երբեմն, յորժամ ոչ էր, և եղև յոչ գո-
յից. ոչ 'ի յաւիտենից ծնեալ 'ի հօրն էութէ,
այլ 'ի ժամանակի եղեալ. որով հիմն 'ի վեր
տապալել կամէր զհաւատս ճշմարտութե
քրիստոնէից՝ հրէական և հեթանոսական
բարբանջմամբ. վո՞յ և ուսուցանէր չասել
զօրհնութի միասնական սբ͞ երրորդութե,
փառք հօր և որդւոյ և հոգւոյն սբ͞յ, այլ
փառք հօր որդւով 'ի ձեռն հոգւոյն սբ͞յ. զի
բարձ

բարձցի համագոյութի, և մուծցի երիցութի
և կրտսերութի յընծայինս :

Սովիմբք և այլ ևս ամպարիշտ աստացուա-
ծովք 'ի սակաւ աւուրս որսացաւ 'ի հաղա-
սատանայի զբազումս 'ի պարզամտաց յա-
րանց և 'ի կանանց, յաշխարհականաց և յեկեղե-
ցականաց. յորս անուանիք էին եօթն երի-
ցունք, երկոտասան սարկաւագունք, և եօ-
թանասուն կուսանք. թո՛ղ զի զևս բազումս
յաշխարհասիրաց ձգեալ էր զհետ իւր մնոտի խա-
բէութեամբ 'ի ձեռն ճարտար և դիւական քեր-
թածաց, զոր յօրինեաց 'ի պէտս խնջոյից և
աշխարհական պարուց կաքաւչաց :

Բազմօք խրատել խրատեաց զարիոս քաղց-
րութեամբ և սաստիւք հայրապետն աղեքսան-
դրոս, այլ ոչինչ օգտեաց. զի նա օր քան զօր
գայլաբար յարձակեալ 'ի հօտն քնի՝ յափշ-
տակէր և զընտիրս 'ի գառանց, ևս և 'ի հով-
ուաց, զմերձաւորս և զհեռաւորս. մինչև
որսալ և զքանի մի եպիսկոպոս երևելի աթո-
ռոց. յորս գլխաւոր եղև եւսեբիոս եպս նի-
կոմիդացւոց՝ դրօշակիր և զինակիր սպառա-
զինութեան չարին՝ իւրովք գործակցօք :

Իբրև ետես աղեքսանդրոս հայրապետն զզօ-
րանալ ամպարշտութե արիոսի, արար ժողով
յաղեքսանդրիա հարիւր եպսաց վիճակին
իւրոյ՝ որ յեգիպտոս և 'ի լիբիա, և նզովեաց
զարիոս և զհետևօղս նորա, որք արիանոսք
կոչեցան. և գրեաց շրջաբերական նամակս
առ ամ եկեղեցիս վասն բանիցս այսոցիկ.
Յայնժամ արիոս վտարանդի յածեալ է պա-

ղես

դեստին մինչև յասխա, ծանր ծանր փնաստւք չարախօս լինէր զաղէքսանդրոսէ, և խորամանկ բանիւք ծաւալէր ը̃ ա̃մ տեղիս զթոյնս դառնութե̃ իւրոյ․ յորոյ 'ի բանս եղեալ եւսեբի նիկոմիդացւոյ՝ արար և ինքն ժողով 'ի համախոհ եպ̃սաց 'ի բիւթանիա, և արդարացոյց և ընկալաւ յեկեղեցի զպիղծն արիոս։

Օ այն լուեալ աղէքսանդրի հայրապետին աղէքսանդրու՝ գրեաց առ բարեպաշտ ինքնակալն, որ նա ինքն էր առաջին հաւատացեալ կայսրն և ծ̃նասէր թագաւորն կոստանդիանոս, փոյթ տանել մի̃ շիջուցանելոյ զհրդեհն ամպարշտութե̃ արիոսի․ և կայսրն առաքեաց յեգիպտոս զօսիոս եպ̃սն կորդուբայ՝ որ յծէն սպանիոյ՝ զայր զգօն, հնարել ըստ կարի խաղաղութ̃ի և լռութ̃ի մերժել զիրսն․ քանզի երկիւղած էր յոյժ ինքնակալն, և զգուշանայր՝ զի մի՛ լինիցի աղմուկ և երկպառակութ̃ի 'ի մէջ եպ̃սաց և քահանայիցն ա̃յ․ բայց ժանտ աղանդն և՛ս քան զևս աճէր զայրացեալ, և ճարակէր յեկեղեցին ա̃յ։

'Ի մի̃ կայր միւս ևս պատճառ խռովութե̃․ զի մելիտիոսն այն ուրացող եպ̃ս յետ մերժելոյն 'ի ս̃յն պետրոսէ աղէքսանդրացւոյ ինքնագլուխ շրջէր և ձեռնադրէր զսարկաւագունս, զերիցունս և զեպ̃սունս․ որով բազմանային անգլուխ անձինք և ինքնատէր հօտիւք՝ մանաւանդ թէ գայլք ապականիչք։ Կայր և այլ երրորդ առիթ երկպառակութե̃

'ի

'ի մէջ եկեղեցեաց ասիացւոց և արևմտեայց վն տօնի պասեքին. քանզի ասիացիք զզատիկն կատարէին 'ի չորեքտասանն լուսնի՝ յոր օր և հանդիպէր՝ ընդ պասեքային հրէից. իսկ արևմտեայք և այլ եկեղեցիք զգուշացեալ 'ի տօնելոյ ընդ հրէայս՝ կատարէին զզատիկն յաւուր կիւրակէի յարութեան տն, զկնի աւուր լրման լուսնի գարնանային հորկածի. զի թէպէտև բազումք բազում անգամ յորդորեցին զասիացիս միաբանել 'ի սոյն տաքելական աւանդութիւն, բայց չեղև հնար. զի և նք պնդէին, թէ յառաքելոց հետէ այսպէս ուսաք ։

Իսկ բարեպաշտն կոստանդիանոս՝ որ նեղեալ էր յերեսաց այսպիսի երկպառակութեանց, կամեցեալ տալ միանգամայն դարման մատուցանել և տալ մեծի հերձուածոյն արիոսի, գրեաց արքունի հրովարտակ խորհրդով և ձեռնարկութեամբ սրբոյն սեղբեստրոսի պապին հռովմայ ընդ ամ տիեզերս, զի յամ ծաց ժողովեսցին հովիւք եկեղեցւոյն քսի 'ի նիկիա քաղաք բիւթանիացւոց առ ափան լճին, պատրաստեալ զամ ծախս և զհանդերձանս ճանապարհի՝ կառօք և նաւօք, ընդ ծով և ընդ ցամաք ։

Ուղեաց ինքնակալն հրաւէր առանձին և առ մտերիմն իւր քնաւէր արքայ հայոց տրդատես, զի առեալ ածիցէ ընդ իւր զսրբ խոստովանօղն քսի զմեծն գրիգոր լուսաւորիչ հայաստանեայց ։ Բայց քանզի չէր մարթ 'ի ժամանակին թողուլ տրդատայ զ[illegible] իւր՝ առ-

կաս

կատակածանաց պարտից, և ՚նքն գրիգոր ո՛չ կա-
մեցաւ երթալ, զի մի՛ փառաւորեսցի ՚ի ժողո-
վոյն, փոխան իւրեանց առաքեցին զնքն ա-
րիստակէս՝ որ ձեռնադրեալ էր ՚ի հօրէն իւրմէ.
եպս մն գործակցաւն տնտեսութն։ Այս եղեն
ուղեկից ՚նորին արիստակեայ՝ ՚նքն յակոբ մծ-
բնայ հայրապետ, և յովհան ։պարսից եպս.
որք իբրև հասին ՚ի կեսարիա, զի ուղեկցու-
թբ սրբյն ղևոնդեայ երթիցեն ՚ի ժողովն,
տեսօղ եղեն հանդիսի մկրտութն գրիգո-
րիսի հօրն գրիգորի ա՛ծաբանի, և իջման
հոգւոյն ՚նրյ ՚ի վր նր. և ապա միաբան յու-
ղի անկան և եկին ՚ի նիկիա. ուր ժողովեցան
և այլ բազմութիւք յոյժ. այս է՝ եպսունք և
արքեպսունք թուով ընդ ամ երեքհարիւր
ութ և տասն. թէ՛ող զանհամար երիցունս և
զսարկաւագունս զգործակիցս ՚նր հայրապե-
տաց. և այս եղ ասացեալքս՝ յամի տն 325. յա-
ւուրս գարնայնոյ զկնի զատկին։

Այս էին գլխաւորք ժողովոյն՝ սիլկոսոր և
վինկենտիոս (կմ՟ բեկտոր և բեկենտոս) ե-
րիցունք Ա՟ ովսիոսի եպսին կորդուբայ՝ փո-
խանորդք ՚նքյն սեղբեստրոսի հռովմայ հայ-
րապետի. և յետ ՚նց երեքին պատրիարգունք
ժամանակին. Ա՟ Աաւ՝ ՚նքն աղեքսանդր՝ ա-
ղեքսանդրու հայրապետ, առաջին դիմա-
կալ պղծոյն արիոսի, ունելով աջակից ըղ-
սարկաւագ իւր զաթանասիոս ախոյեանն ուղ-
ղափառութե։ Երկրորդ՝ ՚նքն եւստաթէոս
անտիոքայ հայրապետ, այր նշանաւոր սըր-
բութբ և իմաստութբ, փող պատերազմա-

Ի.Օ. կան

կան կոչեցեալ՝ քաջահնչօղ ընդդէմ թշնամեաց
հաւատոյ : Չորրորդ՝ նշն մականի՝ եւ էմի Հայ-
րապետ , յորոյ անուանեն անգամ սարսէր
արիոս , և գանգատէր զնմանէ առ իւրն
իբրև զգլխաւոր ոսոխէ իւրմէ :
Յետ նց և այլ ես ականաւոր աթոռակալք
երևելի աթոռոց . յորս ոչ սակաւք էին արք
սքանչելիք և սքանչելագործք . ոմն սբն պա-
տամոն հերակլացի՝ խոստովանող եպս , որոյ
մի ակն բրեալ էր վս վկայուէ յոի քսի . նշն
պափնուտիոս՝ խոստովանող եպս վերին թե-
բայիդոյ , առաքելագործ նշանօք երևելի .
և սորա ևս մի ակն էր բրեալ , և կարթ ձա-
խոյ ծնգանն խորտակեալ վս խոստովանու-
թե հաւատոյ . նշն պօղոս խոստովանող եպս
նէոկեսարիոյ , որոյ ձեռն խանձողեալ էր
շանթացեալ երկաթով . նշն ապիրիդիոն եպս
տրիմիթունտայ կիպրացւոց՝ հրաշալի սրբու-
թբ և նշանագործուբ , պարծանք կորկիւ-
րայ ( յմ քէօրֆէզ կղզւոյն ) : Սբն յակոբ
մծբնայ հայրապետ՝ զգօնն կոչեցեալ , ա-
ռաքելանման այր՝ սքանչելագործ և յարու-
ցիչ մեռելոց . և նշն եփրեմ խուրի ասորի՝
սարկաւագ նորա ըն նմա : Սբն նիկողայոս
եպս միւռայ՝ որ և զմիւռոնայ հայրապետ
ասի , երևելին 'ի սքանչելագործ նբս , և
փառաւորեալ յամենեցուն : Սբն ղևոնդիոս
արքեպիսկոպոս կեսարու կապադովկացւոց՝
մարգարէական հոգւով լի : Սբն արիստա-
կէս եպս հայոց մեծաց՝ տեղակալ հօր իւրոյ
նբյն գրիգորի լուսաւորչի . որ եթէ անձամբ

եր եկաւորէ՝ խոստովանողական արդեամբք
և նշանագործ սրբութ՟՝ յոքունց գերազանց
հանդիսանայր. այլ որք զորդին տեսին հա-
մանման, նովին և զհօրն կարօտ առին փոքր
'ի շատէ: Դարձեալ ոմն հիւպատիոս գան-
դրայի՝ կենդանի նահատակութ՟ և գործովք
երևելի. ոմն ամփիոն մեծանուն խոստովա-
նող. և այլ ևս արք անուանիք:

Իսկ եղև 'ի գումարել սոցա զառաջինն ըստ
արքունի ժամադրութե՟ յամենայնն յունիսի՝
յերեքտասաներորդ աւուր կաղանդացն յու-
լիսի, առաջիկայ եղև անձամբ և քսապակ
կայսրն կոստանդիանոս, որ ամ՟ մեծարանօք
և խոնարհութ՟ մատուցեալ առ մի մի 'ի սրբ՟ց
հայրապետաց՝ ողջունէր սիրողապէս, և ջեր-
մեռանդն փափաքմամբ համբուրէր զապխ
վիրաց ոմ՟ց խոստովանողացն, և գիրկս ար-
կանէր առաքելանման հարանց՝ հայցելով
զօրհնութի նց՟: Իսկ յետ բազմեցուցանելոյ
զհայրապետս և զեպ՟սն իւրաքանչիւր ըստ
կարգի և ըստ աստիճանի յընդարձակ ժողո-
վարանի սբյ տաճարին, ըստ հարկեցուցանե-
լոյ նց՟ յանձն առ և ինքն թագաւորն նստել
'ի մէջ նց՟, այլ 'ի վայր քան զեպ՟սն յա-
ռանձին գահոյս իւր արքայավայել:

Յայնժամ երանելին եւստաթէոս անտիո-
քայ հայրապետ 'ի դիմաց համօրէն ժողո-
վոյն խօսեցաւ բանս գովութե՟ 'ի պատիւ
քսասէր ինքնակալին 'ի յոյն բարբառ, գո-
վելով զբարեպաշտութի նր՟ և զփոյթ խնա-
մոց վս՟ եկեղեցւոյն այ՟: Ապա և ինքն կա-

տանդիանոս կայսր վայելչական ցածութբ և երկիւղածութբ խօսեցաւ 'ի բարբառ հռովմայեցի առ նը ժողովն յորդորական բանս, խրախուսելով զհովիւս եկեղեցւոյ 'ի յայտնաբանել համարձակ և 'ի հաստատել զճշմարիտ հաւատս ըդէմ մոլար վարդապետութեց, և 'ի բառնալ զերկպառակութի և զգայթակղութի յեկեղեցւոյն այ : Ընդ ետես նը հայրապետն մծբնայ յակոբ, զի հրեշտակք անմարմինք սպասաւորէին կայսերն իբրև զմարմնաւոր ծառայս. ետես և թագաւորն զհրանիւթ զուարթունս, որք սպասաւորէին նը հայրապետին յակոբայ. և երկոքին յայտնեցին զտեսիլն իւրեանց սիւնհոդոսին :

Մինչ չև էր հարց ժողովոյն ձեռն արկեալ 'ի խնդիր հաւատոյ, ոմանք յեպիսկոպոսաց՝ որք ունէին մէձս ընդ միմեանս վս առանձնական զրկանաց և պէսպէս դիպուածոց, մատուցին առ ինքնակալն գիր բողոքանաց և ամբաստանութեց. իսկ ածասէր թագաւորն անդէն և անդ հրաման ետ 'ի հուր արկանել զայն թուղթս և ասէր. և ցեպիսկոպոսն ասէ բանիւ արքային դաւթի. Ած եկաց 'ի ժողովս աստուծոց, և 'ի միջի նց դատէր զնս. և արդ՝ դուք ո՛ հարք նք՝ ածք ուրեմն էք տուեալ մեզ յայ. և չէ մարթ մարդոյ դատել զածս: Այլ ես եթէ տեսանէի իսկ զեպս չնացեալ, ծածկէի զմեղս նր՝ արքունի ծիրանեաւս վերարկելով. համա թողէք անդր 'ի բաց զառանձնական բանսդ, և

փոյթ յանձինս կալարուք միաբանութե՛ն վանել զթշնամիս հաւատոյ ։ Այլ զայսպիսի իմաստուն աստուածս մեծին կոստանդիանոսի միաբերան գովեցին ամ բազմաւն գրըխաւոր հարց նրյ ժողովոյն ։

Այն ինչ հրաման եղև զարիոսին դատաքննութե՛ ՚ի մէջ առնուլ , յառաջ մատեան ՚ի կողմանէ արիոսի վարձկանք նր և թևակից՝ հեթանոս փիլիսոփայք ․ որք կէս մի ՚ի թեւակցութե՛ արիոսի , և կէս մի յընդդիմաբաքննին և ՚ի հակառակաւոր բարուց եկեղեցին ՚ի տեղի անդր ժողովոյ՝ վիճել ընդ առաջնորդս քրիստոնէից տրամաբանական ձեռնարկութբք , կարծելով ՚ի նեղ արկանել զնր հարս արիստոտելեան նրբութբ ․ և կայսրն ոչինչ արգել զնս , զի մի՛ կարծեսցի՝ թէ չկարեն քրիստոնեայք տալ պատասխանի առարկուածոց նց ։ Ապա յառաջի առնել նց դիմադրութիս պէսպէս ընդդէմ հաւատոցն ճշմարտութե , և առաւել հակառակ ամենասուրբ խորհրդոյ երրորդութե , և ծնունդ քրի ՚ի բերանոյ ժանտին արիոսի , որ ՚ի միջի նց կայր , և ձայնակից լինէր փիլիսոփայից , բանս առ բան ետուն նց պատասխանի երևելիքն ՚ի հարս՝ ՚ի դիմաց համօրէն ժողովոյն ․ և նախ եւստաթէոս անտիոքացի ․ ապա ովսիոս կորդուբացի ․ Ձոխագոյն և սբն զլևոնդիոս կեսարացի , և երանելին եւփսիքիոս տիանացի ․ և կս յերկարագոյն եւսեբի պամփիլեայն կեսարացի , այս է ՚ի կեսարիայ պաղեստինոյ՝ որ և պատմաբանն ․ զի սա թէպէտև առ փոքր մի

գ-ղ-

գործակից էր երևեալ արիանոսաց, այլ 'ի ժողովն անդ քաջ հանդիսացաւ 'ի պնդնատուութն ճշմարտութեն ընդդէմ իմաստասիրաց. զի և ինքն էր կատարեալ իմաստասէր. Թող զի ընդ վկայելոյ նորին աթանասի 'ի թուղթն առ ափրիկեցիս՝ սա ինքն եւսեբիոս 'ի նամակն գրեալ 'ի վիճակ իւր՝ գովեաց զնիկիականն ձայնս համագոյակից իբրև աւանդ նախնեաց : Ոչ սակաւ խօսեցաւ ընդդէմ փիլիսոփայից և նորին մակարիոս եմացի, որպէս և պռոտեգենէս սարդիկեցի :

Յորոց 'ի բանիցն պատկառեցան իմաստասէրքն. և ոմանք լսօղ եղեալ ճշմարտութեն՝ 'ի բաց կացին յարիոսէ, նզովս արձակելով զկնի նր : Բայց մի ոմն յիմաստասիրաց անտի կարի յանդգնագոյն քան զայլս՝ պէսպէս պատուաստութե պատիր բանից ոճ օձ սողեալ սպրդէր 'ի ձեռաց եպսաց, և պնդագոյնս ձեռնարկէր 'ի հարցմունս և 'ի պատասխանիս : Յայնժամ ծերունի ոմն 'ի կարգէ նր խոստովանողաց (ըստ ոմանց սրբն սպիրիդիոն կարծեցել), որ ոչ այլ ինչ գիտէր, բայց միայն զյս քս, և զնոյն 'ի խաչ ելեալ, հրաման առեալ 'ի հայրապետաց՝ բարբառեցաւ առ հակառակորդն ճշմարտութեն, և ասէ. քեզ ասեմ յանուն յսի քսի՝ ով փիլիսոփոս, ունկնդիր լեր ճշմարտութե : Յայն բան կարկեցաւ այրն, և ափ'ի բերան եղեւ՝ ոչինչ այլ այնուհետև կարօղ եղև դիմախօսել. բայց միայն՝ զոր ինչ ծերունին ասէր, նա երկրորդէր, հաւատամ, հաւատամ : Իսկ

նք ծերն առէ ցնա . եթէ հաւատաս զայս այսպէս , արի՛ եկ զկնի իմ , և ընկա՛լ զկնիք նոր հաւատոցս : Յայնժամ դարձաւ իմաստասէրն , և առէ ցորս անդն կային . ցորչափ բանիւք մնցէին ը̅ իս , բանից ը̅դէմ բանս դնէի . իսկ յորժամ փոխանակ բանից զօրութի եւ՛ի բերանոյ ասողին , ոչ եւս կարացին բանիւս զդէմ ունել զօրութե :

Արդ իբրև ձեռնթափ եղև արիոս 'ի փիլիսոփայից , ակն եդեալ էր յօգնականութիւն ոմանց ոմանց յեպիսկոպոսաց համախոհից իւրոց . բայց և նք յամօթ եղեն յատենի . զի նք հարք ժողովոյն հանդարտուբ̅ և բազում զգուշուբ̅ քննեալ զամենեցուն զմիտս և զբանս՝ հերքեցին զգայլսն 'ի հօտէ դառանց : Յորժամ ընթերցէր եղև զառաջինն 'ի մէջ ատենի դաւանութին արիոսի կամ վճ̄պութի նր̅ , խորշեցան քստմնեցան սոսկացան սր̅ հարք առ հասարակ , և լցեալ զլսելիս իւրեանց՝ զգուշեցին և նզովեցին զարիոս և զաղանդն իւր պիղծ : Այնպէս ընդ վերծանիլ բանից եւսեբիոսի նիկոմիդացւոյ , բացէ 'ի բաց հերքեցին զհայհոյութիս նր̅ իբրև ձայնակից արիոսի . և ետուն պատասխանել առաջի ամենեցուն :

Ընթերցան և զբանս ժողովոյն աղեքսանդրի հայրապետի ը̅դէմ արիոսի . և մի ըստ միոջէ տեղեկացեալ ա̅մ անցից անցելոց՝ ընկան հարք սր̅ք յորդորել մեղմով զարիանոսս դալ 'ի զեղջ և յուղղութի . իսկ նոքա յամառեալ կացին 'ի մոլորութե իւրեանց .

և

և ը̅ միմեանս մաքառեալ՝ աղմուկ խորհէին յարուցանել . և ոմանք 'ի նոցանէ նորաձև կանոն հաւատոյ 'ի մէջ ածէին . զոր նոյն ժամայն ետ պատառել սբ̅ ժողովն ։

Ապա 'ի պատուիրել ինքնակալին , զի ա̅մ ինչ ը̅ կարգի և խաղաղութ̅բ վճարեսցի , սկսան դէմ ը̅դէմ վիճել ուղղափառք և չարափառք . յորում վայրի քաջ հանդիսացան բազումք 'ի ս̅րց հայրապետաց . այլ առաւել իմն քան զյոքունս ս̅րն աթանաս սարկաւագ աղեքսանդրի հզօր զօրութ̅բ և լի հոգւով ս̅բվ մենամարտեալ ը̅դէմ ժանտին արիոսի , խայտառակեալ նշաւակեաց զա̅մ հնարս չարութե̅ն ն̅ր ։ Եւ 'ի կատարած ա̅մի՝ միաբան հաւանութ̅բ համօրէն սիւնհոդոսին դատապարտեալ հերքեցան արիոս հերեսիովտապետ , և եւսեբիոս նիկոմիդացի համախոհ ն̅ր ։ Յայնժամ իբրև ը̅ մի բերան աղաղակեցին ս̅բ հարք ժողովոյն վ̅ն քն̅ի ա̅յ մերոյ . * Որդի ա̅յ , ա̅ծ յա̅յ , լոյս 'ի լուսոյ , ա̅ծ ճշմարիտ յա̅յ ճշմարտէ , համագոյակից հօր ‖ ։ Եւ սովին ուղղափառ դաւանութ̅բ յօրինեցաւ 'ի ժողովոյն հոգւովն ս̅բվ հանգանակն նիկիականն . զոր և հանդիսապէս ընթերցաւ ովսիոս փոխանորդ պապին 'ի դիմաց ժողովոյն իբրև զկանոն ուղղափառ հաւատոյ և առաքելաւանդ վ̅դպութ̅ի . որում ձայնակից եղեն ամենեքեան , նզովս 'ի վ̅ր բերեալ՝ որոց ասէին , էր երբեմն յորժամ ոչ էր որդի , կա̅մ թէ յոչ էից եղև . և յանուանէ անաթէմա ասացին արիոսի և արիա

նոսաց , զորս պատմիւրեանս կոչէր մծաւէր կայսրին կոստանդիանոս . զի և պորփիւր փիլիսոփայ Թշնամի քրիստոնէից ոչինչ ը՟հաս 'ի մոլորութե՟ արիանոսաց բարբանջեալ էր

ը՟դդէմ ք՟նի :

Հրաման ետ կայսրն , զի ոչ միայն վ՟ պակասն գրութիւնք արիոսի ձարակ լիցին հրոյ , այլև գիրք նո՟ որ վ՟ խնջոյից և պարուց՝ Թալիա կոչեցեալ . և որ միանգամ ընթեռնու զայն կ՟մ պահէ , գլխապատիժ լիցի : Նոյն ը՟ խորհրդոյ սրբոյ ժողովոյն արտասահմանեաց յաքսորս զարիոս և զհամախոհս նո՟ . բայց եւսեբիոս նիկոմիդացի և այլք ոմանք ը՟նմա գի՟ր աղերսանաց մատուցեալ , 'ի վերին երես խոստանալով հնազանդ լինել վճռոյ ս՟բ ժողովոյն , կալան անդրէն զաթոռ իւրեանց : Չեւ այսորիկ առ 'ի դարման մատուցանել և այլոց երկպառակութեանց եկեղեցւոյ՝ սահմանեալ հաստատեաց նո՟ ժողովն , զի տօն զատկին կատարեսցի յամ՟ եկեղեցիս յաւուր կիրակէի զկնի լրման լուսնի՝ որ յետ գարնանային հաւասարակաւորութե՟ . և 'ի սոյն պէտս յօրինեցաւ շրջանն հնգետասան ամաց՝ հնգետասաներեակ կոչեցեալ : Նաև վ՟ մելետիոսի սահմանեցաւ , զի անկցի յամ՟ իրաւանց եպսկոպոսութե՟ , և նստցի 'ի լիւկոս՝ որ է գայլ քաղաք , առանց իշխանելոյ 'ի գործ ինչ եկեղեցւոյ . իսկ ձեռնադրեցեալքն 'ի նմանէ լիցին ը՟ իշխանութ՟ աղեքսանդրու պատրիարգին 'ի խոնարհագոյն աստիճանի քան զայլ պաշտօնեայս եկեղեցւոյ : Կարգեցան

և

և. կանոնք քսան վս̄ բարեկարգութեց ըդէմ
ինչ ինչ անկարգութեց ժամանակին ։ Նաւ-
ապա ձեռն եդին բանից ժողովոյն ամ՛ հարքն՝
՚ի հաստատութիւն հանգանակի հաւատոյ և
կանոնական տառից ։

Երբև կատարեցաւ սբ̄ ժողովն ՚ի յուլիսն կա-
ղանդից սեպտեմբերի , արար կայսրն կոս-
տանդիանոս ըստ օրինի ինքնակալաց զքսանե-
մեակն իւր , ընդ զհանդէս ուրախութե քսա-
ներորդ ամի թգ̄րութե իւրոյ՝ հանդերձ բազ-
մութբ սբ̄ եպսաց . որոց արար կոչունս ար-
քայավայելս ՚ի նորաշէն քաղաք իւր ՚ի կոս-
տանդինուպօլիս , որ և պալատ և նոր հռովմ
կոչեցաւ . և ետ օրհնել նոցա զքաղաքն . և
յանձն արարեալ յաղօթս նց զինքն և զթա-
գաւորութի իւր՝ արձակեաց պատուով յիւ-
րաքանչիւր տեղիս ։

Յղեալ էր նր յառաջագոյն ՚ի հռովմ զհան-
դանակ ժողովոյն և զկանոնսն առ սբ̄ն սեղ-
բեստրոս . որոյ արարեալ ժողով երկերիւր
և եօթանասուն և հինգ եպսաց արևմտից՝
հաստատեաց զնիկիական սահման բանիւքս
այսորքիւք . * Սեղբեստրոս եպս սբ̄յ և առա-
„ քելական աթոռոյ՝ նախագահ քաղաքին
„ հռովմայ ասաց ։ Որ ինչ ՚ի նիկիա բիւթա-
„ նացւոց սահմանեցաւ յամրութի սբ̄ մայր
„ կաթողիկէ և առաքելական եկեղեցւոյ ՚ի
„ նք քահանայից երեքհարիւրոց և ութու-
„ տասնից , մերովս բերանով միաձայնելով
„ հաստատեմք ։ Ամենեսին՝ որ միան-
„ գամ իշխեսցեն լուծանել զսահման սբ̄յ

„ և

,, և մեծի ժողովոյն, որ 'ի Նիկիա գումարե-
,, ցաւ յառաջիկայութեամբ բարեպաշտ և պատ-
,, ուական ինքնակալին կոստանդիանոսի օ-
,, գոստեայ, նզովեմք: Այլ առաջին ամենե-
,, քեան. հաճոյ է ||:

Նոյնպէս և 'ի դառնալ սմին արիստակեայ 'ի Հայս, նա լուսաւորիչն մեր միաբանութեամբ բազմութեան եպսաց Հայոց մեծաց՝ ընկալաւ զդաւանութիւն և զկանոնս նոյն ժողովոյն. և կնքեաց բանիւն. * Իսկ մեք փառաւորես-
,, ցուք որ յառաջ քան զյաւիտեանս, երկիր-
,, պագանելով սրբ երրորդութեան և մի աստու-
,, ծութեան հօր և որդւոյ և հոգւոյն սրբոյ, այժմ
,, և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ||.

յաւելեալ և ինչ ինչ կանոնս վասն վիճակին իւրոյ առանձինն, ոչ և քանի մի բառս բացայայտագոյնս 'ի հանգանակն. ուր կրկին կրակին մեկնօրէն եդ զթարգմանութի օմօուսիոս, այսինքն համագոյակից, կամ բնութենակից ձայնի, նոյնէական 'ի բնութէ հօր, կամ յէութէ հօր. զի մի ոք յարիանոսաց և 'ի կիսարիանոսաց մարթասցի ծեքել զձայնն և զիմաստն նիկիական. ընդ նմին և զայլ ինչ յաւելուածս եդ, որովք փակին ամ հերեսիովտացն ճանապարհք. վասն որոյ և հանգանակն հայերէն կոչի և է նիկիական և լուսաւորչեան միանգամայն: (1)

Արդ թէպէտև այսպէս և այսչափ զգուշաւոր կարգօք և ամրութբ հաստատեցաւ ճշմարտութիւն ուղղափառ դաւանութեան 'ի սբ ժողովն նիկիոյ, և հերքեալ մերժեցաւ յետին մոլորութի արիոսական, բայց յետ ամաց

ինչ

Ինչ անցելոց ազգուհիսաբարոյն արիոս յաքսորանս իւր դարձ և զզջումն յոյժ կեղծաւորեալ՝ եառ հրաման յարքունուստ դառնալ 'ի քաղաք իւր յաղեքսանդրիա։ Այլ քզլ 'ի ժամանակին նստեալ էր անդ պատրիարգ մեծն աթանաս ախոյեանն հաւատոյ, չընկալաւ զարիոս 'ի հաղորդութին եկեղեցւոյ. և նա դէմ եդեալ գնաց 'ի կոստանդինուպօլիս, և 'ի ձեռն գործակցին իւրոյ եւսեբեայ նիկոմիդացւոյ՝ ըունելութին եգիտ առ թագաւորն։

Իբրև լու եղև բանս այս առ սբ եպսունս այլևայլ տեղեաց, անկան 'ի հոգս կասկածանաց, և մեծաւ պաղատանօք կարդային առ ած, զի մի տացէ պղծոյն մտանել յեկեղեցի իւր սբ, և միւսանգամ ապականել զայգի տն իբրև զկինճ վայրենի։ Զայս աղօթէր առաւելապէս աղեքսանդրոս սբ եպս կոստանդնուպօլսոյ, և սբն յակոբ մծբնայ հայրապետ՝ այլովքն հանդերձ. և լուաւ տր աղօթից նց, և փութով եբարձ զչարն 'ի միջոյ. զի յորժամ ածեալ լինէր արիոս յեկեղեցի (սբյն սոփիայ՝ որպ կարծի), զճանապարհայն ստիպեալ 'ի կարեաց որովայնի՝ մեկուսացաւ 'ի տեղի մի. ուր վայթեցան աղիք նր. և 'ի դարշելիս անդ սատակեցաւ դարշելին։

Այլ յաղագս բազմապատիկ անցից անցելոց 'ի ժամանակին ունիս տեսանել և 'ի վարս սբյն աթանասի և մեծին կոստանդիանոսի, որպ և գրիգորի ածաբանի և մեծին թէոդոսի,

ռի, առ որով եղև երկրորդ ժողովն տիեզերական 'ի կոստանդնուպօլիս. և յայնժամ իսպառ նուաճեցան Հակառակորդք ճշմարտութե, և պայծառացան ամ եկեղեցիք ուղղափառաց՝ Հաւատով ամենասուրբ Երրորդութե և մի էութե Հօր և Որդւոյ և Հոգւոյն սբյ. նմա փառք յաւիտեանս, ամէն։

ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Առ իմանալ զլրուն լուսաւորչեան հանգանակին մերոյ 'ի վր նիկիականին, դիցուք նախ զբուն օրինակն հանգանակին նիկիոյ, ապա և զկոստանդինուպօլսին, բառ առ բառ թարգմանելով 'ի յոյն բնագրէ. որպէս և զառաքելականն 'ի լատինէ, 'ի պէտս իմաստնոց։

Հանգանակ ժողովոյն Նիկիոյ։

Հաւատամք 'ի մի Աստուած, Հայր ամենակալ, ամ երևելեաց և աներևութից արարիչ։ Եւ 'ի մի Տէր յՍ Քս որդին Այ, ծնեալ 'ի Հօրէ միածին, այսինքն յէութենէ Հօր. Աստուած յԱյ, լոյս 'ի լուսոյ, Այ ճշմարիտ յԱյ ճշմարտէ. ծնեալ, ոչ արարեալ. համագոյակից Հօրն. որով ամ ինչ եղև, որ յերկինս, և որ 'ի վր երկրի. որ յաղագս մեր մարդկան, և վս մերոյ փրկութե իջեալ, և մարմնացեալ և մարդացեալ. չարչարեալ, և յարուցեալ յերրորդ աւուր, և ելեալ յերկինս. և գալոց միւսանգամ դատել զկենդանիս և զմեռեալս։ Եւ 'ի Հոգին Սբ։ Իսկ որք ասեն՝ էր երբեմն, յորժամ ոչ էր, և մինչև ծնեալ՝ ոչ էր. և թէ յոչէից եղև. կամ յայլմէ ենթակայութենէ կամ յէութենէ ասեն լինել, կամ ստեղծական, կամ այլայլելի, կամ փոփոխելի զՈրդին Այ, զնոսա նզովէ կաթողիկէ և առաքելական եկեղեցի։

Հանգանակ ժող. կոստանդնուպօլսոյ ։

Հաւատամք 'ի մի Ած՝ Հայր ամենակալ, արարիչ երկնի և երկրի, երևելեաց ամի և աներևութից ։ Եւ 'ի մի Տր յս քս որդին այ միածինն, 'ի հօրէ ծնեալ յառաջ քան զամ յաւիտեանս, լոյս 'ի լուսոյ, Ած ճշմարիտ յայ ճշմարտէ, ծնեալ՝ ոչ արարեալ, համագոյակից հօրն. որով ամ ինչ եղև. որ յաղագս մեր մարդկան և վս մերոյ փրկութե իջեալ յերկնից, և մարմնացեալ 'ի հոգւոյն սբյ և 'ի մարիամայ կուսէն, և ներմարդացեալ. խաչեալ վս մեր առ պոնտացի պիղատոսիւ, և չարչարեալ և թաղեալ, և յարուցեալ յերրորդ աւուր ը գրոց. և ելեալ յերկինս, և նստեալ ը աջմէ հօրն. և միւսանգամ գալոց (հանդերձ) փառօք՝ դատել զկենդանիս և զմեռեալս. որոյ թագաւորութե ոչ գոյցէ վախճան ։ Եւ 'ի հոգին սբ՝ Տրն, կենդանարարն, 'ի հօրէ ելողն, ը հօր և որդւոյ երկրպագակիցն և փառաւորակից, որ խօսեցաւ մարգարէիւք ։ 'Ի մի սբ կաթողիկէ և առաքելական եկեղեցի. խոստովանիմք մի մկրտութի 'ի թողութի մեղաց. ակն ունիմք յարութե մեռելոց, և կենացն հանդերձելոյ յաւիտենին. ամէն ։

Հանգանակ առաքելական ։

Հաւատամ ('ի) յԱծ, ('ի) հայրն ամենակարող, արարիչ երկնի և երկրի ։ Եւ 'ի յս քս որդի նր միակ, 'ի Տր մեր. որ յղացաւ 'ի հոգւոյն սրբոյ, ծնաւ 'ի մարիամայ կուսէն, չարչարեցաւ առ պոնտացի պիղատոսիւ, խաչեցաւ, մեռաւ և թաղեցաւ. էջ 'ի դժոխս (կմ 'ի ստորինս). յերրորդ աւուր յարեաւ 'ի մեռելոց. համբարձաւ 'ի յերկինս, նստի ը աջմէ այ հօր ամենակարողի. ուստի գալոց է դատել զկենդանիս և զմեռեալս ։ Հաւատամ 'ի հոգին սբ. 'ի սբ եկեղեցի կաթողիկէ, 'ի հաղորդութի սրբոց, 'ի թողութի մեղաց, 'ի յարութիւն մարմնոյ. ('ի կեանսն յաւիտենականն). Ամէն ։

# ՑԱՆԿ
# ՎԱՐՈՒՑ ՍՐԲՈՑ
## որ 'ի հատորն . Ա :

Երես .



ժբ

ԱՐԽԱՐՆ

Հատորիս:

